ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԾԹ.

# ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՎՐԱՍՏԱՆ

## «ԳԵՐԻ ԿԻՆԸ», Ս. ՀՌԻՓՍԻՄԷ ԵՒ Ս. ՆՈՒՆԷ

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ԱՂԲԻՒՐՆԵՐՈՒ ՔՆՆՈՒԹԵԱՄԲ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1949



# DIE EINFÜHRUNG DES CHRISTENTUMS IN ARMENIEN UND GEORGIEN

## „DIE GEFANGENE FRAU“ DIE HL. RIPSIME UND DIE HL. NINO

EINE HISTORISCHE UNTERSUCHUNG
MIT QUELLENSTUDIEN

VON

P. NERSES AKINIAN

MECHITHARIST



WIEN
MECHITARISTEN-BUCHDRUCKEREI
1949



# ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՎՐԱՍՏԱՆ

## «ԳԵՐԻ ԿԻՆԸ», Ս. ՀՌԻՓՍԻՄԷ ԵՒ Ս. ՆՈՒՆԷ

ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ ԱՂԲԻՒՐՆԵՐՈՒ ՔՆՆՈՒԹԵԱՄԲ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



**ՎԻԵՆՆԱ**

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

**1949**

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ճիշդ 40 տարի յառաջ լոյս ընծայած էի պատմական ուսումնասիրութիւն մը «Կիւրիոն Կաթողիկոս Վրաց․ Պատմութիւն հայ-վրական յարաբերութեանց է․ դարու մէջ» (նախ հրատարակուած Հանդ․ Ամս․ 1907—1909 տարիներու մէջ, ապա արտատպութեամբ լոյս տեսած 1910ին)։ Նաեւ այս աշխատասիրութիւնս իրեն նիւթ ունի «Հայ-վրական յարաբերութեանց պատմութիւնը, այս անգամ Գ․—Ե․ դարու շրջանը նկատի առնուած։

Թէպէտ գրուածքիս խորագրի մէջ կ'ըսուի՝ «Հայաստանի եւ Վրաստանի քրիստոնէութեան դարձը», բայց նպատակ չեմ ունեցած մանր քննութեան առնել այս տեղ Հայաստանի Դարձի պատմութիւնը, որուն մտադիր եմ վերադառնալ ուրիշ ուսումնասիրութեան մը մէջ։ Այս կէտը նկատի առնուած է հոս այն չափի մէջ միայն, որչափ կարեւոր էր լուսաբանելու համար Վրաց դարձի պատմութիւնը, յատկապէս Ս․ Նունէի վարքը։

Ուսումնասիրութեանս ծանրակէտը կը հանգի Բակուր վրացի իշխանի հաղորդած տեղեկութիւններու վրայ, որոնք սկսեալ Ե․ դարէն աղբիւր ծառայած էին նախ յոյն

եւ լատին պատմագիրներու եւ ապա անոնց ընթերցողներուն մինչեւ մեր օրերը՝ երեւակայելու եւ պատմելու եւ զրոյցներ յօրինելու Վրաստանի քրիստոնէութեան դարձի մասին: Ուզեցի կարն ի կարենոյ ուրուագծել Հայաստանի դարձի հանգամանքները, ցոյց տալ Հայաստանի քաղաքական եւ եկեղեցական պատմութեան աստիճանական զարգացումն 217—372 եւ հրաւիրել հայ եւ օտար պատմագէտներու ուշադրութիւնը մէկ կողմէ Հայոց պատմութեան պատմական աղբիւրներու պղտորման եւ միւս կողմէ Բակուր իշխանի աւանդած տեղեկութիւններու ճշդիւ իմացման վրայ: Բակուրի պատմուածքը Հայոց դարձի կը հայի, ան իմաստ եւ արժէք կը ստանայ միայն այս մերձեցմամբ: Դիոն Կասիոսի պատմական ակնարկները Հայաստանի քաղաքական կացութեան մասին, 218ի Արեւու խաւարումը, Փաւստոսի եւ Ագաթանգեղոսի վերակազմուած տեղիքները եւ այլն կու գան հաստատելու ձեռն ի ձեռն մեր տեսութիւնը:

Ես առիթ ունեցած էի Բէյրութ, Գահիրէ, Կիպրոս եւ Մարսէյլ բանախօսելու այս մասին հրապարակաւ, նախ քան գրաւոր արտայայտուելու: Իմ փափագս էր, լսել նորագոյն լուսաբանութիւններուս շուրջը հասարակաց թեր եւ դէմ կարծիքները:

Գրուածքիս մէջ լայն տեղ շնորհուած է աղբիւրներու քննութեան, որուն հետեւութեամբ մատենագրական քան պատմական հետազօտութեան նկարագիր ստացաւ աշ–

խստասիրութիւն : Կը պահանջէր սակայն նիւթը նախ աղբիւրներու արժանահաւատութեան հարցը լուծել, եւ ապա անոնցմէ ջուր կրել պատմական անդաստանին ոռոգման համար :

Այն պարագան, որ աշխատութիւնս նախ մաս առ մաս եւ զանազան խորագիրներով լոյս տեսած էր «Հանդէս Ամսօրեայ»ի մէջ, յինքնին բերաւ իրեն հետ, որ մէն մի յօդուածի ներքին կապակցութեան եւ արտաքին ձեւի համար թողլ տայի ինձ վերյիշեցումներ, որոնք արտատպութեանս մէջ կարող են բերեւս անշահ կրկնութիւններ համարուիլ. առ այս կը խնդրեմ կանխաւ ընթերցողնուս ներողամտութիւնը :

Առանձին հատորով հրատարակութիւնս կրած է տեղ տեղ մանր աննշանակ փոփոխութիւններ :

Վիեննա, 12 Յունուար 1949 :

ՀԵՂԻՆԱԿԸ

---

* Հանդ. Ամս. 1947, էջ 401—432 (Քրիստոնէութեան մուտքը Հայաստան եւ Վրաստան ըստ աւանդութեան Բակուր իշխանի). 432—444 (Ս. Նունէ: Ա. Մեծ Սոկրատի հայերէն թարգմանութիւնը), 497—553 (Ս. Նունէ: Բ. Ախարոն Վանանդացի եւ այլն) : 1948, էջ 15—68 (Փոքր Սոկրատ), 173—190 (Փոքր Սոկրատ եւ Մ. Խորենացի), 341—347 (Ս. Նունէ եւ Վրաստանի դարձը) :

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

Գ· ԱՀԱՐՈՆ ՎԱՆԱՆԴԱՑԻ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ էջ

Էջ



---

# Ա.

# ՔՐԻՍՏՈՆԷՈՒԹԵԱՆ ՄՈՒՏՔԸ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ՎՐԱՍՏԱՆ

## ԸՍՏ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆ ՅԱԿՈԲԻ ԻՃԽԱՆԻ

1. *Թէպէտ ի վաղուց հետէ հայ, վիր եւ աղուան դրացի ժողովուրդներու ընդհանուր աւանդութիւնն եղած է մինչեւ Թ. դար, թէ Գրիգոր Լուսաւորիչ աւետարանած է իրենց քրիստոնէութիւնը, բայց եւ այնպէս Ռուփինոս երէց իր Եկեղեցական Պատմութեան մէջ կը պատմէ թէ Վրաց աշխարհին առաքելուհին եղած է գերի կին մը, Կոստանդիանոսի օրով, որ քրիստոնէութեան շահած է նախ թագուհին եւ ապա թագաւորը, եւ պատճառ եղած բովանդակ ժողովուրդի դարձին: Այս պատմութիւնը լսած են Երուսաղէմ Գելասիոս Կեսարացի (առ Գելասիոս Կուզիկեցւոյ) «Վրաց թագաւորական տոհմէ» Բակուր իշխանէն, իսկ Ռուփինոս համանուն «Վրաց թագաւորէն». զոր համառօտիւ յառաջ կը բերեն նաեւ Սոկրատ (Եկեղ. Պատմ. Ա. 20), Սոզոմենոս (Եկեղ. Պատմ. Բ. 7), Թէոդորետոս (Եկեղ. Պատմ. Ա. 24) եւ ուրիշներ: Սոկրատի Եկեղ. Պատմութիւնը 696ին թարգ-*

մանուելով հայերէնի՝ նոյնին ծանօթացած են նաեւ Հայերը, յատկապէս Վրահայերը: Սկսեալ Թ. դարէն հայ եւ վրական դրականութեան մէջ այդ անանուն «գերի կինը» յանուանէ կոչուած է Նունէ կամ Նինոյ, իսկ անանուն Թագուհին եւ Թագաւորը յորջորջուած են Նանա եւ Միհրան: Սոկրատի տուգերն ընդլայնուելով սկսած են արդէն կազմուիլ գրոյցներ, «Պատմութիւն Ս. Խաչին Նունէի», «Վարք Ս. Նունէի» եւ այլն, որոնք արձագանգ գտած են նաեւ Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ:

ԺԹ. դարու վերջերը եւ դարուս առաջին քառասնեակին շատերը գրաղեցան Ս. Նունէի վարքով, նաեւ ներկայիս կը նուիրուին նոյն հարցին ուսումնասիրութիւններ: Ամէնուն ջանքն է հաստատել այս գրոյցին տարրները, վեր հանել անոնց մէջ պատմական կորիզներ: Ամէնքն ալ գիտեն, թէ գրոյցներու աշխարհին մէջ կը դեգերին. բայց ոչ ոք համարձակութիւնն ունի խոստովանելու, թէ չկայ հոն ոչ մի պատմական կորիզ եւ հարկ է վերադառնալ հին աւանդութեան, որ երբեք դրացի աշխարհներու ալ մէկ Լուսաւորիչ կը մատնանշէ՝ Գրիգոր անուն, որ իր քարոզութեան սկիզբն ըրաւ Հայաստան, ուր իրմէ յառաջ առաքելուհի հանգիստացած էր Ս. Հռիփսիմէ:

Ըստ այսմ ուսումնասիրելու համար Վրաց դարձի պատմութիւնը հարկ է նախ աչքի առաջ ունենալ Հռիփսիմէի եւ Գրի–

գրի քաղաքական գործունէութիւնը Հայաստանի մէջ. ե՛րբ եւ ի՛նչպէս սկիզբ առաւ եւ զարգացաւ Հայոց քրիստոնէութեան դարձը: Եւ եթէ աւանդութեան համաձայն նաեւ Վրաց քրիստոնէութեան պատճառն Գրիգոր Լուսաւորիչ եղաւ, արդեօք Բակուրի հաղորդած տեղեկութիւնները Հռիփսիմէի, Աշխէն Թագուհւոյ, Տրդատ Թագաւորի եւ Գրիգորի չե՞ն հայիր: Միանգամ լուսաւորելէ ետքը այս հարցերը, դիւրին է այնուհետեւ պատմական յիշատակարաններու արժէքը գնահատել ըստ արժանւոյն, առանց տարուբերուելու զանազան հովերէ, նոյն իսկ փոթորիկներէ:

2. Հայաստան, Վիրք եւ Աղուանք Ե. դարուն: — Միհրներսեհ կը թելադրէր Յազկերտ Բ.ին. «Յորժամ Հայք սերտիւ մեր լինին, Վիրք եւ Աղուանք այնուհետեւ մեր իսկ են» (Փարպ. 43): Թէպէտ երեք դրացի ժողովուրդներն ալ նուաճուած էին սասանեան մականի տակ, բայց եւ այնպէս համոզուած չէր Տիզբոնի արքունիքը, թէ այդ երեք աշխարհները «սերտիւ» Արեաց աշխարհի մաս կը կազմէին: Երեքն ալ քրիստոնեայ աշխարհայեցողութեամբ սնած, խորթ էին դենիմազդեզնի, որ լայնատարած պարսկական պետութեան միութեան օղակը կը նկատուէր: Յազկերտ այդ օղակին մէջ կ'ուզէր տեսնել նաեւ Հայերը, Աղուանները եւ Վրացիները: Հայաստան, «հանուրց հիւսիսակա–

նաց վեհագոյն[1]», Երկու դարէ ի վեր իր թեւարկութեան տակ կը հովանաւորէր իր երկու համակրօն դրացիները. երեքն ալ քրիստոնէական մշակոյթով իրարու հետ զինակից, գաղափարական դաշնակցութիւն մը կնքած էին, թէպէտ քաղաքականապէս անջատուած: Թէեւ ոչ հեշտ աչքով, անկարելի չէր կըրնար մնալ այս դաշնակցութիւնը սրատես պարսկին: Այժմ Յազկերտ սուտակապաշտութեամբ Հայերը ձեռք առնել կը ձգտի՝ չահելու համար այս երրեակ միութիւնը՝ դենիմազդեզնի: Ունայն յաւակնութիւն: Եթէ Մաքսիմինոս Դայա 75 տարիներէ ի վեր քրիստոնեայ Հայաստանի նորադարձ ոյժին առաջ ընկրկեցաւ, Յազկերտի՞ պիտի յաջողէր 230 ամեայ քարոզութեամբ հաստարմատ եւ գրականութեամբ ուռճացած ծառն արմատախիլ ընել: «Պատգամաւորութիւն այնուհետեւ երեքին աշխարհքն առ միմեանս առնէին եւ ուխտս դնէին[2], եւ բազում երդմամբ Աւետարանին հաստատէին»: Վրաստանի ներկայացուցիչն էր Աշուշայ Տաշիրքի բդեշխը:

Այստեղ մեզի համար ուշադրաւն այն է, որ Հայաստան հիւսիսական կողմանց քրիստոնէական մշակոյթի հզօրագոյն պատուարը կը համարուի. որուն խորտակումը պիտի նշանակէր քրիստոնէութեան բնաջնջումը կաւկասեան բարձրավանդակի վրայ: Գոնէ այս էր Սասանեանի համոզումը:

---

[1] Մ. Խոր. Գ. 68:

[2] Փարպ. 47. տպ. ուխտադրութիւնս:

*Դերը, զոր դարեր շարունակ կատարած էր Հայաստան, երախտագիտութեամբ ողջունուած էին մինչ իր դրացիներէն: Գիտէին անոնք, թէ ոչ միայն քրիստոնէութեան արշալոյսը ծագած էր Հայաստանէն, այլ եւ միջոցեայի արեւը՝ գիրն ու գրականութիւնը: 415/16ին, երբ Մաշտոց վարդապետ շրջան ըրաւ Աղուանից աշխարհը, Արցախ եւ Ուտի, ապա անցաւ ի կողմանս Վրաց (Սամխեթի) եւ ի վերջոյ Վրաստան (Սաքարթուելոյ) եւ վերադարձին Տաշիրք (Սամցխէ) խանդավառ ընդունելութիւն վայելեց ամենուրեք իբրեւ Նոր Լուսաւորիչ, ինչպէս գեղեցիկ նկարագրած է Կորիւն Ս. Մաշտոցի Վարքին մէջ:*

*Հիւսիսական կողմանց երեք եկեղեցիրու մէջ հայկականը նկատուած էր* primus inter pares, *եւ շնորհիւ իր աւագութեան՝ ինքը կը բաշխէր անոնց արքեպիսկոպոսական ձեռնադրութիւնը, ունէր նաեւ վերին հսկողութիւն կրօնական միութեան վրայ: 506ին Վիրք եւ Աղուանք Վաղարշապատ կը հաւաքուին, դաւանաբանական հարցերու շուրջը Հայոց հետ միաբան եւ միաշունչ*[3]: *Յովհաննէս Բ. եւ Աբրահամ կաթողիկոսները պաշտօնական թուղթեր կ՚ուղարկեն Աղուանից*[4], *նոյնպէս Մովսէս եւ Աբրահամ՝ Վրաց*[5]:

---

[3] *Գիրք Թղթոց*, 177, 182:
[4] *Անդ*, 81, 196:
[5] *Անդ*, 136, 164, 166, 165 *եւն*:

Յուրտաւի եկեղեցին կը խոստովանէր (606ին) թէ Սուրբ եւ ուղիղ հաւատքը «Մեծին, սրբոյն Գրիգորի սերմանեալ էր յայս ի կաւկասայ̈ին կողմանս[6]» եւ Վրթանէս Քերթող կը գրէր Վրաց Պետրոս եպիսկոպոսին (ի Տփխիս), թէ «Նորոգաձեւութիւն ինչ հաւատոյ մի եղիցի ի մէջ երկուց աշխարհացս... զոր ի ձեռն Ս· Գրիգորի հաստատեաց բազում սքանչելագործութեամբք Տէր Աստուած յաշխարհիս[7]»: Վրաց Կիւրիոն կաթողիկոս կը յայտարարէր Հայոց Աբրահամ կաթողիկոսին. «Հարքն մեր եւ ձեր միաբան ունէին (զհաւատս) յորմէ հետէ եւ սուրբն Գրիգոր զուղղափառ հաւատ կարգեաց[8]». Եւ դարձեալ, թէ «Ազատ մարդիկն որ ի Հայոց ի Վիրս խնամութիւն արարեալ էր, ի Ս· Շուշանկայ պաշտօնն (ի Յուրտաւ) գային եւ ի Ս· Խաչս Մծխիթայի աղօթել եւ Օրհնաց հաղորդէին. նոյնպէս եւ որ աստի այդր գային ի Ս· Կաթուղիկէ եւ յայլ եկեղեցիսդ՝ անխիղճ ի միմեանց հաղորդէին. եւ միաբանութիւն էր Վրաց եւ Հայոց ընդ միմեանս եւ ամենայն իսկ վինակիս սրբոյ տեառն Գրիգորի միաբանութիւն էր ընդ հաւատոյն Երուսաղէմի, որով Հռոմք վարին[9]»: Եւ Աբրահամ կաթողիկոս կը գրէր Կիւրիոնի. «Մի հեղգացուք զսէրն հոգեւոր, որ կայր ի մէջ երկուց ազգացս, նորոգել, զայն որ ի միջէ

[6] Անդ, 132:
[7] Անդ, 136· հմմտ. նաեւ 138:
[8] Անդ, 171· հմմտ. նաեւ 167, 174, 176:
[9] Անդ, 178—179:

*աղբերքէ առեալ էր զվարդապետութիւն... եւ ապա* մեզ եւ ձեզ հասարակ սերմանեցին զաստուածպաշտութիւն, նախ երանելին սուրբն Գրիգոր եւ ապա Մաշդոց եւ զԳրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց[10]» : *Այս խմաստով ալ կը հաւաստէր Թ. դարուն Վրաց Արսէն կաթողիկոսը, թէ «Վրաց եկեղեցին* հաւատարիմ մնաց այն հաւատոյ դաւանութեան, զոր ընդունած է Ս. Գրիգորէն. *եւ Հայերն էին որ հեռացան Ս. Գրիգորի վարդապետութենէն*[11] :

3. *Տոհմիկ աղբիւրները, որոնք կը պատմեն Հայոց քրիստոնէութեան դարձի մասին, շատ պղտոր հասած են մեզի: Ձեմ ըսեր, թէ անոնք ակէն պղտոր ընդունած են ջուրը. այլ ժամանակի խողովակէն հոսելով կորանցուցած են իրենց յստակութիւնը: Կ'ակնարկեմ Փաւստոսն եւ Ագաթանգեղոսը: Որչափ ալ ի գործ դնենք զանի մեքենաներ, պարզելու պղտորութիւնը, պիտի չկարենանք ստանալ այն յստակութիւնը, որ ցանկալի է: Ձեմ կրնար ըստ բաւականին չողբալ սքանչելի Փաւստոսի Հայոց Պատմութեան սկզբնագրի կորուստը եւ անոր հայերէն թարգմանութեան յետ ժամանակի վեր ի վար այլաշրջումը, զործ Զ. դարու սկիզբը ապիկար խմբագրողի մը: Նոյն ձեռքին սխրագործութիւնն*

---

[10] *Անդ*, 180:

[11] *Հմմտ. Լ. Մելիքսեթ–Բեկ, Վրաց աղբիւրները Հայաստանի եւ Հայերի մասին: Երեւան* 1934, *էջ* 37: *Այս խնդրոյ մասին տես նաեւ Հ. Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, Վիեննա* 1910:

է նաեւ այժեան «Ագաթանգեղոսը»: Բարեբախտաբար հնարաւոր եղաւ Փաւստոսի սկզբնագրին ինչ ինչ անաղարտ մասեր դուրս կորզել այդ թոհուբոհէն, որոնք նպաստամատոյց եղան վերակազմելու հայ արշակունի թագաւորներու յաջորդութիւնն 216էն մինչեւ 385, միաժամանակ վերականգնելու նոյն շրջանի հայ եպիսկոպոսապետներու ժամանակագրութիւնը, նպաստակուած նաեւ ներքին եւ արտաքին վստահելի աղբիւրներով: Ուրիշ տեղւոյ եւ ժամանակի վերապահելով ուսումնասիրութիւններուս արդեանց ամբողջական հրատարակութիւնը, այստեղ պիտի ներկայացնեմ համառօտիւ Հայոց դարձի գլխաւոր գծերը եւ Հայոց թագաւորներու եւ եպիսկոպոսներու յաջորդութիւնը ժամանակագրական համադասութեամբ: Յուսամ եմ թէ այսքանը բաւական պիտի ըլլայ առ այժմ ընթերցողներուս, ճշդիւ հասկնալու համար իմ նկատողութիւններս ի մասին Վրաց քրիստոնէութեան դարձի պատմութեան:

4. Խոսրով Ա. որդի Վաղարշի վախճանեցաւ 216ին Անտիոք, ուր արգելափակած էր զայն կայսրն Կարակալլա: Նորընտիր կայսրը Մակրինոս (217—218) փութաց Հայաստանի թագաւոր հռչակել Խոսրով Ա.ի որդին Տրդատ Բ. (217): Իր օրով կը յայտնուի Հռփսիմէ տիկին: Գրիգոր Կեսարիայէն կու գայ լուսաւորելու Հայոց մեծաց աշխարհը (219): Կը կառուցուին եկեղեցիներ: Գրիգոր

կը տարածէ նոր կրօնը Հայոց մեծաց աշխարհին մէջ, ծայրէ ծայր, յընթացս 30 տարիներու, նպաստաւորութեամբ թագաւորին։ Իսկ 250ին կը վախճանի Գրիգոր՝ յանձնելով աթոռը Մեհրուժան եպիսկոպոսի։ 253ին Շապուհ Ա. կ'արշաւէ Հայաստան. Տրդատ կը ստիպուի ապաստան փնտռել Հռոմայեցւոց քով։ Առանց տարակուսի նորաբոյս քրիստոնէութիւնը ապրեցաւ հալածանք 253—264 գրաւման տարիներուն։ Ագաթանգեղոս (էջ 439—440) բանաքաղելով Փաւստոսէն՝ Գրիգորի քարոզութեան շրջանը կ'ամփոփէ այսպէս. «Ընդ ամենայն երկիրն Հայոց, ի ծագաց մինչեւ ի ծագս ձգտէր տարածանէր զմշակութիւն քարոզութեանն եւ աւետարանութեանն. ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն Խաղտեաց, մինչեւ առ Կաղարջօք մինչ ի Սպեր[12] ի սահմանս Մասքթաց[13],

[12] Տպագիրն համեմատ ձեռագրաց ունի հոս «մինչ ի սպառ». տեղը կը պահանջէ կարդալ «ի Սպեր», որ Բարձր Հայոց մէկ գաւառն է, սահմանակից Տայոց եւ Մոսքեան լեռներու։

[13] Լագարդ (Agathangelos) ենթադրած էր անուանս ուղղականն Մասքիթք, զոր ընդունած էր Մարկուարտ (Eranšahr 169), բայց ինչպէս Հիւբշման կը գրէր՝ Վրաց Մեսխեթի եւ յն. Μόσχοι (Μέσχοι) «հայերէնի մէջ գէթ *Մասխիթք, բայց բուն *Մեսխք սպասելու էր» (Հայ տեղւոյ անուններ, 113, ծան.)։ Փաւստոսի յուն. սկզբնագրին մէջ հաւանօրէն Μεσχίθο) էր, որ տառադարձութեամբ պէտք է տար Մեսքիթք, Մեսքթաց (հմմտ. յն. Μεσχιδά, Ագաթիաս, Բ. 22 հայ Մծխիթա), ճշդագոյնս Մծխիթք, «Մծխթաց» որ յետոյ շփոթուած է Մասղութք (Μασσαγέται սկիւթական վաչկատուն ժողովուրդին հետ, որոնք կը բնակէին Կասպից ծովու եւ Երասխի միջեւ։

մինչեւ ի Դրունս Ալանաց, մինչ ի սահմանս Կասպից ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց։ Եւ յԱմդացւոց քաղաքէն մինչեւ առ Մծբին քաղաքաւ, քերէր առ սահմանօքն Ասորւոց առ Նոր Շիրական երկրաւն եւ առ Կորդուօք մինչեւ յամուր աշխարհն Մարաց, մինչեւ առ Տամբն Մահքերտ[14] իշխանին, մինչեւ յԱտրպատական ձգտէր տարածանէր պետարանութիւնն իւր»։

Այս սահմաններն ունէր 220ին Հայոց Մեծաց աշխարհը։ 297ին Մեծ Հայոց «վերին Տիգրիսի հիւսիսակողմը՝ Եփրատի եւ Կորդուաց միջեւ գտնուող երկիրը (Անգեղտուն, Ծոփք, Աղձնիք, Կորդուք եւ Ծաւդէք) Հռոմայեցւոց անցաւ, իսկ Մարաց սահմանների վրայ գտնուող Զինթա ամրոցը Հայաստանի սահման որոշուեցաւ. եւ Հռոմի աւատապետական իշխանութիւնը Վրաց վրայ հաստատուեցաւ[15]»։ Այս առթիւ Վրաստանի կցուեցան Հայոց Գուգարք եւ այսրկուրեան գաւառները. եւ Աղուանից տրուեցան Արցախ

---

[14] Տպ. Մահքր-Տան։ Փաւստոս (Դ. 50) ունի «Մահկրտանն» (նախարարութիւն)։ Ա. Beth Mhqrṭ (O. Braun, Das Buch der Synhados, Stuttgart 1900, էջ 31). Լագարդի յուն. Ագաթ. (էջ 77) կը կարդայ Μαχούρτων որ կ'ենթադրէ Մաքբտան ընթերցուածը։ Ինչպէս Հիւբշման (Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 182) միտ դրած է, յեգած տարականին վրայ պէտք է սրբագրել Մահկերտուն. ուստի հոս Տուն Մահկերտ (կամ Մահքերտ) իշխանին։

[15] Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անունները, էջ 31։

եւ Ոստի նահանգները, որոնք այլ եւս չվերադարձան Հայոց:

Այս տեղ կը ներկայացնեմ Հայոց թագաւորներու եւ եպիսկոպոսներու ժամանակագրական յաջորդութիւնը 217—374 շրջանի:

ԺԱՄԱՆԱԿՔ ԹԱԳԱՒՈՐԱՑ ԵՒ ԵՊԻՍԿՈՊՈՍԱՊԵՏԱՑ

| | |
|---|---|
| ՏՐԴԱՏ Բ. 217—253 | ԳՐԻԳՈՐ *ամս Լ.* 220—250 |
| *Շապուհ Ա. ի Հայս* 253—264 | ՄԵՀՐՈՒԺԱՆ[16] *ամս Է.* 250—257 |
| *Արտաւազդ* 254—272 | ՎՐԹԱՆԷՍ *ամս ԺԷ.* 257—274 |
| *Պալմիրացիք* 264—272 | |
| ԽՈՍՐՈՎ Բ. 273—283 | ԳՐԻԳՈՐԻՍ[17] *ամս ԺԷ.* 274—291 |
| ՏԻՐԱՆ Ա. 283—295 | ՅՈՒՍԻԿ *ամս Գ.* 291—294 |
| *Ներսեհ ի Հայս* 295—297 | ՓԱՌԷՆ *ամս Դ.* 294—298 |
| *Բաժանումն Հայաստանի* 297—298 | |
| ԱՐՇԱԿ Բ.[19] 298—338/9 | ԱՐԻՍՏԱԿԷՍ[18] 298—338 |
| ՏԻՐԱՆ Բ. 338—349 | ՆԵՐՍԷՍ *ամս ԼԴ.* 338—72 |
| ԱՐՇԱԿ Գ. 349—367 | |
| *Շապուհ Բ. ի Հայս.* 366/9 | *Սահակ*[19] *Զոնակ* 362—366 |
| ՊԱՊ 369—374 | ՅՈՒՍԻԿ 372—374 |

---

[16] *Ժամանակք հայրապետաց Հայոց. Հանդ. Ամս.* 1937, *էջ* 521 *ունի հօս «Արիստակէս ամս Է.», որուն ժամանակը ծանօթ է այլուստ. կը յիշուի* 325*ի Նիկիոյ ժողովի հարց մէջ: Այս Մեհրուժանի գրած է Դիոն. Աղեքսանդրացի իրր* 255*ին թուղթ մը, զոր կը յիշէ Եւսեբ. Եկեղ. Պատմ. Զ.* 46

[17] *Կը յիշէ «Ժամանակք հայրապետաց Հայոց» գրուածքը:*

[18] *Արշակ Բ. եւ Տիրան Բ. չեն յիշուած Հայոց արքայացանկին մէջ, որովհետեւ Արշակ Բ. եւ Գ. միացուած են, ինչպէս նաեւ Տիրան Ա. եւ Բ.:*

[19] *Ներկայ էր Անտիոքի* 363*ի ժողովին:*

5. Ռուփինոս եւ Գելասիոս Կեսարացի: — Ռուփինոս[20] թարգմանելով Եւսեբիոս Կեսարացւոյ Եկեղ. Պատմութիւնը լատիներէնի, կցած է անոր երկու գիրք, ուր 325—395 տարիներու դէպքերը նկատի կ՚առնէր: Մինչեւ 1914 ընդհանուր համոզումն էր, թէ այս Ժ. եւ ԺԱ. Գրքերը Ռուփինոսի հեղինակութիւնն է, ինչպէս կը հաւաստէր ինքն ալ: Բայց կային հրապարակի վրայ մատենագրական վկայութիւններ, որոնք այդ 325—395 շրջանի Եկեղեցական Պատմութիւնը Գելասիոս Կեսարացւոյ[21] կ՚ընծայէին, գրուած

---

[20] Տիւրիննոս Ռուփինոս երէց ծնած է իրր 345ին ի Կոնկորդիա. ուսումնքն առած Հռոմ. ընտրեց վանական կեանքն Ակուիլէիայի մենաստանի մը մէջ. ձեռնադրուելով քահանայ 371ին մեկնեցաւ Եգիպտոս: 377—397 շրջանն անցուց մեծաւ մասամբ Երուսաղէմ, պարապած թարգմանութեամբ եւ հեղինակութիւններով: 397ին վերադարձաւ Իտալիա. վախճանեցաւ 410ին: 401—403 տարիներուն լատիներէնի թարգմանեց Եւսեբիոս Կեսարացւոյ Եկեղեցական Պատմութիւնը, անոր 10 գրքերը ամփոփելով 9 գրքերու մէջ. կցեց ապա անոնց երկու գիրք (Ժ. եւ ԺԱ.), ուր պատմած է 325—395 տարիներու եկեղեցական դիպուածները, զորոնք հրատարակեց Mommsen: Die Kirchengeschichte des Eusebius, Leipzig 1903—1909, էջ 957—1040: Իր մասին O. Bardenhewer, Geschichte der altkirchlichen Literatur, Bd. III (Freiburg 1912) 549—560:

[21] Գելասիոս Կեսարացի Կիւրեղ Երուսաղեմացւոյ († 18 մարտ 386) քեռորդին է: Ս. Կիւրեղ 367ին ձեռնադրեց իր քեռորդին Պաղեստինի Կեսարիոյ եպիսկոպոս. բայց խափանուեցաւ Գելասիոս Արիանոսեաններէ պաշտօնավարելու իր թեմին մէջ: Աթոռին տիրացաւ իրր 381ին, երբ Թէոդոս Մեծի հրամանով Արիանոսեանները վտարուեցան Կեսարիայէն: Գելասիոս ներկայ էր Կ. Պոլսոյ 381ի եւ 394ի ժողովներուն:

յունարէն: Ծանրակշիռ էր մանաւորապէս Կրամերի հրատարակած «Համառօտ Եկեղեցական Պատմութեան» այն տեղիքը, ուր կ՚ըսուէր. «Կիւրեղ Երուսաղեմացւոց եպիսկոպոս էր մօրեղբայր Գեղասեայ Կեսարացւոյ. եւ նա ի վախճանել անդ իւրում հարկ ի վերայ եղ Գեղասեայ ի մատենի հարկանել զպատմութիւնն դիպաց որ յետ Եւսեբեայ եւ զայնոցիկ, զորովք զանց արար նա յիշատակել»[22]: Այս տեղիքը ծանօթ էր նաեւ Փոտի[23]: Կը գրէր նաեւ Թէոփանէս. «Գեղասիոս ի Կեսարեայ եւ նորին իսկ եպիսկոպոս աէ [24]»: Կան հիներու քով նաեւ տեղիքներ, ուր միեւնոյն գործին երկու հեղինակ կը մատնանշուին, «Գեղասիոս որ եւ Ռուփինոս», տարակոյսի մէջ, թէ ո՛րն է երկուքէն գործին բուն հեղինակը:

---

Վախճանեցաւ 395ին: Ս. Յերոնիմոս 392ին կը յիշէ զինքը իր Վասն երեւելի արանց գրուածքին մէջ (գլ. 130), ուր կը խօսի նաեւ իր գրուածքներու մասին, զորոնք, կ՚ըսէ, ամբածածուկ կը պահէ: Թէոդորետոս, Լեւոն Բիւզանդացի եւ ուրիշներ վկայութիւններ յառաջ կը բերեն իր զանազան ճառական եւ վարդապետական գրութիւններէ, ծանօթ է հիներուն նաեւ իր Եկեղեցական Պատմութիւնը, զոր գրած է իր մօրեղբօր յորդորմամբ, մեզի ծանօթ միայն ուրիշներու քով պահուած քաղուածքներէ: Իր մասին հմմտ. O. Bardenhewer, անդ, հատոր Գ., էջ 282 եւ A. Glas (տես ծան. 25):

[22] J. A. Cramer, Anecdota Graeca e codicibus manuscriptis. Oxonii 1839, էջ 91.

[23] Մատենադարան, 89. Migne, Patrologia Graeca, 103, էջ 293.

[24] Theophanes, ed. de Boor, էջ 11.

*Այս խնդիրը մանրակրկիտ քննութեան ենթարկեց* A. Glas[25] *եւ յանգեցաւ այն եզրակացութեան թէ Եկեղեցական Պատմութեան սկզբնագիրը, գրուած յունարէն, հեղինակութիւնն է Գեղասիոս Կեսարացւոյ։ Թէպէտ սկզբնագիրը չէ պահուած մեզի, բայց անկէ օգտուած է Թէոդորետոս († իրր 460)*[26], *ընդարձակ քաղուածքներ ունին Գեղասիոս Կիւզիկեցի*[27] *եւ Գէորգ Միանձն*[28]*։ Ռուփինոս լոկ թարգմանիչն է Գեղասիոսի. իր թարգմանութեան մէջ ընթացած է ամենայն ազատութեամբ։ Այս լատին թարգմանութիւնը ունեցած են իրենց ձեռքի տակ Սոկրատ եւ Սոզոմենոս, անծանօթ մնացած ըլլալով իրենց յոյն սկզբնագիրը։ Այս տեսութեան հաւան չէ* P. Peeters[29].

---

[25] Die Kirchengeschichte des Gelasios von Kaisareia. Die Vorlage für die beiden letzten Bücher der Kirchengeschichte Rufins. Leipzig 1914 (Byzantinisches Archiv, Heft 6). *Հմմտ. տե՛ս այս* Stählin*ի գնահատականն* Byz. Z. 24 (1924) 118—19։

[26] Theodoret, Hist. eccl. I. 24.

[27] Gelasius Kirchengeschichte, herausgegeben G. Loescheke und M. Heinemann, Leipzig 1918.

[28] Georgii Monachi Chronicon, ed. de Boor. Leipzig 1904.

[29] Les débuts du christianisme en Géorgie d'après les sources hagiographiques. Analecta Bollandiana, 50 (1932) 5—58, *ուելլի ընդունելի կը գտնէ առպացուցները, զոր* Van de Ven, Fragments de la rècension grecque de l'Histoire ecclesiastique de Rufin dans un texte hagiographique. Le Muséon, 33 (1915) 92—105 *յառաջ կը բերէ։ Այս մասին հմմտ. նաեւ* H. Gregoire et M. A. Kugener, Marc le diacre, Vie de Porphyre évêque de Gaza, Paris 1930.

*Մեզի համար կարեւոր է այս սկզբնագրի հարցը, վասն զի թէ Գեղասիոս եւ թէ Ռուփինոս իրենց Եկեղեցական Պատմութեան մէջ զետեղած են առանձին գլուխ մը «Վասն դարձին Վրաց». ուսկից ապա քաղուածներ առած են Սոկրատ եւ Սոզոմենոս, Թէոդորետոս եւ Գեղասիոս Կիւզիկեցի, իւրաքանչիւրն իրեն մատչելի յոյն կամ լատին օրինակներէ: Գեղասիոս եւ Ռուփինոս ընդհանրապէս միաբան են իրարու, բայց ունին իրարմէ ի մասնաւորս շեղումներ: Երկուքին ալ հասարակաց աղբիւր՝ Բակուր իշխանն է: Ռուփինոս (Ժ. 11) կը հաւաստէ պատմուածքին վերջաւորութեան թէ այս ամէնը «պատմեց մեզի հաւատարիմ այրն Բակուր, նոյն (Վրաց) ազգին թագաւորն եւ մեր քով կոմս ծառայից, որ մեծ սէր ունէր թէ կրօնքի եւ թէ ճշմարտութեան, երբ մեզի հետ համաշունչ կ'ապրէր Երուսաղէմ, մինչ Պաղեստինի սահմանակալ (dux) էր»: Այս վերջաւորութիւնը Գեղասիոս Կիւզիկեցւոյ քով (էջ 154) աւանդուած է այսպէս. «Այս ամէնը պատմեց մեզի արժանահաւատն Բակուր, այր բարեգոյն, Վրաց ականաւոր թագաւորական տոհմէ. որ հռոմէական սատրապ էր եւ դուխս Պաղեստինի զօրավար ընդդէմ բարբարոս Սարակինոսներու, որոնց վրայ շատ անգամ յաղթող հանդիսացաւ»:*

*Ինչպէս կը տեսնուի, թէ Գեղասիոս եւ թէ Ռուփինոս հաւասարապէս լսած են Բակուրէն: Որովհետեւ երկուքն ալ նոյն բանը*

*գրի առած են, պէտք է հաւատալ թէ անոնք ի միասին գրի առած են պատմուածքը, ամէն մէկը իրեն համար։ Յիշողութեամբ ճիշդ նոյնը չէին կրնար գրած ըլլալ։ Բայց զարմանալի է, որ Գեղասիոս զԲակուր «Վրաց թագաւորական տոհմէ» իշխան միայն կը ճանչնայ, իսկ Ռուփինոս զանիկա «թագաւոր» կը կոչէ։ Այս կէտին մէջ կը խոտորին անոնք իրարմէ։ Ո՞րն է ճշմարտախօսը. ուղիղ նկատած է Ա. Գլաս (անդ 52—53), թէ Բակուր եթէ իսկապէս թագաւոր եղած ըլլար, դժուարաւ պիտի կարենայինք հաւատալ, թէ նա այնքան երկար տեւողութեամբ կայսեր ծառայութեան մէջ գործած ըլլար. վասն զի 378էն ի վեր Բակուր կայսեր դրօշին տակ զինուորած էր։ Ինչպէս պիտի տեսնենք, ոչ Ամմիանոս, ոչ Զոսիմոս եւ ոչ ալ Լիբանիոս զինքը այս տիտղոսով գիտեն, գոնէ մինչեւ 394։ Բայց Բակուր այս թուականէն ոչ շատ տարիներ յետոյ թագաւորեց ստոյգ։ Ուստի եթէ չենք ուզեր ըսել, թէ Ռուփինոս իր հիացմունքի մէջ զԲակուր թագաւոր երեւակայած է, ապա պէտք է ընդունինք թէ նա, երբ կը թարգմանէր Գեղասիոսի Եկեղեցական Պատմութիւնը, այսինքն 401—403 տարիներուն, լսած ըլլալով որ իր մտերիմ իշխանը թագակապ վերադարձած է հայրենիք, սկզբնագրին «թագաւորական տոհմէ այր բարեմոյնը» սրբագրած է «թագաւոր»։ Գեղասիոս կը ներկայանայ ասով սկզբնագիր, ինքն է, որ իբր 393ին ունկնդրած է Բակուր*

*թաղաւորացն իշխանին եւ գրի առած է յանձները: Վերջաւորութեանը դարձեալ կը խօսորի Գեղասիոս Ռուփինոսէն: Ա. Գլաս (անդ, 53) Սարակինոսաց դէմ կռիւները Գեղասիոս Կիւզիկեցւոյ երեւակայութեան կը վերագրէ: Կարելի է, թէ Կիւզիկեցին այս տեղ Կեսարացւոյ տողերէն ինչ ինչ կրճատած ըլլայ, յատկապէս Ռուփինոսի քով տեսնուած «երբ մեզի հետ համաշունչ կ'ապրէր Երուսաղէմ» նախադասութիւնը, բայց ինչո՞ւ ենթադրենք, թէ Բակուրի օրով Պաղեստինի սահմաններու վրայ որ եւ է խլրտում տեղի ունեցած չըլլայ: Այս տեղ թերեւս Ռուփինոս է համառօտողը:*

6. *Բակուր պատմութեան մէջ առաջին անգամ կը յայտնուի 378ին: Այս տարւոյն Վաղէս կայսր կ'արշաւէ Գոթերու եւ Ալաններու դէմ, որոնք հռոմէական սահմանները կ'ասպատակէին: Ինքնակալի անձնապահներու մէկ մասին հրամանատարն էր իբրեւ արիրուն աղեղնաւորաց «Բակուր ոմն վրացի*[30]*»: Ճակատամարտը տեղի կ'ունենայ Ադրիանուպոլսոյ առջեւ. կայսերական բանակը կը խորտակի, խուճապի մէջ անհետ կը կորսուի Վաղէս: Բակուր կը ճողոպրի ողջանդամ:*

[30] Ammianus Marcellinus, Rerum gestarum l. XXI, 12 (Paris 1681): Eo ad vallum hostile tenente, Sagittarii et Scutarii, quos Bacurius Hiberus quidam tunc regebat.





*Երկրորդ անգամ կը հանդիպինք իրեն 394ին Թէոդոս Մեծի բանակին մէջ, որ Ֆրիգիդուս (այժմ Վիպպախ յԻտալիա) գետին քով որոշիչ ճակատամարտ կը մղէ Եւգինիոս բռնակալի դէմ: Կայսեր դրօշին տակ կռուող զօրավարներէն մէկն է «Բակուր, ծննդամբ Հայաստանէն, ազատ ամէն չարակամութենէ եւ պատերազմական իրաց հմուտ», որ կռուեցաւ «քաջաբար, գլխադրաւ ամէն վտանգի»: Այսպէս Զոսիմոս[31], որ կը համարի թէ Բակուր մեռաւ պատուոյ դաշտին վրայ[32]: Բայց Ռուփինոս, որ կը ճանչնար զԲակուր իբրեւ «այր հաւատարիմ եւ բարեպաշտօն եւ առաքինի եւ հոգւով եւ մարմնով բարենշան, եւ որ էր կոմս եւ նիզակակից Թէոդոսի[33]», որ*

---

31 Zosimus, IV, 57 (ed. Bonnae 1837): *Ἐκοινώνει δὲ τῆς ἀρχῆς αὐτοῖς καὶ Βακούριος, ἕλκων μὲν ἐξ Ἀρμενίας τὸ γένος, ἔξω δὲ πάσης κακοηθείας ἀνὴρ μετὰ τοῦ καὶ τὰ πολεμικὰ πεπαιδεῦσθαι.*

32 *Անդ*, 58 *Κατ' αὐτὴν τὴν ἡμέραν τὸ μὲν πολὺ μέρος τῶν Θεοδοσίῳ τῷ Βασιλεῖ συμμαχούντων ἀποθανεῖν, καὶ τὸν στρατηγὸν Βακούριον ἀνδρειότατα τῶν σφετέρων προκινδυνεύσαντα. «Նոյն օրը Թէոդոս Թագաւորի մարտակիցներէն շատերը մեռան. եւ զօրավարն Բակուր, որ իրեններուն մէջ ամէնէն քաջն հանդիսացաւ քաջաբար դիմակալելով ամէն վտանգներու»:*

33 Rufinus, Hist. eccl. XI. 33. Et praecipue Bacurius, vir fide pietate, virtute et animi et corporis insignis, et qui comes esse et socius Theodosii meretur, proximos quosque corto, telis, gladio passim sternit, agmina hostium conferta et constipata perrumpit. *Անկէ Սոկրատ Ե. 25. «Յանդի Բակուրիոս զօրավարն նորա այնքան քաջալերեցաւ, որպէս զի նախկին հանդիսաւորօքն ընթանայր ըստ որում կողման բարբարոսացն վարեալք լինէին, եւ պատառէր զաղմունս պատերազմականացն եւ դարձուցանէր ի փախուստ զորս յառաջ սակաւ ինչ վարողս»* (էջ 481/2):

Եւ է ակնարկութիւն չ'ընէր անոր մահուան մասին. ուստի հարկ է թիւրիմացութիւն վերագրել Զոսիմոսի[34]: Բակուր առանց տարակուսի մասնակցեցաւ պատերազմին իր պաշտօնեան զորագունդով, իբրեւ հրամանատար (dux) Պաղեստինի:

Կը մնայ մեզ այժմ նկատողութեան առնել Բակուր անունով անձ մ'ալ, որ 391/92ին ներկայացած է Լիբանիոս հեթանոս ճարտասանին յԱնտիոք եւ ընձեռած անոր թուղթ մը, զոր ուղարկած էր Արիստենիտ, հռետորին մէկ բարեկամը[35]: Նոյն 392 տարւոյն Բակուր կ'ընդունի Լիբանիոսէն նամակ մը[36]: Ճարտասանը հոս նկատի ունի իր առջեւ զինուորական մը, կը վերաբերի անոր հետ

---

[34] Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ. 372. կը գրէ. «Կոչեաց Թէոդոս զզօրս համօրէն արեւելեան պետութեանն եւ յԱփրիկեայ եւս. եկին դաշնաւորք ի Հայոց, ի Վրաց եւ յԱրաբացւոց եւ Գութք, որոց զօրավար էին Գայինաս դուռ, Ագարիկ եւ Բակուր իշխան վրացի. գլխաւոր զօրավարք Թէոդոսի էին Տիմասիոս եւ Ստիլիքոն...: Սոքօք ել Թէոդոս ի Կոստանդնուպօլսեայ ի վախճան կայս Մայիսամսոյ, անց նա ընդ անցսն Ալպից...: Բախեցաւ Թէոդոս առ Փրիգիդոս գետով (Վիփախ ի Կորիցիա) ընդ բուն գնդին՝ որում առաջնորդէին Արբոգաստ եւ Եւգենիոս. խորտակեցաւ առաջի Արբոգաստայ օգնական զօրն արեւելեան առաջնորդեալ ի Գայինասայ. ժողովել ժողովեաց զփախստականսն Բակուր եւ բախեցաւ, այլ պատու միւսանգամ յաղթող Արբոգաստ. անկաւ Բակուր եւ 10,000 ի Գթաց ընդ նմա եւ ի Վրաց եւս բազումք»: Թէ Վիրք եւ Հայք մասնակցա՞ծ էին պատերազմին, չեն դիտեր ժամանակակից աղբիւրները:

[35] Libanii opera, XI (1922, ed. Forster) 167: ep. 1043, 1044.

[36] Անդ, էջ 183, ep. 1060 (յամէ 392):

ինչպէս կրօնակցի մը հետ: O. Seeck[37] հե-տեւցուցած է ասկէ թէ Լիբանիոսի Բակուրը նոյն է այն Բակուրի հետ, որ 378ին կռուած է Վաղէսի եւ 394ին Թէոդոսի դրօշներու տակ: Նա, որ 392ին տակաւին հեթանոս էր, իսկ Ռուփինոս զինքը քրիստոնեայ կը ճանչնայ, պէտք է նոյն կամ յաջորդ տարին քրիստո-նէութիւնը ընդունած ըլլայ, ըստ Յ. Մար-կուարտի[38] Երուսաղէմի մէջ 393էն ետքը:

P. Peeters[39] կասկածով կը մօտենայ այս նոյնացման: Չ'ուզեր մտքէ իսկ անցնիլ, թէ իր քրիստոնեայ յատկութիւններուն համար Ռուփինոսէն փառաբանուած Բակուրը 392ին տակաւին հեթանոս եղած ըլլայ: Բայց Բա-կուր նաեւ հեթանոս Զօսիմոսէ բարձր գնա-հատուած էր:

7. Թէ ի՞նչ եղաւ Բակուրի բախտը 394էն ետքը յոյն եւ հռոմայեցի աղբիւրները խօսք չեն ըներ: Տեսանք վերագոյն թէ իբր 393ին Գեղասիոս Կեսարացի կը ճանչնար զինքը զօ-րավար Պաղեստինի ծագմամբ Վրաց թագա-ւորական տոհմէ: Եթէ Ռուփինոս 402ին զինքը «Վրաց թագաւոր» կը կոչէ, պէտք է հետեւցնենք, թէ Բակուր 394ի պատերազ-մէն ետքը եւ 397էն յառաջ մեկնած է հայրե-նիք իբրեւ թագաւոր: Յամենայն դէպս այն

---

[37] Pauly-Wissowa, Realenzyklopädie, II (1896), էջ 2724—2725.

[38] J. Markwart, Die Bekehrung Iberiens und die beiden Dokumente der iberischen Kirche. C a u-c a s i c a, fasc. 7 (1931) 111—167.

[39] Les débuts, էջ 35—36:

տորդ է, որ Ե. դարու առաջին քառորդին Վրաց Թագաւորն էր Բակուր, որուն նոյնութիւնը նախորդ շրջանին հռչակուած Կոմս եւ Դուքս Բակուրի հետ ընդունուած է[40]: Այսպէս հաւատարիմ վկայ մը՝ Կորիւն կը հաւաստէ, թէ Մաշտոց վարդապետ երբ գնաց իր 415ին Վրաստան, ներկայացնելու հոն իր նորագիւտ վրացերէն նշանագիրները, «երթեալ յանդիման լինէր Թագաւորին, որում անուն էր Բակուր... եւ առաւելապէս հնազանդեալ նմա (Մաշտոցի) ըստ ամենայն օրինացն Աստուծոյ՝ Թագաւորին եւ զօրացն՝ հանդերձ ամենայն գաւառօքն...: Հրաման տայր այնուհետեւ արքայն Վրաց ի կողմանց կողմանց եւ ի խառնաղանջ գաւառաց իշխանութեան իւրոյ ժողովել մանկունս եւ տալ ի ձեռն Վարդապետին», որպէս զի ծանօթանան նորագիւտ այբուբենին եւ ընտելանան գրագիտութեան[41]: Իսկ 422ին, երբ Մաշտոց երկրորդ անգամ այցելեց Վրաստան, գտաւ հոն գահին վրայ Արձիւղ Թագաւորը[42]. ուստի վախճանած էր Բակուր 416—421 տարիներու մէջ:

8. Կորիւնի ժամանակագրութեան ճշդութիւնը կը հաստատէ Պետրոս Իբերացւոյ կենսագիրը. որուն հաղորդած տեղեկութիւնները կ'ուզեմ հոս ամբողջութեամբ ներկայացնել, որովհետեւ, որքան ինձ ծանօթ

[40] Markwart, անդ 128. Peeters, անդ 36.
[41] Կորիւն, Վարք Մաշտոցի, ԺԳ. 1—2:
[42] Անդ, ԺԵ. 2:

է, անոնք անմատչելի մնացած են հայ պատմաւէրներու: Առաւել լուսաւորութեան համար կարեւոր կը համարիմ ծանօթացնել նախ կենսագիրն եւ ապա Պետրոս Իբերացւոյ համառօտ կենսագրութիւնը:

Անանուն հեղինակ մը, որ 481ին Անտիոքէն Մայումա անցած՝ ապրած է Պետրոս Իբերացւոյ հետ մտերիմ յարաբերութեան մէջ, անոր մահէն ետքը հրատարակած է անոր կենսագրութիւնը յունարէն լեզուով եւ ներբողական ոճով, լի պատմական տեղեկութիւններով: Կը շօշափէ 409—488 տարիներու քաղաքական եւ եկեղեցական դէպքերը: Յունարէն սկզբնագիրը անյայտացած է. ունինք ասորերէն հաւատարիմ թարգմանութիւն մը[43]: Կենսագիրը, թունդ միաբնեայ մը, իր տեղեկութիւնները Պետրոսի նախաւոր կեանքի մասին՝ քաղած է անոր իսկ բերանացի աւանդութենէն. այս պատճառաւ ալ արժանահաւատ են, թէպէտ զուտ վրական անունները այժմեան ասորերէն թարգմանութեան մէջ կերպարանափոխ եղած:

[43] R. Raabe, Petrus der Iberer. Ein Charakterbild zur Kirchen- und Sittengeschichte des fünften Jahrhunderts. Leipzig 1895: Յաջորդ տարին հրատարակ հանեց Ն. Մառ, Վարքիս վրացերէն խմբագրութիւնը հանդերձ ռուսերէն թարգմանութեամբ. Житіе Петра Ивера царевича-подвижника и епископа Майумскаго V. вѣка. С. Петербургъ 1896. Այս վարքը յետնագոյն ժամանակի համառօտ խմբագրութիւն մըն է, կատարուած ասորերէն թարգմանութենէն հին վրացերէնի վերածուած եւ այժմ կորսուած օրինակէ մը: Խմբագիրը, որթոդոքս վրացի մը, միաբնեայ եպիսկոպոսէն վերակազմած է որթոդոքս սուրբ մը: Զուրկ է պատմական որ եւ է արժէքէ:

Պետրոս, իր ծնունդէն Նաբարնուգիոս կոչուած, որդին էր Վրաց Բղրմիհր թագաւորին, ծնած իրր 409ին: Հազիւ 12ամեայ կ՚ուղարկուի կայսեր Դուռը իբրեւ պատանդ (422): Կը կարգուի հոն վարիչ արքունի ա-պատատանի: Բայց անոր սիրտը կը միտէր միանձնական կեանքի: Երբ Թէոդոս Բ. կ՚ընդդիմանայ իր սրտի միտումներուն, բարեկամի մը հետ կը դիմէ փախուստի: Հասնելով Երուսաղէմ կ՚ընդունի Գերոնդիոս վանահօրմէ կրօնաւորական սքեմ եւ Պետրոս անունը: Կը կառուցանէ նոյն քաղաքի մէջ վանք մը. բայց 438ին կ՚առանձնանայ Մայումէի մերձակայ մենաստան մը: Իրր 453ին Թէոդոսիոս, Երուսաղէմի միաբնեայ եպիսկոպոսը, կը ձեռնադրէ զինքը Մայումէի թեմին եպիսկոպոս: Այժմ առարկայ կ՚ըլլայ Պետրոս իբրեւ նախանձաւոր նախամարտիկ մը միաբնէութեան: Կայսերական հրովարտակ մը կը ստիպէր, որ Թէոդոսիոսէ ձեռնադրուած եպիսկոպոսները հեռանան իրենց թեմերէն: Պետրոս կը բռնէ Աղեքսանդրիոյ ճանապարհը: Հոն իր ջանքերով կը յաջողի Տիմոթէոս Կուզ գրաւել եպիսկոպոսական աթոռը (457): Իրր 475ին վերադարձաւ Պետրոս իր նախկին մենաստանը Մայումէի մօտ: Չուզելով ընդառաջ գալ Զենոն կայսեր հրաւէրին՝ փախաւ Փիւնիկէ. կայսեր միտքն էր հաւանօրէն ստորագրել տալ 482ին հրատարակած Հենոտիկոնը: Պետրոս վախ-

ճանեցաւ, ինչպէս կը կարծուի, 1 դեկտ․ 488[44]:

9․ «Երանելի Պետրոսի հայրենիքն էր Վրաց աշխարհը, այն հիւսիսային կողմանք, որոնք արեւի ելքին կը գտնուին: Այս աշխարհը անվերջ կռուի մէջ եղած է Հռոմայեցւոց եւ Պարսից միջեւ․ վասն զի այս ազգերէն իւրաքանչիւրը կ՚ուզէր իրեն թիկունք ունենալ զայն․ այս պատճառով ալ կը ջանար իրեն սեպհականել զայն: Ան ի սկզբան իր աշխարհի բարբառով Նաբարնուգիոս[45] կը կոչուէր․ բայց երբ արժանացաւ կրօնաւորական սուրբ սքեմին՝ յորջորջուեցաւ Պետրոս, Առաքելոց գլխաւորին անունով . . . : Պետրոսի հայրն էր Բոսմարիոս[46], իսկ

---

44 Հմմտ․ Bardenhewer, Geschichte der altchristlichen Literatur, հատոր Դ, էջ 315—317: J. B. Chabot, Pierre l'Ibérien, Revue de l'Orient Latin 3 (1895) 367—397.

45 Աս․ Ն(ա)ր(ա)բնո(ւ)գիոս․ 697ին կը յիշուի Barnukios անուն լազ մը (Թէոփանէս, էջ 370 ed. de Boor): Անունս ըստ Մարկուարտի կազմուած է nar- հպ․ ուղղ․ *nā-* (մարդ, դիւցազն) *Barnukios բառերէ․ հմմտ․ Nar-barze, Ma-barze (տր․) Միթրայի յորջորջանքը, այսինքն հպ․ **nā-brzā*, գերագոյն դիւցազն․ մպ․ Burzen-Mihr․ Caucasica, 7, 129: Հմմտ․ նաեւ Nabarzanes այրուձիոյ հրամանատար Իսոսի ճակատին մէջ, Դիոդ․ 17, 74․ Կուրտիոս 5, 9, Արիան, 3, 21:

46 Աս․ Bosmerios․ Ամմիանոս Barzimeres, այն է մպ․ Brzmihr․ Հմմտ․ Burzmihr («գերագոյն Միհր») անունով այլ եւ այլ անձինք Justi, Iranisches Namensbuch, 74․ եւ Բրզմիհր (սեռ․ Բրզմհրի) իշխան Վրաց 606ին, Գիրք Թղթոց 133, 138: Մարկուարտ կը համարի թէ Բրզմիհր Բ․ «ըստ ամենայն հաւանականութեան նոյն է Ամմիանոսի յիշած Barzimeresի հետ, որ 373 եւ 377 տարիներուն իբրեւ «տրիբուն ազեղ-

իր հօրը հայրն էր Բոսմարիոս, իր մայրը՝ Բակուրդուխտ[47], իսկ իր մօրը մայրն էր որրուհի Դուխտ[47]: Մօր կողմէն իր պապն էր Մեծն Բակուր, Դուխտի[47] ամուսինը, որ այն աշխարհի իշխողներէն առաջինն էր, որ քրիստոնեայ թագաւոր եղաւ եւ բովանդակ ժողովուրդն աստուածպաշտութեան առաջնորդեց: Վրաց այս թագաւորներն ու թագուհիները իրենց առաքինի ընթացքով երկնից արքայութեան արժանացան: Մօր կողմէն անոր մամն էր Ուսդուկտիա[47], Բոզմարիոսի ամուսինը եւ անոր հօր՝ Բոզմա-

---

նաւորաց» կը գտնուէր համէական ծառայութեան մէջ (Ամմ. 30, 1 եւ 16), ուստի ճիշդ նոյն պաշտօնով, ինչպէս Բակուր 378ին:

[47] Ա. Դուկտիա է հայ. դուխտ, նպ. duxt եւ duxtar, որ է ընիկ հայերէն դուստր. վերջինս նաեւ յատուկ անուն գործածուած (Կոր. ԺԸ. 2): Դուխտ պահուած է հայերէնի մէջ իբրեւ կցորդ յատուկ անուններու. Զարմանդուխտ, Զրուանդուխտ, Խոսրովիդուխտ, Վարդանդուխտ, եւն (հմմտ. Հիւբշման, Հայ Քեր. 37—38), այսպէս նաեւ պհլ. Artaxšatrduxt. Յունաց քով այս –դուխտը վերածուած է — dukta, այսպէս Artadukta յն. Աղաթանգեղոս, 5 եւ Վիեննայի Գեղարուեստական Թանգարանի Inv. Nr. IX 1939 կնքաքարի մէջ. ΕΡΜΙΟΝΗϹ ΒΑϹΙΛΙϹϹΑ ΟΥΑΡΑΖΑΔΟΥΚΤΑΦΥΧΗ «Հերմիոնեայ թագուհի Վարազդուխտ. անձն»: Յիշեալ Հերմիոնէ քաղաքմըն է յԱրգոս, այժմ Castro նաւահանգիստը: Վարազդուխտ, որ ամուսինն եղաւ Պապի, Յուսկան որդւոյն (Փաւստ. Գ. 15): Հմմտ. Ουαράζη հայ (Պրոկոպ. Գոթ. 3, 27, 4, 13): Կնիքը կարող է ըլլալ Դ. դարէն, վասն զի basilissa յունական գրականութեան մէջ այս դարէն սկսեալ կիրառութեան մէջ է: Ոսդուկտիա (Ուսդուկտիա) ըստ Մարկուարտի յն. Οὐασδουκτα կ'ենթադրէ, հմմտ. Οὐασάκης հայ (Աոիան, ընդդէմ Ալանաց, 13), ուստի Վաս(ակ)դուխտ: Բակուրդուկտիա, Բակուրդուխտ:

ըխօսի մայրը: Իսկ Փարասմանիոս[48] Հօր կողմէ անոր մամին՝ Ուաղուկտոխայի եղբայրն էր: Ասիկա Հռոմայեցւոց Արկադիոս կայսեր[49] քով ի պատուի էր եւ ունէր սպարապետի աստիճան եւ առաջին տեղը գրաւած էր. բայց յետոյ երբ դժտուեցաւ[50] Արկադիոսի ամուսնոյն Եւդոկիայի[51] հետ, փախուստի դիմեց, փութով Հայրենիք վերադարձաւ. եւ երբ տիրացաւ Վրաստանի, Սպիտակ Հոները, որոնք Վրաց դրացի էին, հետը առած Հռոմայեցւոց հպատակ ժողովուրդներուն մեծամեծ վնասներ պատճառեց[52]:

Մեծն Բակուր մօր կողմէ երանելի Պետրոսի պապը, իրեն եղբայր ունէր սուրբ Ար-

---

[48] Փարասմանէս յունական ձեւն է Հայ Փարսման անուան (Փարսման Մանդակունի, Փարպ. 86), հնագոյնը՝ Փարուսպ (Սեբ. 9. Փաւստ. Ե. 15. «Փառուսպեանք»), ընդհանրապէս Վրաց արքայական տան յատուկ:

[49] Արկադիոս, որդի Թէոդոս Ա.ի, 395—408:

[50] Raabe կը թարգմանէ «չնացաւ». այսպէս կ՚իմանայ Մարկուարտ (էջ 124):

[51] Եւդոքսիա թագուհի կին եղաւ Արկադիոսի 395ին եւ վախճանեցաւ 6 նոյեմբ. 404:

[52] Մինչ արեւմուտքէն հոնական արշաւանք մը կը կատարուի (395) Ռուփինոս պատրիկի դրդմամբ, Ալանաց դռնէնի ալ (Դարիալ) կ՚արշաւեն Հոները, ինչպէս կ՚ըսուի, Փարսմանի հրաւէրով, որոնք կ՚անցնին Հայաստանէն, կը մտնեն Կապադովկիա, կ՚իջնան Ասորիք եւ Միջագետք, կը հասնին մինչեւ Տիգրոնի կողմերը, ուր եւ յետս կը մղուին: Աղէտը նկարագրած է Ս. Յերոնիմոս, ep. ad Ocean, 37, 8. Հմմտ. նաեւ Claudian Բ. գիրք ընդդէմ Ռուփինոսի, Սոկրատ. Պատմ. Եկեղ. Զ. 1. Յոււէ Մինակեաց, § 16 եւն:

սիլիոսը[53], որ Բակուրի եւ Բոզմարիոսի հետ մինչեւ խոր ծերութիւն — Վրաց տէ-րութեան սովորութեան համաձայն — թա-գաւորելէ ետքը կնքեց իր կեանքը կուսու-թեամբ եւ ամենայն բարեպաշտութեամբ:

Երանելին Պետրոս մարմնաւոր եղբայր չունէր: Ունէր միայն Բոսմիրոպուրիա[54] ա-նուն քոյր մը հօր կողմէ, (որ ծնած էր) հարճէ մը. բայց ան կը յարգէր զանիկա ինչ-պէս հարազատ քոյր, իր հօրը փափաքին հա-մաձայն:

Զուգօ անուն սուրբ եւ ազնուական կին մը սնուց Պետրոսը, երբ սա տակաւին մա-նուկ էր եւ անոր քով թաղնուած, որպէս զի պատանդ չտարուի Պարսիկներուն, որոնք այս նպատակով ստէպ ստէպ մարդ կ'ուղար-կէին: Այս անկնոջ աղջիկը Օտա, Երանելոյն դայեակն եղաւ, որ այդ այրութեան օրերուն ա-նոր ստնտուն եղած էր: Օտայի ամուսինն էր Յուրենիոս[55] եւ հարազատ եղբայրն՝ Բար-դալիոս[56]. իսկ անոնց որդիք՝ Կատա[57] եւ

---

[53] Ատ. Արսիլիոս. Կոչուն կ'անուանէ Արձիւղ. Վրաց Տարեգիրքը՝ Արչիլ:

[54] Ատ. Bōmirupria, Մարկուարտ (էջ 128) կ'ա-ռաջարկէ կարդալ Bosmiropuria. — puri կ'ենթադրէ purhi, որ է հայ. — ուրհի, — ուհի, «դուստր». Պհլ. puhr, հյ. pupřd «որդի»:

[55] Ատ. Hōrāniōs հաւանօրէն հայ. Յուրէն:

[56] Բարդալիոս, հաւանօրէն սխալագրութիւն հայ. Վարդան անուան:

[57] Justi, Iranisches Namenbuch, էջ 158 կը յիշէ պհլ. Կատա յորանուն. հմմտ. Կատա քոյր Սե-նեքերիմ Սիւնւոյ (Ստ. Օրբել.) եւ դուստր Վիգէնի (Հայսմաւուրք 394—395):

*Մուրգակիոս*[58], *Երանելույն կաթնեղբայրներն էին եւ խաղընկերները։*

*Մեծն Բակուր, որ Վրաց թագաւորներէն առաջինն էր, որ քրիստոնեայ եղաւ, եւ իր ամուսինը Դուխտ աստուածպաշտութեան այնպիսի բարձրութեան, առաքինութեան այնպիսի (կատարելութեան) եւ քրիստոնէական այնպիսի քաղաքավարութեան հասան, որ անոնք թէեւ թագաւորական աստիճանի մէջ էին, բայց եւ այնպէս իրենց թագաւորութեան ժամանակ կրօնաւորաբար կենցաղավարեցան։... Բակուր դաշնակից էր Պարսից թագաւորին եւ անոր բանակներէն մէկուն հրամանատար։ Օր մը, երբ Պարսից թագաւորին հետ պատերազմի կ՚երթար, արեւը ծագելուն պէս թագաւորն եւ իր զօրավարները ձիէն վար իջան անմիջապէս եւ արեւին երկրպագութիւն մատուցին։ Բայց Բակուր մնաց նստած իր ձիուն վրայ։ Սատրապները այս բանը Բակուրի ներկայութեան պատմեցին թագաւորին։ Երբ հարցուեցաւ իրեն թէ ճի՞շդ են իր մասին ըսուածները, ան... համարձակօրէն պատասխանեց ի լուր բովանդակ բանակին. Ես քրիստոնեայ եմ եւ չեմ կարող... Ամենաստեղծն թողուլ եւ անոր արարածին երկրպագել...։ Թագաւորը այս համարձակութեան վրայ զարմացաւ եւ չիկնեցաւ, բայց դարձաւ եւ մեղմաձայն ըսաւ իրեններուն. Սա Բակուրն է. իսկ մենք պէտք*

58 *Աս.* Morgkiōs *հաւանօրէն աղաւաղուած անուն մը։*

ունինք իրեն. ի՞նչ կրնանք ընել: Եւ անիկա Բակուրի մեծագործութիւններէն մէկն է:

Իսկ իր հարազատ եղբայրն Արսիլլոս, ինչպէս յիշեցինք վերը, ծերութեան հասակին եւ կուսութեամբ կը վարէր Վրաց թագաւորութիւնը Բոմարխոսի՝ մեր Պետրոսի... հօրը հետ միասին:...

Իսկ Ուսդուխտ, երանելի Պետրոսի մամը հօր կողմէ, բարձր աստիճանի վրայ սըրբուհի մըն էր...: Բակուրդուխտ, սուրբ Զօրս մայրը, ամուսնոյն մահէն ետքը մնաց այրի...»:

Նաբարնուգիոս «տակաւին 12 տարեկան էր, երբ պատանդ ուղարկուեցաւ... Թէոդոս Փոքր թագաւորին. վասն զի ան շատ անգամ պատգամաւորներ ուղարկած էր զինքը խընդրելու համար. իր հայրը Բոմարխոս, որ այն ատեն Վրաց աշխարհին կ'իշխէր, ղրկեց. վասն զի ան քրիստոնեայ Հոռոմայեցիներու բարեկամութիւնը աւելի կը նախընտրէր, քան անաստուած Պարսիկներու օգնութիւնը:

Հաւատացեալն Արսիլլոս իր առաքինի քաղաքավարութեամբ շնորհաց այնպիսի բարձրութեան եւ աստուածահաճոյ կատարելութեան հասաւ, որ իր աղօթքով հրաշքներ կը գործէր, ինչպէս կը հաւաստէր մեր երանելի Հայրը եւ կը վկայէր անսուտ: Երբ կ'իշխէր ան Վրաց եւ լսեց, թէ Պետրոս հրաժարած աշխարհէ՝ կը բնակի Ս. Քաղաքը եւ միանձնաւորութեան հոգեւոր հրահանգներու

կը հետեւի···, գրեց հետեւեալ տողերը· «Գրուած է· Երանի այն որ ունիցի զաւակ ի Սիոն եւ ընտանեակք իցեն նորա յԵրուսա-ղէմ[59]», ինչպէս ունինք մենք զքեզ, այսպէս կը խնդրեմ քեզմէ, Որդեակ, որ աղօթես ինձի համար, որպէս զի քու աղօթքներովդ ողորմութիւն գտնեմ»:

Կենսագրին համաձայն Վրաց քով սովո-րութիւն էր թագաւորական տան մէջ մի ան-դամներու, իբրեւ թագաւորակից ունենալ իր աթոռը, երիցութեան կարգով· այսպէս միա-ժամանակ թագաւորներ են Բակուր, Արշիլ եւ Բգրմիհր, նախապահ նկատուելով առա-ջինը: Թագաւորական տան ճիւղագրու-թիւնը, նկատի առնելով Ամմիանոսի եւ Կեն-սագրին հաղորդած տեղեկութիւնները, կա-րելի է կազմել մօտաւորապէս:

10. Այն աշխարհը, զոր Հայք «Վրաց աշխարհ» կ՚անուանեն, իրենք Վրացիք կը կոչեն Սաքարթուելոյ, Յոյները՝ Ἰβηρία Հռոմայեցիք՝ Hiberia եւ Պարսիկք Gurgan (ասկէ Ասորիք եւ Արաբք՝ Gurzan, Ռուսք՝ Gruzinia, Եւրոպացիք՝ Géorgie, Georgien եւն): Յետ Քրիստոսի Գ. դարուն այս աշ-խարհը իրեն սահման ունէր արեւմուտքէն Կողքիսը, հարաւէն Հայաստանը (Գուգարք) եւ Կուրը, եւ արեւելքէն Աղուանից երկիրը: Բնակչութիւնը կազմուած էր բազմատեսակ եւ բազմալեզու ցեղերէ, կամ ինչպէս Կորիւն

[59] Ես. ԼԱ. 9:

Ա. Ա.

Ա. Ա. — Մերիրանէս — Ա. Ա.

Ա. Ա. — Սաւրոմակ — Ասպակուր

Փարսման — Ոսդուխտ (+ Բզրմիհր Ա.) | Բակուր + Դուստր — Արձիւղ | Բզրմիհր Ա. + Ոսդուխտ — Ուշտրա (Պիրան)

Բակուրդուխտ (+ Բզրմիհր Բ.) | Բզրմիհր Բ. + Բակուրդուխտ

Նարարնուպի — Բոմիրոսպարիա

կ՚արտայայտուի «ի խառնաղանջ գաւառաց եւ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուաց»:

Բրիտտոսէ յառաջ Ա. դարուն արդէն հռովմէական ազդեցութեան գօտի նկատուած էր Վրաստան, ուր յայնկոյս Կուրի, Տփղիսի եւ Մծխեթայի միջեւ կառուցած էին բերդեր (Հարմոզիկա) եւ դրած հռոմէական պահակներ, պահպանելու համար Կաւկասեան դուռը (Դարիալ[60]): Գ. դարուն թէ ինչ պայմաններու մէջ կը գտնուէր այս աշխարհը, կը լսենք յոյն եւ հռոմէական աղբիւրներէ, անոնց կարգին նաեւ հայկականք. իսկ Վրաց Տարեգիրքը կարելի չէ իբրեւ պատմական աղբիւր նկատի առնել: Հաւանօրէն թէ Վրաստան եւ թէ Աղուանից աշխարհը բախտակից եղան Հայաստանի ճակատագրին: Գիտենք որ 297ին, երբ կնքուեցաւ Ներսեհ արքայից արքայի եւ Դիոկղետիանոսի միջեւ խաղաղութեան դաշինքը, որոշմանց մէջ էր նաեւ Վրաստանի բախտը. կ՚որոշուէր, որ Վրաց թագաւորը իր հաստատութիւնը ստանար կայսեր ձեռքէն[61]:

Թէպէտ Պետրոս Պատրիկիոսի հատուածներու մէջ չկայ որ եւ է յիշատակութիւն, թէ այս առիթով հայկական հողամասեր անցած ըլլան նաեւ Վրաստանի եւ Աղուանքի,

---

[60] Հմմտ. J. Markwart, Skizzen zur historischen Topographie und Geschichte von Kaukasien. Das Itinerar von Artaxata nach Armastica auf der römischen Weltkarte, Հանդէս Ամսօրեայ, 1927:

[61] Petri Patrici fragmenta, 14.

բայց Փաւստոսէն (Դ. 50) կը տեսնուի թէ Դիոկղետիանոս ընդարձակ հողամասեր բաժին հանած է Հայաստանէն Վրաց եւ Աղուանից: Գուգարք եւ այսրկուրեան ինչ ինչ գաւառներ, որոնք յետոյ Սամցխէ կոչուեցան, բաժին ինկած են Վրաց, եւ Ուտի եւ Արցախ նահանգները՝ Աղուանից. զորոնք յանուանէ յիշած է Աշխարհացոյցը, «ի Հայոց հանել է» յաւելուածով[62]: «Կլարճք, զոր ի Հայոց հանեալ է... Արտահան գաւառ, զոր առեալ է ի Հայոց... Մանգլեաց փոր, <Բուխչափոր> եւ Բողնափոր... երեք փորակքդ ի Հայոց հանեալ է... Ծորոփոր եւ Կողբոփոր եւ Ձորոյփոր... մինչեւ ցՀնարակերտ քաղաք, զորս ի Հայոց հանեալ է... եւ Թռեղք եւ Տաչիր. որոց ի հարաւ Կանգարք. զամէնդ ի Հայոց հանեալ է». «Կանգարք, Ջաւախք վերին... ունին արդ Վիրք հանեալ ի Հայոց»: «Արցախ.. ունի գաւառս ԺԲ. ..զայս ամենայն Աղուանք ունին հանեալ ի Հայոց»: «Ուտի... ունի գաւառս Է. զոր Աղուանք ունին» (անդ, էջ 33):

Թէեւ 363ին Հայաստան, Վրաստան եւ Աղուանք Պարսից գերիշխանութեան տակ մնացին, եւ 385ին Հայաստանի Պարսից եւ Հոռոմայեցւոց մէջ բաժնուելով, հիւսիսական կողմանք բոլորովին Պարսից յանձնուեցան, բայց որ եւ է աշխարհագրական փոփոխութիւն չկատարուեցաւ 297ին որոշմանց վրայ:

---

[62] Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ. հրա. Հ. Ա. Սուքրեան, Վենետիկ 1881, էջ 28, 34:

*Այժմ Սասանեանը, հսկելու համար Կովկասեան (Դարիալի) եւ Կասպեան (Դերբենդի) դռներու վրայ, բարուոք տեսաւ մարզպանական շրջան հրատարակել Կողքիսէն մինչեւ Կասպեան դռները: 415ին «Վրաց կողմանց» մարզպանն էր Վասակ սիւնի[63], որ իր նիստն ունէր Տփղիս, ինչպէս այս կը տեսնուի Գրիգոր Մանաճիհր ռաժիկի (Պիրանվշնասպ) Վկայաբանութէն, որ 528ին Վրաց եւ Աղուանից աշխարհներու մարզպանն էր, ունենալով իր ձեռքին տակ Կողքիսն (Լազիստան) եւ Եգերքը[64]:*

*Վրաց աշխարհը թէպէտ կցելով իրեն Գուգարաց նահանգն եւ այլ գաւառներ՝ ընդարձակեցաւ, բայց եւ այնպէս զինուորական աչքառու ոյժ մը չէր ներկայացներ Վրաստան. 480ին Վահան Մամիկոնեանի դատողութեամբ «Վիրք առանձին թեթեւ ինչ աշխարհ են եւ այրուձիով սակաւաւորք»: Ոչ Վիրք եւ ոչ Աղուանք առանձին, առանց Հայոց, կարող էին ապստամբական շարժում առեղծել, ինչպէս 485ին կը հաւաստէր Շապուհ զօրավար Վաղարշ թագաւորին. «Յորժամ Հայք... մեր էին՝ Վիրք եւ Աղուանք չիշխէին բնաւ թիւրել զանձինս եւ այլազգագոյն ինչ խորհել» (Փարպ. 159):*

---

[63] *Փարպ. 83. «Ես մինչ Վրաց մարզպանն էի եւ Դուռն Աղուանից յիմում ձեռին էր, բազում զօրագլուխք Հոնաց ընդ իս բարեկամացան ուխտիւ եւ երդմամբ»:*

[64] G. Hoffmann, Auszüge aus syrischen Akten persischer Märtyrer, Leipzig 1880, S. 78—80.

11․ Թէ ով էր 297ին Վրաց թագաւորը, չգիտենք[65]։ Ամմիանոս Մարկեղինոս կը յիշէ 360/61 ձմեռը Մերիբանէս (Մուա՞ն) թագաւորը, զոր Կոստանդին Բ․ կայսր կը ջանար պարգեւներով յինքն յանկուցանել Հայոց Արշակ Գ․ թագաւորին հետ, որպէս զի հաւատարիմ մնայ իրեն եւ չրնդէ Պարսից կողմը[66]։ 368ին միացեալ Վրաստանի թագաւորն էր Սաւրոմակ, առանց տարակուսի յաջորդը Մերիբանէսի եւ բարեկամ Հռոմայեցւոց։ Շապուհ Բ․ որ իր գերիշխանութեան տակ ունէր այժմ Վրաստանը, չհանդուրժեց տեսնել Վրաց գահին վրայ կայսեր կողմէ թագապսակ թագաւոր․ մերժեց Սաւրոմակը երկրէն եւ յանձնեց թագաւորութիւնը անոր հօրեղբօր որդւոյն Ասպակուրի, որուն որդին Ուլտրա[67] առաւ իր քով պատանդ։ Հռոմայեցիք կ՚երեւայ թէ դաշանց հակառակ զատան

---

[65] Փաւստոս Ե․ 15․ «Զփառաւագեանս հրաման տայր սպարապետն Մուշեղ հանել ի խաչ ի մէջ աշխարհին Վրաց, եւ զբդեաշխն Գուգարաց, որ յառաջն ծառայէր թագաւորին Հայոց եւ ապստամբեալ գլխատէր»։ Ի մտաց հնարուած պատերազմական գործողութիւններ, հիմ ունին 297ի Հայաստանի բաժանումը, ուստի կարելի է մտածել, թէ այս տարւոյն կար Փառնաւազ անուն Վրաց թագաւոր մը։

[66] Ամմիան․ 29, 1։

[67] Ամմիանոս հաւանօրէն Ultra թարգմանած է վրական Peran (պհլ․ *Pirān*), մեկնելով ծագումը յն․ περάν, «յայն կոյս» բառէն։ Պրոկոպիոս (Վանդ․ պատ․ Ա, 12, Բ, 24 եւն) յաճախ խօսք կ՚ընէ Peranios Վրաց թագաւորի մը մասին։ Հմմտ․ Peeters, Les débuts…, էջ 39 ծան․։

Շապուհի այս քայլը. Վաղէս կայսր հրամայեց իր Տերենտիոս զօրավարին, որ 12 հռոմէական լեգէոններով երթայ եւ հաստատէ Սաւրոմակը իր գահին վրայ: Ասպակուր անկարող զգալով ինք զինքը դիմակալելու հզօրագոյն թշնամւոյն, առաջարկեց բաժնել Վրաստանը իր եւ Սաւրոմակի միջեւ: Վաղէս շնորհեց իր հաւանութիւնը (370): Սաւրոմակի բաժին ինկաւ յայսկոյս Կուրի՝ Հայաստանի եւ Լազիկիայի սահմանակից երկիրները, ուստի Գուգարքին հետ. իսկ Ասպակուր պահեց իրեն Աղուանից եւ Պարսից սահ_մանակից երկիրները: Շապուհ սակայն պահանջեց որ Ասպակուրի վերադարձուին Սաւրոմակի գրաւած հողերը. երբ մերժեց զայն Վաղէս, Սուրէն ուղարկուեցաւ զէնքի ուժով պաշտպանելու պարսկական շահերը: Կայսրը հանեց անոր դէմ Տրայանոս եւ գերման Վադոմար զօրավարները, պատուէրով, որ նախայարձակ չըլլան իրենք. յաջողութեամբ յետ մղեցին Պարսից թեթեւ յարձակում մը: Շապուհ Բ., որ ծերացած էր արդէն, չուզեց նոր պատերազմի պատճառ ըլլալ. 371ի ձմեռը վերադարձաւ Տիզբոն[68]: Մինչեւ 379, երբ վախճանեցաւ Շապուհ, որ եւ է պատերազմական շարժում չնկատուեցաւ սահմանի վրայ: Իր յաջորդներուն՝ Արտաշիր Բ.ի (379—383) եւ Շապուհ Գ.ի (383—388) կը

---

[68] Ammian. XXIX, 1:

պակսէր կորով պայքարելու Հռոմայեցւոց հետ [69]. Նոյնպէս Վռամ Դ.ի (388—399) [70]:

385ին համաձայնեցան Պարսիկք եւ Հռոմայեցիք բաժնել Հայաստանը իրենց մէջ, վերջ տալու արեւելեան հարցին: Կնքուեցաւ խաղաղութեան դաշինք, որ տեւեց մինչեւ 505: Թէ ի՞նչ որոշում կայացաւ Վրաստանի մասին, չգիտենք: Հաւանօրէն Ասպակուր եւ Սաւրոմակ մնացին անջատ թագաւորներ մինչեւ իրենց մահը: Պարսիկները չարունակեցին արժեցնել իրենց գերիշխանութիւնը Վրաստանի վրայ. բայց նաեւ Հռոմայեցիք իրենց իրաւունքը համարեցան Վրաց թագաւոր անուանելը: Սաւրոմակի երկրաբաժինը Ե. դարու առաջին քառորդին մարզպանական շրջան եղած կը տեսնենք, Պարսից իշխանութեան տակ: Ուստի Ասպակուրի յաջորդն եղած ըլլալու է Բրդմիհր Ա.: Սա փախճանած կ'երեւայ 394/95ին, վասն զի 395ին գահին կը տիրանայ Փարսման: Այս տարւոյն տեղի ունեցաւ Հոնաց ասպատակութիւնը, ինչպէս կ'ըսուի, Փարսմանի առաջնորդութեամբ: Ուղիղ կամ սուտ: Յամենայն դէպս անոր գահակալութիւնը տժգոհութիւն պատճառեց Արկադիոսի. որ իրաւունք համարեցաւ Վրաստանի գահին վրայ նոր թագաւոր մ'անուանելու: Բակուր, նոյնպէս թագաւո-

---

[69] Nöldeke, Tabari, էջ 36, ծան.:

[70] Անդ, էջ 72 ծան.: Ինչպէս Կղաւդիան (Eutrop. Բ. 474) կը հաստատէ, Վռամ բարեկամական զգածմամբ էր հանդէպ Հռոմայեցւոց. կ'ըսուի թէ նաեւ քրիստոնէասէր էր (Moesinger, Mon. Syr. II, 67):

րական զարմէ, որ կը փայլէր արքունիքին փառաւորութիւնը, կ'ուղարկուի իբրեւ թագաւոր Վրաստանի (396)։ Եւ որովհետեւ Վրաստան գործնականապէս կը գտնուէր արքայից արքայի գերիշխանութեան տակ, հարկադրուած էր Բակուր իբրեւ զինակից երեւալու արքայից արքայի կողքին։ Վրաց Տարեգրքի հաւաստումը, թէ Բակուր թագաւորեց «ուժովն Յունաց եւ Պարսից» (էջ 70), ճշդիւ կը համապատասխանէ պատմութեան։ Առ այս ուշադրութեան արժանի է նաեւ Պետրոս Իբերացւոյ կենսագրին տուեալը, թէ Նաբարնուգի իբրեւ որդի Բոզմիհր Բ.ի պատանդ կ'ուզուէր թէ Պարսից թագաւորէն եւ թէ Թէոդոս Բ. կայսրէն. իսկ հայրը նախընտրեց քրիստոնեայ Կայսեր դրկել։

12. Բակուր ծնած էր հաւանօրէն իբր 345ին։ Նա Կ.Պոլիս ուղեւորած ըլլալու է իբրեւ պատանդ, իբր 360ին։ Հոն հետեւած է զինուորական հրահանգներու. Զոսիմոս զինքը այս մարզին մէջ վարժ կը ճանչնար։ Իր բարեկամութիւնը Լիբանիոսի հետ ենթադրել կու տայ, թէ հրահանգուած էր հելլենական ուսմամբ։ 378ին բարձրացած էր տրիբունի աստիճանին. յաջորդ շրջանին կը ներկայանայ կոմս եւ զօրավար տիտղոսներով։ Մասնակցած է պատերազմներու Վաղէսի եւ Թէոդոս Ա.ի բանակներու մէջ։

Ամմիանոս կը գրէր թէ Բակուր ազգաւ hiberus quidam, այսինքն «վրացի մին» էր. ասութիւնս ցոյց կու տայ, թէ Ամմիանոս

մերձուստ չէր ճանչցած Բակուրը, չէր գիտեր թէ ան «Վրաց Թագաւորական տոհմէ» էր, ինչպէս կը հաւաստէր Գեղասիոս Կեսարացի։ Զոսիմոս (կամ իր աղբիւրը), երբ կը շեշտէր անոր նկարագրին բարձրութիւնն եւ պատերազմական իրաց հմտութիւնը, հաւատք կը ներշնչէ մեզի, թէ անոր որդիութեան մասին ունեցած է հաւաստի տեղեկութիւններ, ըստ այսմ կարելի չէ Seeckի հետ անխորհուրդ յայտարարել, թէ կը սխալի այս կէտի մէջ պատմագիրը, երբ զԲակուր «ծնընդեամբ Հայաստանէն» կը ներկայացնէ, թէեւ ինքն ալ կը լռէ անոր Թագաւորացն ըլլալը։ Եւ եթէ Զոսիմոս 394ի կռուին մէջ հերոսաբար կռուած եւ ինկած գիտէ զԲակուր, պիտի հետեւցնենք ասկէ թէ ան այսպէս ենթադրած է, վասն զի կռուէն ետքը զինքը այլեւս վերապրած բարձրաստիճան զինուորականներու շարքին չէր տեսած. Բակուր վերադարձած էր հայրենիք։ Թ·է Վրաստանի կողմէ եկած է Բակուր՝ լսած է Ամմիանոս. թէ ան Վրաց Թագաւորական տոհմէ էր, ստուգած է Գեղասիոս, թէ ան իբրեւ Թագաւոր վերադարձած է Վրաստան իմացած է Ռուփինոս. թէ ծագումով «Հայաստանէն» էր, գիտցած է Զոսիմոս։ Մենք այսօր ստուգութեամբ չենք կրնար հաստատել կամ ժխտել, թէ ի՞նչ ծագումէ էր Վրաց Թագաւորական տունը Գ. դարու վերջերն եւ Դ. դարու առաջին կէսին, վրակա՞ն թէ հայկական։ Գուգարաց բդեշխութիւնը Վրաց

պատմութեան մէջ կատարած է նշանակալից դեր: Աշուշայ բդեշխը 450ին իբրեւ Վրաստանի ներկայացուցիչ ներկայացած էր Յազկերտ Բ.ին (Փարպ. 47): 393ին Գուգարք եւ այսրկուրեան երկիրները ինքնակալ թագաւորութիւն էր Սաւրոմակի, հաւանօրէն Բակուրի հօր իշխանութեան տակ, իսկ այս աշխարհը Վրական Հայաստան էր, հայերէնախօս բնակչութեամբ. ուստի կարող էր Զոսիմոսի աղբիւրը զայն «Հայաստան» կոչել: Յամենայն դէպս ուշագրաւ է, որ անունս Բակուր մինչ յայն եւ հռոմէական մատենագրութեան մէջ Pacoros, Ասորւոց քով Pakūr, Պրոկոպիոսի մօտ Pakourios մրացի, Վրաց քով Բահքար (Բաքար) կը հնչուի, բայց ոսկ կերպով այս Բակուրը թէ Ամմիանոս, թէ Զոսիմոս, թէ Գեղասիոս եւ Ռուփինոս հայ հնչմամբ Bacur- կը գրեն (հմմտ. Բակուր բդեաշխ Աղձնեաց. Փաւստ. Գ. 3 Բակուր Սիւնի, Փարպ. 86 եւն): Պատահմո՞ւնք մըն է:

13. Բակուր Ռուփինոսի թուղթերուն մէջ կը ներկայանար հեթանոս. Գետրոս Իբերացւոյ կենսագիրն ալ երկիցս կը շեշտէր, թէ Մեծն Բակուր, որ Գետրոսի պապն էր մօր կողմէ, Վրաց թագաւորներու շարքին մէջ առաջինն է իբրեւ քրիստոնեայ թագաւոր. եւ Վրաստան իր ջանքերով ընդունած է քրիստոնէութիւնը. իրողութեանս արձագանգը կը լսենք նաեւ Վրաց Տարեգրքին մէջ. կ՚ըսուի, թէ Բահքար = Բակուր, որդին Միհրանի, թագաւորեց «ուժովն Յունաց

եւ Պարսից» եւ էր ինքն «հաստատուն ի հաւատս. եւ դարձոյց զբազումս ի Կաւկասեանց ի Քրիստոս. եւ շինեաց եկեղեցի ի Ծիլկան. եւ բազմացոյց քահանայս եւ սարկաւագունս» (էջ 70)։ Եւ Կորիւն, ժամանակակից մը, կը պատմէ, թէ Բակուրի օրով Վրաստան գնաց Մաշտոց, տուաւ այն «Բարբարոս կողանց» սեպհական նշանագիր, բացաւ դպրոցներ նպաստաւորութեամբ թագաւորին եւ Մովսէս եպիսկոպոսին, հաւաքեց աշակերտներ «խառնադանջ գաւառներէ», «զորս առեալ արկանէր ի բոյս վարդապետութեանն եւ հոգեւոր սիրոյն եռանդմամբ զաղտ եւ զժանգ զշարաւահոտ դիւացն եւ զնոտխագործ պաշտամանցն ի բաց քերէր»։ Այս առաքելութեան արդիւնքն եղաւ, որ «զնոսա, որ յայնչափ ի մասնաւոր եւ ի բաժանեալ լեզուացն ժողովեցան, միով աստուածաբարբառ պատգամօք մի ազգ կատարեալ՝ փառաւորիչս միոյ Աստուծոյ յօրինէր։ Յորոց եւ ոմանց արժանի եղեալ ի կարգ եպիսկոպոսութեան վիճակել. որոց առաջնումն Սամուէլ անուն, այր սուրբ եւ բարեպաշտօն, եպիսկոպոս կացեալ տանն արքունականի» (Կոր. ԺԳ. 1—3)։

Մաշտոցի այս առաքելութիւնը նկարագիրն ունի հեթանոս ժողովուրդի մը քրիստոնէութեան դարձի. Մաշտոց Լուսաւորիչն եղաւ Սաքարթուելոյի։ Ոչ միայն դրականութիւն տուաւ անոր, այլ եւ քրիստոնէութեան դարձուց այն խառնադանձ գաւառ–

ներն, որով միայն այն բազմալեզու կողմանք «մի ազգ» կազմուեցան: Աւանդութիւնը պահած է անոր յիշատակը. ԺԳ. դարու հեղինակ մը կը գրէ. «Վիրք այլ նախատեն զմեզ եւ ուրանան. Մեսրոպ եւ նոցա գիր եւ զՎարձիոյ Թաչն Մեսրոպ է օրհնել. եւ յաջ թեւին կայ հայ գիր. եւ զայն ոսկւով ծածկեալ են, թէ թող չերեւի» (Գիրք Թղթոց, 534): Եւ Աբրահամ կաթողիկոս կը գրէր Կիւրիոն Վրաց Կաթողիկոսի, թէ «Մեզ եւ ձեզ հասարակ սերմանեցին զաստուածպաշտութիւն նախ երանելին սուրբն Գրիգոր եւ ապա Մաշդոց, (որ եւ ետ) զգրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոց» (Գիրք Թղթոց, 180):

P. Peeters որչափ ալ հաւան է թէ Բակուր, որ 378ին եւ 394ին Ադրիանուպոլսի եւ Ֆրիգիդուսի կռիւներուն մասնակից էր եւ Ռուփինոսի խօսակից, նոյն է Կորիւնի յիշած Բակուր արքային հետ, բայց թէ ան, որ Ռուփինոսէն vir fide, pietate, virtute et animi et corporis insignis կը գնահատուի, նորարոյս, նորահաւատ մ'եղած ըլլայ, կը մերժէ ընդունիլ: Արժէք չ'ընծայեր նաեւ Պետրոս Իբերացւոյ կենսագրին վկայութեան, զոր Սոկրատի ազդեցութեան տակ կ'ենթադրէ, որ ինքն կարդացած է հայերէն Սոկրատը եւ Վրաց անանուն առաջին քրիստոնեայ թագաւորը համարած է Բակուր: Մենք տեսանք վերագոյն, թէ նաեւ Զոսիմոս հիւսած էր Բակուրի ներքնոյն եւ արտաքնոյն գովքը.

անշուշտ ոչ այն իմաստով, թէ Բակուր իբրեւ քրիստոնեայ տէր էր այդ նկարագրին։ Մենք ստիպուած ենք մնալ մեր տեսակէտին վրայ։ Զկայ որ եւ է փաստ ապացուցանելու համար, թէ Բուն Վրաստան եւ Թագաւորական տունը 396էն յառաջ պետական կրօն ճանչցած ըլլան քրիստոնէութիւնը, բայց հանդուրժած են քրիստոնէութեան Վրաստանի հին հայկական գաւառներու մէջ։ Պետրոս Իբերացի, շառաւիղ մը Վրաց Թագաւորական տան, կը վկայէր ի ձեռն իր կենսագրին, թէ Վրաց առաջին քրիստոնեայ Թագաւորն եղած է Մեծն Բակուր (իբր 396—420), իսկ Կորիւն տակաւին 415ին «Բարբարոսական կողմանք» կ'որակէ Բուն Վրաստանը։ Դժուարին չէ ասկէ հետեւցնել, թէ Բակուր քրիստոնէութիւնն ընդունած է 392—393ին։

Ուստի ցինուորական անձ մը, որ խանդավառուած է Լիբանիոսով, անձ մը, որուն պատիւ կ'ընծայէ հոյակապ ճարտասան մը մտերմական նամակ գրելու, անշուշտ անձնական մէկը չէր, այլ հելլենական ուսմամբ ներհուն, ճարտասանական արուեստին մէջ ջամբուխ կիրթ միտք մը։ Նաեւ այն պատմուածքը, զոր հաղորդած է «Վրաց» քրիստոնէութեան դարձի մասին, իր ամփոփ ձեւին մէջ, նկարէն արտայայտութեամբը մատնանիշ կ'ընէ յանձին պատմողին ճարտասան լեզու, պատկերող վրձին։

Գրուածքէն կը թուի, թէ պատմողը այն ինչ արթնցող պատանեկութեան օրերու

յիշողութիւնը կը մարմնաւորէ․ իր մօր կամ դայեակին բերնէն լսած անցեալ ժամանակներու դէպքեր նկատի ունի․ դէպքերն ու դէմքերը տպաւորուած են իր յիշողութեան մէջ, բայց տեղւոյ եւ անձանց անունները սրբուած, անհետացած։ Եթէ դէպքերը տեղի ունեցած ըլլային իր ծննդավայրին, Մծխիթայի մէջ, եւ գործող անձինք իր հայրն ու մայրն եւ կամ իր պապն ու մամը եղած ըլլային, կարելի չէր յուսալ, թէ ջնջուէին անոնց անունները իր յիշողութենէն։ Եթէ եղած ըլլար նա քրիստոնեայ, պէտք է անջինջ դրոշմուէին իր յիշողութեան մէջ այդ դէմքերը անուններով, որովհետեւ անոնք ազգէն եւ տոհմէն նուիրագործուած, յորդւոց յորդի փոխանցուած միշտ կենդանի սուրբ դէմքեր էին, եւ վայրերը՝ սրբավայրեր։ Բայց Բակուր ըլլալով հեթանոս միջավայրի զաւակ, ապրած հեթանոս՝ հեռու հայրենիքէն, անչահագրգիռ էին իրեն համար այդ վայրերու եւ դէմքերու անունները։

Այս բոլոր խորհրդածութիւնները, սակայն, աւելորդ պիտի ըլլան, եթէ «հաւատարմագոյն այրն» Բակուր դիտմամբ լսած ըլլայ անձանց եւ տեղեաց անունները, այն գիտակցութեամբ, թէ անոնք կարող են մատնել իր թաքուն միտքը, այսինքն թէ իր պատմածները ոչ թէ բուն Վրաստանի, այլ Վրահայքի եւ բուն Հայաստանի քրիստոնէութեան դարձին կը հային։ Որովհետեւ իր հաղորդած տեղեկութիւնները ճշգիւ կը հա-

մաձայնին Հայ աւանդութեան, կը թուի ինծ, թէ Բակուր յեցած չէ պարզապէս բերանացի աւանդութեան մը վրայ, այլ ուսած է գրաւոր աղբիւրէ մը, որ շատ հաւանօրէն Փաւստոսի յունարէն գրած Հայոց Պատմութիւնն էր, լոյս տեսած իբր 386/87ին:

14· Լսենք այժմ, թէ ինչ կը պատմէ Բակուր[71]:

1· Գերի կին մը, որ բերուած էր մայրաքաղաք, կ'ապրէր խստակեաց եւ վշտամբեր կեանք մը: Անոր այս կենցաղը զարմանք կը պատճառէր տեղացի կանանց: Ան քրիստոնեայ էր:

2· Կը պատահի որ տղայ մը ծանր կը հիւանդանայ. մայրը տարած իր հիւանդ զաւակը կը պտտցնէ տնէ տուն, հարցնելու թէ գիտէ՞ մէկը անոր հիւանդութեան դարման: Այսպէս սովոր էին ընել այն կողման բարբարոսները: Չի գտնուիր մէկը, որ կարող ըլլայ դարման մը յանձնարարել: Թշուառ կինը կը բախէ նաեւ գերի կնոջ դուռը: Ան կը պատասխանէ. Հիւանդին համար նիւթական դեղ մը չեմ գիտեր. բայց կը յուսամ թէ իմ Աստուածս պիտի ուզէ բժշկութիւն շնորհել մանուկին: Կ'առնէ զայն եւ կը դնէ իր մազէ հիւսուած խարազին մէջ. եւ կը բժշկուի

---

71 Գեղասիոսի եւ Ռուփինոսի տողերը, որոնք միարան են յէականս, ամբողջութեամբ պիտի ներկայացնեմ ուրիշ առթիւ. այս տեղ կու տամ անոնց համառօտ ամփոփումը միայն:

նոյնհետայն։ Համբաւը կը տարածուի բերնէ բերան։

3. Ժամանակ մը յետոյ կը հիւանդանայ Թագուհին անբուժելի խօթութեամբ մը։ Լսած է գերի Կնոջ հրաշագործութիւնը. զանիկա իր մօտ կը կանչէ. բայց Կինը յանձն չ՚առներ ելլել իր խցիկէն։ Թագուհին կը տարուի անոր քով։ Կինը կ՚ըսէ. Եթէ հաւատաս իմ Աստուծոյս, Ան կարող է բժշկել զքեզ։ Թագուհին կը հաւատայ։ Կինը կը դնէ հիւանդը իր խարազին մէջ եւ կ՚աղօթէ. Թագուհին կը բժշկուի։ Կը վերադառնայ արքունիք ու կը պատմէ Թագաւորին իր տեսածը, լսածն ու բժշկութիւնը։ Թագաւորը կ՚ուղարկէ գերի Կնոջ պարգեւներ. բայց Կինը կը մերժէ ընդունիլ զանոնք։

4. Թագաւորը որսի կ՚ելլէ իր որսորդներով։ Զբաղած էին անոնք անտառի մէջ որսորդութեամբ, երբ յանկարծ բովանդակ անտառը մութ խաւար մը կը պատէ։ Կը զարհուրի Թագաւորը. սարսափը կը պաշարէ նաեւ ցիր ու ցան եղած որսորդները։ Անել կացութեան մէջ Թագաւորին միտքը կ՚իյնայ գերի Կնոջ Աստուածը, որ Թագուհւոյն բժշկութիւն շնորհած էր։ Կ՚երդնու հաւատալ Անոր, եթէ զինքը ողջանդամ փրկէ այս փորձանքէն։ Խաւարը կամաց կամաց կը փարատի. կէս օր էր արդէն լոյսի շողերու մէջ։ Կը վերադառնան անվթար արքունիք։

5. Թագաւորը իր քով կը կանչէ գերի Կինը, որ կ՚ուսուցանէ անոր ճշմարիտ Աս–

*տուածը։ Կը հաւատայ Թագաւորը եւ կը խոստանայ երկրպագել ընել նոյն Աստուծոյ նաեւ իր ժողովուրդը։*

6. *Կը յորդորէ գերի Կինը, որ ճշմարիտ Աստուծոյ եկեղեցի մը կառուցուի։ Կը ձեռնարկուի անմիջապէս շինութեան։ Հոն պիտի կանգնուէին սիւներ. անոնցմէ մին անկարելի կ՚ըլլայ բարձրացնել կանգնել խարիսխին վրայ. մեքենաները կը կոտրուին, փոկերը կը կտրուին, բայց սիւնը տեղէն չի շարժիր։ Գերի կինը ամբողջ գիշեր կը հսկէ նոյն տեղ աղօթքով։ Առաւօտեան դէմ սիւնը ինքնիրեն կը բարձրանայ եւ կը կախուի օդէն։ Երբ առաւօտեան հոն կու գայ Թագաւորը, գննելու շինութեան ընթացքը, կ՚ապշի տեսնելով ահագին սիւնը օդէն կախուած. հանդիսատես կ՚ըլլայ այս երեւոյթին նաեւ հոն խռնած ամբոխը։ Սիւնը ինքնիրեն կ՚իջնայ եւ կը հաստատուի խարիսխին վրայ։*

7. *Եկեղեցւոյն շինութենէն ետքը խորհուրդ կու տայ գերի Կինը, որ պատգամաւորութիւն մ՚ուղարկուի Կոստանդին Կայսեր եւ խնդրուի անկէ, որ եպիսկոպոս եւ քահանաներ առաքէ։ Կը հասնին քահանաներ, որոնք կը մկրտեն նորահաւատ ժողովուրդը եւ կը հաստատեն քրիստոնէական կարգեր երկրին մէջ։*

15. *Այս կէտերը հաղորդած են մեզի Գելասիոս եւ Ռուփինոս իբրեւ պատմութիւն Վրաց դարձի. վասն զի պատմողն եղած է Վրաց Թագաւորական տոհմէ Բակուր իշ-*

խանը: Բայց սա որովհետեւ պատմութեան ընթացքին որ եւ է ակնարկութիւն, որ եւ է կէտ մատնացոյց չէ ըրած, թէ խօսքը Վրաց դարձի մասին է, մենք չենք կրնար հաւատ ընծայել, թէ Բակուր իրօք բուն Վրաստանի դարձը նկատի ունեցած ըլլայ: Այլազգ կը սպասուէր, որ նա գոնէ «մայրաքաղաքը» յանուանէ յիշած ըլլար: Եւ եթէ լռած է զայն դիտմամբ կամ որ եւ է նկատումով, պատասխանատու միայն զինքը կարող ենք նկատել:

Ինչպէս վերագոյն տեսանք, պատմական աղբիւրներու համաձայն Վրաց «առաջին քրիստոնեայ թագաւորն էր» ինքն Բակուր. իրմով անշուշտ նաեւ արքունի տունը ընդունած էր քրիստոնէութիւնը. իսկ ժողովուրդը բազմալեզու եւ բազմացեղ, քրիստոնեայ եղաւ քարոզութեամբ Մաշտոց վարդապետի եւ իր աշակերտաց. իբր 445ին, երբ կը գրէր Կորիւն, Վրաց այդ «Բարբարոս կողմանք», ցեղով եւ լեզուով բաժանեալ գաւառները, քրիստոնէութեամբ վերածուած էին «մէկ ազգի» եւ գրականութեամբ մէկ լեզուի: Այս գործին մէջ մեծ եղած է առանց տարակուսի նոյն ինքն Բակուրի արդիւնքը. եւ իրաւամբ կոչած է զինքը իր Թոռնիկն՝ Պետրոս Իբերացի՝ «Մեծ»:

Եւ եթէ ինքը Բակուր հաւատացուցած է իր ունկնդիրներու, թէ իր պատմածները իրօք Վրաց դարձի մասին են, այս դէպքին նկատի առնելու է միայն այն «Վրաց աշխարհը», որ

կը գտնուէր 393ին Սաւրոմակ թագաւորի իշխանութեան տակ, այն է «Վրահայքը», զոր Վրացիք կ՚անուանեն «Սամխիթի», որ է հայկական, հայերէնախօս ժողովուրդէ բնակուած աշխարհամաս: Այս աշխարհամասի մէջ էին Գուգարք նահանգն եւ այսրկուրեան այն գաւառները, որոնք մինչեւ 297, իրր 400 տարիէ ի վեր, Հայոց մեծաց մաս կը կազմէին, եւ յետոյ կցուեցան Վրաստանի: Այս աշխարհամասը ընդունած էր քրիստոնէութիւնը, ինչպէս տեսանք, Գրիգոր Լուսաւորչէն եւ անոր յաջորդներէն: Այս իմաստով Բակուր չէր սխալեր իր հաւաստումներուն մէջ:

Եւ եթէ այսպէս, հարկ է ապա ամբողջ պատմուածքը նկատել Յիշատակարան մը Հայոց դարձի պատմութեան, Դ. դարու վերջին տասնեակէն: Ինչ որ Բակուր հոս մանրապատում պատմած է, նոյնը լսած է Սոզոմենոս[72] ուրիշ աղբիւրէ սեղմեալ ձեւի մէջ, զոր արձանագրած է իր Եկեղեցական Պատմութեան մէջ (իրր 446ին) այսպէս. «Լուաք, եթէ Հայք վաղ իսկ յառաջագոյն եղեն քրիստոնեայք: Զի ասի, եթէ Տրդատ թագաւորն այնր (Հայոց) ազգի՝ տատուածանչան իմն

[72] Sozomeni Hist. eccl. II. 8. 1. *᾿Αρμενίους δὲ πάλιν πρότερον ᾿επυθόμην χριστιανίσαι.* Λέγεται *γὰρ Τηριδάτην τὸν ἡγούμενον τότε τούτου τοῦ ἔθνους, ἔκ τινος παραδόξου θεοσημείας συμβάσης περὶ τὸν αὐτοῦ οἶκον, ἅμα τε Χριστιανὸν γενέσθαι, καὶ πάντας τούς ἀρχομένους ὑφ᾿ ἑνὶ κηρύγματι προστάξαι ὁμοίως θρησκεύειν.`Εφεξῆς δὲ καὶ διά τῶν ὁμόρων φυλῶν τὸ δόγμα διέβε, καὶ εἰς πλῆθος ἐπέδωκε.*

*ոքանչելեօք, որ եկին հասին ի վերայ տան իւրոյ, նախ ինքն լինէր քրիստոնեայ եւ ապա արձակէր քարոզս տալ հրաման ամենայն հպատակերոց իւրոց նոյնպէս աստուածապաշտս դառնել: Յետ այնորիկ աստուածախօս վարդապետութիւնս առ դրացի ազգս տարածեցաւ եւ աճեաց մեծապէս»:*

ա. *Միջավայրն է Հայոց մեծաց աշխարհը, որուն մայրաքաղաքն էր 217ին Նոր Քաղաքն* (*Վաղարշապատ*): *Գերի կինն է Հոփսիմէ տիկին. գերի բերուած է հաւանօրէն* 216*ին, երբ Անտոնինոս Կարակալլա կայսր «ուղարկեց գթէօկրիտոս բանակով մը Հայոց դէմ, որոնք իրեն զգալի պարտութիւն մը կրել տուին*[73]*»: Խաղաղութիւնը կնքուեցաւ* 217*ին*[74] *Մակրինոսի օրով: Հոփսիմէ հայ աւանդութեան համաձայն կ'օթեւանէր «ի հնձանայարկս այգեստանւոյն, որ կան շինեալ ի հիւսիսոյ յարեւելից կուսէ» Նոր քաղաքին*[75]:

բ. *Թագուհին կը կոչուէր Աշխէն*[76]:

գ. *Հայոց թագաւորը Տրդատ Բ. թագը ընդունեցաւ Մակրինոս կայսեր* (12 *ապրիլ* 217—218 *յունիս* 8) *ձեռքէ նոյն* 217 *տարւոյ ապրիլ—մայիսին մօտաւորապէս*:

դ. *Որսը տեղի ունեցած պէտք է ըլլայ* 218, *հոկտեմբեր* 7*ին. երբ տաուղիւ տեղի*

[73] Dion Cass. LXXVII, 21.
[74] *Անդ*, LXXVIII, 27.
[75] *Ագաթ.* 85:
[76] *Անդ*, *էջ* 395:

ունեցած է արեւի բոլորակ խաւարում մը $^{7}/_{10}$ մեծութեամբ, տեսանելի Աթէնք ժ. 9ին եւ Հայաստան ժամը 8,24էն մինչեւ ժամը 11,04: Նոյն օրը, կը պատմէ Դիոն Կասիոս, արեւի այս խաւարումն ի Պերգամոն ընդհանուր սարսափ պատճառած է[77]: Որոտրդութեան մասին ակնարկութիւն ունի Ագաթանգեղոս[78]. «Ապա յետ այնորիկ ժամ տուեալ (թագաւորին) որոյ՝ ամենայն զօրաց ածել կուտել զպատրակն, խուճապական սփռեալ, երագագ տուեալ, թակարդ ձգեալ [կամեցեալ որս առնել] երթեալ ի դաշտն Փառական Ծեմակաց»: Խաւարումին կը հային աղճատուած տողերս. «անդէն վաղվաղակի պատուհաս ի Տեառնէ ի վերայ հասանէր... Նա եւ ամենայն մարդիկն որ ի քաղաքին էին՝ նոյն օրինակ [դիւարախք մոլէգնէին] եւ անհնարին կործանումն ի վերայ աշխարհին հասանէր. եւ ամենայն ընտանիք թագաւորին՝ ծառայք եւ սպասաւորք առ հասարակ հարուածովք հարեալ լինէին. եւ անհնարին սուգ վասն հարուածոցն լինէր»: Այս վրդովմունքը մասամբ արդիւնքն էր արեւի խաւարումին եւ մասամբ այն հանգամանքին, որ թագաւորը զօրքին

---

[77] Dion Cas. LXXVIII, 27· Արեւի այս բոլորակ խաւարումի մասին տես F. K. Ginzel, Spezieller Kanon der Sonnen- und Mondfinsternisse, Berlin 1899, էջ 206—207, հմմտ. նաեւ էջ 32—33, 83 եւ Տախտակ XII:

[78] Ագաթ. էջ 113—114: Քառակուսի փակագծի մէջ առած եմ խմբագրին փոփոխութիւնները:

*հետ եղած էր որսի: Խաւարումը կը փարատի ճշդիւ կէսօրուան դէմ: Ո՛րքան խեղաթիւրուած է բնագիրը:*

*ե. Գրիգոր=Հոխիմխմէ հրապարակ կու գայ իբրեւ բուժիչ եւ քարոզիչ. կը ձեռնարկուի «եկեղեցիներու» շինութեան. Ագաթ. էջ* 393*ին:*

*զ. Պատմաւորութիւն կ՚ուղարկուի ոչ թէ առ Կոստանդիանոս կայսր, այլ ի Կեսարիա Կապպադովկացւոց, որուն մետրապոլտութեան ենթարկուած էին նաեւ Մեծ եւ Փոքր Հայք: Գելասիոս*[79] *կը գրէ իր Եկեղեցական Պատմութեան մէջ, թէ Ղեոնդիոս եպիսկոպոս Կեսարիոյ Կապպադովկացւոց ունէր իր իրաւասութեան տակ ոչ միայն Կապպադովկիա եւ Գաղատիա, այլ եւ «Պոնտոսն Դիոսպոնտեայ, Պափղագոնիա, Պոնտոս Պողեմոնիական, Փոքր եւ Մեծ Հայաստան», Դ. դարու առաջին քառորդին եւ անշուշտ անկէ յառաջ ալ: Անկէ, Կեսարիայէն ուղարկուեցան Գրիգոր եւ իր կցորդք Հայաստան լուսաւորելու աշխարհը: Հմմտ. Ագաթ. ճժԳ.* 804—806, *էջ* 419—420*: Յոյն Καισαρεία (Կեսարիա) հաւանօրէն իմացուած է* «առ կայսրն», *որ անշուշտ ուրիշ մէկը չէր կրնար ըլլալ, բայց եթէ Կոստանդիանոս Մեծ, իբրեւ կայսր քրիստոնեայ:*

*Առ այժմ կը բաւեն այս համեմատութիւնները:*

---

[79] Gelasius Kirchengeschichte, *էջ* 105 *եւ* 136:

Բ.

# ՍՈԿՐԱՏԻ ԵԿԵՂ. ՊԱՏՄՈՒԹԵԱՆ
## ՀԱՅԵՐԷՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹԻՒՆԸ
## (ՄԵԾ ՍՈԿՐԱՏ)

*Սուրբ Նունէի Վարքի կամ Վրաց դարձի Պատմութեան համար կարեւոր աղբիւր է Սոկրատ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութեան հայերէն թարգմանութիւնը:*

*Ունինք նաեւ Պատմութեանս հայերէն Համառօտութիւնը, պահուած մեզի Ժ. դարու Խմբագրութեամբ:*

*Նկատի պիտի առնեմ նախ առաջինը, երկրորդին պիտի անդրադառնամ գործոյս Դ. եւ Ե. գլուխներու մէջ:*

*Սոկրատ Սքոլաստիկոս գրած է իր Եկեղեցական Պատմութիւնը իբրեւ շարունակութիւն Եւսեբիոս Կեսարացւոյ համանուն երկասիրութեան: Կրկին խմբագրութեամբ հրապարակ հանած է Սոկրատ իր աշխատութիւնը, առաջինը իրր* 439*ին, երկրորդը* 450*էն յառաջ*[1]*: Ունինք Բ. խմբագրութիւնը միայն*[2]*:*

---

[1] O. Bardenhewer, GAL 4 (Freiburg 1924) S. 139.

[2] *Յունարէն բնագրի հրատարակութիւնը տես* R. Hussey, Socratis scholastici ecclesiastica historia, Oxford 1853 *երեք հատորի մէջ: Հայերէն թարգմանութիւնը, որ հին օրինակի մը վրայէն կատարուած*

Ասկէ կատարուած է հայերէն թարգմանութիւնն ալ։

Մեր նպատակը չէ այս տեղ մանր քննութեան առնել հայերէն թարգմանութեան որպիսութիւնը եւ անոր յարակից խնդիրները. զմեզ կը հետաքրքրեն միայն Ա. 20 գլուխն եւ թարգմանութեան ժամանակին եւ թարգմանչին հայոց հարցերը։

Սոկրատի Եկեղ. Պատմութեան հայերէն թարգմանութիւնը հասած է մեզի երեք ձեռագիրներու մէջ. ա. Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի օրինակը (համարը անծանօթ) իբր ԺԲ. դարէն, բերուած Հնդկաստանէն 1869ին (հմմտ. Սիոն 1869, էջ 216)։ Տարի մը յառաջ ձեռագրիս վերջին ստացիչը Հնդկաստանէն (Կալկաթա՞) կը հաղորդէր անոր մասին համառօտ տեղեկութիւն մը Արշալոյս Արարատեան թերթին մէջ (1868, Թ. 845) եւ կը հրատարակէր ձեռագրին սկիզբը գտնուած թարգմանչին Յիշատակարանն եւ Եկեղ. Պատմութեան սկզբնաւորութենէն մաս մը (տպ. էջ 1, տ. 1—3, տ. 9)։ Ասկէ ընդարձակ հատուած մը յառաջ բերած է Հ. Գ. Զարբանալեան, Մատենադարան հայկական թարգմանութեանց նախնեաց, Վենետիկ, 1889, էջ 697—698, որ կը համապատասխանէ տպ. էջ 186, տ. 7—187, տ. 7։ Ձեռագրին բաղդատութիւնը Էջմիածնի օրինակին հետ հմմտ. Սահակ եպ. (Խապայեան) եւ Մեսրոպ վարդապետ (Տէր-Մովսէսեան), Բաղդատութիւն տպագիր Սոկրատի եւ Երուսաղէմեան ձեռագրի. Արարատ 1897, էջ 406—411 (նաեւ արտատպ. Էջմիածին 1897, 8°, էջ 15)։ Սահակ եպ. (Խապայեան), Բաղդատութիւն տպագիր Սոկրատի եւ Երուսաղէմի ձեռագրին. Երուսաղէմ 1898. 8°, էջ 95։ Հ. Բ. Սարգիսեան, Նմոյշ մը Սոկրատայ հին թարգմանութեան (հանուած Երուսաղեմեան ընտիր օրինակէն). Բազմավէպ 1898, էջ 35—41 (= տպ. 185—197)։ բ. Էջմիածնի Թ. 1531

---

է, կը նպաստէ վերականգնելու յունարէն բնագիրը շատ տեղեր. հմմտ. Erwin Preuschen, Theologische Literaturzeitung 27 (1902), 207—210 եւ F. C. Conybeare, The Journal of Philology 33 (1914), 208—237, 34 (1915), 47—77։

(1682, Կար. 1640), յամէ 1289: Այս ձեռագիրէն տպագրեց Մեսրոպ Վ. Տէր Մովսէսեան Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւնն վարուց Ս. Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռոմայ. Վաղարշապատ 1897, 8º, էջ ձԱ + 834, տարընթեր զետեղելով նաեւ Փոքր Սոկրատը: Էջմիածնի յիշեալ Ձեռագիրը կրած է թղթերու անկում. թերի մասերը լրացուցած է հրատարակիչը նոր թարգմանութեամբ: Այս պակասները կ՚ամբողջացնէ Երուսաղէմի օրինակը: գ. Վենետիկի Մխիթարեանց Թ. 1806 նօտրագիր ձեռագիրը, զոր երեւան հանեց Հ. Կ. Տէր-Սահակեան, Սոկրատի նոր ձեռագիր մը. Բազմավէպ, 1907, էջ 289—292. Հմմտ. նաեւ էջ 383. Ծանօթ էր արդէն Հ. Բ. Սարգիսեանի, Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս, Վենետիկ 1899, էջ ԼԳ. ուր ձեռագրին համարն նշանակուած է անշուշտ վրիպակաւ՝ 1006:

## ԹԱՐԳՄԱՆՉԻՆ ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆԸ [3]

Յամի վեցհազարերորդի երկերիւրորդի [4] չորրորդի կենցաղում [5] անցաւորի, որպէս ունի ժամանակագրութիւն սուրբ Սոփի աւագ եկեղեցի [6] տիեզերական մայրաքաղաքին Կոստանդնուպաւլսի: Եւ [7] յեւթնհարիւրերորդի չորրորդի Քրիստոսի գալստեանն, եւ ի հա—

[3] Յիշատակարանս, որ միայն Երուսաղեմեան օրինակի մէջ պահուած է, զետեղուած է Եկեղեցական Պատմութեան սկիզբը: Առաջին անգամ լոյս տեսաւ Արշալոյս Արարատեան, 1868, Թ. 845. հրատարակիչը (Յովհ. քահանայ Խաչիկեան) իր օրինակին մէջ զայն անթերի գտած էր. Երուսաղեմեան ձեռագիրը տեղ տեղ անընթեռնլի է այժմ, փտտուած ըլլալով: Մ. Տէր-Մովսէսեան յառաջ բերած է Յիշատակարանս Յառաջաբանին մէջ, էջ ԺԷ:

[4] Տէր-Մովսէսեան «երկերերորդի». Արշ. «երկերիւրերորդի»: Երկերիւր, սեռ. Երկերիւրոց, դասականը պիտի ըլլար երկերիւրորդ, որ առաջին անգամ հոս կը գործածուի. կարող է ըլլալ նաեւ երկերեւրորդ նմանութեամբ բիւր եւ բեւր, աղբեւրակն, աղբիւրակն, աղբերակն:

[5] Իմացիր «կենցաղոյս»:

[6] Կը սպասուէր «եկեղեցւոյ»:

[7] Արշ. չունի «եւ»:

րիւր քառասուն եւ ի չորս թուականին․ ի յիններորդումն ընտիքտիոնին, յառաջնում ամի թագաւորութեանն երորդ Ղեւոնի ինքնակալի աւգոստոսի․ թարգմանեաց Փիլոն Տիրակացի առաջին ձեռնարկութեամբ զգիրս զայս մասնաւոր ծայրաքաղ ի Սոկրատայ Եկեղեցական Պատմութենէն․ թողեալ զինքնախսաւսութիւնս եւ զթուղթս այլոց եւ զնառս՝ յաղագս նուազութեան քարտի եւ մագաղաթի՝ եղելոյ յաւտարութեան ։

*Սոկրատի Եկեղ․ Պատմութեան վերջը եւ Սեղբեստրոսի վարքէն յառաջ զետեղուած է երկրորդ Յիշատակարանս* [8].

Յառաջ քան զութուտասն ամ թարգմանելոյ Փիլոնի [9] զգիրսդ զայդ Սոկրատայ զԵկեղեցական Պատմութիւն՝ թարգմանեալ էր աքասուն Գրիգորի Ձորոյփորեցւոյ [10] թարգմանի ընդ փառաւորս յիշելոյ Ներսէհի Վրաց [11] իշխանի, փեսային Կամսարականաց՝ զգիրս [12] Պատմութեան վարուց սրբոյն Սեղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ․ եւ կայր ի քարտիզի ։

Այժմ պատշաճ համարեցաք առ նմին գրոց [13] գրել ձեռամբ Թովմասայ դպրի պատրաստ լինելով մագաղաթիդ [14] ։

[8] *Նկատի ունիմ Երուսաղէմի ձեռագիրը (Հրտ. Սահակ եպ.ի, Բաղդատութիւն տպագիր Սոկրատի, էջ 87)* ։

[9] *Տէր–Մովսէսեան՝ Փիլոնէի* ։

[10] *Նոյն՝ Ձորափորեցւոյ* ։

[11] *Նոյն՝ չունի «Վրաց»* ։

[12] *Երուս. «զգիր»* ։

[13] *Տ.–Մ. առ զմին գրոց. Եր. առ նմին գրոյ* ։

[14] *Տ.–Մ. չունի «ձեռամբ—մագաղաթիդ»* ։

Սոկրատի Եկեղ. Պատմութեան ժամանակը մատնանշուած է հոս հինգ զանազան թուականներով.

Ա. «Յամի ՅՄԴ կենցաղում անցաւորի, որպէս ունի ժամանակագրութիւն Ս. Սոփի աւագ եկեղեցի տիեզերական մայրաքաղաքին կոստանդնուպաւլսի»: Նկատի առնուած է հոս Բիւզանդական ամն աշխարհի, որ կը հաշուի Ն.Ք. 5509, Սեպտ. 1էն[15]. ուստի 6204—5508 = 696: Տարօրինակ է թուականութեանս կոչումը «որպէս ունի ժամանակագրութիւն Ս. Սոփի(ա) աւագ եկեղեցի տիեզերական մայրաքաղաքին (μητρόπολις) կոստանդնուպաւլսի», որուն առաջին եւ վերջին անգամ ա՛յս տեղ կը հանդիպինք: Առաջին անգամ է հայ մատենագրութեան մէջ, որ կը գործածուի այս թուականը: Հնագոյն գործածութիւնը թուականութեանս կը գտնենք Կիւրեղ Սկիւթոպոլսեցւոյ Ս. Սաբայի վարքին մէջ[16], ուր կ՚ըսուի. «Վախճան նորա եղեւ ի Ե. Դեկտ. ամսոյ, յիններորդում ինդիկտիոնի, իսկ յարարածոց աշխարհի, յորժամ սկիզբն առ ժամանակն փոփոխելոյ յարեգական բերմանէ, յամի 6624» այն է 6024—

---

[15] F. K. Ginzel, Handbuch der mathematischen und technischen Chronologie, 3 (Leipzig 1914), էջ 292—293:

[16] Հմմտ. Р. П. Блэйк, По поводу даты армянскаго перевода „Церковной Исторій" Сократа Схоластика. Христіанськiй Востокъ, 6 (1918) 175—188, յատկապէս էջ 176:

5508 = 516, որ է Թ. Ինդիկտիոնի: Այսպէս «ամ արարածոց աշխարհիս» յաւելմամբ «ըստ յունարէն թուոյ» կը կիրարկուի նաեւ Դաւիթ Կենաւորի թարգմանութիւններու մէջ, որոնք են. 1. Թարգմանութիւն Դիոնեսիոս Արիոպագացւոյ. «Ի ՑՄԻ արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ ի [Դ]Ժի ընդիքտիոնին, յԲ. ամի թագաւորութեան Փիլիպիկոսի[17]»: 2. Գիրք Պարապմանց Կիւրղի. «Ի ՑՄԻԴ ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ, ի ԴԺի ընդիքտիոնին, յԲ. ամի թագաւորութեան Անաստասի[18]»: 3. Մեկնութիւն Ղեւտիկոնի. «Ցամի ՑՄԻԴի արարուածոյ աշխարհիս <ըստ յունարէն թուոյ>, ի ԴԺ (ի ըն)դիկտիոնիս < . . . > թարգմանեցան գիրքս . . .[19]»: 4. Նեմեսիոսի յաղագս բնութեան մարդոյ. «Ի ՑՄԻէ. ամի արարածոց աշխարհիս ըստ յունարէն թուոյ, ի ԴԺ(ի) ընդիկտիոնին յԱ. ամի թագաւո–

[17] Այսպէս էջմ. Թ. 1500: Այլ ձեռագիրներ կը կարդան «Փիլիպպոսի» (Զարբ. Մատենադարան, էջ 388): Փիլիպպիկոս 711—713: Ձեռագիրք ունին «ԴԺ» Ինդիկտիոնի, հարկ է կարդալ «Ժ», որ ճշդիւ կը համապատասխանէ 6220ի (712). Հմմտ. Ginzel, անդ, էջ 396:

[18] Զարբհանալեան, Մատենադարան, էջ 519: Ամն աշխարհի 6224 եւ ԺԴ. Ինդիկտոնի կ'ընծայեն 716. իսկ Անաստաս կայսեր (713—715) Բ. ամն է 714/15: Այս անհամաձայնութիւնը բառնալու համար հարկ է ՑՄԻԴ եւ ԴԺ կարդալ ՑՄԻԳ եւ ԳԺ, որով կը ստանանք 715 տարին:

[19] Հ. Բ. Սարգիսեան, Ցուցակ հայ. ձեռագրաց Մխիթ. Մատենադարանին ի Վենետիկ, Բ., էջ 300—301: Յիշատակարանս թերակատար աւանդուած է:

թութեանն Լեւոնի[20]»։ Կը գործածեն զայս նաեւ Սիմէոն Պղնձահանեցի եւ ուրիշ հայ–հռոմներ[21]։

Բ. «Եւ յեւթնհարիւրերորդի չորրորդի Քրիստոսի գալստեանն»։ Քրիստոսի գալստեան ՉԴ տարին զուգակշռուած է հոս փրկչական 696 տարւոյն։ Հայ ժամանակագիրները հետեւելով Եւսեբիոսի Քրոնիկոնին փրկչականը սովոր են հաշուել 2 ն. Ք. տարիէն, ուստի հոս կը սպասուէր 698։ Բայց Փիլոն Տիրակացի, որ կը հետեւի Ս. Սոփիայ աւագ եկեղեցւոյ ժամանակագրութեան, նաեւ հոս այդ ժամանակագրութիւնը նկատի ունի։ Կիւրեղ Սկիւթոպոլսեցի իր վերյի–շեալ գրուածքին մէջ կը գրէ. «Եւ ի կուսա–կան մարդեղութենէ բանին Աստուծոյ եւ ի

[20] Այսպէս էջմ. 1013 (յամէ 1227)։ Իսկ Նեմեսիոսի յղ. բնութեան մարդոյ. Վենետիկ 1889, էջ 162. Նոյնը Զարբ., Մատենադարան, 371, էջմ. 1500 (յամէ 1283), Լազ. ձեմ. 105։ 217։ էջմ. 51։ 417։ 469։ 470։ 620, կ'ունեցնեն «իսկ ըստ հայումս ՄԻԱ»։ Հ. Մ. Ջամչեան, Պատմ. Հայոց. Բ. 555 ունի ՑՄԻԵ. եւ Հայոց թուականը ձԿԵ («ի միում ձեռագրի ՄԻԱ»)։ Համմտ. նաեւ Հ. Յ. Տաշեան, Մատենագրական մանր ուսումնասիրութիւնք. Ա. (Վիեննա 1895) էջ 9—11։ Ամն աշխարհի 6227 կը համապատասխանէ փրկչական 719 տարւոյ, իսկ Ինդիկտ. ԺԴ.՝ 716. Լեւոն կայսեր Ա. տարին է 717, մարտ 25 (—741)։ Այս անմիաբանութիւնը կը վերցուի, եթէ ամն աշխարհի ՑՄԻԷ կարդանք Ջամչեանի հետ ՑՄԻԵ, այն է 717 եւ Ինդիկ. ԺԴ. ուղղենք ԺԵ (717)։ Հայոց թուականը յետոյ աւելցուած է. բոլոր ձեռագիրք (բացի էջմ. 1013է), որոնք ունին զայն (էջմ. Թ. 1500 «Հայոց թիւ ՄԻԱ ըստ յունարէն թուոյ...») միաբան կը կարդան ՄԻԱ. ուստի ձԺԵ (ճշդիւ ձԺԶ) Ջամչեանի սըրբագրութիւնն է։

[21] Տես Հանդէս Ամսօրեայ, 61 (1947) էջ 133։

մարմնանալոյ յամի 524, ըստ ժամանակի գրելոյ ի սրբոց հարցն մերոց Հիպպողիտեայ հնոյ եւ գիտնոյ յառաքելոց, եւ Եպիփանեայ Կիպրացւոց արքեպիսկոպոսի եւ Հերոմնի (Իրոն) փիլիսոփայի եւ ջատագովի[22]»: 524—516 = 8, ուստի ամբողջ 8 տարուան տարբերութիւն մը կը ցցուի: Այս հաշուով 704—8 = 696: Այլուստ անծանօթ է այս թուականի գործածութիւնը հայ գրականութեան մէջ:

Գ. «Եւ ի ՃԽԴ թուականին»: Մոռցուած է առնթեր դնել «Հայոց»: Առանց տարակուսի յաւելուած մըն է այս յետագայն գրչէ մը: Նախ որ Ը. դարէն յառաջ հայ թուականի գործածութիւնը ծանօթ չէ առհասարակ[23]: Յ. Օրբէլի եւս ուշադիր եղած էր այս կէտին[24]: Երկրորդ Հայ-հռոմք սովոր չէին կիրարկել այս թուականը: Այն ձեռքը, որ մուծած է այս յաւելուածը, տոմարական հաշուով դրած է ՃԽԴ (695/96) տարին, ճշդագոյն պիտի ըլլար ՃԽԵ:

---

[22] Блэйкъ, անդ, էջ 176—177:

[23] Հ. Ն. Ակինեան, Հայոց թուականի հաստատութեան ժամանակը. Հանդէս Ամսօրեայ 18 (1904) 97—102. 218—224:

[24] I. O. Орбели, Двѣ строительскія надписи князей Камсаракановъ. Христіанскій Востокъ, 3 (1915), 297—306, այս մասին յատկապէս էջ 303—304: Օրբէլի թէեւ շատ կը ստորագնահատէ Յիշատակարանս, մանաւորապէս անոր ժամանակագրական արժէքը, բայց ստոյգ է, ինչ որ ըսած է նկատմամբ հայկական թուականին:

Դ. «Ի յինններորդումն ընդիքտիոնին»: Ինդիկտիոն Թ. կը համապատասխանէ փրկ-չական 696/7 տարւոյն:

Ե. «Յառաջնում ամի թագաւորութեանն երորդ Ղեւոնի ինքնակալի ագոստոսի»: Խօսքը Ղեւոնդիոս կայսեր (695—698) մա-սին է, որուն Ա. տարին կ՚իյնայ 695/696ի մէջ: Հաւանօրէն օրինակողին վերագրելու է «Ղեւոնի» ընթերցուածը, փոխ. «Ղեւոնդի»: Խնդիր կը վերցնէ «երորդ» ընթերցուածը, որ անճիշդ է եւ անյարմար տեղւոյն. Տէր-Մովսէսեան կարդացած է «եր(կր)որդ»: Բայց Ղեւոնդ անուն մէկ թագաւոր միայն ծանօթ է: Բնագրի մէջ աղաւաղում տեղի ունեցած է. կ՚ընդունիմ P. Peetersի առա-ջարկը[25] կարդալ «... թագաւորութեանն Ղեւոնդի ինքնակալի, յերրորդում ագոս-տոսի»: Այսպէս կը բարձուի նաեւ դժուա-րութիւնը ի մասին «ինքնակալի ագոստոսի», քանի որ դարուս մէջ ընդունուած չէր «ագոստոս» յորջորջումը: Այս սրբագրու-թեամբ թարգմանութեան ժամանակը հարկ կ՚իյնայ ճշդել 697, ագոստոս 3· որովհետեւ թէ ամին աշխարհի եւ թէ ինդիկտոնը իրենց տարեմուտ ունին Սեպտեմբեր 1ը[26]:

Ճշդելով Սոկրատի թարգմանութեան

---

[25] P. Peeters, A propos de la version arménienne de l'historien Socrate. *Annuaire de l'Institut de Philologie et d'Histoire Orientales* 2 (1933—1934: Mélanges Bidez) p. 647—675, յատկապէս էջ 652—654:

[26] Ginzel, անդ:

տարին, ինքնին կը հաստատուի նաեւ Սեղբեստրոսի Վարքին թարգմանութեան ժամանակը, այն է 696—18 = 678/9:

Յիշատակարանս կը յայտնէ թէ Եկեղեցական Պատմութեան թարգմանիչն եղած է Փիլոն Տիրակացի եւ թարգմանութիւնը կատարուած է 696/7 տարւոյն. բայց ո՞ւր կատարուած է այս աշխատութիւնը. իբր պատասխան կ՚ըսուի միայն «յօտարութեան»: Կ՚ըսուի նաեւ թէ «Թարգմանեաց Փիլոն Տիրակացի առաջին ձեռնարկութեամբ զգիրս զայս»: Հոս «առաջին ձեռնարկութեամբ» պէտք է անշուշտ իմանալ, թէ ձեռագիրը, որ կը գտնուէր օրինակողին ձեռքը, թարգմանչին առաջին սեւագրութիւնն էր: Թարգմանիչը թարգմանած է «ծայրաքաղ», այսինքն «թողեալ զինքնախօսութիւնս եւ զթուղթս այլոց եւ զճառս», վասն զի չէ ունեցած տրամադրութեան տակ «քարտ եւ մագաղաթ»: Մտադի՞ր էր ապա լրացնել պակասները: Չգիտենք: Ո՞վ է սակայն այս տողերու գրիչը: Ինձ կը թուի, թէ նոյն ինքն Փիլոն Տիրակացին է, որ արտայայտուած է երրորդ դէմքով: Նա այժմ «յօտարութեան» չի գտնուիր: Ունի իր տրամադրութեան տակ մասնաւոր գրիչ մը՝ Թովմաս դպիր: Փիլոն յանձնարարած է անոր, ոչ միայն իր «առաջին ձեռնարկութեամբ» թարգմանած Եկեղեցական Պատմութիւնն օրինակել, այլ եւ կցել անոր Սեղբեստրոսի վարքը, վասն զի կա՛ր պատրաստ մագաղաթ: Այս միտքը կը

յայտնեն վերջին տողերը. «Այժմ պատշաճ համարեցաք (ինքն Փիլոն) առ նմին գրոց (տալ) գրել ձեռամբ Թովմասայ դպրի, պատրաստ լինելով մագաղաթիդ»: Դժբախտաբար գանց առնուած է յիշել դրչութեան տարին: Թերեւս նախօրինակին մէջ կար եւ այս, բայց անտեսուած է օրինակողներէն: Էջմիածնի օրինակին մէջ դուրս ձգուած է նաեւ Թովմաս դպրի անունը, զոր պահած է Երուսաղեմեանը:

Ինչպէս նկատեցինք, թարգմանութեան տեղը չէր յիշուեր, բայց կ'ըսուէր թէ «յօտարութեան», երկրէն դուրս, ուրիշ աշխարհի մէջ թարգմանուած է: Եւ որովհետեւ յոյն լեզուէ կատարուած է թարգմանութիւնը, Փիլոն երկար ժամանակ օտարութեան մէջ, յունախօս աշխարհի մէջ դեգերած ըլլալու է, երբ յոյն լեզուի եւ գրականութեան ալ ծանօթացած է: Նա կարդացած է յունարէն Սոկրատը եւ փափագ արթնցուցած իր մէջը թարգմանելու զայն. իր աղքատութեան պատճառաւ կրած է «նուաղութիւն քարտի եւ մագաղաթի», այսինքն միջոց չէ ունեցած հայթայթել իրեն թուղթ կամ մագաղաթ, որով ստիպուած է քաղուածաբար թարգմանել, պատմական հատուածները միայն: Իր արտայայտութիւնը. «որպէս ունի ժամանակագրութիւն սուրբ Սոփի աւագ եկեղեցի տիեզերական մայրաքաղաքին Կոստանդնուպոլի» գրգիռ եղած է P. Peetersի[27] ենթա-

[27] Անդ էջ 662 եւ շար.:

դրելու յանձին Թարգմանչի վրահայ մը, ուրիշ խօսքով հայ–հոռոմ մը: Այս ենթադրութիւնը ոյժ կը ստանայ Ցիշատակարանին երկրորդ մասին մէջ, ուր կը յիշուի Սեղբեստրոսի Վարքին Թարգմանիչ «տրաս Գրիգոր Զորոփորեցի», որուն համար կ'ըսուի թէ թարգմանն էր Վրաց Ներսեհ իշխանի: Զորոփոր Գուգարաց գաւառներէն մին էր, հայ եւ վրացի բնակչութեամբ, ենթակայ Վրաստանի: «Դիէգեսիս» գրուածքին մէջ[28] կ'ըսուի թէ Զ. դարու երկրորդ կէսին Զորոփոր միաբան Արցախի հետ, դաւանաբանական վիճաբանութեանց ժամանակ յունական եկեղեցւոյ հետ համախոհ հանդիսացաւ հակառակ Դուինոյ Եկեղեցւոյն. այս տեսակէտի մէջ շարունակեց մնալ Է. դարուն, երբ տեղի ունեցաւ (608) Հայոց եւ Վրաց կերպապէս բաժանումը: Եթէ Փիլոն 696ին կամ այս թուականէն ոչ շատ յետոյ կը յանձնարարէ Թովմաս գրչին կցել Սոկրատի Պատմութեան Սեղբեստրոսի Վարքը, զոր 18 տարի յառաջ թարգմանած էր տրաս Գրիգոր Զորոփորեցի, նա պէտք է ըլլար նոյնպէս ի Զորոփոր, ոչ շատ հեռու այժմեան Լօռիէն: P. Peeters[29] կը միտի կարծել թէ Գրիգոր Զորոփորեցի, նոյնպէս Փիլոն Տիրակացի Սեղբեստրոսի Վարքն եւ Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը յոյն բնագիրներով ձեռք բերած ըլլան

[28] Migne Patr. Gr. 132, էջ 1245—1246· հմմտ. Ակինեան, Կիւրիոն, էջ 100:

[29] Անդ, էջ 672—675:

ի Լազիկիա, ուր դարուն երկրորդ կէսին աքսորուած էր Անաստաս ատենադպիր (մատենադարանապետ), որ իր աքսորավայրէն կը գրէր Թէոդոս Գանգրացւոյն (666), որ իրեն գրքեր ուղարկէ: Հնարաւոր է: Բայց կը մնայ կարօտ քննութեան, թէ անոնք ո՞ր միջավայրի մէջ հմտացան յունարէնի: Յամենայն դէպս Փիլոն դտնուած ըլլալու է Կ. Պոլիս եւ ժամանակ մը դեղերած Ս. Սոփիա տաճար եկեղեցւոյ հովանւոյն տակ:

Զինքը կը յիշէ Ստեփանոս Ասողնիկ. «ի սորա (Անաստաս կաթողիկոսի) աւուրս էր եւ Փիլոն Տիրակացին, որ զՍոկրատայ Պատմութիւնն թարգմանեաց ի հայ լեզու[30]»: Անաստաս ըստ Ասողնիկի գահ բարձրացած է Հայոց ՃԻ (677) թուականին եւ «վախճանի կացեալ յաթոռն ամս Զ.» ուստի 677էն, մինչ Փիլոն իր թարգմանութիւնը կատարած էր 696ին: Պատմագրին մատնանշած տարին աւելի ճիշդ պիտի յարմարէր Գրիգոր Զարափորեցւոյ, որուն յիշատակութիւնը թէպէտ չէ ըրած, բայց իրեն անծանօթ մնացած ըլլալու չէր Սեղբեստրոսի Վարքը, որ անբաժին էր Սոկրատի Պատմութենէն: Իրմէ յառաջ Մ. Խորենացի կարդացած էր զանոնք, կ՚ենթադրեմ, մէկ հատորի մէջ:

---

[30] Ստ. Ասողնիկ, էջ 99: Պատմագիրը (էջ 6) յիշելով Եւսեբիոս Կեսարացին կ՚աւելցնէ. «եւ զկնի նորա Սոկրատէս: Նաեւ այլ եւս անթիւք են ի մէջ Յունաց պատմագիրք. բայց սոքա երկուքս որպէս լուսաւորքդ մեծամեծ քան զաստեղս՝ առաւելուն պայծառութեամբ:

Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը եւ Սեղբեստրոսի Վարքը, որոնք թարգմանուած էին հելլենաբան ոճով եւ շատ տեղ ստրկական հետեւողութեամբ յոյն բնագրին, նաեւ ոչ ճշգրիտ հասկացողութեամբ, հարկաւոր համարած է պատմաւէր մը հասարակաց իմանալի լեզուով համառօտել (իբր 700ին), որ ապա նոր յաւելուածներով ընդլայնուած է. այս աշխատանքը կատարուած ըլլալու է Թ. դարու վերջերը: Այս կէտին պիտի անդրադառնամ յետոյ Դ. գլխուն մէջ:

Զանազանելու համար ընդարձակը համառօտէն, առաջինը կոչած են Մեծ Սոկրատ եւ երկրորդը Փոքր Սոկրատ: Այս վերջինը աւելի տարածում գտած է. կան անկէ բազմաթիւ ձեռագիրներ ձեռագրական հաւաքածոներու մէջ: Մ. Տէր-Մովսէսեան կարեւոր տեսած էր նաեւ այս Փոքրը հրատարակել, նախ զետեղելով Մեծ Սոկրատի էջերուն ստորեւ մանրագիր եւ ապա նաեւ առանձին հատորով լոյս ընծայելով:

Վանական վարդապետ իր աշակերտներէն մէկուն հարցման, թէ «Ով է Փոքր Սոկրատն», պատասխանած է. «Փիլոն ասեն Տ(ի)րակացի ի Շիրակ գեղջէ. վասն այն Շիրակացի են յասել. ի Մեծ Սոկրատէն համառօտ եւ պարզ ի վեր է քաղել. եւ այն որ յետոյս Փիլոն են ասել. այլ նայ է արարեալ» (Էջմ. Թ. 2152, Թղ. 211ա): Թէ հարցաւէրը այս հակիրճ պատասխանէն գոհ մնացա՞ծ է, չգիտեմ: Բայց ինձ դեռ մեկնութեան կա-

բոտ կ՚երեւայ պատասխանը։ Ի՞նչ ըսել կ՚ուզէ Վանական, երբ կը գրէ. «եւ այն որ յետոյ Փիլոն են ասել» նախադասութեամբ։ Ըստայի՞ անուն մէկը համառօտած է եւ գործը Փիլոնի վերագրուած է։ Կը կարօտի բացատրութեան։ Մութ կը մնայ նաեւ այն որ Փիլոն ըլլալով Տիրակացի, ուստի Տիրակ գիւղէ (այժմ անծանօթ այլուստ), կը ներկայացուի «ի Ծիրակ գեղջէ», հետեւաբար նաեւ «Ծիրակացի» *։

Սոկրատի երկասիրութիւնը թարգմանուած է վրահայ քաղկեդոնիկ միջավայրի մէջ, ուստի եւ ամէնէն յառաջ Վրահայերու մատչելի եղած։ Անոնց ամէնէն աւելի հետաքրքրական երեւցած պիտի ըլլայ Սոկրատի Ա. 20 գլուխը (էջ 61—67), որ խորագիր կը կրէր. «Բայց ի դէպ է արդէն ասել, թէ ո՛րպէս Վիրք ընդ նոյն ժամանակաւն քրիստոնէացան»։ Սոկրատ, ինչպէս ինքնին կը խոստովանի, աչքի առաջ ունեցած է Ռուփինոսը, զոր կը համառօտէ։

Որովհետեւ ա՛յս բնագիրը աղբիւր ծառայած է Հայոց եւ Վրաց՝ Նունէի Վարքին համար, կարեւոր կը համարիմ ներկայացնել այս տեղ ամբողջ գլուխը, համեմատութեամբ յոյն սկզբնագրին հետ։ Բնագիր առած եմ Տէր-Մովսէսեանի հրատարակութիւնը, ինչ ինչ ուղղած եմ Երուսաղեմեան օրինակի ընթերցուածներուն հետեւելով։

* [Այս մասին տես նաեւ վարը, էջ 189։]

«Կին ոմն վարս պարկեշտս եւ զգաստս ունելով, աստուածային նախախնամութեամբ ի Վրաց գերեալ լինէր: Իսկ Վրացիքս այս բնակեն յԵւքսինոս Պոնտոս. բայց զատ[1] են յայն Վրացն, որք ի Սպանիայն:

Իսկ գերեալն կին ի մէջ բարբարոսացն կալով՝ իմաստասիրէր[2]. քանզի էր հանգերձ բազում ճգնութեամբ պարկեշտիւ եւ պահովք խորագունիւք. եւ անձանձիր կայր յաղօթս[3]: Իսկ զայս սքանչելիս տեսանելով բարբարոսացն ի գործողէն[4]՝ սքանչանային:

Ապա պատահէր նոցա թագաւորական[5] մանկան միոյ տղայոյ ի հիւանդութիւն անկանել: Եւ սովորութեամբ իւիք ի գեաւղն[6]՝ առ այլ կանայսն կին թագաւորին զմանուկն առ ի բժշկութիւն առաքէր, եթէ ուրեք գեղ լինէր առ ախտն ի փորձականութենէ մատուցանել մանկանն: Իսկ իբրեւ շրջեցուցեալ լինէր մանուկն ի գայեկէն իւրմէ եւ ոչ ի միոյ

---

[1] Յն. ἄποικοι գաղթականք. Հայն կարդացած կամ իմացած է ποικίλοι տարբեր, զատ:

[2] Յն. φιλοσοφέω «իմաստասիրեմ», հոս եկեղեցական գործածութեամբ միջամուխ լինել միանձնական կենաց, s'adonner à la vie ascétique.

[3] Յն. քանզի կեայր բազում ճգնութեամբ պարկեշտութեան եւ հանապազորդ աղօթիւք:

[4] Յն. սքանչանային ընդ նորութիւն իրացն ի հանդիսի անցելոց:

[5] Ոչ Ռուփինոս, ոչ Գեղասիոս, եւ ոչ նաեւ Սոզոմենոս ունին «թագաւորական»:

[6] Յն. ἐγχώριος, տեղական, ազգային. Թարգմանիչը կարդացած է ἐν Χώρῳ ի գեղջ: — Փորձականութիւն (յոյնը՝ ի փորձոյ, ի փորձառութենէ) միայն այս տեղ գործածուած:

*ումեքէ ի[7] կանանցն բժշկութեան հանդիպէր։ Յետոյ ապա ածին եւ առ կինն դերեալ։ Իսկ նա առաջի բազում կանանց վայելչաբար[8] զդեղն մատուցանէ. զի եւ ոչ զխտէր ինչ։ Այլ ընդալեալ ապա զմանուկն եւ ի մաղեղէն խուրում անկողնին[9] եդեալ՝ ասէր պարզաբար. Քրիստոս, ասէ, որ զբազումս բժշկեաց, և՛ւ զայս մանուկս բժշկեսցէ։ Եւ աղաւթեալ այսու բանիւ եւ կարդացեալ զԱստուած՝ առժամայն մանուկն առողջանայր. եւ կեայր յայնմանէ բարւոք։*

*Իսկ հոչակ աստուստ կանանց բարբառոաց եւ կնոջ թագաւորին ընթանայր. եւ յայտնագոյն լինէր դերեալն։*

*Յետ բազում ինչ իրի[10] եւ կին թագաւորին անկեալ լինէր ի հիւանդութիւն ինչ. եւ զկինն դերեալ կոչէր։ Իսկ նորա հրաժարեցելոյ[11] ոչ ելանել ի չափաւորեալ իւր սովորութենէն. այլ ածեալ զնա[12] եւ առնէր նմա, զոր արար ի վերայ մանգանն յառաջագոյն. եւ նոյնժամայն ախտացեալն բժշկէր եւ գոհանայր զկնոջէն։ Իսկ նա ասէր. Ոչ իմ գործս, այլ Յիսուսի Քրիստոսի (որդւոյ Աստուծոյ) զաշխարհս արարողի։ Զաս կարդա-*

---

[7] *Ձեռագիրք եւ Տպ. չունին «ի»։*
[8] *Յն. ոչինչ նիւթական* (ὑλικὸν).
[9] *Յն.* στρωμάτιον, *ծածկոց, վերարկու, անկողին. Ռուփինոս եւ Գեղասիոս ունին հոս* saccus, σάκκος, *այն է մազէ հիւսուածք, խարազն։*
[10] *Յն. եւ յետ ոչ բազում ժամանակի։*
[11] *Յն. եւ իբրեւ չառ յանձն նա։*
[12] *Յն. նա ինքն (թագուհին) ածաւ առ նա։*

լով յարդարէր ճշմարտիւ զԱստուած ճանաչել:

Իսկ սքանչացեալ Թագաւորն Վրաց վասն [զ]առ ի հիւանդութենէն յառողջութիւն վաղվաղակի փոփոխութեան[13]. եւ հարցեալ թէ ո՞վ է որ բժշկեացն, պարգեւս գերելոյն Թագաւորն առաքէր: Իսկ նա ասէր ոչ հայել[14] ի մեծութիւնն. քանզի ունէր մեծութիւն զաստուածպաշտութիւնն. եւ մեծամեծս ընդունել պարգեւս, զի ծանուցէ[15] զԱստուած զառ ի նմանէ ծանուցեալն: Զայս ասելով նորա զպարգեւս անդրէն առաքէր: Իսկ Թագաւորն զբանսն չուեմարանէր (ի սրտի իւրում):

Իսկ յետ աւուրց բազմաց ելանել նորա[16] յորս, պատահէ այսպիսի ինչ: Զկատարսն ամենայն եւ զդաշտսն, ուրանաւր որսն, ունէր միգային խաւար բազում: Քանզի անապատ[17] էր որսն եւ անանցանելի ճանապարհն եւ յանհնարութեան[18] բազմի եղեալ, կարդայր առ աստուածսն[19] իւր, զոր պաշտէրն: Եւ

---

13 Տպ. վասն զառ ի հիւանդութենէն առողջութիւն վաղվաղակի փոփոխութեամբ:

14 Յն. ոչ կարօտանամ մեծութեամբ:

15 Յն. ընկալջիք պ. եթէ ծանիջիք զառ ի յինէն ծանուցեալն:

16 Յն. իբրեւ եղ նա յորս:

17 Յն. ἄπορος, դժուարին. թերեւս կարդացուած՝ ἄφορος, անբեր, ստերջ, անապատ:

18 Տպ. յանհնարութեամբ: Փ. Ս. յանհնարութեան:

19 Տպ. աստուածն:

20 Այսպէս Տպ.: Գտանե՞լ, յն. եւ իբրեւ ոչին օգտէր, այսպէս նաեւ Փոքր Սոկրատ՝ «ոչինչ օգտէր»:

որպէս ոչինչ լինէր ուսանել[20], յետոյ ապա մատախորհ լինէր. զԱստուած գերելոյն առնու եւ զսա կարգա աւգնական: Եւ ի յաղաւթելն՝ ի միջէն խաւարն լուծանի:

Եւ սքանչանալով ընդ եղեալն՝ ուրախութեամբ ի տուն իւր երթայր եւ զպատահումն պատմէր կնոջն իւրում: Եւ զգերեալն կոչեալ հարցանէ, թէ Ո՞վ է Աստուածն, զոր պաշտես: Իսկ նորա յանդիման եկեալ՝ քարոզ Քրիստոսի զթագաւորն Վրաց արար: Քանզի հաւատացեալ ի Քրիստոս ի ձեռն բարեպաշտ կնոջն՝ զամենայն զորս ընդ իւրեւ Վրացիս կոչէ եւ զպատահմունսն զառ ի բժշկութիւն մանկանն եւ կնոջն, այլ եւ զորս լուա որոյն պատմեալ՝ յորդորէր զնոսա զԱստուած գերեցելոյն պաշտել:

Եւ լինէր այսուհետեւ իւրաքանչիւր ոք քարոզ Աստուծոյն բանի. թագաւորն՝ արանցն եւ կինն՝ կանանցն:

Ուսեալ ի կնոջէն եւ զձեւս եկեղեցեացն Հռովմայեցւոց՝ տուն աղաւթարանի հրամայեաց շինել. եւ նոյնժամայն ի շինումն պատրաստէր: Եւ տունն կանգնեալ լինէր:

Եւ իբրեւ զսիւնսն կանգնէին, համբարձեալ լինէին[21], անտեսութեամբ ինչ առ հաւատն զընակիչսն Աստուծոյն[22] քարշէր նախախնամութիւնն: Քանզի մինն ի սեանցն

---

[21] Յն. չունի «համբարձեալ լինէին», այլ՝ կանգնել զուն գործէին:

[22] Տպ. զընակեալսն. Երուս.՝ զընակիչսն այն. «այն» կարգա՛ Աստուծոյն:

անչարժ մնայր. եւ ոչ մի ինչ գտանէր մեքենայ կարել չարժել զնա. այլ եւ փոկքն կտրեալ լինէին եւ մեքենայքն անկեալ: Ապա անյոյս եղեալ գործողացն՝ գնացին: Եւ յայնժամ ցուցանի հաւատ գերեցելոյն. քանզի գիտացեալ հաստանէ ի տեղին եւ գլխերն ամենայն յաղաւթս պարապեալ: Նախախնամութեամբն Աստուծոյ կանգնի սիւնն եւ բարձրագոյն (քան) զարիսխն յաւդսն հաստատէր՝ ոչ իրիք ի ծայրն հպեցելոյ[23]: Իսկ ի տուընջեանն կայր թագաւորն ի վերայ չինածին հող տանելով. եւ տեսեալ զսիւնն ի յիրմէ կախեալ՝ զարմանայր ի վերայ եղելոյն, սքանչանային եւ որք ընթերն կային: Քանզի յետ սակաւ ինչ ի յաչս նոցա ընքեամբ չարժմամբ իջեալ սիւնն հաստատէր: Գոչումն բազում տուեալ հետեւեցաւ մարդկանն ճշմարիտ զհաւատ թագաւորին վերակոչեցելոյ[21] եւ աւրհնելով[24] զԱստուած գերեցելոյն: Ապա հաւատացեալք յաւժարութեամբ բազմաւ նաեւ զայլ սիւնսն կանգնէին. եւ ոչ ի յերկարս ինչ նոցա գործն կատարէր:

Եւ բարեխաւսութիւն[25] տուեալ առ թագաւորն Կոստանդին լինէր. աղաչելով դաշնաւորք անտի յառաջ Հռոմայեցւոցն լինել եւ առնուլ եպիսկոպոս (եւ) քահա–

---

[23] Յն. տանց ամենեւին ի յատակն հպելոյ:
[24] Յն. որք ...վերակոչէին եւ օրհնէին:
[25] Յն. πρεσβεία, պատգամաւորութիւն. աղօթք, խնդրուածք. բարեխօսութիւն։

նայական վիճակ. քանզի ստուգապէս հաւատալ ասեն Քրիստոսի[26] :

Զայս ասէ Ռուփին ի Բակրոյ ուսեալ, որ յառաջ էր թագաւոր[27] Վրաց, իսկ յետոյ եկեալ ի Հռոմ[28]՝ կարգապետ[29] որոց ի Պաղեստին զաւրացն[30] եղեալ եւ յետ այսորիկ զաւրավարացն, որ ընդդէմ Մաքսիմոսի բռնակալի պատերազմն Թէոդոսի թագաւորի համաջանաւղ լինէր[31] :

Այսու պատճառով եւ Վիրք առ Կոստանդնի ժամանակաւքն[32] ի քրիստոնէութիւն եկին» :

Ուշադիր կ'ընեմ որ Սոկրատ համառօտելով Ռուփինոսի տողերը, իր կողմէ աւելցուցած է, իմաստի բացայայտութեան համար, «կին ոմն... ի Վրաց գերեալ լինէր»· «թագաւորն Վրաց», «զթագաւորն Վրաց», «զօրս ընդ իւրեւ վրացիս» եւ վերջին պարբերութիւնը՝ «Այսու պատճառաւ — եկին» :

---

[26] Յն. Յետ այնորիկ պատգամաւորութիւն առ թագաւորն Կոստանդիանոս լինէր, առ ի խնդրել, զի յայնմհետէ դաշնաւորդք Հռոմայեցւոց լինիցին եւ ընկալցին եպիսկոպոս եւ քահանայս (բառական «քահանայական վիճակ, կղեր») :

[27] Յն. βασίλικος, արքայիկ, թագաւոր. Ռուփինոս ունի հոս rex. Տպ. լսեալ :

[28] Յն. առ Հռոմայեցիս :

[29] Յն. ταξίαρχος, հրամանատար զօրագնդի :

[30] Տպ. զաւրուցն :

[31] Յն. συνηγωνίσατο, συναγωνίζομαι «մարտակից լինել» բայէն հանկցուած է συναγωνιάω «կարեկից լինել» :

[32] Տպ. ի ժամանակին Կոստանդնի եւ Վիրք ի ք. եկն :

Իրմէ են նաեւ երրորդ եւ չորրորդ հատուածներու «թագաւորական մանկան», «կին թագաւորին», «կնոջ թագաւորին» ընդգծուած բառերը, ուր Ռուփինոս պարզապէս «կին» մը նկատի ունի, որ իր հիւանդ մանուկը առած դունէ դուռ կը շրջի, ճար մը գտնելու համար ի դարման հիւանդին:

# Գ.

## ԱՀԱՐՈՆ ՎԱՆԱՆԴԱՑԻ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ս. ԽԱՉԻՆ ՆՈՒՆԷԻ

### 1. Հ. ԱՀԱՐՈՆ ՎԱՆԱՆԴԱՑԻ

*Եղիշէ*[1] *կը յիշէ Ս. Քահանայից Թուին մէջ «Ղեւոնդ երէց յԻջաւանից գեղջէ»: Այս Ղեւոնդը Ղ. Փարպեցի*[2] *գիտէ պարզապէս «Ղեւոնդ երէց ի Վանանդայ»: Թէպէտ այժմ անկարող ենք մատնացոյց ընել այս Իջաւանից տեղն ի Վանանդ*[3]*, բայց եւ այնպէս նոյն գեղէն կը յայտնուի այժմ նաեւ «Հայր Ահարոն Վանանդացի, Թոռն Ղեւոնդ Երիցու յԻջաւանից գեղջէ*[4]*»:*

*Ահարոն կը ներկայացնէ ինք զինքը «սպասաւոր» Նունէի Ս. Խաչին որ ի Վանանդ եւ համանուն «Ս. Խաչ» վանքին միաբան: Ան կ'ապրէր Սմբատ Բագրատունի իշ-*

---

[1] *Եղիշէի Մատենագրութիւնք*, Վենետիկ 1859, էջ 139:

[2] *Փարպ.* 101:

[3] *Ալիշան*, *Այրարատ*, էջ 90:

[4] *Այսպէս նաեւ Մեսրոպ երէց* 967*ին կը ներկայացնէ ինք զինքը. «Ես Մեսրոպ երէց նուաստ քահանայ ի Վայոց ձորոյ ի գեղջէ Հողոցմանց, ուստի Յովսէփ էր երանելի նահատակն... ես Մեսրոպ աշակերտ... կից Ս. Յովսեփայ երիցու». հմմտ. Փարպ.* 38. *«Ս. Յովսէփ, որ էր ի գաւառէն Վայոց ձորոյ, ի գեղջէն, որում անուն Հողոցիմք»:*

*իշխանին օրով (926—956)։ Հետացան, կ՚ըսէ Արարացիք եւ հաստատուեցաւ «յաշխարհիս մերում» ազգն Բագրատունեաց․ «եւ եղեւ աշխարհիս մերում խաղաղութիւն․ եւ տիրէ Աբլաբաս Բագրատունի»։*

*Երբ կը փախճանէր Անիի մէջ Աշոտ պատրիկ, իր որդին Սմբատ կը գտնուէր Սամարա իբրեւ պատանդ Ամիրապետի քով․ «Սա, կը գրէ Ստ․ Ասողնիկ, էր ի մանկութեան պատանդ ի Սամարա ի Դրան արքունեացն յաւուրս Ռաշտին Հարունայ (786—809)․ եւ ապա արձակեալ յՄՀԵ (826/27) թուականին՝ եկն ի Հայս»․ եւ հօրը իշխանութիւնը ժառանգեց․ «զկնի սորա Սմբատ որդի նորին, որ Ապլաբասն կոչեցաւ, ամս Լ [5]»։ Սմբատի իշխանութիւնը կ՚ընդգրկէր Այրարատեան նահանգը։ Քիչ յետոյ խաղաղութիւն կնքելով Սեւադայի հետ «առնու ի նմանէ զպատիւ հայրենի սպարապետութեան [6]»․ եւ իբրեւ նիզակակից կը մասնակցի Սեւադայի կռուին ընդդէմ Հօլ (Խալիդ բ․ Եազիդ բ․ Մազեադ աշ–Շէյբանի) ոստիկանի (827—833) [7]։ 855ին Բուղա ոստիկան ուրիշ հայ նախարարներու հետ նաեւ Սմբատ սպարապետը կը տանի Սամարա, ուր եւ կը*

---

[5] *Ստ․ Ասողնիկ, էջ* 106։

[6] *Վարդան, էջ* 79։

[7] *Յովհ․ Դրասխանակերտցի, էջ* 146։ *Հմմտ․ Ռ․ Ֆասմէր, Ժամանակագրութիւն Հայաստանի ոստիկաններու առաջին Աբասեանց օրով․ Թրգմ․ Դկտ․ Հ․ Վ․ Ինգլիզեան, Վիեննա* 1933, *էջ* 85—86։

վախճանի Սմբատ 856ին «վասն Քրիստոսի խոստովանութեան [8]»։

Ըստ Ահարոնի ակնարկութիւնը, թէ «եւ եղեւ աշխարհիս խաղաղութիւն եւ տիրէ Արլարաս Բագրատունի», կ՚ենթադրէ 826—855 տարիները, երբ, դոնէ Այրարատեան նահանգին մէջ, կ՚իշխէր խաղաղութիւն։

Ահարոն Ս. Խաչի վանքը կը գտնուէր, երբ Սպքի ոստիկան «մինչեւ եկն եհաս առ մեզ, որ կոչի Խաչի վանք եւ յափշտակեալ զսպաս եկեղեցեացս»։

Ահարոնէն ունինք միայն այս փոքրիկ գրուածքը, որ ծանօթ եղած է նաեւ Մխիթար Այրիվանեցւոյ։ Սա իր ժամանակագրութեան մէջ կը գրէ յամն 885—900․ «Աստ հայր Գագիկ, հայր Ահարոն, տէր Մաշտոց» (70)․ յամն 452—499․ «Սուրբ Ծուշանիկ նահատակեցաւ եւ Անդրէաս գնունեայ Խաչն ի Սպեր տարաւ» (էջ 62)։

Խորագիրը երկրորդ ձեռքէ ընդլայնուած է, ինչ ինչ քաղելով բնագրէն։ Սկզբնականն ըլլալու էր «Պատմութիւն Ս. Նշանին Նունէի Վրաց առաջնորդի․ չարունակութիւնը «հօր Ահարոնի — Վրաց» հանուած կը համարիմ § 10էն, ուր զետեղած եմ վերստին։

Պատմութեան գլխաւոր նիւթն է «Ս. Նունէի Ս. Նշանը», այս ինքն Ս. Խաչը, որ

---

[8] Ստ. Ասողնիկ, 110։ Հմմտ. Հ. Ն. Ակինեան, Մատենագրական Հետազօտութիւններ, Բ., էջ 326—329։

կ՚ըսուի թէ Մծխիթայի բլուրէն փախցուած տարուած է Վանանդ եւ պահուած Ս. Խաչի վանքին մէջ: Պատմութեան ծիրը այսպէս կը դառնայ. Նունէ Վրաց «առաջնորդը» կը կազմէ փայտեայ մեծ խաչ մը, զոր կ՚օրհնէ եւ կը կանգնէ Մծխիթայ քաղաքի դիմաց բարձրացող լեռան վրայ: Վիրք ընդունելով քրիստոնէութիւնը մեծ յարգութեամբ կը պատուէին այս Խաչը: Ս. Շուշանիկ երբ վախճանելու վրայ էր, կը յանձնարարէ Տարօնէն իրեն եկած Անդրէաս վանական երէցին, որ Ս. Խաչը Տարօն տանի եւ Մամիկոնեաններու յանձնէ, որպէս զի Պարսիկներու ձեռքը չիյնայ եւ չանպատուի: Անդրէաս կը յաջողի գաղտագողի փախցնել Ս. Խաչը. ուրիշ նշխարներու հետ կը տանի Համէջական սահման, Պարխար լեռան վրայ անմատոյց այր մը: Կը լսէ հոն թէ Հմայեակ Մամիկոնեանի որդին Գրիգոր իր զօրագունդով Վանանդ կը գտնուի: Լուր կու տայ անոր Անդրէաս, թէ իր քովն է Ս. Նշանը: Գրիգոր կը հասնի հոն եւ կ՚առնէ Ս. Խաչը եւ կը տանի կը դնէ Կապուտայ բերդը: Ապա, Զենոն կայսեր օրով, Ս. Խաչը կը փոխադրուի Կարս, ուր կը շինուի Ս. Խաչ անուն վանք մը:

Աղբիւրներ: Ինքնին կը խոստովանի Ահարոն, թէ «բազում աշխատութեամբ եւ խուզիւ քննեալ» հանած է այս Պատմութիւնը «ի բազում մատենից Հայոց եւ Վրաց»: Յանուանէ կը յիշէ հետեւեալ աղբիւրները.

ա. Ա գ ա թ ա ն գ ե ղ ո ս : Նունէի Վրաստան գալն եւ Ս. Խաչի կանգնումը, ինչպէս եւ Սրբուհւոյն քարոզութիւնը պատմելէ ետքը կը գրէ. «Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ»: Այս նախադասութիւնը Մ. Խորենացի չրջած է. «Որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս» (Բ. 86): Աւելորդ է ըսել, թէ Ագաթանգեղոսի մէջ այս մասին որ եւ է խօսք չկայ: Բայց կը տեսնուի թէ ծանօթ է Ահարոն այդ գրքի վրացերէն թարգմանութեան, ուսկից առած է Ս. Նունէի մասին իր տեղեկութիւնները:

2. Վ կ ա յ ո ւ թ ի ւ ն Ս. Շ ո ւ շ ա ն կ ա ն : Հաստատած է մեզի այս վկայութիւնը[9], թէ հայերէն եւ թէ վրացերէն. բայց չկայ հոն ակնարկութիւն «Նունէի Ս. Խաչի» մասին, բայց կ'ըսուի թէ «գայր եղբայր բդեշխին Ջոջիկ եւ երկրպագէր Սուրբ Նշանին, որ առաջի Տիկնոջն» (էջ 44): Թէպէտ պահուած է մեզի այս Վկայութիւնը, սակայն կայ հիմ ենթադրելու թէ կար աւելի ամբողջական մը, զոր ունեցած է Ահարոն իր ձեռքին տակ: Այսպէս այժմեան Վկայութիւնը երբ կը յիշէ Յուրտաւի եպիսկոպոսը՝ «եպիսկոպոսն ոչ

[9] Վկայաբանութիւնը հրատարակուած է Սոփերք հայկականք. հատոր Թ. (Վենետիկ 1853) էջ 10—47: Գեղեցիկ ուսումնասիրութիւն մը նուիրած է վկայաբանութեանս P. Peeters, Sainte Sousanik, martyre en Arméno-Géorgie († 14e décembre 482—484): Analecta Bollandiana 53 (1935) 5—48, 245—307, ուր եւ առած է Վկայաբանութեանս լատիներէն թարգմանութիւնը:

պատահէր ի ժամուն յայնմիկ ի տանն Բդեշխին» (էջ 15, 21 եւն), չի տար անոր անունը. բայց Ահարոն կը կոչէ յանուանէ. «Իսկ Ափոց եպիսկոպոս Դրանն արքունի». որ այլուստ ալ վկայուած է. Կիւրիոն երբ կը թուէ եպիսկոպոսները «որ ի Ցուրտաւ լեալ են ի Ս. Շուշանկանէ եւ այսր», կը յիշէ առաջիններէն՝ «Ափոց, Գառնիկ, Սահակ» եւ այլն[10]:

3. Վարք Ս. Սահակայ: «Եւ ի Վարուց Ս. Սահակայ»: Հաւանօրէն Ղազար Փարպեցւոյ Պատմութիւնը կ՚ակնարկուի, ուսկից քաղած կ՚երեւայ տեղեկութիւնները Հայաստանի աղէտներու նկատմամբ:

4. «Եւ ի ճգնաւորէն Անդրէասու»: Բնագիրը հոս «եւ» շաղկապը չունի, եւ կրնայ իմացուիլ նաեւ, թէ Անդրէաս գրած ըլլայ Ս. Սահակի վարքը, բայց աւելի հաւանական է ենթադրել, թէ Անդրէաս գրած ըլլայ Ս. Խաչի փոխադրութեան պատմութիւնը: Կ՚ըսուի թէ սա էր «սնեալ առ ոտս Ս. Սահակայ» եւ «եկեալ էր զկնի տիկնոջն (Շուշանկան) յաշխարհէն Մամիկոնեանց, վանական ի Ղազարու վանաց, ի յերկրէն Տարօնոյ» «եւ յաւերմանէն Հայոց անդր (ի Ցուրտաւ) հասեալ խաղաղեալ կայր»: «Աւերումն Հայոց» անշուշտ 451—454 տարիներու դէպքերը կ՚ակնարկէ, երբ ստուգիւ խնայուեցաւ Ցուրտաւ: Անդրէաս իբրեւ Դրան երէց «գերիս որդիս եւ զմի դուստր Բդեշխին», այս—

---

[10] Գիրք Թղթոց, էջ 178:

*ինքն Վազգէնի, «կնքեալ էր եւ որդխացուցեալ»: Վկայութեան մէջ կը յիշուին Շուշանիկէն երեք մանչ եւ մէկ աղջիկ զաւակ (էջ 13). Թերեւս Անդրէաս ըլլայ այն «մի ումն ի քահանայից», որ պաշտպան կանգնեցաւ Ս. Շուշանկան եւ այս պատճառաւ ընդունեցաւ Բդեշխէն հարուածներ (էջ 34): Այս ճգնաւորին՝ «սրբոյն Անդրէասու տացեալ» հատուածը ցոյց կու տայ, թէ Ահարոն ձեռքի տակ գրաւոր աւանդութիւն մ'ունէր Ս. Խաչի մասին, որ սակայն Ս. Նունէի Խաչը չէր, այլ Ս. Շուշանկան «Նշանը»: Այս մասին պիտի խօսիմ առանձին:*

5. *Վկայաբանութիւն Ս. Համայեկի եւ Թատաստուն արանցն:*

*«Գտի, կ'ըսէ, եւ զսրբոյն Համայեկի զՎկայաբանութիւն Խ. արամբք ի տանն Տայոց, որ այժմ Թատասնի վանք կոչի»: Գիտենք Ղ. Փարպեցիէն, որ Համայեակ Մամիկոնեան, եղբայրն Կարմիր Վարդանի, 450ին ուղարկուեցաւ ուրիշներու հետ դեսպան առ Թէոդոս Բ. խնդրելու օգնութիւն Յազկերտ Բ.ի դէմ: Թէոդոս վախճանեցաւ 450, Յուլիս 2. իսկ Մարկիանոս անկարելի համարեցաւ Հայոց խնդիրքը: Համայեակ վերադարձին պատսպարուեցաւ Պարխար լեռան ամրոցներու մէջ. Տայոց Որջնհաղ գիւղին մօտ ընդհարուելով Պարսից հետ, «անդ զկատարելութեան պսակն ընդունէր երանելի սեպուհն Համայեակ» իր ընկերներով (էջ 74): Փարպեցի կը յիշէ Համայեակի զաւակներէն Վա–*

հան, Վասակ, Արտաշէս եւ Վարդ: Գրիգորի յիշատակութիւնը, զոր կ'ընէ Ահարոն, ուրիշ կողմէ վկայ չունի: Բայց ծանօթ է մեզի Գրիգոր Վասակի որդին, ուստի թոռն Հմայակի. կը պատմէ Ղ. Փարպեցի, թէ Պերոզի մահէն ետքը գահ բարձրացաւ իր եղբայրն Վաղարշ, որուն դէմ ելաւ Պերոզի որդին Զարեհ. արքայական բանակին օգնութիւն ուղարկեց Վահան իր հեծելազօրէն գունդ մը Վրէն Վանանդացւոյ առաջնորդութեամբ. «ընդ որս կազմեալ արձակէր եւ զիւր եղբօրորդի մի, զորդին նահատակին Վասակայ զԳրիգոր...: Անդ քաջացեալ հայրանման սեպուհն Մամիկոնէից Գրիգոր, ցուցեալ մեծ քաջութիւն... եւ հռչակեալ նորա լաւութեան անուն՝ հասանէր մինչեւ ի թագաւորն Վաղարշ»: Զարեհ կը պարտուի (Փարպ. էջ 171—172):

Ի՞նչ աղբիւրէ քաղած է Ահարոն Գրիգորի մասին անդրագոյն տեղեկութիւնները: Յիշուած Վկայաբանութենէ՞ն: Նիկողայոս Մառ Աթոսի մէջ երեւան բերած է վրացերէն լեզուով «Վկայաբանութիւն Ս. Վարդանայ եւ եղբօր նորա Հմայեկի, Վահանայ, Սահակայ եւ ՃԼԷ վկայիցն»: Այս վկայաբանութեան բնագիրը, որ կապ ունի Եղիշէի Ե. յեղանակին հետ, հայերէնով մինչեւ ցայժմ չէ գտնուած: «Եղիշէ պէտք է այդ վկայաբանութիւնից օգտուած լինի, որովհետեւ Ե. յեղանակի յառաջաբանը այս վկայաբանու–

թեան խօսքերով է սկսում»: Վրացերէնը հայերէնէ թարգմանուած է [11]:

6. «Գտի եւ այլ բազում յիշատակ սըր- բոց, որոց մտաւոցօնք եղեալ ի տաղնապ լի- նելոյ աշխարհիս»: Հ. Ալիշան այս տողերէն կը հետեւցնէ թէութեամբ· «Թերեւս եւ հա- ւաքելով այդ սրբոց յիշատակները, ինքը Ահարոն այլ գիրք մի ձեւացուցած ըլլայ [12]»: Յամենայն դէպս մեզի չէ հասած ան:

7. *Սոկրատի Եկեղեցական Պատմութիւն*: Կա՛մ ուղղակի եւ կա՛մ անուղղակի ծանօթ է Ահարոն Սոկրատի Պատմութեան Ա. 20 գլխուն: Այս մասին յետոյ:

8. Կը գրէր Ահարոն, թէ բացի հայկա- կան աղբիւրներէ օգտուած է նաեւ վրացե- րէն գրքերէ· անոնց անունը չի տար: Առանց տարակուսի ունէր Ահարոն ձեռքի տակ վրացերէն Ս. Նունէի վարք մը:

Նունէի Ս. խաչը: Ահարոն կը զանա- զանէ Տուչանիկի Ս. Նշան եւ Նունէի Ս. Խաչ: Առաջնոյն Վկայարանութեան մէջ կ'ըսուէր· Ջոջիկ, Վազգէն բդեշխի եղբայրը «գայր... եւ երկրպագէր Ս. Նշանին, որ ա- ռաջի տիկնոջն Տուչանկան» (էջ 44): Թէ ի՞նչ «Ս. Նշան» էր այն, չէ բացատրուած. եւ հարկ է կարծել թէ վաղուց հետէ անոր քով գտնուած, անյայտ ծագումէ Ս. Խաչ մ'էր:

---

[11] Изъ поѣздки на Афонъ. Հմմտ ԱՐԱՐԱՏ, 1899, էջ 209:

[12] Հայապատում, էջ 78—79:

*Ս. Նունէի խաչը, ինչպէս Աճառեան կը հաւաստէ, եւ ինչպէս Ս. Նունէի Վարքին մէջ կը պատմուի, կանգնուած էր Մծխիթայ քաղաքին հանդէպ, բարձր բլուրի մը վրայ։ Աճառեան աչքի առաջ ունեցած է հոս Ս. Նունէի վարքը նախնական խմբագրութեամբ, ուր Մծխիթայի յիշեալ Խաչը վերագրուած էր Նունէի։*

*Այս Խաչը, սակայն, ծանօթ էր ի հնուց իբրեւ «Ս. Խաչ Մծխիթայի»։ 608ին այդ խաչը դեռ իր տեղն էր. այս տարւոյն Հայոց Աբրահամ կաթողիկոս կը գրէր Վրաց Կիւրիոն կաթողիկոսին, թէ Հայք եւ Վիրք սովոր էին «աստի ի Մծխիթայի ի Խաչն եւ այտի ի Ս. Կաթողիկէ» Վաղարշապատի երթեւեկել ուխտագնացութեամբ*[13]*։ Նոյն տարւոյն կը գրէր նմանապէս Կիւրիոն կաթողիկոս Սմբատ Վրկան մարզպանին (ի Դուին). «Առ մեզ խափանեցէք գալ եւ երկիր պագանել պատուական եւ կենդանատու որոց Խաչիս Մծհիթայի, յորմէ խնդրելով պարգեւեցար հօր եւ մօր քում. եւ սորա առաջի սնար եւ սորա առաջնորդութեամբ ի բարի հասեր։ Թէպէտ եւ դուք չեկիք յերկրպագել, այլ մեք յամենայն ժամ յաղօթս յիշեմք առաջի որոց Խաչիս... եւ արժանի լինիջիք ի մօտէ տեսրս գալ եւ երկրպագել Ս. Խաչիս*[14]*»։ Նոյն Կիւրիոն կը գրէր դար-*

*[13] Գիրք Թղթոց, էջ 164։*
*[14] Անդ, 171։*

ձեալ Աբրահամ կաթողիկոսին. «Ազատ մարդիկն որ ի Հայոց ի Վիրս խնամութիւն արարեալ՝ ի սրբոյ Շուշանկայ պաշտօնն գային եւ ի Ս. Խաչս Մծխիթայ աղօթել եւ Օրհնաց հաղորդէին[15]»: Իսկ Աբրահամ կաթողիկոս իր Շրջաբերականին մէջ կ՚արգելէր. «Մի՛ աղօթիւք երթալով ի Խաչն որ զՄծխիթայի տեղեօքն համբաւի, մի՛ ի Մանգղեաց Խաչն եւ մի ի մեր եկեղեցիս զնոսա ընդունել[16]»:

Բացի Մծխիթայի եւ Մանգղեաց Խաչերէ կը յիշուի նաեւ Վարծիոյ Ս. Խաչը, որուն համար կ՚ըսուի թէ Ս. Մաշտոց կանգնած ըլլայ (անդ, էջ 534):

Մօտաւորապէս Թ. դարու սկիզբը խմբագրուած Աշխարհացոյցը դեռ անծանօթ է «Ս. Նունէի Խաչին», կ՚ըսուի թէ Արագուի դերը «անցանէ ընդ մէջ Մցխիթայ քաղաքի եւ Բլլոյ սուրբ Խաչին(եւ)իջանէ ի Կուր[17]»:

Թ. դարէն վերջը, երբ Նունէի Վարքը հրապարակ ելաւ, ինչպէս Աշարոն եւ Մ. Խորենացի, նաեւ Վրաց Տարեգիրքը Մծխիթայի այդ Ս. Խաչը կ՚անուանեն «Խաչ Նունեայ». այսպէս կը կարդանք նոյն Տարեգրքին մէջ. «Յաւուրս Գէորգայ (Թագաւորին Աբխազաց 921—955) եկն Սաջոր ամիրայն եւ այրեաց զՄցխիթա եւ գերեաց զԽաչն Նունեայ՝ կոտորատեալ. եւ եղեւ ի նոսա ախտ սեմբորի. եւ գիտացին թէ ի Խաչէն է պա–

[15] Անդ, 178:
[16] Անդ, 194:
[17] Աշխարհացոյց, հրտ. Սուքրեան, էջ 28:

տուհան. եւ ժողովեալ զհատեալ մասունս եւ լցին յամանս եւ կանգնեցին ի տեղւոջ իւրում [18]»: Ասկէ առնելով յիշած է դէպքս նաեւ Մխիթար Այրիվանեցի. «Սաջոր ամիրային էառ զՄծխիթայ եւ կոտորեաց զԽաչն Նունեայ [19]»:

Հակառակ այս ապացուցող վկայութիւններու Ահարոն կը պատմէ թէ «երանելի այրն Անդրէաս ջանայր զսուրբ Նշանն Նունէի զերծուցանել ի նախատանաց անօրէն այլազգեաց», այս ինքն Պարսիկներու, որոնք թերեւս Վաղքէնէն գրգռուած կարող էին անօրինել հանդէպ Խաչին: «Եւ սուրբ տիկինն Շուշանիկ աղաչէր զԱնդրէաս, զի փութանակի առցէ զսուրբ Նշանն Նունէի եւ զայլ եւս բազում ոսկերս սրբոցն՝ ի սրբոյն Գրիգորէ առ նա (Ս. Շուշանիկ) հաւեալ նշխարքըն եւ սպասք եկեղեցեաց եւ բազում խաչեր»: Հնազանդելով Տիկնոջ կամքին՝ Անդրէաս «երթեալ բառնայր զԽաչն Նունէի ի Բլրէն...: Իսկ Ջօջիկ, եղբայրն Բդեշխին օգնական լինէր Տիկնոջն եւ Անդրէասու... եւ յղարկէր յԱրեւմուտս կոյս»: Խաչ մը, որ կանգնած էր Բլուրին վրայ, տեսանելի Մծխիթայէն, անշուշտ քանի մը կանգուն ըլլալու էր. Ի՞նչպէս Անդրէաս կրցաւ զայն

[18] Պատմութիւն Վրաց, էջ 108: Բառն Սեմբոր (նաեւ Սեմփոր) կարդա՛ Սիմփոր. յն. symphore, symphora. հմմտ. Աճառեան, Արմատական Բառարան, ը. բ. Սեմփոր:

[19] Մխիթար Այրիվանեցի, Ժամանակագրութիւն, էջ 69, զետեղած է ընդ մէջ 841—851 տարիներու:

*ամփոփել եւ փախցնել մինչեւ Պարխար լեռը: Աւելորդ են սակայն այսպիսի խորհրդածութիւններ, վասն զի Ս. Խաչը դեռ երկար ժամանակ կանգուն մնացած է իր տեղը: Զրոյցին շարունակութիւնը, Խաչին փոխադրութիւնը Վանանդ եւ այլն կարող են ընթերցողներս կարդալ անձամբ:*

*Անդրէաս յարմար չգտնելով վայրը, «առեալ զԽաչն Նունէի եւ բնակեցաւ ի Սպեր գաւառի, ի խորշ մի լերինն Պարխարու: Եւ կացեալ անդ ամս եւթն, մինչեւ լուաւ զվախճանն սրբոյն Շուշանկանն*[20]*»: Ս. Շուշանիկ ըստ Վկայութեան, 7 տարի տառապեցաւ եւ վախճանեցաւ 482—484ին: Այս հաշուով Անդրէաս կա՛մ ուշ լսեց Սրբուհւոյն մահը, եւ կա՛մ Ցուրտաւէն մեկնեցաւ նա Վազգէնի ուրացութենէն անմիջապէս ետքը. բայց այս դէպքին ականատես եղած պիտի ըլլար Շուշանիկի տառապանքներուն: Աւելի համապատասխան պիտի ըլլար ժամանակի հանգամանքներուն, եթէ կարդանք «մինչեւ լուաւ զվախճանն* անօրէն Վազգէնի*»: Ղ. Փարպեցի (էջ 118) կը գրէ. «Լինէր յանկարծակի խռովութիւն յուզմանց յաշխարհին Վրաց. Վախթանգ սպանանէր զԲդեշխն զա-*

---

[20] *Վիեննայի Մխիթ. Մատենադարանի Թ. 90, թղ. 13ա. կ՚ըսուի թէ Սամուէլ կաթողիկոսի (510—521) օրով Թոնդրակեցիք «զխաչն կանգնեալ ի վերայ լերինն Պախրայ (Պարխարա՞յ) յաւուր Նոր Կիրակէի յանդուգն յարձակմամբ խորտակեցին» (Հմմտ. Տաշեան, Ցուցակ, էջ 358): Չ. դարուն գոյութիւն չունէին «Թոնդրակեցիք»:*

նորէնն Վաղգէն յամի ԻԸ. Պերոզի արքայի»: Պերոզի թագաւորութեան ԻԸ. տարին է 482—483: Ուստի Ս. Շուշանկան մահը պատահած ըլլալու էր այս թուականէն ոչ շատ յառաջ:

Անդրէաս այժմ իմանալով որ Գրիգոր Մամիկոնեան, Հմայակի որդին «բնակեալ ունէր... զամուրս Կապուտայ լերինն եւ զձորն Երասխայ եւ զՓոքր Բասեան, որ այժմ կոչի Վանանդ, եւ զփոքր ամրոցն Կարենեաց», լուր կը հասցնէ Գրիգորի, որ իր քովը կը գտնուին Ս. Խաչն եւ այլ մասունքներ, եւ կը խնդրէ որ անյապաղ գայ եւ գտնէ զինքը: Գրիգոր կը փութայ հանիլ ժամադրավայրը: «Եւ երանելի առն ծերոյն բացեալ զգանձս աստուածայինս՝ աւանդեաց Գրիգորոյ զամենայն. զի էր այրն մերձ ի վախճանել»: Կ'օրհնէ զԳրիգոր եւ իր աշխարհը. «եւ աւանդեաց զհոգին»: Գրիգոր կը վերադառնայ իր աշխարհը: Այս դէպք կ'ունենայ Լեւոն Ա. կայսեր (457—474) օրով: Ուստի անմիաբան են դէպքերը ուղիղ ժամանակագրութեան:

Թէոդորոս զօրավար: Պատմութեան շարունակութեան մէջ (§ 3) կ'ըսուի, թէ երբ յոյն զօրքը, որ կը նստէր Կարին-Թէոդուպոլիս, կը լսէ թէ Գրիգոր Մամիկոնեան մտած է հռոմէական սահման եւ Ս. Խաչը առած տարած է Վանանդ, անմիջապէս կը հետապնդէ զինքը. «հասին ի Վանանդ Փոքր կոչեցեալ»: Գրիգոր սակաւաձեռն գունդով կը

յարձակի անոնց վրայ եւ փախստական կ՛ընէ: Անոնց զօրավարն էր Թէոդորոս (Թորոս), որ զօրութեամբ Ս. Նշանին կը կուրնայ, եւ խաղաղութիւն կը կնքէ Գրիգորի հետ: Վերջինս դեսպան կ՛ուղարկէ «առ Լեւոն կայսր մեծ Հոռմայեցւոց եւ զգացուցանէ նմա զաղէտս աշխարհիս եւ զիւր գալն ի նորա աշխարհն», այսինքն կը բացատրէ, թէ ինչ նպատակով մտած եւ ելած է Հոռմէական սահման: Իր կարգին Թէոդորոս ալ կայսեր թոյլտուութիւնը կը խնդրէ, որ երթայ Փոքր Վանանդ Ս. Խաչին յուխտ եւ գտնէ աչքին բժշկութիւնը:

Թէոդորոս անուն Արեւելքի սպարապետ մը կը յիշուի 486ին, զոր Զենոն կայսր պաշտօնազուրկ կ՛ընէ նոյն տարւոյն յԱնտիոք տեղի ունեցած Հրէից կոտորածի պատճառաւ[21]:

Երկու հատակոտորներ հին ժամանակագրութենէ մը: Ահարոն այս պատմութեան կը կցէ, թերեւս իբրեւ ժամանակակից դէպքեր, երկու ժամանակագրական հատակոտորներ (§ 4), որոնք յունարէնէ հայերէն թարգմանուած ժամանակագրութենէ մը փրցուած հանուած կ՛երեւան:

ա. «Իսկ յամենայն աւուրս սին լուսոյ նման փողոյ երեւեալ յաւուրս քառասուն»:

---

[21] Joannis Malalae chronographia, p. 389 ed. Bonnae. Michel le Syrien, Chronique, II, p. 151 ed. Chabot, Le Beau, Histoire de Bas-Empire, l. XXXVI, 49.

Այս տեղիքը կը գտնեմ Թէոփանէսի ժամանակագրութեան մէջ յամն աշխարհի 5958, որ է Փրկչական 476 տարին[22]. Τούτῳ τῷ ἔτει σημεῖον ἐφάνη ἐν τῷ οὐρανῷ, νεφέλη ὥσπερ σάλπιγγος ἐκτύπωμα ἔχουσα ἐπὶ ἡμέρας μ΄ καθ' ἑσπέραν, այն է. «Յայսմ ամի նշան երեւեցաւ յերկինս. ամպ որ ունէր զձեւ փողոյ յաւուրս քառասուն ընդ երեկս:

Բ. «Ի նմին ժամու առաւ Հռոմ քաղաք ի Վաղենտինանացւոց զաւրաց: Եւ սատիկ պատերազմունք եղեալ եւ բազումք մեռան սպանմամբ յաւուրսն յայնոսիկ»:

Թէ ի՞նչ աղբիւրէ առնուած է տեղիքս, չեմ կրնար մատնանշել. բայց կը հայի Գերման Ոդոակրի արշաւանքին յԻտալիա, որ 476ին տիրեց Հռոմի եւ վերջ տուաւ Հռոմէական կայսրութեան: Ոդոակր զօրավարն էր Դանուբի հարաւակողմերը նստող գերմանացի վարձկան զօրքին, որ կը բաղկանար Սկիրրացի, Հերուլացի, Տիւրկիլինգացի եւ այլ ցեղերէ: Հիները զասոնք սովոր էին հաւաքական ձայնով կոչել Գոթացիներ (Գոթք, մերոնց քով Գունդք), Սկիւթացիներ, ի վերջոյ նաեւ Վանդալիներ: Կը համարիմ թէ վերջիններս կ՚ակնարկէն բնագրիս «Վաղենտինանացիք», որ աղաւաղուած կ՚երեւայ[23]:

[22] Theophanis chronographia, p. 177 ed. Bonn.

[23] Հմմտ. Theophanes, p. 203. Le-Beau, անդ, 1. XXXV, 51. Հ. Յ. Գաթըրճեան, Տիեզերական Պատմութիւն, Բ. Վիեննա 1852, էջ 456:

Սուրբ Խաչն ի Փոքր Վանանդ (§ 5)։ Գրիգոր Մամիկոնեանի ընդհարումը Բուզանդական զօրքի հետ տեղի ունեցած էր Փոքր Վանանդի մէջ, զոր «հրամայէր (Գրիգոր) կոչել... Կարմիր Փորակ», անշուշտ հոն թափուած արիւնի յիշատակին։ Պատմութեան մէջ անծանօթ է Մեծ եւ Փոքր Վանանդի զանազանութիւն։ Կը յիշուի միայն Ս. Սահակի վերագրուած Գահնամակի մէջ «ԺԴ. Վանանդացին... ԿԳ. Վանանդացին երկրորդն [24]», որ հաւանօրէն գաւառական բաժանում չ'ենթադրեր։ Բայց կը հանդիպինք «Կարմիր Փորակի» Արիստակէս Լաստիվերտացւոյ քով (էջ 16). Վասիլ կայսր «անցանէ ընդ Բասեան եւ հասանէ ի Վանանդ Կարմիր Փորակ». այսպէս երկու ձեռագիրներու համաձայն, ուրիշներ կը կարդան «կամ ի Փորակ»։ Փորակիս դիրքի մասին կը գրէ Հ. Ղ. Ալիշան (անդ, 76). «Թուին արեւմտեան հարաւային մասն լինել Վանանդայ, սահմանակից Ստորին Բասենոյ կամ Արեղենից՝ ըստ մեզ. քանզի առաջնոյն յիշողն (այսինքն Ահարոն) ասէ վասն Գրիգորի Մամիկոնեայ, որ իշխէր Վանանդայ, անցեալ ընդ Ձորն Տայոց, եւ Յունաց ի վերայ նորա դիմեալ ի Փոքր Վանանդ. անցք ընդ այն ի դէպ է լինել ի նշանակեալս մեր մասին. նոյնպէս եւ երկրորդին յիշողն (Ար. Լաստ.) ասէ» թէ Վա–

---

[24] Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 75 եւ 430—431։

ուիլ Բասենի վրայէն հասաւ «ի Վանանդ կամ ի Փորակ»:

Գրիգոր եւ իրենները յառաջ երթալով «հասին յամուրս Կապուտոյ լերինն». այս կը պատահի (476 տարւոյ) սեպտեմբեր 14ին, «քանզի յայնմ աւուր հանգեաւ Խաչն Նունէի ի Կապուտ ամրոցին»: Վարդան աշխարհագիր[25] թուելով Այրարատի գաւառները կ՚ըսէ. «Անդ է եւ գաւառն Գարեղենից եւ Աբեղէնից եւ բերդն Կապուտ, որ կոչի Արտագէրքէից»: Յովհ. Դրասխանակերտցի խօսելով Սմբատ Ա.ի մասին կը գրէ. «Երթեալ յամրոցս քարանձաւին ի Կապուտոյ (լերին), որ ի Ձորն Երասխայ, անդ դարեալ դադարէր, վասն զի անտեիկ էր ի մարդկանէ» (էջ 234 Ղուկ.) . Թշնամիք «խաղացին ի միջոց աշխարհին՝ մարտ եղեալ կուէին ընդ մեծ ամուրս Կապոյտ լերինն» (Եղիշէ, էջ 98), այս եւ նման վկայութիւններէ կը տեսնուի, թէ Կապոյտ ամրոցը Վանանդայ սահմանէն դուրս Արշարունեաց մաս կը կազմէր, ոչ շատ հեռու Կամրջաձորի վանքէն (Այրարատ, էջ 57—58):

Կ՚ըսուի, թէ «լինէր տօն Ս. Նշանին ի ԺԴ. սեպտեմբերի ամսոյ. քանզի յայնմ աւուր հանգեաւ Խաչն Նունէի ի Կապուտ ամրոցին» (§ 3, տ. 50—53): Զուգադիպութեա՞մբ յայնմ աւուր հանգեաւ Ս. Խաչն»

---

25 Բազմավէպ, 1887, էջ 136:

ամբողջին մէջ: Սեպտեմբեր 14 ընդհանուր Եկեղեցւոյ համար, արեւելք եւ արեւմուտք, տօն էր Վերացման Ս. Խաչի, գոնէ Ե. դարէ սկսած: Այսպէս գիտէ նաեւ Փոքր Սոկրատի Համառօտողը, որ յիշելով Ս. Խաչի Գիւտն ի ձեռն Հեղինեայ կը գրէ. «Անձնեն Նաւակատիս ի ԺԳ. սեպտեմբերի եւ յերկրորդ աւուրն ի ԺԴ. սեպտեմբերի՝ տօն սրբոյ Խաչին» (էջ 49): Հայոց Եկեղեցին, որ շարժական տոմարի վրայ հաստատած է իր եկեղեցական տարին, կը տօնէ Նաւակատիքն եւ Խաչվերացը Սեպտեմբեր 13—14ի մօտաւոր Շաբաթ—Կիրակիին: Այստեղ Աճարոն եւ Փ. Սոկրատ անշարժ տոմարի կը հետեւին, ուստի կը գտնուին կա՛մ վրական եւ կա՛մ բիւզանդական ազդեցութեան տակ, առաջինը աւելի հաւանական է:

Այս դէպքերը կը կատարուին ըստ Աճարոնի ժամանակագրութեան՝ Լեւոն Ա. կայսեր (457—474) օրով: Նա ունեցած է իր ձեռքին Տարեգիրք մը: Լեւոն կայսրը յիշած է անգամ մը նաեւ Ղ. Փարպեցի, էջ 113):

Ընդմիջարկութիւն մը: Ինձի կ'երեւայ թէ § 6 ուրիշ ձեռքէ ընդմիջարկութիւն մըն է, հանուած Թերեւս Կամրջաձորի Գետարգել սուրբ Նշանի Պատմութենէն: Ինքն իր մէջ անկապ եւ անյարիր նախորդ եւ յաջորդ հատածներուն. բնագիրն ալ կրած է խանգարում: Կը ներկայացնեմ սոորեւ երկու բնագիրները դէմ առ դէմ:

Ահարոն :

*Իսկ ի ժամանակս արեւ-դակնային երկրորդ եղա-նակին հասելոյ ի կէտ ա-մարայնոյ ի[սկ] Խորա-ձորն Արշարունեաց սաս-տիկ ջերմութեամբ. եւ բազում ախտականք դային ի կողմանց կողմանց, կի-սամեռք լինէին ի ջերմու-թենէն... եւ ջերմութեանն ոչ հանդուրժեալ ապաստա-ւորքն սրբոյ Նշանին :*

Պատմութիւն Գետարգել Ս. Նշանի :

*«Եւ էր վանքն այն (Հո-ռոմոց)* ի խորաձոր *ի վե-րայ բլրի միում. զորով շուրջ բակ առեալ պատէր մեծ գետն Ախուրեան. եւ գետն այն բազում ցաւս եւ վտանգս հասուցանէր վանացն. զի* յորժամ ա-րեգակն յամառնայինն տե-ղին հասանէր՝ *շոգեալ շողանայր վանքն ի տապոյ արեւուն. իջանէր ի քա-րանձաւսն, եւ օդք խոր-շակայինք եւ գազրահոտք եւ ցաւարերք ի գետոյ անտի փչէր ընդդէմ վա-նացն՝ ի չորից կողմանց» (Հ. Ղ. Ալիշան, Շիրակ, էջ* 28) :

Ս. խաչը Կարսի մէջ : *Տեղւոյն անյարմա-րութիւնը կը ստիպէ փոխադրել Ս. Խաչը Կարսի մօտերը* (§ 7) . *«Իսկ ի շինել աշխար-հիս Հայոց եւ ի վախճանել Լեւոնի կայսեր եւ ի թագաւորելն Զենոնի կայսեր, անկա-կած եղեալ Հայք՝ փոխեն զԽաչն ի Վանանդ մօտ առ ամրոցին Կարնենեաց ըստ հիւսիսոյ Ախուրեան գետոյ, յարեւելից, որ անուանի Խաչի վանք եւ սրբոյ Նշանին՝ Վանանդայ ուրբ Խաչի» :*

*Լեւոն կայսր յաջորդ ունեցաւ Զենոն Իսաւրացին* (474—491) . *«շինելն աշխարհիս*

Հայոց» կ՚ակնարկէ Վահանի մարզպանու-
թիւնը 485ին: «Կարնենեաց ամրոց», Կարուց
կամ Կարսի բերդն է: Թէ ինչո՞ւ Կարուց ամ-
րոցը «Կարնենեաց» կը կոչէ, չգիտեմ. Կոստ.
Պերփերուժէն գիտէ դայն ԺԱ. դարուն
«Կարս». Վիրք «Կարխս». Թովմ. Արծր.
Ասողնիկ՝ Կարուց քաղաք[26]:

Սպքի ոստիկան: Ահարոն կը դրէ (§ 8).
«Եւ ի բռնակալութենէ հարաւային զօրացն
բազում տանջանք եհաս ի ժամանակին յայն-
միկ: Եհաս ումն ի զօրացն հարաւոյ ոստի-
կան, այր... որում անուն կոչիւր Սպքի.
որոյ եկեալ յաշխարհս Հայոց... բազում
ուխտս աւերէին... զմեծ մենաստանն, որ
կոչի Բագուանու... զՍ. Կաթողիկէն ի Վա-
ղարշապատ քաղաքին, որ կոչի Շողակաթ,
եւ զվանքն Վահանայ եւ զվանքն Շապհոյ...
մինչեւ եհաս առ մեզ, որ կոչի Խաչի վանք.
եւ յափշտակեալ զապասս եկեղեցեացս»: Սպքի
յետոյ չզթայակապ կը տարուի ի Դուռն ար-
քունի. «եւ պահանջէին ի նմանէ զաւերումն
աշխարհիս եւ զհարկ»:

Բագուանի վանքի մասին երկար կը գրէ
Յովհ. Դրասխանակերտցի (էջ 108—110),
որ տեղի կ՚ունենայ Եզիտ ոստիկանի (785—
788)[27] օրով. սա «զմի ի պատուաւորաց ոս-
տիկան առաքէ» Բագրեւանդ, որ կը կո-
ղոպտէ Բագուանի Ս. Գրիգոր եկեղեցին:

[26] Հ. Ղ. Ալիշան, Այրարատ, էջ 77 եւ շար.:
Հիւբշման, Հին Հայոց տեղւոյ անուններ, էջ 363:
[27] Ցամէր, անդ, էջ 29—30:

Այն ենթադրականին անունը չի տար պատմագիրը, բայց Ահարոն գիտէ անոր անունը Սրբի: Այս եւ միւս եկեղեցիներու կողոպուտը պէտք է բաղ այսմ դնել 785—788 տարիներուն: Ահարոն, որ կը գրէ թէ «եհաս առ մեզ», ականատես եղած է դէպքերուս, այն ամէնուն, որոնք գործուեցան Ս. Խաչի վանքը: Արաբ պատմագիրներ յիշատակութիւն չեն ըրած Եգիպտի այս գործակալի մասին: Յովհ. Դրասխանակերտցի (էջ 330 եւ շար.) կը յիշէ ուրիշ երկու «Նասր Սրուկ» ոստիկան–գործակալներ Յուսուփ կուսակալի օրով, որոնք թէեւ որ եւ է աղերս չունին Սրբի հետ, բայց եւ այնպէս Սամուէլ Անեցի (էջ 99) անուանած է զանոնք Նասր Սրբի· որ կրկնուած է նաեւ Ստեփ. Օրբելեանի քով[28]: Մխիթար Այրիվանեցի, օգտուելով Ահարոնէ, կը զետեղէ դէպքերս ընդ մէջ 791—820 տարիներու. «Սրբի ամիրայ զվանորայսն Հայոց եւ զամենայն եկեղեցիս կողոպտեաց եւ ի Բաղդատ յղարկեաց զոսկին եւ զարծաթն[29]»:

§§ 9 եւ 11 յայտնապէս յետոյ ներմուծուած յաւելուածներ են: Կ'ըսուի. «Ապա յՅԿԱ թուականին Հայոց, ի կատարման Սմբատայ, մեծ կործանումն եղեւ աշխարհիս Հայոց· եւ առ հասարակ երկիրս աւերեալ կործանեցաւ» (§ 9): Խօսքը 910—913

[28] Էջ 28, հրտ. Էմինի:

[29] Մխ. Այրիվանեցի, էջ 68: Հմմտ. նաեւ Այրարատ, էջ 531:

*տարիներուն Յուսուփի ապստամբութիւննե-րու մասին է։ Սմբատ Թագաւոր նահատա-կուեցաւ ի Դուին Հայոց ՅԿԴ* (915) *թուա-կանին (Ասողնիկ* 165)։ *Պատմագիրը ժամա-նակի աղէտը նկարագրած է այսպէս. «Այս է խաւարաբեր ժամանակն Հայոց...* յորում ժամանակի անապատ եւ աւերակ եղեւ եր-կիրս Հայոց. քաղաքաց քակիլ եւ աւանաց ա-ւերիլ. *գիր եւ ցան յայլալեզուս եւ յօտար ազգս ընակչաց աշխարհիս...» (Աս.* 168)։

§ 11 *Ձեռագիրն ունի «Գրիգոր», զոր ուղղեցի Գէորգ, որ վախճանած է Հայոց ՅԽԷ* (898) *տարւոյն (Թովմ. Արծր.* 243)։

*Նկատմամբ գրութեան ժամանակի, Հ. Ղ. Ալիշան անգամ մը արտայայտուած է այսպէս, յիշելով Համայեակ Մամիկոնեանի եւ Բասեանից Վկայաբանութիւնը. զՎկայաբա-նութիւն Սրբոցն «յԹ. դարու նորագիտ հա-մարէր եւ Հայրն Ահարոն Վանանդեցի*[30]»։ *Ուրիշ առթիւ կը գրէր. «Թ. դարու վերջին տասնեակին գրած է սա (Ահարոն) Ս. Նունէի Խաչին պատմութիւնը»։ Իսկ յաւելուածա-կան մասին համար այսպէս կ'ըսէ. «Յայտնի չէ թէ Պատմութեան վերջն իրմէ՞ է, թէ ու-րիշ մի աւելցուցեր է, Խաչին ի Կարս քաղաք փոխադրութիւն (յամի* 931)[31]»։

*Բովանդակութեան համար իր գնահա-տանքն է. «Այս կարճ գրուածքի մէջ Ահա-*

---

[30] *Այրարատ, էջ* 54։

[31] *Հայապատում, էջ* 78։

*րոն չատ նոր, Հետաքրքրական եւ ոգեւոր տեղեկութիւն կ'ընծայէ անձանց եւ տեղեաց» (էջ 79) :*

*Աճարանի գրուածքն այս բովանդակութեամբ եւ այս ձեւով կը հանդիսանայ դաւագիրք մը այն անմահաւերական Պատմութիւններու, որոնք յերիւրուած, հիւսուած են այս եւ յաջորդ դարերուն՝ Հայոց, Խուարաճորոց, Կարմրաճորոց, Ջաղավանից, Վարագայ եւ այլ խաչերու շուրջը : Անոնք պատմական են, վասն զի կանգնուած են որոշ ձեռքերէ եւ որոշ տեղիներու մէջ, բայց տուած են ժամանակի ընթացքին գրուցական նկարագիր : Փորձել վերհանել անոնց պատմական կորիզը պիտի արժէ աշխատանք ըլլալ վասնզի :*

*Առաջինկայ Պատմութիւնս եթէ առնենք քննութեան վերլուծական գործողութեամբ, պիտի ստանանք այսպիսի պատկեր մը ·*

*ա · Վանանդի Ս · Խաչ վանքին մէջ Թ · դարու առաջին քառորդին ի պատուի էր Ս · Խաչ մը, կոչուած «Նուն ի Ս · Խաչ» :*

*բ · Կը վկայէին ժամանակակիցները, թէ ան բերուած էր Արշարունեաց Կապոյտ ամրոցէն · որ նախնարար Կարմիր Փորակ կը կոչուէր :*

*գ · Կար աւանդութիւն մը, որուն համաձայն Ս · Խաչս Կարմիր Փորակ եկած էր Վրաստանէն Սպերի վրայէն :*

*դ · Այս փոխադրութեան գործին մասնակցութիւն բերած են Շուշան(իկ) իշխա–*

նակին, Անդրէաս երէց եւ Գրիգոր իշխան: Կ՚ենթադրեմ, թէ այս անուններն, որոնք կը գտնուին արձանագրութեան մէջ, աւանդութենէն առնուած են:

Ե. Ահարոն, որ իբր 830ին կը ձեռնարկէր գրել Վանանդի Ս. Խաչին Պատմութիւնը, աւանդութեան այս տուեալները պիտի լուսաբանէր պատմական աղբիւրներէ: Տուշան(իկ) անունը գտաւ նա Ս. Տուշանիկի վկայաբանութեան մէջ. այն տեղ կար Անդրէաս երէցի անունն ալ. նոյնպէս յիշատակութիւն մը «Ս. Նշանի» մը մասին: Ս. Տուշանիկի շիրիմը ցոյց կը տրուէր Տփղիս քաղաքի Մետեխի բերդի մէջ: Ասկէ շատ հեռու չէր Մծխիթայի Ս. Խաչը: Տուշանիկ ծննդեամբ Մամիկոնեան էր. պիտի ցանկար անշուշտ որ իր «Ս. Նշանը» պատկանէր Մամիկոնեանց քով: Թ. դարուն կ՚իշխէր այն համոզումը, թէ Մամիկոնեանց բնաշխարհն էր Տարօն: Ուրեմն այս տեղ պէտք է փոխադրուէր Ս. Նշանը: Տարօնի Ղազարու վանքէն կը ներկայացուի նաեւ Անդրէաս: Տփղիսէն Տարօն ճանապարհը սակայն երկայնաձիգ էր եւ կարել դայն անհնարին ծերունի Անդրէասի համար: Այս պատճառաւ նա դադար կ՚առնէ Սպեր: Ղ. Փարպեցիէն տեղեկացած էր Ահարոն թէ իբր 484ին կար Գրիգոր Մամիկոնեան մը: Աւանդութեան «Գրիգորը» կարելի էր նոյնացնել համանուն Մամիկոնեանին հետ: Այսպէս Ս. Խաչը դարձեալ Մամիկոնեանի մը հովանաւորութեան

կը յանձնուէր։ Ը. դարու վերջին քառորդին Հրապարակ ելաւ Ս. Նունէի վարքը, ուր Մծխիթայի Ս. Խաչը Ս. Նունէէն կանգնուած կը ներկայացուէր։ Անշուշտ Ս. Շուշանիկ անոր մասին ալ խորհած պիտի ըլլար. Վրաստանէն բերուած Խաչը ան եղած պիտի ըլլար։ Այսպէս Ահարոնի ենթադրութիւնները։

Զ. Պատմութեան ծանօթ են նաեւ ուրիշ երկու Շուշաններ, երկուքն ալ «ապիկիպատ պատրիկ եւ Հայոց իշխան» Կամսարականներու տիկնայք. մին՝ Ներսեհի (650—702), որուն փեսան էր Ներսեհ Վրաց իշխան (672), եւ միւսը ծննդեամբ Մամիկոնեան, ամուսինն Արտաւազդի (735)։ Աւանդութեան «Շուշան(իկ»)» կարող էր նաեւ առնչուիլ մէկին կամ միւսը եղած ըլլալ։

Է. Արշարունիք, որ Կամսարականներու սեպհականութիւնն էր, սահմանակից էր Վանանդի։

Ը. Կամսարականները Է—Ը. դարուն խնամացած էին ինչպէս Վրաց Ներսեհ իշխանի, նոյնպէս Մամիկոնեանց հետ։

Թ. Գրիգոր Մամիկոնեան Հայոց իշխան վախճանեցաւ 684ին. Ը. դարուն կը յիշուի ուրիշ համանուն Մամիկոնեան մ՚ալ։ Թէ առնոք Վանանդի ալ տէր էին, յայտնի չէ. բայց յամենայն դէպս առաջինը իր թեւարկութեան տակ ունէր նաեւ Վանանդը։

Այս Ա—Թ կէտերը նկատութեան առնելով կարելի է թերեւս ըսել, թէ Վանանդի Ս.

*Մաչր Է. դարու երկրորդ եւ Ը. դարու առաջին քառորդին բերուած ըլլայ Կապուտամբոց:*

Ձեռագիրը: *Հրատարակութեանս համար հիմ առած եմ Երուսաղէմի Ս. Յակոբեանց Մատենադարանի Թ. 1, հատոր Գ, թղ.* 137*բ*—139*ա* (*ԺԵ. դարէն*)[33]: *Անկէ օրինակուած է նոյն Մատենադարանի Թ.* 154: *Բնագրէս օրինակ մը տրամադրուած է Հ. Ղ. Ալիշանի, որ յաճախ օգտուած է անկէ իր Այրարատի մէջ* (*էջ* 54, 104—105 *ծան. եւն*): *Խօսուած է գրուածքիս մասին նաեւ Հայապատում, էջ* 66 (*Անդրէաս*) *եւ* 78—79 (*Ահարոն*): *Ընդարձակ հատուած մը յառաջ բերուած է* (*ի մասին Անդրէասի*) *Հ. Գ. Զարբանալեան* (*Պատմութիւն հայկական հին Դպրութեան, Գ. տպ., էջ* 296—298):

*Գրուածքս ծանօթ եղած է հիներէն Վարդան Պատմիչի* (*էջ* 111), *որ կը գրէ յամին* 1098. «*Առ այսու ժամանակօք եմուտ սուրբ Մաչն Նուննայ ի յԱնի. այն որ ի յուրացմանն Վազգենի Վրաց առաջնորդի գաղթեցաւ ի*

[33] *Ձեռագրէս օրինակութիւն մը, զոր խնդրած էի Երուսաղէմի այժմ հանգուցեալ Տ. Մեսրոպ Նշանեան սրբազան Պատրիարքէն, ուղարկուած էր ինծ 1943ին. ապա զայս նոյնին պատճենը նաեւ Արտաւազդ արքեպիսկոպոսի կազմած տակաւին ձեռագիր Ցուցակին մէջ [այժմ հրատարակուած՝ Մայր Ցուցակ Հայերէն Ձեռագրաց Երուսաղէմի Ս. Յակոբեանց վանքի, Վիեննա 1948, էջ 33—35], զոր այնքան բարութեամբ տրամադրած էր ինծ օգտուելու համար: Այս տեղ կը յայտնեմ իմ շնորհակալութիւնս թէ Ս. Յակոբեանց Միաբանութեան եւ թէ Արտաւազդ Սրբազանին:*

*խորշս լերինն Պարխարու, ի ձեռն սուրբ վանականին Անդրէասայ յաշակերտաց սրբոյն Սահակայ։ Եւ կացեալ անդ զեօթն ամ, եւ ապա ազդ արարեալ Մամիկոնեանն Գրիգորոյ որդւոյ Համայեկի՝ տարաւ ի Կապոյտն կոչեցեալ բերդ եւ անտի փոխեցաւ ի Վանանդ եւ կոչեցաւ Վանանդայ Խաչ. եւ ի բառնալ տանն Մամիկոնէից յանօրէնն Սուքմանայ՝ բերաւ յԱնի, ի հայրապետութեանն տեառն Բարսղի. եւ կարգեցաւ նմա տօն կիւրակէն որ զկնի ուխտօրէից Խաչվերացն տօնի»։*

*Յիշեցինք վերագոյն տողերը նաեւ Մխիթար Այրիվանեցւոյ քով։*

*Ընդարձակ քաղուածքներ տուած է սակէ Գրիգոր Խլաթեցի իր Յայսմաւուրքին մէջ։*

## 2. ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՍՐԲՈՅ ՆՇԱՆԻՆ ՆՈՒՆԷԻ ՎՐԱՑ ՏԱՆ ԱՌԱՋՆՈՐԴԻ

Հայր Ահարոնի վանանդացւոյ, թոռին Ղեւոնդայ երիցու յիշատակին զեղջէ, բազում աշխատութեամբ եւ խուզիւ քննեալ ի բազում մատենից Հայոց եւ Վրաց, յաղագս սրբոյ խաչին Մծխիթայի, որ այժմ բնակեալ է յերկրիս մերում ի տեսչութենէ խաչելոյն Քրիստոսի։

1. *Կին ոմն անուն Նունի, յընդերաց սրբոց Հռիփսիմեանց, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ նոցա քաղաքն նախադրան՝ յոյժ ճգնութեամբ ստացաւ վարս*

բժշկութեան. յորում զբարբառ ախտաժէտս բժշկէր, եւ գլխովին զկինն Միհրանայ Վրաց առաջնորդի: Վասն որոյ հարցեալ զնա Միհրան, թէ Որո՞վ իշխանութեամբ առնես զսքանչելիսդ. եւ ուսաւ զքարոզութիւն աւետարանին եւ զհաւատս:

Իսկ երանելւոյն Նունէի յղեալ առ սուրբն Գրիգոր. եւ հրաման ընկալեալ ի նմանէ՝ կործանել զկուռսն, որպէս եւ ինքն արար, եւ զպատուական կանգնել զնշան սուրբ Խաչին: Եւ անդրէն կործանեալ զամպրոպային պատկերն Արամազդեայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն, գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգուն յիւրաքանչիւր տանեաց, զի հանդէպ նոցա երեւէր: Իսկ Նունէի կործանեալ զկուռսն՝ յարեան ի վերայ նորա նախարարք քաղաքին, թէ ո՞ւմ արդեւք փոխանակ կռոցն երկիր պագանիցեն. եւ ուսան եթէ նշանի Խաչին Քրիստոսի: Զոր արարեալ կանգնեցին ի վերայ փայտեայ բլրոյ յարեւելից կուսէ, ի քաղաքէն մեկուսի եւ բարձանելով զնա փոքրագոյն գետոյն: Եւ երկրպագեցին ընդ առաւօտն յիւրաքանչիւր տանեաց ամենայն բազմութիւնն: Բայց յորժամ եկին ի բլուրն՝ տեսին փայտ կոփեալ ոչ ճարտարաց ինչ գործ:

Խորագիր· 1 Չ. տուն: — 3—4. վանանդացւոյ թոռն զեւոնդ երիցի իջւանից: — 5 չունի ի (բազում):

1. 11 երանելւոյն: — 14 կանգնեալ: — 15 զամպրոպային: — 16 արամազդեա: — 19 իւրաքանչիւր: — 28 իւրաքանչիւր ի տանեաց:

*Յոլովք քան զսակաւս արհամարհեալ ի բաց գնացին. որպէս թէ այնպիսեաւք լի իցէ անտառն նոցա եւ փողոցամէջն: Քանզի մի ի փայտից խանթից էր փայտն մայր. զի յայնմ ժամանակի յոլով էր եւ յետոյ սպառեցաւ. եւ հրամայեաց երանելին Նունի ձեւացուցանել զփրկական. եւ փորուածովք խանթին յաջ եւ յահեակ անցանէր. եւ զայն տեսեալ զեռահաւատիցն՝ ի բաց գնացին, թողեալ զփրկականն:*

*Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի զայթակղութիւն նոցա՝ առաքեաց յերկնից սիւն ամպոյ. եւ լցեալ լեառն անուշահոտութեամբ. եւ ձայն բազմութեան սաղմոսերգուաց լսելի եղեւ քաղցրութեամբ ձայնիւ: Եւ ծագեաց լոյս տպաւորութեամբ խաչին ըստ ձեւոյ եւ ըստ չափոյ փայտեղինին. եւ կալով ի վերայ նորա երկոտասան աստեղաւք: Յոր հաւատացեալ երկրպագեցին նմա: Եւ յայնմ հետէ զաւրութիւնք եւ բժշկութիւնք ոչ սակաւ կատարէին ի ձեռն սրբոյ Նշանին:*

*Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ ուսաք:*

2. *Սրբոյն Անդրէասու ասացեալ: Իսկ Ափոց եպիսկոպոս դրանն արքունի եւ Անդրէաս վանական, որ զերիս որդիս եւ զմի դուստր Բրեչխին կնքեալ էր եւ որդիացուցեալ, այր երկիւղած յԱստուծոյ, որ եկեալ էր*

31 *յոլովիցս քանակս*: — 32 *լիցէ*: — 35 *յետոյ*: — 40 *զփրկանն*: — 50 *յետէ*: — 52 *ցայն*... *յագաթանկեղա*:

զկնի Տիկնոջն յաշխարհէն Մամիկոնեայ, վանական ի Ղազարու վանաց, ի յերկրէն Տարաւնոյ. եւ ինքն խարազնազգեստ եւ բոկագնաց եղեալ, անեալ առ ոտս սրբոյն Սահակայ. եւ յաւերմանէն Հայոց անդ հասեալ՝ խաղացեալ կայր: Քանզի բազում կործանումն էր հասեալ աշխարհիս Հայոց, յառ եւ յաւար, ի սով եւ ի գերութիւն մատնեալ ի Պարսից: Եւ Նախարարք Հայոց սպառեալ էին. եւ Յոյնք ոչ փախստեան տեղի տային գերեացն Հայոց. եւ ամուրք ոչ պահէին զապաստանեալսն. զի աստուածասաստ էր բարկութիւնն: Եւ զինչ եւս ասացից զբազում նեղութիւնս եւ զաղէտս տարակուսանաց աշխարհիս Հայոց: Այլ դարձայց անդրէն ի կարգս իմոյ պատմութեանս:

Իսկ երանելի այրն Անդրէաս ջանայր զսուրբ Նշանն Նունէի զերծուցանել ի Նախատանաց անաւրէն այլազգեացն: Եւ սուրբ տիկինն Շուշանիկ աղաչէր զԱնդրէաս, զի փութանակի առցէ զսուրբ Նշանն Նունէի եւ զայլ եւս բազում ոսկերս սրբոցն՝ ի սրբոյն Գրիգորէ առ նա հասեալ նշխարքն՝ եւ սպասս եկեղեցեաց եւ բազում խաչեր: Զայն ամենայն առեալ եւ երթեալ բառնայր զԽաչն Նունէի ի բլրէն: Քանզի եկեալ մոգք տապնապէին զտունն տուն կրակի կացուցանել: Իսկ Ջոջիկ, եղբայր Բդեշխին, ուգնական լինէր տիկնոջն եւ Անդրէասու. եւ սպիտակա-

2. 13 չունի ի (պարսից): — 17 աստուածասաստ: — 21 իմո: — 28 սպաս: — 31 մոգ: — 34 անդրիասու:

փառ զարդուք զարդարէր զսուրբ Նշանն եւ բառնայր ի սպիտակ ջորիս եւ ի ձիս եւ յղարկէր յարեւմուտս կոյս:

Դադարէր յամուրս Թաղտեաց: Իսկ սուրբն Անդրէաս ոչ հաւանեաց դադարել ի մէջ ամբոխին: Առեալ զԽաչն Նունէի եւ բնակեցաւ ի Սպեր գաւառի ի խորշ մի լերինն Պարխարու: Եւ կացեալ անդ ամս եւթն, մինչեւ լուաւ զվախճանն սրբոյն Ծուշանկանն: Ապա այնուհետեւ ի տարակոյս եղեալ տագնապէր, եթէ զինչ արասցէ զսուրբ Նշանն Նունէի եւ զայլ ոսկերս սրբոցն:

Յայնժամ յարուցեալ տեղեկանայր ի տունն Մամիկոնէից, եթէ ո՞ արդեօք իցէ կենդանի. եւ ոչ զոք յընտանի նախարարացն գտանէր: Ապա գտեալ զոմն մանուկ, որդի Հմայեկի, եղբօր Վարդանայ, անուն Գրիգոր, որ բնակեցեալ ունէր մանուկն զամուրս Կապուտայ լերինն եւ զՁորն Երասխայ եւ զՓոքր Բասեան, որ այժմ կոչի Վանանդ, եւ զփոքր ամրոցն Կարնենեաց: Զայս խմացեալ Անդրէասու՝ ուրախ եղեւ յոյժ: Ապա յղէ առ նա զմի յաշակերտաց իւրոց եւ զգացուցանէ նմա զամենայն:

Իսկ երանելի մանուկն Գրիգոր ուրախացաւ յոյժ. եւ համարեալ զզաւրս իւր առն եւ ձիոյ երեք հազարաց: Ոչ զանգիտեալ ի զաւրացն Յունաց, որք կային ի Թէոդոսուպաւլիս, այլ առիծաբար յարձակեալ ընդ մուտ

53 երասխայ: — 56 անդրէասու:

ձորոցն Տայոց, պատճառելով զիւր հաւրն Հմայեկի զնշխարս տանել, եւ անցեալ ի յամուրսն Պարխարու՝ հանդիպի խուժ անեչանացն: Եւ երանելի առն ծերոյն բացեալ զգանձս աստուածայինս՝ աւանդեաց Գրիգորոյ զամենայն: Զի էր այրն մերձ ի վախճանել: Եւ համբարձեալ զձեռս իւր աւրհնեաց զնա եւ զաշխարհ նորա. եւ աղաչէր զԳրիգոր աստուածպաշտութեամբ եւ հայրենի ուղղութեամբ կալ: Եւ ինքն փառս տուեալ Աստուծոյ՝ աւանդեաց զհոգին. զի էր այր ծերացեալ եւ անցեալ ժամանակաւք եւ բազում վիշտս յաղագս կործանման աշխարհին Հայոց կրեալ:

3. Իսկ Գրիգորիսի առեալ զսուրբ Նշանն եւ զամենայն նշխարսն՝ փութով գնայր յիւր աշխարհն: Ապա զաւրացն Յունաց տեղեկացեալ մի բառ միոջէ՝ հասին ի Վանանդ Փոքրն կոչեցեալ: Յայնժամ թաքին Գրիգորի կարգացեալ զսուրբ Նշանն Նունէի՝ զտեղի առեալ զմարտի եւ ընդդիմանայր զաւրացն Յունաց. զի զաւրն Յունաց բազում էր. ոչ զանգիտացեալ նորա ի բազմութենէն, այլ անհապաղ յարձակեալ՝ սակաւուքն զբազումս փախստական առնէր: Քանզի Նշանն սուրբ Թաչին փայլատակմամբ երեւեալ զմարտուցեալսն խաւարեալ կուրացուցանէր. մանաւանդ զպատերազմար զաւրուն իւրեանց, որում անուն Թէոդորոս Տանաշխիր: Եւ նորա յեր–

3. 14 զաւրավար:

կիր անգեալ՝ աղաչէր զԳրիգոր եւ խնդրէր զխաղաղութիւն եւ զառողջութիւն բժշկութեան: Եւ նորա ոչ առեալ յանձն առանց կայսեր, այլ զխաղաղութիւն համոզեալ՝ յղարկէ զնոսա: Յայնժամ հրամայէր կոչել զՓոքր Վանանդ՝ Կարմիր Փորակ: Եւ ինքն եւ իւրքն ամենայն եկեալ հասին յամուրս Կապուտոյ լերինն:

Ապա յայնժամ դեսպանս արձակէ Գրիգոր առ Լեւոն կայսր մեծ Հոռոմայեցւոց եւ զգացուցանէ նմա զաղէտս աշխարհիս եւ զիւր գալն ի նորա աշխարհն. քանզի բազում վնասս արարեալ էր զօրացն Յունաց: Եւ հրամայեաց թագաւորն զաւրավարին Թէոդորոսի գնալ առ սուրբ Նշանն Քրիստոսի եւ զբժշկութիւն ընդունել ի նմանէ: Իսկ զաւրավարին եկեալ բազում ընծայիւք եւ խոնարհութեամբ անկեալ առաջի սրբոյ Նշանին եւ արտասուագոչ հառաչմամբ խնդրէր զխաղաղութիւն (եւ զառողջութիւն) բժշկութեան: Եւ ի նմին ժամու խաւարեալ աչք նորա բժշկեցան եւ լուսաւորեցան: Եւ ընդալեալ զբժշկութիւն դառնայր խաղաղութեամբ յաշխարհն իւր եւ փառս Ամենատեառն մատուցանէր:

4. Իսկ յամենայն աւուրս սիւն լուսոյ նման փողոյ երեւեալ յաւուրս քառասուն: Եւ ի նմին ժամու առաւ Հոռոմ քաղաք ի Վաղենտիանացւոց զաւրաց: Եւ սաստիկ պատե-

26 Նմայ: — 29 Թէոդոսի:
4. 3 վաղենտիանացոց:

բազմունք եղեալ եւ բազումք մեռան սպանմամբ յաւուրսն յայնոսիկ:

5. Իսկ Գրիգոր որդի Հմայեկի, եղբաւր Վարդանայ, խաղաղացեալ ամս բազումս առնէր ուխտ եկեղեցեաց սրբոց. բազում խնդութեամբ եւ ուրախութեամբ նուէրս կատարէր: Եւ լինէր տաւն սրբոյ Նշանին ի տասն եւ չորսն սեպտեմբերի ամսոյ. քանզի յայնմ աւուր հանգեաւ Խաչն Նուռնէի ի Կապուտ ամրոցին: Եւ լինէր ոչ սակաւ բժշկութիւն ախտաժետաց. եւ գային յամենայն կողմանց բազում հիւանդք եւ բժշկէին յամենայն ախտից իւրեանց. եւ դիւահարք առողջանային եւ այսոց չարաց հալածումն լինէր զաւրութեամբ սուրբ Նշանին. եւ անունն Աստուծոյ փառաւորէր ի մէջ հաւատացելոց իւրոց:

6. Իսկ ի ժամանակս արեգակնային երկրորդ եղանակին հասելոյ ի կէտ ամարայնոյ ի[սկ] Խորաձորն Արշարունեաց սաստիկ ջերմամբ. եւ բազում ուխտականք գային ի կողմանց կողմանց, կիսամեռք լինէին ի ջերմութենէն. այլ ի զաւրութենէ հրաշիցն դանցեալ վիշտան մոռանային: Եւ ջերմութեանն ոչ հանդուրժեալ սպասաւորքն սրբոյ Նշանին:

7. Իսկ ի շինել աշխարհիս Հայոց եւ ի վախճանել Լեւոնի կայսեր եւ ի թագաւորելն Զենոնի կայսեր, անկասկած եղեալ Հայք՝ փոխեն զԽաչն ի Վանանդ, մաւտ առ ամրո-

5. 2 խաղացեալ: — 12 յայսոց:
6. 1 ժամանակ... յերկրորդ եղանակն:

ցին Կարենենաց ըստ հիւսւսի Անտուրեան դետոյն յարեւելից, որ անուանի Թաչի վանք եւ սրբոյ Նշանին Վանանդայ սուրբ Թաչ. զի ժողովումն լինիցի հնոյն: Եւ արս ճգնաւորս միանձանց դասուց, որ սպասաւորէին սրբոյ Նշանին. եւ զանեղին անուանեն Թաչի վանք. եւ շուրջ զնովաւ գեաւղք եւ ագարակք երկոտասանք սպասաւորեն նմա: Զայս բարեպաշտ ոմն ի տոհմէն Բագրատունեաց ընծայս պարգեւեաց սրբոյ Նշանին եւ ի ծառայութիւն կրօնաւորաց, որ բնակեալ են ի Թաչի վանքն ի յանդադար փառաբանութեան: Եւ առաւել քան զառաւել զաւրանային դասք պաշտաւնէից. եւ շնորհք բժշկութեան եւ խաղաղութեան աշխարհիս Հայոց եւ այսոց չարաց հալածումն լինէր ի սուրբ Նշանէն Քրիստոսի. եւ բազումք բժշկէին ի նմանէ:

8. Եւ այսպէս ձգեալ գայր հասանէր մինչեւ ի սպառումն Մամիկոնեան ազգին, զոր այժմ Տարաւն կոչեն: Եւ տիրէ Հայոց տոհմ Բագրատունեաց: Եւ ի բնակալութենէ հարաւային զաւրացն բազում տանջանք եհաս ի ժամանակին յայնմիկ:

Եհաս ոմն ի զաւրացն հարաւոյ ոստիկան, այր չար եւ անաւրէն եւ բազմահնար, որում անուն կոչէր Սուքի: Որոյ եկեալ յաշխարհս Հայոց եւ տեսեալ զուխտ եկեղեցեացն պայծառացեալ եւ զգաստ պաշտաւնէից եւ զհայրս

7. 20 յայսոց:

կրաւնաւորաց բազմացելոյ եւ զաղտաւորութիւն տէրունական խորհրդեանն: Խանդացեալ ընդ իրսն եւ մրմռեալ իբրեւ զգազան վայրենի, յարձակեալ իբրեւ դիւահարեալս, սեւագունդ զաւրքն Պարսից՝ բազում ուխտս աւերէին. եւ զազատս եկեղեցեաց անհուն բազմութեամբ խաղացոյց ի Բաբելոն: Եւ զմեծ մենաստանն, որ կոչի Բաղուանու վանք, բազում ոսկւով եւ ակամբք պատուականաւք եւ արծաթեղէն սպասուք եւ մեծագին հանդերձիւք, զայն ամենայն յաւար առեալ. եւ զսուրբ Կաթողիկէն ի Վաղարշապատ քաղաքին, որ կոչի Շողակաթ, եւ զսուրբ Գրիգորն եւ զվանքն Եղիվարդու եւ զվանքն Վահանայ եւ զվանքն Տարհոյ եւ զբազում ուխտս եկեղեցեաց յաւարի առեալ խաղացոյց ի Բաբելոն եւ խաւար գործեաց աշխարհիս Հայոց, մինչեւ եկն եհաս առ մեզ, որ կոչի Խաչի վանք, եւ յափշտակեալ զազատս եկեղեցեացս: Եւ ձեռնամուխ եղեալ ի սուրբ Նշանն տէրունական՝ ոչ կարացին յափշտակել չարին սպասաւորքն: Յայնժամ ի բարկութիւն շարժեալ անաւրէնն Սոլքի՝ իբրեւ չար գազան յարձակեալ ի վերայ սուրբ Խաչին՝ եհար զթեւ սուրբ Նշանին սուսերաւ: Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի նախատինս Խաչին իւրոյ սրբոյ՝ տատաքեաց այս չար սատանիկ եւ ըմբռնեաց զանաւրէնն Սոլքի.

8. 13 տերունական:
8. 16 զաւրսն: — 17 զազատս: — 20 ոսկւովք: — 26 վանքն: — 31 զազատս: — 38 այսս:

եւ անդեալ ի յերկիր կործանէր եւ չարաչար հարեալ ի գլուէն յերկիր թաւալէր եւ փրփրայր: Իսկ խոցուածք սուրբ Նշանին եռացեալ որպէս զմսեղինի՝ ալիանայր: Յայնժամ բարկութիւնն Աստուծոյ շարժեալ առ անօրէնն Ապիքի· եւ ըմբռնեալ ի սպասաւորացն արքունի՝ պահանջէին ի նմանէ զհարկ եւ զհաս: Եւ յայս պիղծ չարէ ըմբռնեալ Ակէր եւ նեղէր ի տուէ եւ ի գիշերի: Իսկ սպասաւորացն արքունի արկեալ տոռունս ի պարանոց նորա՝ փութով հասուցանէին ի դուռն արքունի, եւ պահանջէին ի նմանէ զաւերումն աշխարհիս եւ զհարկ· եւ անհնարին տանջանաւք տագնապ հասուցանէին անաւրէնին:

Յայնժամ նախանձախնդիր եղեալ սուրբ Նշանն տէրունական հալածեաց զանաւրէն ազգն հարաւային եւ հաստատեաց յաշխարհիս մերում զազգն Բագրատունեաց: Եւ եղեւ աշխարհիս խաղաղութիւն· եւ տիրէ Աբլաբաս Բագրատունի·

9· Եւ զկնի նորա Աշոտ որ եւ թագաւորեաց իսկ· եւ որդի Աշոտոյ՝ Սմբատ, որ եւ մեծն կոչեցաւ: Ապա յերեքհարիւր վաթսուն եւ մէկ թուականին Հայոց, ի կատարման Սմբատայ, մեծ կործանումն եղեւ աշխարհիս Հայոց. եւ առ հասարակ երկիրս աւերեալ կործանեցաւ:

55 նախախնդիր :
9· 2 աշոտ :

10· Իսկ <ես>, հայր Ահարոն, զարմն Ղեւոնդ երիցու յԻջաւանից գեղջէ, սպասաւոր սրբոյ Խաչին, <բաղում աշխատութեամբ եւ խուզիւ քննեալ ի բաղում մատենից Հայոց եւ Վրաց յաղագս սրբոյ Խաչին Մծխիթայի, որ այժմ բնակեալ է յերկրիս մերում ի անեսչութենէ խաչելոյն Քրիստոսի>, թէ ուստի՞ կամ ո՞րպէս առ մեզ լեալ է, եւ ստուգեալ հասեալ գտի յԱգաթանգեղայ պատմագրէ եւ ի Վկայութենէ Շուշանկանն եւ ի Վարուց սրբոյն Սահակայ եւ ի ճգնաւորէն Անդրէասայ: Գտի եւ զսըրբոյն Հմայեկի զՎկայաբանութիւն քառասուն ամբրք ի տանն Տայոց, որ այժմ Քառասնի վանք կոչի: Գտի եւ այլ բաղում յիշատակ սրբոց, որոց մոռացանք եղեալ ի տագնապ լինելոյ աշխարհիս:

11· Իսկ մեծ Նշան սուրբ Խաչին ի ժամանակս Սմբատայ Բագրատունւոյ՝ կրաւնաւորացն ձանձրացեալ վասն բաղում ուխտականացն, հրամանաւ Գէորգայ Հայոց կաթողիկոսի փոխեն ի մի յիւրոց գեղիցն, զոր եւ սուրբ Խաչն կոչեն, յարեւմուտս ամրոցին Կարնենեաց. եւ կարգեն պաշտաւնեայս եւ սպասաւորս Խաչին, որ զտիւ եւ զգիշեր անխափան կատարի առաջի սրբոյ Նշանին: Եւ

10· 1 փակագծի մէջ առնուածները հանուած են նախաբանէն: — 2 իջաւանից: — 9 յագաթանգեղա: — 12 անդրէասու: — 16 մոռացունք:

11. 2 սմբատա բագրատունեոյ: — 4 գրիգորի փոխ. գէորգայ:

վանականացն հաստատեալ յառաջին տեղւոջն կամ հանապազ (եւ) փառաբանութիւն սրբոյ Երրորդութեանն մատուցանեն: Եւ պէտք նոցա վճարին յընծայից սրբոյ Խաչին:

12· Այս է սորոգ պատմութիւն սրբոյ Խաչին Նունէի, որ այժմ բնակեալ է յերկրիս Վանանդայ բարեխաւս վասն մեր եւ ամենայն ի Քրիստոս հաւատացելոց· այժմ եւ միշտ եւ յաւիտեանս. ամէն:

### 3· Ս· ՆՈՒՆԷԻ ԽԱՉԸ ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹՑԵՑԻՈՅ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ ՄԷՋ

Ահարոն Վանանդեցւոյ գրուածքէն քաղած հանած է Պատմութիւնս Գրիգոր Խլաթեցի եւ ճոխացուցած ինչ ինչ յաւելուածներով՝ զետեղած է իր Յայսմաւուրքին մէջ (այսպէս Վիեննայի Թ· 10, Թղ· 394ա—395բ): Ասկէ մէջբերումներ ունի Հ· Մ· Ջամչեան, Պատմ· Հայոց, Բ·, էջ 87, 549—551 եւ Գ·, 17: Հմմտ· ասկէ հատուածներ նաեւ Սոփերք Թ· էջ 58—59, Այրարատ, էջ 88 եւ Տաշեան, Ցուցակ, էջ 81—82:

Գրիգոր Խլաթեցւոյ այս համառօտութիւնն ալ կը հրատարակեմ ամբողջութեամբ:

Արեգ ԻԲ· եւ Մարտ Լ· Յայսմ աւուր տաւն է Նունեայ սուրբ խաչին:

Սուրբն Տուչան դուստրն սրբոյն Վարդանայ, որ էր կին Վազգենայ Վրաց իշխա-

11 տեղոջն:

նին, որ գնաց առ արքայն Պարսից եւ ուրացաւ զՔրիստոս։ Վասն որոյ այլ ոչ միաբանեցաւ ընդ նմա սուրբն Շուշան Վարդանուհին. քանզի այս էր առաջին անուն նորա, այլ Շուշանիկ ի գգուանացն էր ասացեալ։ Եւ յոչ հաւանիլ նորա ընդ ուրացող առն իւրոյ՝ բազում վիշտս եւ նեղութիւնս հասոյց նմա այրն իւր, բանտս եւ կապանս՝ ամս Զ. մինչ զի ի նոյնն կատարեցաւ եւ պսակաց արժանաւորեցաւ ի Քրիստոսէ Աստուծոյ մերմէ։

Եւ սուրբն Շուշան յուրացութեան առն իւրոյ ջանաց զսուրբ Նշանն Նունեայ Վրաց առաջնորդի յղել ի բուն գաւառն իւր ի Տարօն։ Եւ եկեալ առ նա արեգայ մի Անդրէաս անուն ի Ղազարու վանացն, որ է սուրբ Առաքելքն Մշու։ Եւ սուրբն Շուշան աւգնականութեամբ տեղերն իւրոյ Ջոջկայ ետ զսուրբ Խաչն յԱնդրէաս արեգայն՝ տանել ի սուրբ Առաքելքն, ի վանքն Ղազարու։

Եւ էր Անդրէասն այն յաշակերտաց որդոյն Սահակայ, պապուն Շուշանայ։ Եւ նա առեալ զսուրբ Խաչն եւ այլ բազում սուրբ Նշանս խաչերոյ եւ զսպասք սուրբ եկեղեցեացն Մծխիթայ եւ յուղի անկեալ եկն եհաս ի Սպեր գաւառն. եւ այլ ոչ կարաց գնալ ի շփոթմանէ եւ ի վրդովմանց ճանապարհին. այլ եկաց անդ եւ զաղարեաց ամս է. ի խորշ մի լերինն Սպերոյ. մինչեւ լուաւ զբարի կատարումն Շուշանայ։

Եւ ապա զմտաւ ածեալ զազգն Մամիկոնէից, թէ ո՞ իցէ կենդանի: Եւ գտեալ մանուկ մի որդի Հմայեկի, եղբաւր սորոյն Վարդանայ, Գրիգոր անուն, որ ունէր զամուրն Կապուտ եւ զՋուրն Երասխայ, զԿաղզուան եւ զԿարս եւ զԲասէն: Եւ յղեալ առ նա արեգայն Անդրէաս եւ զգացոյց նմա վասն Յոաչին: Իսկ պարոն մանուկն Գրիգոր առեալ զզաւրս իւր քաջ արանց՝ իբրեւ երից հազարաց, վասն զաւրացն Յունաց, որ էին ի Կարնոյ քաղաք, Թէոդուպօլիս, որ է Արզրում: Ոչ զանգիտեալ իշխանն Գրիգոր ի նոցանէ, այլ առիւծաբար յարձակեալ անց ընդ մուտս ձորոյն Տայոց, պատճառանաւք տանել զնշխարս հաւրն իւրոյ, զսորոյն Հմայեկայ: Եւ այնպէս առեալ զգանձն աստուածային՝ դարձաւ ի տեղի իւր:

Եւ յետոյ իմացեալ զաւրացն Յունաց, հասին ի Փոքր Վանանդ: Եւ թէպէտ բազում էին զաւրքն Յունաց, ոչ զանգիտեաց ի նոցանէ քաջ Գրիգոր· այլ արիաբար մարտեաւ եւ զբազումս ի նոցանէ կոտորեաց եւ զայլսն փախստական արար: Եւ զզաւրավարն Յունաց Թէոդորոս ձերբակալ արար: Եւ նա յողոք անկեալ աղաչէր զքաջն Գրիգոր առնել խաղաղութիւն եւ փարատել զկռուութիւնն· որ զաւրութեամբ սուրբ Խաչին չարք կորացան ի զաւրացն Յունաց եւ ինքն իսկ Թէոդորոս իշխանն Յունաց: Իսկ բարեսէր եւ քաջ մանուկն Գրիգոր արար ընդ նոսա խաղաղութիւն. եւ զձերբակալսն արձակեաց·

այլ զկուրութիւնն ի լոյս ածել ոչ էառ յանձն առնել զայն առանց կայսեր: Մինչ զի զաւրավարն Թէոդորոս հրամանաւ կայսերն Լեւոնի եկեալ բազում ընծայիւք անկաւ առաջի սրբոյ Խաչին. եւ ապա առժամայն լուսաւորեցան աչք նորա խաւարեալ: Եւ դարձաւ առողջացեալ ի տուն իւր փառաւորելով զՔրիստոս եւ զամենազաւր սուրբ Խաչն հրաշագործ:

Եւ եկաց մնաց սուրբ Խաչն ի բերդն Կապուտ զբազում ժամանակս: Եւ ապա տարան ի Վանանդ. եւ զտեղին, ուր եդին զսուրբ Խաչն, կոչեցին Խաչի վանք: Եւ յետ ժամանակաց եկեալ ոստիկան մի տաճիկ եւ տեսեալ զպայծառութիւն սուրբ Խաչին եւ զայլ ուխտից եւ զվանորէից Հայոց աշխարհիս: Ընդ որ նախանձեալ դժուարացաւ եւ սկսաւ քակել եւ աւերել զվանորայսն: Եւ նախ զմեծ վանքն զԲագուան, որ լի էր ոսկւով եւ արծաթով եւ այլ բազում զարդիւք: Եւ ապա զմեծ կաթուղիկէն ի Վաղարշապատ, որ առ Էջմիածին, եւ զայլ բազում տեղիս: Եւ եկեալ ի Վանանդ, ի վանս սուրբ Խաչին, ամենաչար ոստիկանն Սրփի. եւ զաւրութեամբ սուրբ Խաչին ոչ կարացին յափշտակել ինչ ի նմանէ:

Իսկ յետ աւուրց այլ ոմն Սուգման անուն ամիրայ եկեալ ի Կարս եւ երկուս արս ի գլխաւորաց քաղաքին նահատակեաց հրով. եւ զեպիսկոպոսն եւ քահանայ մի Մատթէոս անուն եդ ի բանտի. եւ սպառնայր չարաչար

տանջել զնոսա եւ սպանանել, եթէ ոչ ուրանան զՔրիստոս: Յորմէ զանգիտեալ ուրացան զՔրիստոս էրէցն Մատթէոս եւ չեպիսկոպոսն. եւ արարին այլ մեծագոյն չարիս քան զուրացութիւնն Քրիստոսի. զի արկին ձեռս ի սուրբ Խաչն տէրունական եւ ընկեցին յոտս ձիոցն եւ ջորւոցն զաւուրս երեսուն: Իսկ սուրբ Խաչն ամենազաւր, որ բազում սքանչելիս եցոյց առ Սրփի եւ առ ամիր Մահմատն, այսաւր յայսմ վայրի տարաւ այս նախատանացս ամենայնի, վասն անյոյս եւ անզեղջ երիցուն եւ եպիսկոպոսին: Զայս ամենայն չարիս ետես եւ լուաւ տէր Բարսեղ կաթուղիկոսն յԱնի. եւ սուգ առեալ անմխիթար լային աղխոզորմ եւ զառնագոյն: Եւ առաքեաց զոմանս ի ժիր արանց զաղտագողի եւ բերին զսուրբ Խաչն ի յԱնի, ի թուականիս Հայոց ՇԽԳ. ամին. եւ Լ. ամի տէրութեանն Տաճկաց ամիրային Մանուչէի որդւոյն Շորայ:

Եւ արդ գիտելի է զկալ սուրբ Խաչին ի Մծխիթայ Ճ եւ ՀԵ ամ. եւ ի Կապուտս եւ ի Վանանդ եւ ի սուրբ Խաչի վանքն ամս ՆԾԹ ամ. եւ յելանելոյն ի Մծխիթայէ մինչեւ ի գալն յԱնի Պ, պակաս Դ ամ. եւ ՃԽԲ ամ յԱնի եկաց մինչեւ յազգն Նետողաց, որ է Թաթարն: Որ եւ ծածկեցաւ յառման քաղաքին Անւոյ եւ ոչ ոք գիտաց, թէ զի՛նչ եղեւ ամենազաւր սուրբ Խաչափայտն: Որում պատիւ եւ երկրպագութիւն եւ փառք յաւիտեանս. ամէն:

## 4. ԱՀԱՐՈՆ ԵՒ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

1. *Մովսէս Խորենացւոյ Հայոց Պատմութեան Բ. 86 խորագիր կը կրէ. «Յաղագս Նունէի երանելւոյ, եթէ ո՛րպէս եղեւ պատճառ փրկութեան Վրաց»: Այս գլուխը մուտ գտած է նաեւ ճառընտիրներու մէջ այլ եւ այլ խորագիրներով. կը յիշեմ.*

ա. *«Մովսէս Խորենացւոյ ի Հայոց Պատմութենէ: Իսկ երանելւոյն Նունէի Վրաց վարդապետուհւոյ, որ էր յընկերաց Ս. Հռիփսիմեանց, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց...: Վ. յոր ամենեքեան երկրպագեալ եւ յայնմ հետէ զօրութիւնք բժշկութեանց լինէին ի նմանէ ի փառս Քրիստոսի»:*

*Էջմ.* 923 (*Կար.*) *Ճառընտիր հրտ. Կ(արապետ) Վ.* (*Տէր-Մկրտչեան*), Արարատ 1895, *Թ.* 4, *Յաւելուած, էջ* 12. *հմմտ. անդ, էջ* 121—123):

բ. *«Վկայաբանութիւն Ս. Նունէի որ ի Վիրս առաքեալ. «Պատմութիւն սուրբ կնոջն Նունէ Վրաց առաջնորդի». «Վկայաբանութիւն Ս. Նունէ եւ Մանէ ընկերաց Հռիփսիմեանց» խորագիրներով. կը սկսի. «Կին ոմն անուն Նունէ... Վ. որպէս ուսուցանէ զմեզ Ագաթանգեղոս»:*

*Ձեռագիրք. Վենետիկ, Մխիթ. Թ.* 201, 169*ա* (*ցուց. Բ.* 60—61): *Երուսաղէմ, ցուցակ Խապայեան*, 1 *Բ.* 89*բ*: *Թ.* 73, 250*բ* (1398): 74, 308*ա* (1318), *Թ.* 97, 256*ա* (1326):

Ուշադրութեան արժանի է էջմ. 923, որ կը ներկայացնէ Խորենացւոյ քննական հրատարակութեան «Ա» խումբի ձեռագիրներու համընթաց բնագիր մը, որ շատ տեղեր մօտ է Աշարոնի, ուստի Խորենացւոյ սկզբնագրին, որուն աղբիւր ծառայած է Աշարոն: Կ'ամփոփեմ այս տեղ աչքառու տարբերութիւնները*: Այն պարագան, որ այս ձեռա-

---

* Համառօտագրութիւնք. A Աշարոն. M Մ. Խորենացի. E Էջմիածին Թ. 923: Ա եւ այլ Ձեռագիրք Քննական Հրատարակութեան Խորենացւոյ:

1. Ցրնկերայ Ս. Հոփփսիմեայ. A M Հոփփսիմեանց: Այսպէս «Հոփփսիմեայ» ունի նաեւ Փ. Սոկրատ:

2. M «ի ցրուելոցն» չունին Հ gk ձեռագիրք եւ AE:

3. «Ի քաղաք նոցա նախադաւ. AE եւ Խոր. ինչ ինչ ձեռագիրք չունին «ի»: AM կը կարդան «նոցա քաղաքն նախադաւ»:

4. AE որով. M որով եւ:

5. E բժշկեալց. M բժշկեալ. A բժշկէր:

6. E դուրս ձգած է՝ AM եւ գլխովին գկինն Միհրանայ Վրաց առաջնորդի:

7. EA չունին Mի «եւ ախորժելով — զատուցեալսն» հատուածը:

8. E նորա խնդրեալ արս հաւատարիմս՝ յղեաց. M իսկ եւ. Նունէի խնդրեալ արս հաւատարիմս՝ յղեաց:

9. E ընկալան Ցոյնք. M. Վիրք:

10. E առնու M ընդունի A ընկալեալ:

11. EA որպէս եւ ինքն M չունի «եւ»:

12. EA Ա եւ զպատուականն կանգնել զնշան Խաչին. M եւ կանգնել զպատուական նշան խաչին:

13. E ցօր աւուր նոցա Տեառն հովիւ յառաջնորդութիւն. Ա ցօր աւուր Տեառն նոցա հ. յ. M մինչեւ ցօր աւուր Տեառն հ. յ. նոցա:

14. E չունի «կայր». ունին AM:

15. E երկիր պագանել. AM երկրպագել:

16. EA եւ ուսեալ. M չունի «եւ»:

17. E գնչան AM նշանի:

գիրը կը սկսի «Իսկ երանելւոյն...», ցոյց կու տայ թէ գրութենէս յառաջ խօսուած էր Հռիփսիմեանց մասին:

2. Ահարոնի եւ Մ. Խորենացւոյ աղերսը ճշդելու պատկերելու համար կարեւոր կը համարիմ երկու բնագիրները դէմ առ դէմ ներկայացնել: Վերջնոյս համար բնագիր կ'առնեմ Քննական հրատարակութիւնը. միաժամանակ ուշադրութեան կը յանձնեմ E ձեռագրին ընթերցուածները, զորոնք տուի քիչ յառաջ:

| Ահարոն | Մ. Խորենացի Բ. 86 |
| --- | --- |
| *Ցաղագս սրբոյ Խաչին Մծխիթայի:* | *Ցաղագս Նունէի երանելոյ եթէ որպէս եղեւ պատճառ փրկութեան Վրաց:* |

---

18. EA *ըլլոյ.* M *ըլլոյն Ախվ ըլլին:*

19. E *Ա. ընդ տասուտն ամենայն բազմութիւնն.* M *ամենայն բազմութիւնն ընդ տասուտն* A *ընդ տասուտն... ամենայն բազմութիւնն:*

20. EA *Ա. ելին.* M. *ելեալ:*

21. EA *որպէս թէ.* M *իբր թէ:*

22. E *Ա. նոցա ամենայն անտառն.* M *ամենայն անտառն նոցա* A *չունի «ամենայն»:*

23. EA *ի գայթակղութիւնս* MA *ի գայթակղութիւն:*

24. E *սրին ամպոյ յերկնից սրին ամպոյ:*

25. EA ՀGK *լեառն* M *լեառնն:*

26. EA *սաղմոսերգողաց* M *սաղմոսերգուաց:*

27. E *յոր ամենեքեան երկրպագեալ* AM *յոր ամենեցուն* (A *չունի «ամենեցուն»* *հաւատացեալ երկրպագեցին:*

28. E *բժշկութեանց լինէին ի նմանէ ի փառս Քրիստոսի.* M *բժշկութեան կատարէին ի նմանէ:*

Ահարոն·

1· Կին ումն անուն Նունի, յընկերաց սրբոց Հռիփսիմեանց, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ նոցա քաղաքն նախագահ· յոյժ ճգնութեամբ ստացաւ *վարս* բժշկութեան. յորում զբազում ախտաժետս բժշկէր եւ գլխովին զկինն Միհրանայ Վրաց առաջնորդի: Վասն որոյ հարցեալ ցնա Միհրան, թէ որո՛վ *իշխանութեամբ* առնես զքանչելիսդ· *եւ* ուսաւ զքարոզութիւն աւետարանին *եւ զհաւատս*:

Մովսէս.

1· Կին ումն անուն Նունէ, յընկերաց սրբոց Հռիփսիմեանց *ի ցրուելոցն*, փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ, ի նոցա քաղաքն նախագահ· յոյժ ճգնութեամբ ստացեալ *շնորհս* բժշկութեան· որով եւ զբազում ախտաժէտս բժշկեալ եւ գլխովին զկին Միհրանայ առաջնորդին Վրաց: Վասն որոյ հարցեալ զնա Միհրանայ, եթէ որո՛վ զօրութեամբ առնես զայս սքանչելիս՝ ուսաւ զքարոզութիւն աւետարանին *Քրիստոսի· եւ ախորժելով լուեալ՝ պատմեաց իւրոց նախարարացն հանդերձ զովեստիւ*:

*Խ· 2· Եւ իսկոյն եհաս ի նա լուր սքանչելեացն, որ եղեն ի Հայս ի թագաւորն եւ ի նախարարսն, եւ զընկերացն երանելւոյն Նունեայ· ընդ որ հիացեալ՝ զրուցեաց երանելւոյն Նունեայ, յորմէ եւ ստուգապէս եւս տեղեկացաւ զամենայն ոճով:*

*Խ· 3· Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել Միհրանայ յորս: Մոլորեցաւ ի դժուարս լերանց խաւարեալ օդով այլ ոչ տեսանելեօք, ըստ այնմ, եթէ* կոչէ զմէգ բարբառով[1]. *եւ դարձեալ թէ Զտիւ ի* գիշեր մթացուցանէ[2]: *Այսպիսեաւ Միհրան ըմբռնեալ խաւարաւ, որ եղեւ նմա առիթ մշտնջենաւոր լուսոյն: Քանզի զարհուրեալ՝ յիշեաց զոր լուաւ վասն Տրդա–*

[1] *Յոբ, ԼԸ· 31:*
[2] *Ամովս, Ե· 8:*

*տայ, եթէ կամեցաւ ճանապարհորդել յուս, հասին նմա հարուածք ի Տեառնէ. զոր համարեցաւ, թէ եւ նմա այնպիսի ինչ դիպելոց է: Եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ՝ խնդրեաց աղօթիւք լուսաւորել օղոյն եւ գտանել խաղաղութեամբ եւ պաշտել զԱստուածն Նունէի խոստանայր. որում հանդիպեալ՝ կատարեաց զատացեալսն:*

4. Իսկ երանելույն Նունէի յղեալ առ սուրբն Գրիգոր եւ հրաման ընկալեալ ի նմանէ. կործանել զկուռսն, որպէս եւ ինքն արար, եւ զպատուականն կանգնել զնշան սուրբ խաչին:

4. Իսկ երանելույն Նունէի *խնդրեալ արս հաւատարիմս*՝ յղեաց առ սուրբն Գրիգոր, *եթէ զինչ հրամայեսցէ նմա գործել այնուհետեւ, քանզի յօժարութեամբ ընկալան Վիրք զքարոզութիւն աւետարանին*: Եւ հրաման ընդունի կործանել զկուռսն, որպէս ինքն արար, եւ կանգնել զպատուական նշան խաչին *մինչեւ ցօր տալոյ Տեառն հովիւ յառաջնորդութիւն նոցա*:

5. Եւ *անդրէն* կործանեալ զամպրոպային պատկերն Արամազդեայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգոյն յիւրաքանչիւր տանեաց, զի հանդէպ նոցա երեւիւր:

5. Եւ *խոկոյն* կործանեաց զամպրապային պատկերն Արամազդայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն՝ գետոյն հզօրի ընդ մէջ անցանելով. զոր սովոր էին երկրպագել այգուն *այղուն* ի տանեաց իւրաքանչիւր, զի հանդէպ նոցա երեւէր. *իսկ եթէ ոք զոհել կամէր, անցեալ ընդ գետն՝ առաջի մեհենին*[3] *զոհէր*:

[3] *Բննականն՝ մեհենիցն*:

6. *Իսկ Նունէի կործանեալ զկուռն՝* յարեան ի վերայ նորա նախարարք քաղաքին, թէ ո՞ւմ արդեօք փոխանակ կռոցն երկիր պագանիցեն. եւ ուսան, եթէ Նշանին խաչին Քրիստոսի: Զոր արարեալ կանգնեցին ի վերայ վայելուչ բլրոյ յարեւելից կուսէ, ի քաղաքէն մեկուսի. եւ բաժանելով զնա փոքրագոյն գետովն: Եւ երկրպագեցին ընդ առաւօտն իւրաքանչիւր ի տանեաց ամենայն բազմութիւնն: ·

6. *Բայց* ի վերայ նորա յարեան նախարարք քաղաքին եթէ Ո՞ւմ արդեօք փոխանակ կռոցն երկրպագեմք, ուսան եթէ Նշանի խաչին Քրիստոսի: Զոր արարեալ կանգնեցին ի վերայ վայելուչ բլրոյն յարեւելից կուսէ քաղաքին մեկուսի՝ բաժանեալ եւ նա փոքրագոյն գետով: Եւ երկրպագեցին ամենայն բազմութիւնն ընդ առաւօտն՝ *նոյնպէս* ի տանեաց իւրաքանչիւր:

7. Բայց յորժամ եկին ի բլուրն՝ տեսին փայտ կոփեալ, ոչ ճարտարաց ինչ գործ, յոլովք քան զսակաւս արհամարհեալ ի բաց գնացին. *որպէս* թէ այնպիսեօք լի իցէ անտառն նոցա *եւ փոցոցամէջն*:

7. *Բայց* յորժամ եկեալ ի բլուրն՝ տեսին փայտ կոփեալ, ոչ ճարտարաց[4] ինչ գործ, յոլովք քան զսակաւս արհամարհեցին, *իբր* թէ այնպիսեաւ լի իցէ *ամենայն* անտառն նոցա. *եւ թողեալ* ի բաց գնացին:

Ա՛. 8. *Քանզի մի ի փայտից խանթից էր փայտն մայր. զի յայնմ ժամանակի յոլով էր եւ յետոյ սպառեցաւ: Եւ հրամայեաց երանելին Նունի ձեւացուցանել զփրկական եւ փորուածովք խանթին յաջ եւ յահեակ անցանէր:*

9. Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթակղութիւն նոցա՝ առաքեաց յերկնից սիւն

9. Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթակղութիւն նոցա՝ առաքեաց յերկնից սիւն

[4] *Ձեռագիրներէն ոմանք՝ ճարտարի:*

ամբոյ. եւ լցեալ լեառն անուշահոտութեամբ. եւ ձայն բազմութեան սաղմոսերգողաց լսելի եղեւ *քաղցրութեամբ ձայնիւ*: Եւ ծագեաց լոյս տպաւորութեամբ խաչին, ըստ ձեւոյ եւ ըստ չափոյ փայտեղինին, եւ կալով ի վերայ նորա երկոտասան աստեղօք. յոր հաւատացեալ երկրպագեցին նմա: Եւ յայնմհետէ զօրութիւնք եւ բժշկութիւնք *ոչ սակաւ* կատարէին *ի ձեռն սրբոյ Նշանին*:

ամպոյ. եւ լցաւ լեառնն *բուրմամբ* անուշահոտութեան. եւ ձայն բազմութեան սաղմոսերգուաց լսելի եղեւ *քաղցր յոյժ*: Եւ ծագեաց լոյս տպաւորութեամբ խաչին[5], ըստ ձեւոյ եւ չափոյ փայտեղինին, եւ կալով ի վերայ նորա *հանդերձ* երկոտասան աստեղօք. յոր *ամենեցուն* հաւատացեալ երկրպագեցին նմա: Եւ յայնմհետէ զօրութիւնք բժշկութեան կատարէին *ի նմանէ*:

*Խ. 10. Իսկ Երանելին Նունէ ել գնաց անտի աշակերտել եւ գալ եւս գաւառն Վրաց յանապակ լեզուէն, շրջելով անպաճուճարար եւ առանց աւելորդաց, օտարացեալ յաշխարհէ եւ որ ի սմա. կամ թէ ճշմարտագոյն ասել՝ ի խաչ ելեալ, ի կրթութիւն մահու զկեանսն առնելով, բանիւ վկայ Բանին Աստուծոյ, եւ յօժարութեամբն իւրով որպէս արեամբ պսակեալ: Զոր համարձակիմ ասել առաքելուհի եղեալ: Քարոզեաց ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց եւ Կասբից մինչեւ ի սահմանս Մասքթաց:*

11. *Զայս մինչեւ ցայս վայր* յԱգաթանգեղայ *պատմագրէ* ուսաք:

11. *Որպէս* ուսուցանէ *քեզ* Ագաթանգեղոս:

3. *Երկու բնագիրներու նոյնութիւնը* 1, 4—7, 9 *եւ* 11. *հատուածներու մէջ ակներեւ է: Խորենացւոյ միայն յատուկ են* 2, 3 *եւ* 10 *հատուածները. իսկ Ահարոն աւելի ունի հատուած* 8:

[5] *Տպ. խաչի:*

Առանց տարակուսի այս բառական նոյնութիւնը յառաջ եկած է կա՛մ հասարակաց աղբիւրէ մը, որմէ օգտուած են երկուքն ալ, եւ կա՛մ մին աղբիւր է միւսին: Առաջին ենթադրութիւնը կարծես թէ հաւանական կ՚երեւայ այնու որ թէ մին եւ թէ միւսը աղբիւր կը մատնանշեն յանձին Ագաթանգեղոսի. Ահարոն կը գրէ. «Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ ուսաք». իսկ Մ. Խորենացի կը յայտարարէ. «որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»: Մինչեւ այժմ, սակայն, այդ ենթադրեալ հասարակաց աղբիւրը, որ ըլլալու էր հայերէն, չէ յայտնուած: Վասն զի այժմեան Ագաթանգեղոսը, որ Զ. դարէն ի վեր ծանօթ է իբրեւ պատմիչ Գրիգորի խոստովանութեան եւ քարոզութեան, ինչպէս նաեւ Հռիփսիմեանց նահատակութեան, որ եւ է ակնարկութիւն չունի Ս. Նունէի եւ Վրաց դարձի մասին. ուստի եւ չի կրնար հասարակաց աղբիւր ծառայած ըլլալ այս դէպքին: Միւս կողմէ նկատի առնելու է եւ այն, որ Ս. Նունէի եւ Վրաց դարձի նկատմամբ թէ հայ եւ թէ վրական աղբիւրները Թ. դարուն առաջին անգամ կը սկսին խօսք ընել. եւ կը տեսնուի բացայայտ, թէ ամէնուն հասարակաց աղբիւր ծառայած է ոչ թէ Ագաթանգեղոս, այլ Սոկրատի Եկեղեցական Պատմութեան Ա. 20 գլուխը, եւ այն հայերէն թարգմանութեամբ, որ ի գլուխ ելած է 696/7ին: Սոկրատը իր ձեռքին տակ ունեցած է Ահարոն (կամ իր

աղբիւրը), նոյնը Մ. Խորենացի, յատկապէս երկրորդ հատուածին մէջ: Կը մնայ մեզ վճռել Ահարոնի եւ Մովսէսի մէջ, թէ ո՞վ է անոնցմէ երիցագոյնը: Բայց աւելորդ է այս վիճակարկութիւնը, քանի որ կան նշաններ թէ Ահարոն երիցագոյն է քան Մովսէս, թէ-պէտ շնորհքովը վեհագոյն է Մովսէս քան Ահարոն:

4. Ահարոն խղճմտօրէն կը խոստովանի, թէ գրելու համար Ս. Նունէի Խաչի պատ-մութիւնը, նիւթերը հաւաքած է «բազում աշխատութեամբ եւ խուզիւ քննեալ ի բա-զում մատենից Հայոց եւ Վրաց»: Հայ աղ-բիւրներէն մէկ քանին յանուանէ յիշատակած է. բայց լուած է վրական աղբիւրներու մա-սին: Կրնանք սակայն իր խոստովանութենէն հետեւցնել, թէ նա ծանօթ եղած է վրացերէն լեզուին եւ վրական գրականութեան: Եթէ նա օգտուած է «ի բազում մատենից Հայոց եւ Վրաց», այդ վրացերէն աղբիւրներէն քա-ղած պիտի ըլլայ նիւթեր յատկապէս 1, 4—9 հատուածներուն մէջ, ուր խօսքը Վրաց պատմութեան շուրջն է: Եւ եթէ ի կատա-րածին (հատած 11) կը յայտարարէ, թէ «Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ ուսաք», կամ «ստուգեալ հա-նեալ գտի յԱգ. պատմագրէ» (§ 7), այս «Ագաթանգեղոս պատմագիր» անշուշտ աղ-բիւր չէ մատնանշուած այն քանի մը ակնար-կութեանց համար, որոնք են «յընկերաց սրբոց Հռիփսիմեանց», «սուրբ Գրիգոր...

կործանել զկուռսն, որպէս եւ ինքն արար, եւ զպատուականն կանգնել զնշան սուրբ խաչին»․ այլ բովանդակ պատմութեան, պատմուած մանրամասնութիւններով։ Այն կ'ենթադրէ Ս․ Նունէի Վարք մը, համազօր մը Ս․ Գրիգորի Վարքին, գրուած վրացերէն․ ուր հին աւանդութիւնը, թէ Գրիգոր եղած է Վրաց դարձի պատճառ, կը հաշտեցուի նորին, Սոկրատի Ա․ 20 գլխու համաձայն շարադրուած Վրաց դարձի պատմութեան։ Հեղինակը կ'երեւայ թէ ծպտուած էր նոյնպէս «Ագաթանգեղոս պատմագրի» անուամբ, վասն զի ինքն ալ «Բարի լուր» կը նօթձէր Վրաց։ Նունէի Վարքին այս առաջին խմբագրութիւնը, որմէ օգտուած է Աշարոն, յընթացս ժամանակի տեսած է նոր խմբագրութիւններ, ուր բազմօք ընդլայնած է Վարքը եւ վերագրուած իր մասանց մէջ զանազան հեղինակներու․ երբ բնականաբար անտեսուած է «Ագաթանգեղոս պատմագիր»։

Այս տեղ ուշագրաւ կէտ մ'ալ այս է․ Աշարոն, որ իր աղբիւրներու թուին մէջ երկիցս յիշատակած էր «Ագաթանգեղոս պատմագիրը», բոլորովին անյիշատակ թողուցած է Մովսէս Խորենացւոյ, Հայոց Քերթողահոր, հռչակաւոր պատմագրի անունը, որուն ուքանչելարուեստ «Հայոց Պատմութեան» մէջ առանձին գլուխ իսկ նուիրուած էր Ս․ Նունէի եւ Մծխիթայի Խաչին, ուսկից, ինչպէս տեսանք, 1, 4—7 եւ 9 հատուածները բառական իսկ օրինակած կ'երեւար։ Ի՞նչպէս բա-

ցատրել այս լռութիւնը: Միակ պատճառը, զոր կրնանք յուսալ Աճառեանի ենթադրութեան համար, այս պիտի ըլլար. «Զի ես յառաջ էի քան զՄովսէս»: Այլապէս, ինչպէս վստահ եմ, պարծանքով պիտի արձանագրէր Աճառեան այդ դիւթական անունը:

5. Ս. Նունէի Վարքը իր նախնական ձեւի մէջ խմբագրած ըլլալու է Վրացի մը յեցած Սոկրատի Ա. 20 գլխու վրայ: Նա ուզած է զՆունէ ժամանակակից ներկայացնել Ս. Հռիփսիմեանց եւ Ս. Գրիգորի. այս պատճառաւ ալ Սոկրատի «Կին ումն... ի Վրաց գերեալ լինէր» վերածած է «Կին ումն անուն Նունի յընկերաց սրբոց Հռիփսիմեանց փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ»: Անունս Նունի, Նունէ, Նուննէ, Նինոյ հաւանօրէն յունական Նոննա անունն է, ինչպէս կը կոչուէին Գրիգոր Նազիանզացւոյ (Վիեննա, Թ. 217, Թղ. 122ա) եւ Նիկողայոս Միւռոնացւոյ մայրերը, որ ապա հայ Ցայսմաւուրքի մէջ եղած է Նունէ[6]: Սոկրատ Վրաստանի «նախադահ քաղաքի» անունը չի յիշեր. բնականաբար պիտի համարուէր այն «Մծխիթայ», քանի որ խօսքը «Վրաց» աշխարհի մասին է: Խմբագիրը ծանօթ է Հռիփսիմեանց նահատակութեան

[6] Տաշեան, Ցուցակ, էջ 73 եւ 570: Անուանս մասին հմմտ. Marquart, Die Bekehrung Iberiens, Caucasica, 6, 1 (1930), 116—117: Ուշադրաւ է վերջաւորութիւնը -նէ (մր. -նի), որ կը տեսնուի նաեւ Հռիփսի-մէ, Գայիա-նէ, Մա-նէ անուններու մէջ:

Պատմութեան՝ Ագաթանգեղոսէն. Թէպէտ պատմագիրը որ եւ է ակնարկութիւն չ'ըներ, թէ Հոփփսիմէի ընկերներէն մին կամ միւսը փախուստի դիմած ըլլայ. բայց կար անշուշտ նոյն դարուն հայ աւանդութեան մէջ, թէ Մանէ եւ ուրիշներ նոյն խումբէն ապաստանած են լեռներ եւ ճգնութեան նուիրուած:

Նունէ «յոյժ ճգնութեամբ ստացաւ վարս բժշկութեան»: Այստեղ աղբիւր ունի Սոկրատը, որ կը գրէ. «էր հանդերձ բազում ճգնութեամբ պարկեշտին»: Անիմաստ «ստացաւ վարս բժշկութեան» պէտք է իմանալ «վարս սրբութեան եւ շնորհս բժշկութեան. Խորենացի ունի «ստացեալ շնորհս բժշկութեան»:

«Յորում զբազում ախտաժէտս բժշկէր եւ զլխովին զկնին Միհրանայ Վրաց առաջնորդի»: Կ'ակնարկէ Սոկրատի յիշած մանկան եւ թագուհւոյն բժշկութիւնը:

6. Միհրան անունը ծանօթ է հայ պատմագիրներու սկսեալ 480էն, իբրեւ յորջորջանք պարսիկ զօրավարներու: Պարսից քով սակայն կը նկատուէր այն պարզապէս տոհմանուն. եւ էր մին Պարսից 7 բարձերէց նախարարներու. ծագումով պահլաւիկ էր, բնակութեամբ ռաժիկ: Անունս արեւմտեան մատենագիրները կը գրեն զանազան ուղղագրութեամբ (Merenes, Meran, Mirrannes եւն) իսկ արեւելեանները միօրինակ՝ Միհ-

րան[7] : Markwart (անդ, էջ 119) կը համարի թէ անունս Միհրան հարկ է նոյնացնել Վրաց Meribanes թագաւորին հետ, որ 360ին կը յիշէ Ամմիանոս (21, 6, 8) : Զրոյցներու աշխարհի մէջ կը գտնուինք. աննպատակ է որ եւ է նոյնացում : Ահարոն զՄհրան կը նկատէ «առաջնորդ» Վրաց եւ ոչ թագաւոր, այս պատճառաւ ալ Մծխիթայ Վրաստանի թագաւորանիստ մայրաքաղաքը կը համարի «քաղաք նախագահ», այսինքն քաղաք Վրաց ժողովուրդի նախագահութեան : Ինձ կը թուի, թէ Ահարոն իր աղբիւրին, վրացերէն Նունէի Վարքին մէջ կարդացած է ერისთავი, այն է eri, «ազգ, ժողովուրդ» եւ tavi «գլուխ» եւ թարգմանած է «առաջնորդ», այն է «ազգապետ», լայնագոյն իմաստով «զօրագլուխ» : Է—Ը. դարերուն սովորութիւն էր Հայոց քով «ազգապետը» կոչել «Իշխան», այսպէս Գրիգոր Մամիկոնեան «Հայոց իշխան», Ներսեհ «Վրաց իշխան» : Ահարոնէն փոխ առած է Խորենացի «Միհրան առաջնորդ Վրաց», զոր ապա կոչած է նաեւ «Միհրան առաջնորդ Վրաց եւ բդեշխ Գուգարացւոց, սպարապետ հիւսիսային զօրուն» (Գ. 6, հմմտ. նաեւ 9) Հայոց Տրդատ թագաւորի ծառայութեան մէջ : Խորենացի թէպէտ գիտէր Սոկրատէն, թէ Վրաց այդ «առաջնորդը» թագաւորական տիտղոս կը

[7] Համադրութիւն մը მიჰრან տոհմանունը կրող անձինքներու տես Nöldeke, Tabari, էջ 139—140, ծան. 3 :

կրէր, թէպէտ ծանօթ էր իրեն Կորիւնէն, թէ Վիրք 415ին եւ 422ին ունէին Բակուր եւ Արձիւղ անուն թագաւորներ (Գ. 54 եւ 60), բայց եւ այնպէս հաւատարմագոյն համարած է Ահարոնի վկայութիւնը:

«Վասն որոյ հարցեալ ցնա Միհրան, թէ Որո՞վ իշխանութեամբ առնես[8] զաքանչելիսդ. եւ ուսաւ զքարոզութիւն աւետարանին եւ զհաւատս»: Ահարոն ոստումով կ՚անցնի թագաւորին որսորդութեան ելլելու եւ վերադարձի պատմութենէն: Սոկրատի համաձայն հարցումը թագաւորն ուղղած է թագուհւոյն. «եւ հարցեալ թէ Ո՞վ է որ բժշկեաց»: Իսկ թագաւորին հանդիպումը գերի կնոջ հետ տեղի կ՚ունենայ որսէն վերջը. «Իսկ նորա (գերի կնոջ) յանդիման եկեալ (թագաւորին)՝ քարոզ Քրիստոսի զթագաւորն Վրաց արար. քանզի հաւատատացեալ ի Քրիստոս ի ձեռն բարեպաշտ կնոջն»:

Այս տեղիքը, զոր Մ. Խորենացի օրինակած է գրեթէ բառ առ բառ, կցելով իր կողմէ յաւելուած մը, ուշադրութեան արժանի է այն տեսակէտէ, որ Մովսէս առանց միտ դնելու ժամանակագրութեան, կ՚անցնի անմիջապէս որսի պատմութեան: Խորենացւոյ տողերն են. «Վասն որոյ հարցեալ զնա

[8] Հմմտ. Մատթ. ԻԱ, 23—24, 27. Մարկ. ԺԱ, 28, 33. Ղուկ. Ի, 8. «Որո՞վ իշխանութեամբ առնես զայդ»: Իսկ Գործք Առաք. Դ. 8. Հարցանէին. «Որո՞վ զօրութեամբ կամ անուամբ արարէք դուք զայս»:

Միհրանայ, եթէ ո՛րով զօրութեամբ առնեն զայս սքանչելիս, ուսաւ զքարոզութիւն աւետարանին Քրիստոսի. եւ ախորժելով լուեալ՝ պատմեաց իւրոց նախարարացն հանդերձ զովեստիւ»: Սոկրատ Թագաւորի եւ նախարարաց դարձը կը պատմէ որսորդութենէն վերադառնալէն ետքը: Այս կէտին չէ անդրադարձած Խորենացի եւ կոյրկուրայն հետեւած է իր առաջնորդին՝ Ահարոնի:

Թագաւորին դարձէն ետքը «երանելոյն Նունէի յղեալ առ Ս. Գրիգոր»: Վրահայ մըն է, որ կապակցութեան մէջ կը պահէ զՆունէ Ս. Գրիգորի հետ. Նունէ հրահանգ կը խնդրէ Հայոց Լուսաւորչէն եւ ըստ այնմ կ'ընթանայ: Կը կործանէ «զամպրոպային պատկերն Արամազդայ», որ կը գտնուէր յայնկոյս գետին: Ի՞նչ կ'իմանայ սակայն Ահարոն «ամպրոպային պատկեր» ըսելով. առանց տարակուսի կ'ուզէ ըսել «պատկեր (կուռք) ամպրոպային Արամազդայ»: ՆՀԲ նոյնացուցած է յն. Νεφεληγερέτης Ζεύς-ի հետ. ա՛յսպէս սովոր էր Հոմերոս կոչել Զեւսը, այն է «ամպարեր Զեւս» հմմտ. Նոննոս «ամպարեր աստուածս աւէ զինքն Արամազդ»: Ամպրոպք անգամ մը միայն գործածուած է դասական շրջանին՝ Յոբ ԼԸ. 25 «ամպրոպաց տեղալ յերկիր». ուր յոյնն ունի χυδοιμός, աղմուկ, ժխոր. հոս՝ մրրիկ, փոթորիկ:

6. Ութերորդ հատուածը նախորդին վերջին բառին հետ ունի միայն Ահարոն. «Քանզի

մի ի փայտից խանթից էր փայտն մայր. զի յայնմ ժամանակի յոլով էր եւ յետոյ սպառեցաւ: Եւ հրամայեաց երանելին Նունի ձեւացուցանել գփրկական <պատկերն> եւ փորուածովք խանթին յաջ եւ յահեակ անցանէր»: Խաչին շուրջ այս մանրամասնութիւնները աւելորդ համարած է Մ. Խորենացի իր Պատմութեան համար: Եւ սակայն կարեւոր մանրամասնութիւն մը կը բովանդակէր ան: Նունի կը հրամայէր քանդակել փրկչական պատկերը խաչին երկու թեւերուն վրայ, որով միայն պիտի զանազանուէր այն՝ սովորական փայտէ եւ պիտի յորդորէր ժողովուրդը աւելի հաւատքով մատուցանել իր երկրպագութիւնը խաչին առջեւ: Այս տեղ կը ցցուի մեր առջեւ գեղեցիկ ապացոյց մը Աճառոնի ինքնակացութեան համար:

Այլուստ անծանօթ է խանք բառը, զոր Աճարոն հոս երկիցս կը գործած է. հարկ է նկատել զայն մայր փայտի մէկ տեսակի անուն. ոչ հայ եւ ոչ վրացերէն բառագիրքները կը յիշեն նման բառ մը: Ինձի կ՚երեւայ թէ վրացերէն բառի մը առջեւ կը գտնուինք:

Ուշադրութիւն կը հրաւիրեմ 9րդ հատածին սկզբնաւորութեան վրայ. «Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթակղութիւն նոցա՝ առաքեաց», որ կրկնուած է Աճարոնէն նաեւ § 8. «Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի նախատինս խաչին իւրոյ սրբոյ՝ առաքեաց այսս...»:

*7. Մովսէս Խորենացի իր աղբիւրներու թուին մէջ ունէր նաեւ Ահարոնի այս գրուածքը: Անկէ քաղած է բառ առ բառ 1, 4—7, 9 եւ 11 հատուածները: Այս հատուածնե–րու լեզուն օտար է Խորենացւոյ: Կան հոն բառեր, զորոնք Մ. Խորենացի իր Պատմու–թեան մէջ ամենեւին չէ գործածած. կան հոն նաեւ այնպիսիներ, որոնք ուրիշ առումով կիրարկուած են Խորենացիէն. կը յիշեմ.* Անուշահոտութիւն. Գլխովին, Կոփել զփայտ. Մեկուսի. Յոլովք քան զաակաւս. ըստ չափոյ եւ ըստ ձեւոյ. Նախագահ [9] քաղաք. Տպաւո–րութիւն. Փայտեղէն:

*Մ. Խորենացի իր ոճին կը վերածէ Ահա–րոնի ասութիւնները. ա. Յորում=որով եւ. հմմտ. Խոր. «որով եւ սիրելի, որով եւ ազ–գաւ իսկ. յորում եւ զիւրաքանչիւր ոք» եւ այլն: բ. Անդրէն=իսկոյն. հմմտ. Խոր. «եւ իսկոյն կործանեաց. եւ իսկոյն մեռեալ. եւ իսկոյն . . . ձեռն արկեալ, իսկոյն ի ձի ելեալ» եւն: գ. Իւրաքանչիւր* նախադաս=յետադաս. *հմմտ. Խոր. «ի տանեաց իւրաքանչիւր. զքա–ջութիւն իւրաքանչիւր, զժամանակս իւրա–քանչիւր, ըստ պատեհի իւրաքանչիւր» եւն: Մ. Խորենացւոյ ինքնայատուկ լեզուն կը խօսի 2, 3 եւ 10 հատուածներու եւ այլ մանր յաւելուածներու մէջ: Օրինակներ.*

---

*[9] Խոր. Գ. 14 գործածած է զայս երկրորդ անգամ ալ «երթեալ ի նախագահն (փոխ. Թագաւորանիստն) քաղաք առ Կայսրն»:*

ա· «Եւ ախորժելով *լուեալ պատմեաց իւրոց նախարարացն հանդերձ* գովեստիւ: *Եւ* խնկոյն *եհաս ի նա լուր*... ընդ որ հիացեալ զրուցեաց *երանելւոյն Նունեայ*, յորմէ եւ *ստուգագոյնս* եւս տեղեկացաւ *զամենայն* ոճով:

Ախորժեմ *յունաբանութիւն մը*· *Հմմտ. Խոր. «զճշմարիտ բանս ախորժելով»* (*Ա.* 6)· *ըստ ախորժելոյ* (*Ա.* 6) *եւ այլն*: Գովեստ *Հմմտ. Խոր. Ա.* 24, *Բ.* 91, 92 *եւն*: Զրուցել· «*Զրուցէ մեզ զայս Բարդեծան* (*Բ.* 66)· *զրուցեցից քեզ անսխալ* (*Գ.* 1)· *արդարարար քեզ զրուցեցաք* (*Բ.* 64): Տեղեկանամ· «*Ստուգապէս· տեղեկացեալ* (*Բ.* 84)· *տեղեկացեալ զխտացին*» (*Գ.* 52, 60): Ոճով· «*Ոճով իմն*... *յայտնէ* (*Ա.* 18)· *պատմեսցուք* ոճով (*Ա.* 22)· *ոճով իմն պատմեցին* (*Բ* 13), *ոճով երկրորդել* (*Բ.* 34), *ոճով պատմի*» (*Բ.* 75) *եւ այլն*: Ընդ որ· «*Ընդ որ խստացեալ* (*Բ.* 27)· *ընդ որ զարմացեալ*» (*Բ.* 30, 79):

բ· *Զորրորդ հատածը ընդլայնած է Խորենացի յաւելուածներով*· «*խնդրեալ* արս հաւատարիմս... *եթէ զինչ հրամայեսցէ նմա գործել այնուհետեւ քանզի* յօժարութեամբ *ընկալան Վիրք զքարոզութիւն աւետարանին*. ...*մինչեւ ցօր աւուրս Տեառն հովիւ* յառաջնորդութիւն *նոցա*»:

Արք հաւատարիմք· *ասորաբանութիւն*· «*Առաքէ*... *արամբք հաւատարմօք* (*Գ.* 41)· *ի հաւատարիմ արանց*» (*Գ.* 67) *եւ այլն*:

Առաջնորդութիւն. 5 *անգամ գործածուած Խորենացւոյ քով*: Յօժարութեամբ *մակբայ-ոքէն՝* 4 *անգամ գործածուած*: «*Զքարոզու-թիւն աւետարանին*» *առնուած Ահարոնէն*:

*Փոխառութիւններ ուրիշ հեղինակներէ Մ. Խորենացւոյ քով*: *Տասներորդ հատածին մէջ աչքի կը զարնեն*.

ա. «*Տրջելով* անպատճառաբար *եւ առանց աւելորդաց*». *փոխ առնուած է Գրիգոր Նա-զիանզացւոյ Առ որս ճառախումբին Ը. ճա-ռէն*. «*կամք այսպէս պարզաբար եւ* անպա-տճառաբար» (*Վիեննա*, *Թ*. 320, *Թղ*. 86*բ*):

բ. «Ի կրթութիւն մահու զկեանսն առ-նելով». *փոխառութիւն նոյն ճառախումբի Ա. ճառէն*. «*Ոչ* ի կրթութիւն մահու զկեանս առնեմք» (*Վիեննա*, *Թ*. 320, *Թղ*. 7*բ*):

գ. «Օտարացեալ յաշխարհէ եւ որ ի նմա». *ՆՀԲ. ը. բ.* Օտարանամ *կոչում կ՚ընէ նոյնը Կիւրղի Աղեքսանդրացւոյ Գանձուց գրքէն*:

դ. *Ինձ կը թուի թէ նաեւ* «*Բանիւ վկայ Բանին Աստուծոյ եւ յօժարութեամբ՝ որպէս արեամբ պսակեալ*» *փոխառութիւն է Ս. Հօր մը գրութենէ*:

8. *Ագաթանգեղոսի ազդեցութեան տակ է Մովսէս հետեւեալ տեղիքներու մէջ*. «*Եւ խկոյն եհաս ի նա* (*առ Միհրան*) *լուր*[10] սքանչելեացն, որ եղեն ի Հայս ի թագաւորն

[10] *Հմմտ. Խոր. Գ.* 15 «*լուր սպանման... եհաս նահապետն*». *Բ*. 44. «*լուր հասանէ առ Երուանդ*»:

եւ ի նախարարսն. եւ զընկերացն *երանելւոյն Նունեայ... յորմէ եւ ստուգագոյն եւս տեղեկացաւ զամենայն ոճով», այս ինքն զնահատակութենէն Հռիփսիմեանց: «Քանզի... յիշեաց (Միհրան) զոր լուաւ վասն* Տրդատայ[11], *եթէ* կամեցաւ ճանապարհորդել[12] յորս, հասին նմա հարուածք ի Տեառնէ[13]. *զոր* (!) *համարեցաւ, թէ եւ նմա այնպիսի ինչ դիպելոց է»: Ի հարկէ չէր կրնար մտքէ խուսափել անցնել Մ. Խորենացի, թէ պատմականօրէն — գոնէ այս դէպքի մէջ, մի եւ նոյն անձնաւորութիւնն են Միհրան եւ Տրդատ: Նունէ «քարոզեաց ի* Կղարջաց *սկսեալ* առ դրամբք Ալանաց եւ Կասբից մինչեւ ի սահմանս Մասքթաց. *որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»: Մովսէս Խորենացի, որ ձեռքին տակ ունէր Ագաթանգեղոսը, քաջ գիտէր, թէ նոյն մատենագիրը որ եւ է խօսք չէր ըրած Նունէի եւ անոր քարոզութեան մասին: Այդ չորս աշխարհագրական անուններն իսկ փոխ առած է Ագաթանգեղոսէն, ուր, սակայն, նկատի առնուած*

---

[11] *Հմմտ. Խոր. Բ.* 35 (*էջ* 156). *«Լուեալ է քո* վասն *Յիսուսի»:*

[12] *Քննական հրատարակութիւնն ունի հոս (էջ* 232) *«եթէ ի ճանապարհ ելեալ՝ կամելով յորս գնալ». բայց Խորենացի նաեւ Բ.* 36 *կը գործածէ հիներուն ոչ շատ սիրելի* ճանապարհորդեմ. *«յաւուրս ձմերայնոյ ճանապարհորդեալ ի Հայս»:*

[13] *Ագաթ.* 113. *«Ապա յետ այնորիկ ժամ տուեալ որսոյ... այն ինչ ի կառս ելեալ կամէր թագաւորն ըստ քաղաքն ելանել, անդէն վաղվաղակի պատուհաս ի Տեառնէ ի վերայ հասանէր. եւ հարեալ զթագաւորն այսոյն պղծութեան՝ ի կառացն ի վայր կործանէր»:*

*էին անոնք իբրեւ Մեծ Հայոց սահմաններ, իբրեւ շրջագիծ այն աշխարհին, ուր Գրիգոր բարգաւաճած էր իր քարոզութիւնը: Ի՞նչ կը հասկնայ Մ. Խորենացի, երբ կը գրէ. «ի Կղարջաց սկսեալ առ դրամբք Ալանաց եւ Կասբից». Ո՞ւր Կղարջք եւ ո՞ւր Դրունք Ալանաց». Դրունք յատկացուցիչ ունին «Ալանաց եւ Կասբից»: Թիւրիմացութեան մէջ է Խորենացի, վասն զի ուղիղ իմացմամբ չէ կարդացած Ագաթանգեղոսի տողերը, զորոնք թերակատար ալ յառաջ բերած է: Ագաթանգեղոս կը գրէ. Գրիգոր «տարածանէր զմշակութիւն քարոզութեանն… ի Սատաղացւոց քաղաքէն մինչեւ առ աշխարհաւն Խաղտեաց, մինչեւ առ Կղարջօք, մինչեւ ի Սպեր (տպ. սպառ) ի սահմանս Մասքթաց, մինչեւ ի դրունս Ալանաց, մինչ ի սահմանս (ձեռ. եւ յոյնն՝ ի դրունս) Կասպից՝ ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց» (էջ 439): Այնու որ Խորենացի «ի սահմանս Մասքթաց» ամենավերջը զետեղած է, հասկցած է այս անունը Մազքութք (Հ եւ 7 ձեռագիրք՝ Մազքթաց. 2 ձեռագիր՝ Մասքութաց), այն է Յունաց եւ լատինացւոց* Massagetes*.*

*Նունէի համար կը գրէ Խորենացի. «Զոր համարձակիմ ասել[14] առաքելուհի եղեալ». իսկ Գ. 91. «էր կին ոմն անուն Մանի, յընկերաց սրբոց Հռիփսիմեանց, որպէս զՆունէ*

---

*[14] Հմմտ. Խոր. Գ. 40. «Այլ որ… արութիւնք քաջութեամբ՝ համարձակիմ ասել հաւասար սրբոյն Տրդատայ»:*

(ԱՀ ձեռագիրք գնունի) Վրաց վարդապետութենի»։ Ուշագրաւ է հոս ոչ միայն «զոր համարձակիմ ասել», որ Խորենացւոյ մէկ շատ սիրելի ասութիւնն է, այլ եւ «կին ումն անուն Մանի[15]». այս բառերով սկսած էր Խորենացի նաեւ Բ. 86 գլուխը՝ «կին ումն անուն Նունէ», որոնք կը յիշեցնեն Սոկրատի «կին ումն» գերեալ։ Նաեւ Մանի կը համարուի «յընկերաց սրբոց Հռիփսիմեանց»։

## 5. ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ ԵՒ ՄԵԾ ՍՈԿՐԱՏ

Օ. Կարրիէր[16] առաջինն եղաւ, որ ուշադիր զննութեամբ վեր հանեց, թէ Մովսէս Խորենացի իր պատմութեան մէջ ունեցած է նաեւ Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը եւ օգտուած է անկէ ի մէջ այլոց Բ. 86 գլխուն մէջ։ Որովհետեւ այն ատեն տակաւին չէր յայտնուած Սոկրատի Հայերէն թարգմանութիւնը, Կարրիէր նկատի առած էր յոյն բնագրին կից Փոքր Սոկրատը եւ այս պատճառաւ ալ յանգած էր ոչ ուղիղ եզրակացութեան։ Նոյն հարցով զբաղած է նաեւ Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան Սոկրատի

---

[15] Խորենացի բացատրելու համար Դարանաղեաց լեռան վրայ գտնուած «Մանեայ այրք» (Հմմտ. Նաեւ Ագաթ., էջ 452) յօրջօրջանքին ծագումը, կը պատմէ «Մանի» կոյսին պատմութիւնը։ Բայց «Մանեայ» սեռականաձեւ իգական անունը կ'ենթադրէ ուղղական «Մանէ» եւ ոչ Մանի։ Այս անունով «ընկեր» Հռիփսիմեանց անծանօթ է պատմութեան Թ. դարէն յառաջ։

[16] Ա. Կարրիէր, Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ. թարգմ. Հ. Յ. Տաշեան, Վիեննա 1893, էջ 31—41։

հրատարակութեան Յառաջաբանին մէջ (էջ ԿՁ—ՀԱ)․ հոս ալ Մեծ Սոկրատի կից նկատողութեան առնուած է Փոքրը։ Տէր–Մովսէսեան կը գրէ․ «Խորենացի եւ Մեծ Սոկրատ ոչ միայն առանձին բառերով, այլ եւ ամբողջ նախադասութիւններով կարծես միմիանցից արտագրութիւն են։ Չնայած այս հանգամանքին, անհնար է ընդունիլ, որ հեղինակներից մէկը միւսին գիտէ․ միակ ուղիղ ենթադրութիւնն է, երկուսը ունեցել են աղբիւր, Սոկրատինը Ռուփինոսն է, Խորենացուն Ագաթանգեղոսը»։ Բայց որովհետեւ «Ագաթանգեղոսի մեր ձեռքը հասած Պատմութիւնը չունի այն ինչ որ կայ Խորենացւոյ ՁԳ եւ ՁՁ գլուխների մէջ, հետեւապէս Ագաթանգեղոսը ունեցել է այդպիսի մի Պատմութիւն յունարէն եւ գուցէ վրացերէն գրուածքներից առնուած, որից օգտուել է Խորենացին եւ որը այժմ կորած է» (էջ Հ—ՀԱ)։ Ի մասին Փ․ Սոկրատի իր եզրակացութիւնն է․ «Համառօտողը Խոր․ ՁՁ․ գլխի մեծագոյն մասը յետ ու առաջ դնելով՝ տեղաւորել է իւր Համառօտութեան մէջ» (էջ Հ)։ Այս հարցը առանձին քննութեան ենթարկեց Գ․ Խալաթեան[17], դարձեալ Մ․ եւ Փ․ Սոկրատները միանգամայն համեմատութեան դնելով Խորենացւոյ Բ․ 86ի հետ։ Իր քննութեան արդիւնք է․ Խորենացւոյ բառացի նմանութիւն–

[17] Գ․ Խալաթեան, Մովսէս Խորենացու նորագոյն աղբիւրների մասին, Վիեննա 1898, էջ 36—50։

ները «Մեծ Սոկրատի հետ ա՛յն չափով են, որ չափով Փ. Սոկրատ նման է Մեծին, որից եւ ինքը համառօտուած է. ուստի նոյն նմանութիւնները Խորենացու հետ կարող են հաւասարապէս վերաբերուել ե՛ւ Փ. Սոկրատին, որից իսկապէս եւ օգտուել է հայ պատմագիրը՝ առանց աչք դարձնելու դէթ այս անգամ դէպ ի Մեծ Սոկրատը» (էջ 40):

Ես այս տեղ նկատի պիտի առնեմ միայն Մեծ Սոկրատը. իսկ Փոքր Սոկրատի մասին պիտի խօսիմ առանձին գլխով:

Այժմ, երբ Մ. Խորենացւոյ Բ. 86 գլխուն համար նոր աղբիւր հրապարակ ելաւ՝ Ահարոն Վանանդեցի, որ նոյնպէս իր կարգին աչքի առաջ ունեցած էր Մեծ Սոկրատը, կը մնայ քննութեան առնել այն հատուածը (հատուած 3) միայն, որ յատուկ է Խորենացւոյ եւ կը ճառէ Միհրանի որսորդութեան վրայ: Այս տեղիքն է.

| Մ. Խորենացի Բ. 86: | Մ. Սոկրատ Ա. 20: |
| --- | --- |
| «Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել[18] Միհրանայ յորս: Մոլորեցաւ ի դժուարս լերանց խաւարեալ օդով... եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ՝ խնդրեաց աղօթիւք լուսաւորել օդոյն եւ դառնալ խաղաղութեամբ. | «Իսկ յետ աւուրց բազմաց ելանել նորա յորս. պատահէ այսպիսի ինչ: Զկատարսն ամենայն եւ զդաշտսն՝ ուրանօր որսն, ունէր միգային խաւար բազում. քանզի անապատ էր որսն եւ անանցանելի ճանապարհն եւ յանհնա— |

[18] Հմմտ. Ղուկ. Բ. 1. «Եւ եղեւ ընդ աւուրսն ընդ այնոսիկ ել հրաման»:

| | |
|---|---|
| պաշտել զԱստուածն Նու– նէի խոստանայր որում հանդիպեալ. կատարեաց զաստացեալսն»: | րութեան բազմի եղեալ՝ կարգայր առ աստուածն զոր պաշտէրն. եւ որպէս ոչինչ լինէր ուսանել (օգուտ), յետոյ ապա մտախորհ լինէր. զԱս– |

տուած զերեցելոյն առնու եւ զատ կարգա օգնական. եւ ի յաղօթելն ի մէջէն խաւարն լուծանի: Եւ սքան– չանալով ընդ եղեալն ուրախութեամբ ի տուն իւր եր– թայր եւ զպատահումն պատմէր կնոջն իւրում»:

Թէ Մ. Խորենացի ունեցած է Մ. Սո– կրատը ձեռքի տակ բացայայտ կը տեսնուի Բ. 85ի վերջը յաջորդ գլուխի մասին ակնար– կութենէն. «Բայց յաղագս հաւատոցն Մի– րանայ եւ աշխարհին Վրաց ասել կայ մեզ ա– ռաջի»: Այս տեղ կը յարմարէ Խորենացի Սո– կրատի Ա. 20 գլխուն առաջին երկու տողերը. «Բայց ի դէպ է արդէն ասել, թէ որպէս Վիրք ընդ նոյն ժամանակս (Ձեռագիրը՝ ժամանա– կաւն) քրիստոնէացան»: Աւելորդ է հոս խօսք ընել «յաղագս հաւատոցն» ոչ հայերէն ասութեան վրայ, որով կ՚իմանայ Մովսէս «յաղագս հաւատալոյն ի Քրիստոս», ինչպէս կը պահանջէ հասկնալ Սոկրատի «քրիստո– նէացան» բառը: Թէպէտ համեմատութեան դրուած հատուածին մէջ հազիւ երեք բառ կը գտնենք Սոկրատէն փոխ առնուած, բայց Մովսէս իր համառօտախօսութեան մէջ ալ ցոյց կու տայ իր աղբիւրը, որ Մ. Սոկրատն է: Սկզբնագրին «կատարք» եւ «անանցանելի ճանապարհ» ենթադրել տուած են իրեն, թէ որոտմայրը «ի դժուարս լերանց» գտնուած

է: Ռուփինոս դայն «դաշտավայր» գիտէ: «Խաւարեալ օդը» Սկզբնագրին «միգային խաւարի» համագոր նկատելու է եւ «յանհնարութեան բազմի»՝ նոյնիմաստ «երկիւղիւ մեծաւ պաշարեալ»: Իր կարգին երբ թագաւորը կ'աղօթէր, բնականաբար «լուսանալ օրոյն» կը խնդրէր, այս ինքն «լուծանել ի միգէն խաւարին»:

Ամբողջ հատածը Խորենացւոյ խմբագրութիւնն է: Իր ոճը կը խօսի հոն: «Ի դժուարս լերանց» դեռ երեք անգամ կը գործածէ Խորենացին նոյն մատենին մէջ. «ի դժուարս Դարանաղւոյ» (Գ. 40). «ի դժուարս քարանց եւ ի վիմուտ տեղիս» (Գ. 9): Հմմտ. Փաւստ. Գ. 24. ի դժուարս լերինն մեծի, զոր Արագածն կոչեն»: «Դառնալ խաղաղութեամբ». յաճախ կիրակուած Խորենացիէն. կը յիշեմ. Ա. 15. «դառնալ... խաղաղութեամբ ի տեղի», այլուր՝ խաղաղութեամբ անցանել. ունել —, ընկալեալ —, եկաց —, կեալ — եւ այլն: Պաշտել զԱստուածն... խոստանայր. այսպէս նաեւ խոստանայր լինել բարեխօս, — դառնալ, — տալ, — առնել, — հաստատել, եւ այլն: «Որում հանդիպեալ», յունաբան ասութիւն մըն է հայերէնի մէջ, մօտ գտած յն. τυγχάνω (սեռականով) բայէն որուն իմաստն է, հանդիպիլ նպատակին, վիճակիլ, ընդունիլ, գտնել եւ այլն, Խորենացի ուրիշ տեղեր ալ գործածած է բայս նոյն իմաստներով. «հանդիպել ամենայն խնդրոցն եւ խոստմանցն»

(Գ. 48), բազմաց յինէն հանդիպեսցիս բարութեանց (Գ. 34), «Եւ ոչ հանդիպեցայ ընդունելութեան» (Գ. 57) «Թէ որպէս հանդիպեցաւ հաւատոց (Կոստանդիանոս, Բ. 83) եւ այլն: Ցատ սիրելի է Խորենացւոյ «կատարել զխնդիրն, — զկամս, — զհայցուածս, — զհրաման, — զսուգ» եւ այլն:

Սոկրատի նկարագրութիւնը եկեղեցւոյ յինութեան եւ սինի մը կանգնումի մասին զանց ըրած է Մովսէս յիշատակել, վասն զի ընդարձակ տեղ տուած էր Ս. Խաչի կանգնումի պատմութեան, զոր չունէր Սոկրատ:

Այս նկատողութիւնները կը յանգին հետեւեալ եզրակացութեանց.

1. Աչարոն երէց, վանական մը Վանանդի Ս. Խաչ վանքին, գրած է Նունէի խաչի պատմութիւնը 825—850 տարիներու մէջ, միջին հաշուով 830—840:

2. Գրած է զայն ցոյց տալու համար, թէ Վանանդի Ս. Խաչը Նունէի Ս. Խաչն է, որ երբեմն Մծխիթայի Ս. Խաչ կը կոչուէր:

3. Աչարոն երէց ծանօթ էր հայ եւ վրացի գրականութեան:

4. Ունեցած է իր ձեռքին տակ ա. Հայերէն Ագաթանգեղոս (ուղղակի կամ անուղղակի). բ. Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը (ուղղակի կամ անուղղակի). գ. Վրացերէն Ս. Նունէի Վարքը:

5. Այս վարքը խմբագրուած էր Վրացւոյ մը, որ կարդացած էր հայերէն Ագաթանգեղոսն եւ հայերէն Սոկրատը:

6․ *Այս Վարքը գրուած էր յանուն «Ագաթանգեղոս պատմագրի»․ եւ այս Ագաթանգեղոսն է Աճառեանի ակնարկած համանուն աղբիւրը ։*

7․ *Վրացերէն բնագրի մը հետքերն են* ա․ «առաջնորդ *Վրաց», որ թարգմանութիւնն է վրացերէն* eristavi *բառին ։* բ․ «Նախագահի *քաղաք», ուր առաջնորդը կամ ազգապետը իր նախագահութեան աթոռն ունի ։* գ․ խանճթ (*խանթի*) *մայր փայտ, որ վրացերէն բառ կ'երեւայ* (*Չուբինովի Բառագրքին մէջ կը պակսի*) ։ դ․ Նունեի *փոխ․ Նունէ ։*

8․ *Մովսէս Խորենացի կարդացած է Աճառեանի այս գրուածքը եւ առած է անկէ բառ առ բառ Նունէի վարքը եւ Ս․ Խաչի Պատմութիւնը ։*

9․ *Մ․ Խորենացի օգտուած է Մ․ Սոկրատէն․ ասկէ է Բ․ 65ի վերջին պարբերութիւնն եւ որսորդութեան միջադէպը ։*

10․ *Այն հատուածներու մէջ, զորոնք բանաքաղած է Մ․ Խորենացի Աճառանէն, լեզուն եւ ոճը օտար են Խորենացւոյ ։*

11․ *Այն յաւելուածներու մէջ, որոնք կը գտնուին միայն Մ․ Խորենացւոյ քով, լեզուն եւ ոճը ճշգիւ կը համապատասխանեն Մ․ Խորենացւոյ հայկաբանութեան ։*

12․ *Այս ամէնէն կը հետեւի, թէ Մովսէս Խորենացի գրած է իր Հայոց Պատմութիւնը* 825—840*էն վերջը ։*

## Ե· ՄՈՎՍԷՍ ՊԱՏՄԱԳԻՐ ԵՒ ԱՀԱՐՈՆ

*Յովհաննէս Քորեպիսկոպոս, որ կը յիշուի 726ի Մանազկերտի ժողովին մէջ, պատմած է մանրամասնօրէն Վարագայ Ս. Խաչի երեւումը: Կը հաղորդէ հոս ի մէջ այլոց, թէ Թոդիկ ճգնաւոր «երթեալ բնակէր ի կատարս լերինն Վարագայ»: Սա «տեսեալ զգիտութիւն յառաջագոյն փառն Գալստեան Ս. Խաչին, տասնօրեայ աւուրբք աղօթէր առ Աստուած չզրկել ի խոստացելոց պարգեւացն»: Երբ կը լրանայ տասներորդ օրը «լինէր բարբառ ինչ ահագին սաստիկ յոյժ ... ի բուն կատար լերինն տեսանէր գունդս հրեշտակաց լուսափայլս, զի կային երգելով քաղցրահնչիւն ձայնիւ զիւրեանց փառաբանութիւնն: Եւ ապա զկնի նոցա երեւեալ Խաչն ամենազօր եւ սաստիկ լուսով լցեալ լեառնն ամենայն»: Ոչ միայն Թոդիկ եւ իր աշակերտը Յովէլ ականատես կ՚ըլլան այս երեւոյթին, այլ եւ լեռան ստորոտը գտնուող գիւղացիք: «Եւ ի նմին ժամանակի եւ լուրն ընդ ամենայն երկիրն Հայոց աշխարհին մինչեւ ի սահմանս Վրաց եւ Աղուանից. եւ ապա զիմեալ գային աշխարհ ամենայն յիւրաքանչիւր տեղեաց ...: Յայնմ աւուր լինէին նշանք մեծամեծք ի ձեռն սրբոյ Խաչին՝ դիւահարաց, անդամալուծից, գօսացելոց եւ ամենայն ցաւագնոտաց[1]»: Այս կը պատահի իբր 660ին:*

[1] *Հայապատում*, էջ 230:

Նոյն գէպքի մասին ունինք ուրիշ գրուածք մ՚ալ «Յաղագս սրբոյ Նշանին որ ի Վարագ, նորին Մովսիսի պատմագրի ասացեալ», որ կը սկսի «Ընդ ժամանակս հայրապետութեանն տեառն Ներսիսի եւ Վարդայ պատրկի Ռշտունեաց . . .». պահուած հետեւեալ ձեռագիրներու մէջ. Վիեննա, Մխիթ. թ. 2, թղ. 218բ—220ա (Տաշեան, Ցուցակ, էջ 11), Երուսաղէմ, Խապայեան ցուցակ, թ. 1, Գ. 136բ—137բ: Վենետիկ, Մխիթ. թ. 200, թղ. 527բ—529ա (1224. անանուն. Սարգիսեան, Ցուցակ Բ. 32): Մագաղաթեայ հատակոտոր մը՝ Հանդէս Ամսօրեայ 28 (1914) 663—666:

Խաչի երեւման պատմութիւնը ընդհանուր գծերով նոյն է Յովհաննէս Բարեպխսկոպոսի հաղորդած տեղեկութիւններու հետ: Առանց տարակուսի Մովսէս իրեն աղբիւր ունէր զանոնք: Այս տեղ ոճը ճառական է եւ նկարագրութիւնը՝ պատկերաւոր: Կան տեղիքներ, որոնք աչքի զարնող նմանութիւններ կ՚ընծայեն Աչարոնի (ուստի նաեւ Մովսէս Խորենացւոյ) Ս. Նունէի Խաչի Պատմութեան հետ: Այս նմանութեան գծերը երեւան կու գան ճառին սկզբնաւորութեան իսկ: Կը պատմէ Մովսէս Պատմագիր, թէ Ս. Հռիփսիմեանց նահատակութենէն ետքը ոմանք «յընկերաց սրբոց Հռիփսիմեանցն, որ յետ կատարման նոցա փախուցեալք... եկեալ բնակեցան ի լերինն Վարագ»: Յետ ժամանակաց նոյն լեռը կը բարձրանայ նաեւ Թոդիկ

իր արքանեակին՝ Ցոլելի հետ ճգնելու: Թոդիկ բարեպաշտ զգածումէ տարուած փափագ կ'ունենայ տեսնել փրկչական Ս. Խաչը:

Պատմուածքին շարունակութեան մէջ մեզի համար կարեւոր են հետեւեալ տողերը, զորոնք դէմ առ դէմ կը ներկայացնեմ Ահարոնի համապատասխան տեղիքին հետ:

Մովսէս:

Այլ որ զկամս երկիւղածաց իւրոց առնէ Տէր եւ աղօթից նոցա լսէ, յանկարծակի լինէր բարբառ ինչ: Եւ ծագեաց լոյս երեւմամբ խաչին ի դադար (var. ի բարձր տեղւոջ) լերինն ի վերայ վիմին՝ ըստ ձեւոյ եւ ըստ չափոյ փայտեղինին. լինէր լոյսն հանդերձ երկոտասան լուսաւորօքն, որպէս յետոյ ստուգեցաւ տեսիլն, եւ լեառն լի եղեւ անուշահոտութեամբ. եւ ձայն երկնաւոր զուարթնոցն (var. զօրացն), որ երգէին քաղցրաձայնութեամբ եւ օրհնէին զԱստուած... եւ օրհնութիւնք զուարթնոցն լսելի եղեալ... եւ յարուցեալ.. երկրպագեցին սրբոյ Նշանին...: Եւ բազում բժշկութիւնք լինէին ի ձեռն սրբոյ Նշանին:

Ահարոն:

«Իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթակղութիւն նոցա՝ առաքեաց յերկնից սիւն ամպոյ. եւ լցեալ լեառն անուշահոտութեամբ. եւ ձայն բազմութեան սաղմոսերգողաց լսելի եղեւ քաղցրութեամբ ձայնիւ: Եւ ծագեաց լոյս տպաւորութեամբ խաչին ըստ ձեւոյ եւ ըստ չափոյ փայտեղինին. եւ կալով ի վերայ նորա երկոտասան աստեղօք. յոր հաւատացեալ երկրպագեցին նմա: Եւ յայնմ հետէ զօրութիւնք եւ բժշկութիւնք ոչ սակաւք կատարէին ի ձեռն Ս. Նշանին:

«Մովսէս Պատմագրի» ժամանակը ծանօթ չէ մեզի: Բայց ան քանի որ իր Պատմութեան նիւթ ընտրած է 660ին տեղի ունեցած դէպք մը, հարկ է որ այս թուականին կամ անկէ ետքը ապրած ըլլայ: Իր ձեռքին տակ կը գտնենք Յովհաննէս Թորեպիսկոպոսի գրուածքը, գրուած հաւանօրէն Է. դարու վերջին կամ Ը. դարու առաջին քառորդին: Ուստի Մովսէս աւելի ուշ ժամանակի հեղինակ եղած ըլլալու է: Ուշադիր զննութիւնը համեմատութեան գրուած երկու բնագիրներու կը բերէ զմեզ այն համոզման, թէ Մովսէս ուղղակի Ահարոնէն կախում ունի. Խորենացւոյ «բուրմամբ անուշահոտութեան» կը պակսի Մովսէսի բնագրին մէջ, նոյնպէս «քաղցրաձայնութեամբ» աւելի Ահարոնի «քաղցրութեամբ ձայնիւ» ատութեան մօտ է քան Խորենացւոյ «քաղցր յոյժ»ի: Թէ ստուգիւ Ահարոնէն կը բանաքաղէ Մովսէս, կը մատնէ «փայտեղինին» բառը, որովհետեւ ոչ Յովհաննէս Թորեպիսկոպոս եւ ոչ ալ Մովսէս Պատմագիր որ եւ է ակնարկութիւն չէին ըրած «փայտեղէն» Խաչի գոյութեան մասին: Նոյնպէս «լինէր լոյսն հանդերձ երկոտասան լուսաւորօքն» անծանօթ է Յովհաննէսին. Ինձ կը թուի թէ «որպէս յետոյ ստուգեցաւ տեսիլն» նախադասութիւնը կցուած է այս հատուածին, հաւատացնել տալու համար, թէ Յովհաննէսի լռութիւնը այս կէտի մէջ արդիւնքն է անոր կանխաւ գրած ըլլալուն:

Մովսէսի Ահարոնէն կախում ունենալը

կարելի է ապացոյց ծառայել անոր 825—850էն ետքը գրած ըլլալուն: Ցամենայն դէպս նա յառաջ էր քան այն Մովսէս, որ հեղինակ եղած է «Պատմութիւն Ս. Հռիփսիմեանց» գրուածքին, որ կը պատմէ Հռիփսիմեանց ուղեգնացութիւնը Հռոմէն — Վաղարշապատ: Մինչ «Մովսէս Պատմագիր» Հռիփսիմեանց ընկերներէն ոմանց բնակութիւնն ի Վարագ անոնց նահատակութենէն ետքը պատահած կը պատմէ, Ուղեգնացութեան պատմիչը զանոնք հոն հաստատուած կը ներկայացնէ խումբին Վաղարշապատ հասնելէն յառաջ[2]:

Մովսէս Պատմագիր ոչ միայն այս, այլ եւ իր «Վասն Գիտի սրբոյ Խաչին» գրուածքին մէջ նշմարներ ցոյց կու տայ, թէ ինքը ըստ ամենայն հաւանականութեան նոյն է Մովսէս Խորենացւոյ հետ: Կը յուսամ թէ չուտով առիթ կ'ունենամ անդրադառնալու այս հարցին:

7. Ս. ՆՈՒՆԷԻ ՎԱՐՔԸ ՏԷՐ ԻՍՐԱՅԷԼԻ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ ՄԷՋ

Տէր Իսրայէլի վերագրուած է Պարիսի Ազգ. Մատենադարանի Թ. 180 Յայսմաւուրքը, ուսկից առած եմ յետագայ Վարքը, հրատարակած է G. Bayan ի հաւաքման Patro-

[2] Մովսէս Խորենացւոյ Մատենագրութիւնք, Վենետիկ 1865, էջ 302. «Եւ անդ ի լեառն Վարագ ամրացեալք. զի լուան խնդիր լինել ինքեանց, ցան եւ ցիր ի խորշ լերինն բնակեցան, արարեալ իւրեանց դեռնափոր գաղարս»:

logie Orientale V, 345 եւ շար.: Այս խումբն է Վիեննայի Մխիթ. Թ. 7 Յայսմաւուրքը, ուսկից առած ենք յետագայ Վարքը (թղ. 144բ—145բ). ընթերցուածոց մանր տարբերութեամբ նոյնն ունի P. O. XV, 388—390: Ուղղագրական անկանոնութիւնները սրբագրած եմ:

Խմբագիրն աչքի առաջ ունեցած է Փոքր Սոկրատն եւ Մովսէս Խորենացին: Օգտուած է ազատօրէն ձգտելով համառօտութեան: Անուշադրութեան վերագրելու է տեղիքն՝ «մայր մանկանն ետ նմա ինչս բազումս եւ նա ոչ առ»: Սոկրատի քով պարգեւատուութիւնը կ'ըլլայ թագաւորին կողմէ թագուհւոյն բժշկութեան համար:

Սահմի Ի. եւ Հոկտեմբերի ԻԹ. Յիշատակ է սրբուհեացն Նունեայ եւ Մանեայ կուսանացն:

Սրբուհի կանայքս Նունէ եւ Մանէ էին յընկերաց սրբոց Հռիփսիմեանցն: Եւ Նունէի (գնաց) յերկիրն Վրաց ի քաղաքն Մծխիթայ. եւ կայր սրբութեամբ եւ պարկեշտութեամբ ի մէջ բարբարոսացն:

Իսկ որդին Միհրանայ բդեշխի հիւանդացաւ մերձ ի մահ. եւ ածին զնա առ Նունէի. եւ նա աղօթիւք բժշկեաց զնա. եւ մայր մանկանն ետ նմա ինչս բազումս. եւ նա ոչ առ:

Հիւանդացաւ եւ կինն Միհրանայ. նոյնպէս եւ զնա բժշկեաց աղօթիւք: Եւ Միհրանայ կոչեցեալ զսուրբն Նունէի, ասէ. Ո՞վ

է այն Աստուածն քոյ, զոր պաշտես դու սքանչելապէս: Եւ նա քարոզեաց նոցա զՔրիստոս Աստուած ճշմարիտ, եւ զամենայն զպաշտամունս հեթանոսաց դեւս: Եւ Միհրան քաղցրութեամբ լսէր:

Եւ դէպ եղեւ Միհրանայ ելանել յորս: Եւ խաւար կալաւ զնա ի լերինն. եւ երկեաւ Միհրան, զի լուեալ էր վասն Տրդատայ, եթէ եւ նա յորս եւ պատահեցին նմա հարուածքն. կարծեալ, թէ եւ նմա նոյնպէս դիպելոց է: Եւ նա կարդաց աղօթիւք զԱստուածն Նունէի. եւ թէ նովաւ լիցի զերծանել, ասէ, պաշտեցից զնա: Եւ իսկոյն լուսաւորեալ աւդոյն՝ էջ ի տուն իւր:

Եւ կոչեցեալ զՆունէի, ուսաւ ի նմանէ զճշմարիտ հաւատն: Եւ հաւատացեալ յամենասուրբ Երրորդութիւնն ինքն եւ ամենայն նախարարքն իւր: Եւ խնդրեալ սրբոյն Նունէի արս հաւատարիմս, յղեաց առ սուրբն Գրիգոր, (հարցանել) թէ զինչ հրամայեսցէ առնել, զի դիւրաւ ընկալան Վիրք զքրիստոնէութիւն աւետարանին: Եւ նա հրամայեաց կործանել զկուռսն եւ կանգնել զնշան սուրբ Խաչին, որպէս եւ ինքն արար:

Եւ իսկոյն կործանեաց զամպրոպային պատկերն Արամազդեայ, որ կայր մեկուսի ի քաղաքէն գետոյն հզաւրի, որ կոչի Կուր, ընդ մէջ անցանելով: Եւ կանգնեաց փոխանակ պատկերին զնշան Խաչին. եւ երկրպագեցին նմա ի տանեաց իւրեանց իւրաքանչիւր ոք. զի այնպէս առնէին կռոցն: Եւ իբրեւ

*տեսին, եթէ լոկ փայտ միայն է եւ ոչ գործ ճարտարի, արհամարհեցին եւ ի բաց գնացին: Իսկ բարերարն Աստուած տեսեալ զգայթակղութիւն նոցա, առաքեաց սիւն լուսոյ ի գիշերին ի վերայ Խաչին. եւ ձայնք հրեշտակաց լսելի լինէին: Եւ տեսեալ զայն՝ հաստատեցան ի հաւատն եւ երկրպագեցին: Եւ յայնմ հետէ բժշկութիւնք լինէին ի սուրբ Խաչէն:*

*Եւ գնացեալ Նունէի յայլ աշխարհս Վրաց քարոզեաց սկսեալ ի Կլարջից մինչեւ ի դրունս Ալանաց եւ Կազրից, առաքելուհի եղեալ: Եւ անդ կատարեցաւ ճգնութեամբ....:*

*Կատարի տաւն սրբոյն Նունէի եւ Մանէի՝ Սահմի Ի. եւ Հոկտեմբերի ԻԹ.:*

## 8. Ս. ՆՈՒՆԷԻ ՎԱՐՔԸ ԿԻՐԱԿՈՍ ԱՐԵՒԵԼՑԻՈՑ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ ՄԷՋ

*Կիրակոս Արեւելցի կազմած է իր Յայսմաւուրքը* 1269*ին ի Կիլիկիա: Ընտիր օրինակ մը այս Յայսմաւուրքէն տեսած եմ Կիպրոս, Նիկոսիայի Հայոց Եկեղեցւոյ Թ.* 2 *ձեռագրին մէջ, գրուած Ստեփանոս գրչէ* 1311*ին Սիս եւ Ճոխաթու վանք: Նունէի վարքը կը գտնուի այս ձեռագրի մէջ թղ.* 164*բ*—165*ա, ուսկից եւ կը հրատարակեմ: Կիրակոս հետեւած է Մ. Խորենացւոյ, բայց մուծած է իրմէ ալ մանր յաւելուածներ, որոնք ապա կրկնուած են նաեւ Խլաթեցւոյ Յայսմաւուրքի մէջ:*

Սահմի Ի. եւ հոկտեմբերի ԻԹ. Եւ յայսմ աւուր Պատմութիւն Ընկերաց սրբուհւոյն Հռիփսիմեայ եւ վկայութիւն առաքելուհւոյն Վրաց Նունէ [եւ Մանէ]։

Ի ժամանակին յորում գային սուրբ Տիկնայքն յաշխարհս Հայոց, նախ յԵդեսիա եկին եւ այսպ անտի եկին յԵկեղեաց գաւառ[1]։ Եւ անդ ի լերինն մի ոմն ի նոցանէ մնաց, որում անուն էր Մանի, ի քարեայ այրի մի արարեալ բնակութիւն։ Իսկ այլքն եկին ի վերին կողմանսն եւ շրջէին ի լերինսն։ Եւ ոմանք ի նոցանէ հանդերձ երկու քահանայիւքն դարձուցին ի լերինն Վարագ ունելով ընդ իւրեանս զմածեալ Տեառնն արեամբ զսուրբ Խաչն, զոր բերին ի Հռովմայ։ Եւ ի սոցանէ սուրբն Գրիգոր եգիտ ի նոյն անապատսն եւ ետ աւետիս զդարձ աշխարհին։

Իսկ մի ոմն ի նոցանէ, որում անուն էր Նունի, գնաց յաշխարհն Վրաց ի քաղաք նոցին Մցխիթայ. եւ կացեալ ճգնութեամբ բժշկէր զախտս նոցին անուամբն Քրիստոսի. որ եւ զկին Միհրդատայ իշխանի նոցին բժշկեաց եւ ուսոյց նմա զհաւատսն Քրիստոսի։

Եւ իսկոյն ելեալ յորս՝ պաշարեցաւ Միհրան մառախղաւ[2]. եւ ուխտեալ թէ փրկեսցի ի վտանգէն՝ պաշտել զԱստուածն Նունեայ։ Եւ առժամայն լոյս ծագեալ առաջնորդեաց նմա։ Եւ եկեալ հաւատաց ի Քրիստոս ինքն եւ ամենայն աշխարհն վարդապետութեամբն Նունեայ։

1 գաւառի։ — 2 մառախուղ։

Ապա խնդրեաց Սրբուհին արս յիշխանէն եւ առաքեաց առ սուրբն Գրիգոր՝ յղել նոցա առաջնորդս: Իսկ նա զի դեռ ոչ էր առեալ զպատիւ եպիսկոպոսութեան՝ հրամայեաց զկուռսն կործանել եւ կանգնել[3] ի տեղւոջն զտէրունական Խաչն մինչեւ Աստուած նոցա հովիւ տացէ: Զոր եւ արար իսկ. եւ զկուռսն, որ յայն կոյս գետոյն, որում սովոր էին յիւրաքանչիւր տանեաց երկրպագել՝ կործանեաց. եւ փայտեղէն Խաչ կանգնեաց ի տեղւոջն:

Եւ ի վաղին երկիր պագեալ Խաչին՝ անցեալ տեսին զնոյն, զի փայտ էր լոկ եւ ոչ որպէս ոսկեպատկերն ճառագայթիւք արեգականն նշոյլս արտափայլէր. արհամարհեցին յիմարութեամբ: Իսկ Աստուած ծագեաց սիւն ամպոյ ի վերայ սուրբ Խաչին ի լեառն եւ լոյս ի մէջ նորա եւ ի վերայ փայտեղէն նշանին՝ ըստ ձեւոյ եւ ըստ տպաւորութեան փայտին. այլ եւ ձայն սաղմոսերգութեան շուրջ զնովաւ եւ բուրումն անուշահոտութեան: Եւ հաստատեալ ամենեցուն ի ճշմարիտ հաւատս բոլորով սրտիւ եւ երկիր պագանէին սուրբ Խաչին:

Իսկ երանելին Նունէ գնաց աշակերտեաց եւ զայլ գաւառսն[4] որ առ Դրամբք Ալանաց եւ առ ծովուն[5] Կասպից մինչեւ ի սահմանս Մասքթաց: Եւ ի նոյն քարոզութեանն հանգեաւ ի Քրիստոս[6]:

3 կանկնել: — 4 գաւառն: — 5 ծովն: — 6 Շարունակութիւնը Ս. Մանիի մասին է:

## Թ. Ս. ՆՈՒՆԷԻ ՎԱՐՔԸ ԳՐԻԳՈՐ ԽԼԱԹԵՑԻՈՅ ՅԱՅՍՄԱՒՈՒՐՔԻ ՄԷՋ

*Գրիգոր Ծերենց Խլաթեցի* († 27 *մայիս* 1425) *իր Յայսմաւուրքի մէջ խօսած է Ս. Նունէի մասին այլ եւ այլ անգամներ: Վերագոյն տուի* Ս. Նունէի խաչի Պատմութիւնը. *այս տեղ կը հրատարակեմ* Վարքը, *որ կազմուած է երկու մասերէ. Ա. Ուղեգրութիւն Ս. Հռիփսիմեանց. Բ. Վարք Ս. Նունէի: Այս Ա. Մասը սակաւ փոփոխութեամբ գետեղած է նաեւ Ս. Հռիփսիմեանց Վկայաբանութեան մէջ. ամբողջութեամբ քաղուածք մըն է Մովսէս Խորենացւոյ վերագրուած «Սրբոց Հռիփսիմեանց Պատմութենէն» (Մատենագրութիւն Մ. Խորենացւոյ, էջ 295—303): Հետաքրքրական է այս քաղուածքը անով, որ Գ. Խլաթեցի աշխարհագրական անուններու քով նշանակած է նաեւ անոնց տեղագրութիւնն եւ նոր յորջորջումը: Ծանօթութիւններու մէջ տուած եմ մէջբերումներ Հռիփսիմեանց Վկայաբանութենէն, ուր կարեւոր տեսած եմ: Բ. Մասի մէջ Խլաթեցի աչքի առաջ ունեցած է Կիրակոս Արեւելցւոյ Յայսմաւուրքն եւ Մ. Խորենացւոյ Հայոց Պատմութիւնը: Կը տեսնուի իր ձեռքին տակ նաեւ Վրաց Պատմութիւնը. ասկէ է Միհրանի «պարսկորդի» կոչումը: Ս. Նունէի յիշատակութիւնն բրած է նաեւ Ս. Գայիանեանց եւ Ս. Հռիփսիմեանց Վկայաբանութիւններու մէջ, զորոնք յառաջ բերած եմ Վարքին վերջը մանրագիր:*

*Հրատարակութեանս համար օրինակ ընտրած եմ Վիեննայի Մխիթ. Մատենադարանի Թ. 10, Թղ. 112ա—113ա: Կարեւոր չհամարեցայ համեմատութեան առնել նոյն Մատենադարանի միւս ձեռագիրները: Ուղղագրական մանր շեղումները հարթած եմ:*

Սահմի Ի. եւ Հոկտեմբեր ԻԹ. Տաւն է Կուսանացն Նունէ եւ Մանեայ:

*Սուրբ Կուսանացն Հռիփսիմեանց ընկերք էին սոքա. որք ելեալք ի Հռոմայ եկին փախըստական յԱղեքսանդրիա. եւ անտի եկին յԵրուսաղէմ եւ անտի յՈւռհայ եւ անտի գնացին ի Մաժաք, որ է Կեսարիա, եւ անտի եկին յԵկեղեաց գաւառն, որ է Եզընկայն եւ Կամախ: Եւ անդ ի լերինն Դարանաղեաց մնաց ոմն ի նոցանէ, որոյ անունն էր Մանի. եւ ի քարայր մի արարեալ իւր բնակութիւն. եւ անդ կացեալ յերկար ժամանակս:*

*Իսկ այլքն ելին ի վերին կողմանս աշխարհին. եւ եկեալ հասին ի Խլաթ քաղաք. եւ անտի փոխեցան ի Թուխ*[1]*. եւ անտի կոխեալ զԱղձնիս՝ հասին ի գաւառն Մոկաց եւ բնակեցան ի տեղին որ այժմ կոչի սուրբ Խաչ եւ սուրբ Կանանց վանք*[2]*: Եւ անտի իջին յԱյ–*

---

[1] *«Եւ այլքն գնացին ի տեղին, որ կոչի Թուխ, ի գաւառն Աղձնեաց, որ այժմ կոչի Խորձ (Թ. 10, Թղ. 78բ.):*

[2] *«Իսկ մայրն Գայիանէ Հռիփսիմէիւ եւ այլ ընկերաւքն գնացեալ մօտն ի գաւառն Մոկաց. ընդ ինքեանս ունելով զսուրբ Խաչն ի Կենաց փայտէն, որով առնէին մեծամեծ նշանս: Եւ կացեալ ի տեղի*

կի. եւ զաւրութեամբ սուրբ Խաչին, որ ընդ իւրեանց ունէին, բղխեցուցին զջուրն կենդանի բժշկութեան, որ մինչեւ ցայսօր ժամանակի առնէ մեծամեծ նշանս ի հիւանդս եւ ի սլաքարգել խոցուածս: Եւ անտի գնացին ի Հոգեաց վանս. եւ անդ երկրպագեալ փայտեայ Պատկերին սուրբ Աստուածածնին: Եւ անտի եկեալ բնակեցան ի Տոսպ գաւառի հանդէպ Վանայ բերդին ի հարաւոյ կողմանէ, ի տեղին որ կոչի սուրբ Խաչ եւ աւի Խուռուպաչ[3]: Եւ անտի ելին ի լեառն Վարագայ եւ անդ ամփոփեցին զսուրբ Խաչն ի կենաց փայտէ. եւ անդանաւր դադարեցին ոմանք ի նոցանէ երկու քահանայիւք ի լեառն Վարագայ: Նոյնպէս եւ յամենայն տեղիս մնացին մին եւ երկու եւ երեք եւ չորք ընդ որ գնացին սուրբ կուսանքն: Զի ի Հռոմայ Հ կուսանք ելին եւ քահանայք ընդ նոսա. եւ եկին նաւով ի Սքանդարիա եւ անտի յԵրուսաղէմ: Եւ ոմանք յԵրուսաղէմ մնացին. եւ այնպէս յամենայն տեղիս մնացին մինչեւ հասին ԼԸ

---

մի պատշաճաւոր եւ անդ արարին խրճիթս եւ եկեղեցիս եւ ոմանք անդ մնացին. վասն որոյ եւ յետոյ շինեցաւ տեղին վանք հռչակաւոր եւ հոյակապ եկեղեցի եւ կոչեցաւ սուրբ Խաչ. եւ է մինչեւ ցայսաւր տեղի մեծավայելուչ եւ վանք միաբանակեցաց» (Թղ. 78բ [2]):

[3] «Եւ այլք ելին ի գաւառն Տոսբայ, ի դաշտն Վանայ, ի յոտին Վարագայ. եւ բնակեցան հանդէպ Շամիրամակերտին (Զ. Շամիրակերտին). այս է Վանայ բերդին ի հարաւոյ կողմանէ, ի վայելուչ վայրի. որ եւ նոյն տեղին կոչեցաւ սուրբ Խաչ. եւ այժմ աւի Խուռուպաչ»:

անձինք ի Վաղարշապատ քաղաք[4]. ընդ նոսին եւ երեք քահանայք: Եւ ԼԶ կուսանքն անդէն ընդ սրբոյն Հռիփսիմեայ կատարեցան: Իսկ երեք քահանայքն փախեան եւ եկին ի Գառնի եւ բնակեցան ի լեառն Գառնոյ եւ անդ խաղաղութեամբ հանգեան ի Քրիստոս, ի տեղին որ յետոյ կոչեցաւ Աղջոց վանք:

Եւ մի ոմն ի սուրբ կուսանացն, որոյ անունն էր Նունի, փախեաւ ի նահատակութեան ժամու սրբոցն Հռիփսիմեանց եւ գնաց տարագէմ ի Վիրս եւ եհաս ի քաղաքն Վրաց Մծխիթայ: Եւ կացեալ անդ մեծաւ ճգնութեամբ. եւ փարատէր զամենայն ախտս նոցա անուամբն Քրիստոսի: Որ եւ զկին Միհրանայ արքային Վրաց ողջացոյց. եւ ուսոյց նոցա զհաւատս աստուածպաշտութեան:

Եւ յաւուր միում եկեալ Միհրան արքայ ի յորս էրէոց. եւ պաշարեցաւ մառախլաւ. եւ ոչ կարէր գտանել զճանապարհն: Յայնժամ ուխտեաց, զի թէ փրկեսցի ի վտանգէն՝ պաշտեսցէ զԱստուածն Նունէի: Եւ առժամայն լոյս ծագեալ առաջնորդեաց նմա: Եւ եկեալ ի տուն՝ հաւատաց ի Քրիստոս. եւ ամենայն ազգն աշխարհաւն ընդ նմա, վարդապետութեամբն Նունեայ:

Եւ ապա լուաւ զխօսանսն Տրդատայ եւ զելն ի Վիրապէն սրբոյն Գրիգորի եւ զդարձն Հայոց ազգիս ի խաւարէ անգիտութեան ի

[4] «Գնացեալ հասին ի Վաղարշապատ, ի մայրաքաղաքն Այրարատեան. եւ անդ էր ի ձմերոց Տրդատ արքայն Հայոց» (Թղ. 79, ա[1]):

լոյս աստուածգիտութեան եւ զգալն ի հա-ւատս աստուածպաշտութեան : Խնդրեաց սըր-բուհին Նունի արս ի թագաւորէն Միհրանայ եւ յղեաց առ սուրբն Գրիգոր՝ տալ նոցա ա-ռաջնորդ : Իսկ նա դեռ չէր առեալ զկարգն քահանայական եւ զաստիճանն եպիսկոպո-սութեան : Հրամայեաց զկուռսն կործանել եւ կանգնել զսուրբ Խաչն տէրունական մին-չեւ տացէ նոցա Աստուած հովիւ եւ ա-ռաջնորդ :

Եւ սուրբն Նունի արար անյապաղ զոր հրամայեաց նմա սուրբն Գրիգոր : Կանգնեաց փայտեղէն խաչ յայնկոյս գետոյն ի տեղւո կռոցն. եւ ասաց ամենեցուն երկիր պագա-նել : Եւ ամենեքեան ի տան իւրեանց երկըր-պագեցին սուրբ Խաչին Քրիստոսի : Եւ իբրեւ տեսին, զի փայտ լոկ էր, արհամարհեալ ի բաց դարձան : Յայնժամ սրբուհին Նունի աղաչեաց զԱստուած եւ աղաւթիւք նորա լոյս մեծ ծագեաց յերկնից ի վերայ սուրբ Խաչին. եւ բարբառ հրեշտակաց լսելի լի-նէր, որք աւրհնէին զԱստուածն բարձանց : Եւ ամենեցուն տեսեալ զլոյսն եւ լուեալ զբարբառս հրեշտակացն՝ հաւատացին ի Խաչն եւ հաստատեցան ի հաւատս Քրիս-տոսի :

Իսկ սրբուհի կոյսն Նունի գնաց աշա-կերտել եւ զայլ գաւառսն հեթանոսաց, զՎրաց եւ զԱփխազաց եւ զորս առ դրամբն Ալանաց, առ ծովեզերբն Կասբից մինչեւ ի

*սահմանս Մագքթայ: Եւ ի նոյն քարոզու-թեանն հանդեաւ ի Քրիստոս, զոր պատուել եղին Վրացիքն ի տապանի. եւ պատուէին որպէս զառաջնորդ եւ զլուսաւորիչ անձանց իւրեանց: Մանաւանդ զի ի տապանէն եւ ի նշխարացն եւ յանուանէն բազում նշանք կա-տարին ի փառս Քրիստոսի:*

*Գր. Խլաթեցի ի վերջ գրութեանս ունի գովեստ մը, ուր ի մէջ այլոց կը գրէ.*

*«Եւ արդ զխարդ գովեսցուք զայնոսիկ, որ ի վեր են քան զգովութիւնս եւ անհաս են ակար բանից մերոց:*

*Զկոյսն ասեմ զՀոփսիմէ զհաւչակեալն գեղեցկութեամբ... Պարծանք մարտիրոսաց, ուրախութիւն հրեշտակաց, ահարկուն դիւաց կոյսն Նունի, երկնաւոր փեսային հարսնա-ցեալն, Աստուծոյ ինքնաւըլէր ընծայն, սրբութեան սիրողն, ամենամաքուր խոր-հուրդն, առաքինասէր հոգին»:*

Հոռի Ի՟. եւ Հոկտ. Զ. Վկայաբանութիւն սրբոց կուսանացն Գայիանեանցն:

*«Իսկ սուրբն Նունի, որ գնաց տարաղէպ փա-խըստական եւ հասեալ ի Մծխիթայ առ թագաւորն Վրաց Միհրան պարսկորդի: Եւ քարոզեաց նոցա զՔրիստոս եւ էած ի հաւատս աստուածպաշտութեան: Եւ յղեաց առ սուրբն Գրիգոր երթալ մկրտել զնոսա: Եւ նա վասն զի ոչ ունէր զպատիւ քահանայութեանն, ոչ գնաց, այլ պատուիրեաց Նունեայ խաչ կանգնել եւ ուսուցանել նոցա, զի երկրպագեսցեն, մինչ ինքն եր-թայ առնուլ զաստիճան քահանայութեան. եւ ապա գայ մկրտել զնոր հաւատացեալսն ի Վրաց եւ ի Հայոց. եւ*

լուսաւորել զամենեսեան շնորհաւք սուրբ աւազանին։ Եւ արարին այնպէս ի փառս ամենասուրբ Երրորդութեանն» (թղ. 82ա)։

Ի վերջ Հռիփսիմեայ նահատակութեան։

«Իսկ սուրբն Նունի գնացեալ փախստական եւ պարագէպ եհաս ի Վրացտան. եւ գնոսա նա լուսաւորեաց լուսով աստուածգիտութեամբ. եւ արար երկրպագու Խաչին եւ խաչեցելոյն Քրիստոսի» (թղ. 80բ)։

## 10· ՍՏՈՅՆ ԵՊԻՓԱՆՈՒ ԿԻՊՐԱՑԻՈՅ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ ԵՒ Ս· ԽԱՉԻՆ ՆՈՒՆԷԻ

*Վիեննայի Մխիթ. Մատենադարանի թ. 11, էջ 747—774 ունի գրուածք մը «Երանելւոյն Եպիփանու ասացեալ ի Խաչն Տեառն մերոյ Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի, յորում եղ զանձն իւր։ Նախայաւիտեան Բանն Հօր սկզբան լինելութեանն իբրեւ արարչագործեաց զամենայն արարածս...» սկզբնաւորութեամբ։*

*Ճառս գրած է Եպիփան ի խնդրոյ «համանուան իմոյ, եթէ Տէր կամեսցի՝ ժառանգ ինձ լինել ի Քրիստոս», այս ինքն Եպիփանի։ Նկատի կ'առնէ Ս· Գրոց այլ եւ այլ տեղիքներ, որոնք օրինակ էին Ս· Խաչի, Նոյի տապանը, Մովսէսի օձը, Տապանակը, եւ այլն եւ այլն (էջ 747—755)։ Կ'աւարտէ ճառս· «կնքեաց զտեղին զայն (ուր պահեաց Երեմիա զԳաւազանն Ահարոնի եւ զՏապանակն) որպէս մատանեաւ գրելով զանուն Տեառն եւ*

ամպն ծածկեաց զնա. եւ չէ ումեք հնար տեսանել զնա մինչեւ ցօրն վերջին»: Ապա կ՚աւելցուի՝ «Ուստի եւ յամենայն տեղիս յաճախեն մեծապաքանչ նշանք սուրբ Խաչին», որ բնաւ կապ չունի նախորդին հետ, եւ ի մէջ կը բերուին «Պատրոնիկէ» Կղաւդեայ կայսեր կնոջ ձեռքով Խաչի գիւտի պատմութիւնը (էջ 755—761). Խաչէն մաս մը կը տանի Հռոմ, «զոր յետոյ Ս. Հռիփսիմէ եբեր ի Հայս, որ կոչի Խաչ Վարագայ մինչեւ ցայսօր» (էջ 759): Ապա Կոստանդիանոս Մեծի աստղագիր խաչի երեւումը (էջ 761—762), խաչի Գիւտը ի ձեռն Հեղինէի (761—766), այս առթիւ յիշատակութիւն Դաւիթ Մարգարէի Թագին, զոր Կոստանդիանոս կ՚ընդունի Տապուհէն (761), Տրդատի այցելութիւնը Հռոմ (էջ 767), Յուլիանոս Ուրացողի հրամանը Հրէից Երուսաղէմ տաճար կառուցանելու (769—770), Երուսաղէմի Կիւրեղ հայրապետի նահատակութիւնը (էջ 771—772). Ս. Խաչի երեւումը Երուսաղէմ Ս. Կիւրղի օրով (էջ 771—772): Ասկէ վերջը կը պատմուի Ս. Նունէի վարքը եւ Խաչի կանգնումը (էջ 772—774): Ի կատարածին զետեղուած է Եղիփանի վերջաբանը, որ նախնաբար առանց տարակուսի շարունակութիւնն էր էջ 755 «ցօրն վերջին» տողին:

«Բայց եւ ես իրաւունս համարիմ օրինօք ասել, որպէս եւ կանխաւ ասացի[1], եթէ չէ

[1] Կ՚ակնարկէ յէջն 750:

որք բաւական ընդ գրով արկանել զհրաշիցն եւ զօրինակացն որ վասն սուրբ Նշանին եղեն եւ լինելոց են ի հանդերձեալսն մեծ եւ ահաւոր գալստեան Որդւոյն Աստուծոյ. որպէս ասէ. Եւ ապա երեւեսցի Նշան որդւոյ մարդոյ յերկինս[2]. եւ թէ Երեւեցար ի փրկութիւն ժողովրդեան քո ի փրկել զընտրեալս քո[3]:

Եւ արդ, եղբարք, փոքր ի շատէ ըստ խնդրոյ ժառանգիս իմոյ համանուն Եղիսանու բացատրեցի զօրինակացն եւ զեղելոց նշանաց սուրբ Խաչին, զոր կատարեցան եւ կատարելոց են յամենայն ժամանակի անուամբն Յիսուսի Քրիստոսի Տեառն մերոյ, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

Այս ընդմիջարկութիւնները, որոնք մուծուած են հոյ գրչէ, ազրիւր կը մանանչեն հետեւեալ գրուածքները.

1. Պատմութիւն Գիւտի Ս. Խաչի ի ձեռն Պատրոնիկէ դշխոյի.

2. Պատմութիւն Գիւտի Ս. Խաչի ի ձեռն Հեղինէի.

3. Սոկրատայ Պատմութիւն Եկեղեցական.

4. Ագաթանգեղոս.

5. Թուղթ Կիւրղի վասն Երեւման Ս. Խաչին.

6. Վկայաբանութիւն Կիրակոս–Կիւրղի Երուսաղէմացւոյ.

---

[2] Մատթ. ԻԴ. 30:

[3] Ամբ. Գ. 13. Ելեր ի փրկութիւն ժողովրդեան քո փրկել զօծեալս քո:

7. Մովսէս Խորենացւոյ Պատմութիւն Հայոց.

8. Մովսէս Խորենացւոյ Պատմութիւն Հռիփսիմեանց.

9. Ծապուհ Բագրատունի, Պատմութիւն Թագին Դաւիթ Մարգարէի.

10. Ուխտանէս:

Նկատի առնելով այս աղբիւրները կըրնանք գրութեանս խմբագրութեան կանխագոյն եզր գծել Ժ. դարու վերջին քառորդը: Ս. Նունէի Վարքը համառօտուած է Մ. Խորենացւոյ Բ. 86 գլխէն, կամայական բարեփոխութիւններով: Խմբագրէս հնարուած է Որսի ժամանակ տեղի ունեցած խաւարումի փարատումը լուսաւոր Խաչի երեւումով:

Այս մասին հայ բնագիրը կը հրատարակեմ ամբողջութեամբ Թ. 11էն (էջ 772—774) առանց փոփոխելու ուղղագրութիւնը:

Ձեռագիրը օրինակուած է Ամասիացի Սահակ վարդապետի 21 յուլիս 1853 կատարած արտագրութենէն, որուն գաղափար օրինակը գրուած էր Կ'րսուի 1350ին (մանրամասնութիւնները տես Հ. Յ. Տաշեան, Ցուցակ, էջ 106—107):

(ՎԱՐՔ Ս. ՆՈՒՆԷԻ ԵՒ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ Ս. ԽԱՉԻՆ)

Կին ոմն յընկերաց սրբոյն Հռիփսիմեանց գնաց փախստեայ առ Վրացիսն, անուն նորա Նունի. եւ քարոզեաց նոցա զՔրիստոս Ա-

տուած եւ արար բժշկութիւն բազում հիւանդաց, գլխովին եւ զկին Վրաց առաջնորդին Միրհենայ: Եւ հարցեալ նմա. Ո՞յր անուամբ առնես զմեծամեծ սքանչելիսդ՝ առանց դեղոց բժշկութիւն: Եւ ասէ Նունի. Խաչեցելոյն: Եւ նա հիացեալ տայր փառս Աստուծոյ:

Եւ յաւուրսն յայնոսիկ եղեալ ի քաղաքն իւր Մծխեթանոյ Միհրանայ բազմօք ի յորս զրօսանաց. եւ ի մէջօրէի հասեալ ի վերայ նորա խաւար միգի եւ մառա(խ)ղի. եւ եղեւ իբրեւ խոր գիշեր: Եւ զուշով ածեալ Միհրան զհրաշիցն որ առ Տրդատ արքայ, թէ այնպէս դիպեցաւ նմա. եւ հայցէր առ խաչելեալն Յիսուս Քրիստոս օգնել նմա: Երեւեալ ամենեցուն խաչ լուսոյ եւ լուսաւորեցան ամենեքեան. եւ եկին ի քաղաքն իւրեանց Մրծխիթայ: Եւ հաւատացեալք ի Քրիստոս Յիսուս:

Եւ առաքեաց առ սուրբն Նունէ առ սուրբ Լուսաւորիչն Գրիգորիոս Հայոց մեծաց, թէ որպէս արասցէ ըստ եղելութեանն: Եւ նա հրաման ետ կործանել զկուռսն եւ ի պատշաճ տեղւոջ խաչ կանգնել տէրունական, մինչեւ տացէ ձեզ Տէր հովիւս առ ի հաստատել զձեզ ի հաւատսն Քրիստոսի:

Եւ նա խակոյն կործանեաց զպատկերսն Արամազդայ, որ կայր յայնկոյս գետոյն: Եւ ամենայն քաղաքն ի տանեաց իւրեանց երկր–

պարգէին նմա: Եւ ապա ասեն ամենայն քաղաքն. Ցուցէք մեզ փութանակի, եթէ փոխանակ Արամազդայ ո՞յր երկրպագեմք: Եւ անդէն ի բարձրաբլուրն որ կայր ընդ արեւելս կոյս քաղաքին Մծխիթայ, տեղի վայելուչ՝ կանգնեաց խաչ լոկ փայտեայ. եւ երկրպագեցին: Եւ ոմանց մօտոյ գնացեալ՝ գայթագղէին եւ ասէին. Ամենայն ծառք անտառի նոյնպէս ձեւանան:

Եւ խկոյն Աստուած, որ կամի զամենայն մարդիկ զի կեցցեն եւ ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն[4], ճառագայթեալ պայծառացոյց աստուածային լուսովն զլեառն առ հասարակ եւ հոտ անոյշ լցոյց զվայրսն ամենայն եւ զքաղաքն. եւ ձայն արկեալ զօրաց երկնաւորացն քաղցրաբան երգով սաղմոսիւք եւ օրհնութեամբ: Եւ ամենայն ուրեք երեւեալ լոյս խաչանման: Եւ խաչն որ կանգնեցաւ՝ առաւել եւս պայծառապարդ փայլէր քան զարեգակն երկոտասան աստեղակերպ ճառագայթիւք հրացայտ՝ առնելով հիւանդաց որ դիպեցան անդ՝ առողջանալ առժամայն, եւ յամենայն ժամ որ խնդրեն հաւատով. ըստ այնմ որ ասէ. Լերինք եւ բլուրք կայտռեսցեն յընդունել զձեզ եւ ծառք ծափս հարցեն ոստեւք իւրեանց[5]:

---

[4] Ա. Տիմ. Բ. 4:
[5] Ես. ԾԵ. 12:

Եւ առաքելուհին Նունէ ուրախացեալ յոյժ՝ յանձն արար զնոսա Յիսուսի Քրիստոսի եւ սուրբ Խաչին յոր հաւատացին։ Եւ ինքն առաջնորդեալ սուրբ Խաչիւն գնաց քարոզել զՅիսուս Քրիստոս. սկսեալ ի Կղարջից առ դրամբն Ալանաց եւ Կապրից մինչեւ ի սահմանս Մաղքթաց. որպէս ուսուցանէ ատենադպիրն Ագաթանգեղոս։

---

# Դ

# ՓՈՔՐ ՍԱԿՐԷՏ

## 1. ՀԱՄԱՌՕՏՈՒԹԻՒՆՆ ԵՒ ՆԵՐՍԷՍ ԿԱՄՍԱՐԱԿԱՆ

1. Առիթ ունեցանք խօսելու Սոկրատի Եկեղեցական Պատմութեան Հայերէն թարգմանութեան մասին, որ կատարուած էր Փիլոն Տիրակացւոյ ձեռքով 696/97ին։ Յիշեցինք նաեւ Ս. Սեղբեստրոսի Վարքը, թարգմանուած յոյն բնագրէ 678ին արաս Գրիգոր Ջորափորեցւոյ կողմէ, որ թարգմանն էր Ներսէհ Վրաց իշխանին, Կամսարականներու փեսային։ Այս վարքը Փիլոն Տիրակացւոյ յանձնարարութեամբ Թովմաս դպիր օրինակած էր Սոկրատի Եկեղ. Պատմութեան կից[1]։

Կ'երեւայ թէ այս երկմասնեայ պատմագրքէն օրինակ մը ձօնուած էր Ներսէս Կամսարական ապիհիպատ պատրիկի։ Գիտենք, թէ երկմասնեայ պատմագրութեանս բովանդակութենէն հետաքրքրուած է Կամսարական իշխանը, եւ փափաք յայտնած է ունենալ անոր համառօտութիւնը։ Այս առաջարկութեան դրդապատճառ կարող են եղած ըլլալ թէ գործին ընդարձակութիւնն եւ թէ թարգմանութեան դժուարիմանալի եւ անհաճելի լեզուն։ Թէ որո՞ւն միճակուած էր գլուխ հանել այս գործը, չգիտենք. բայց

[1] Տես վերը էջ 53 եւ չար.։

Համառօտութիւնը հասած է մեզի բազմաթիւ ձեռագիրներու մէջ։

Անշուշտ համառօտողն այդ երկմասնեայ պատմագիրքը ծայրաքաղած պիտի ըլլար այն կարգով, ինչպէս ձեռագիրը կը ներկայացնէր, այսինքն նախ Սոկրատի Եկեղ. Պատմութիւնն եւ ապա Սեղբեստրոսի Վարքը։ Այսպէս չենք գտներ, սակայն, կարգը ծանօթ ձեռագիրներու մէջ, ուր նախ, ինչպէս ժամանակագրութիւնը կը պահանջէր, զետեղուած է Սեղբեստրոսի Վարքը եւ ապա Սոկրատի Պատմութիւնը։ Բայց այս կարգը չէր կրնար նախնականն եղած ըլլալ, ինչպէս կը մատնէ ընդհանուր խորագիրը, որ միայն նախնական օրինակին կը պատշաճէր։ Այդ խորագիրն է.

«Պատմութիւն Սոկրատայ. ըստ Հռովմայեցւոց նահանգին եպիսկոպոսաց եւ թագաւորաց եւ որք ի նոյն յարմարին սրբոց եւ անսրբոց գործք եւ բանք. զորոց պատմութիւնս բացայայտէ (համառօտաբար)։ Յառաջաբանութիւն Սոկրատայ պատմագրիս»։

Այս «Յառաջաբանութիւնը» նկատի ունի Սոկրատի հայող բաժնին առաջին գլուխը, որ կը սկսի այսպէս. «Եւսեբի Պամփիլեայ ի Ժ. գիրսն եղեալ զԵկեղեցւոյ Պատմութիւնն՝ լնեալ ի ժամանակս Կոստանդիանոսի Մեծի եւ որ առ Դիոկղետիանոսիւ եղեալ հալածանք քրիստոնէից...» (տպ. էջ 1). մինչ ձեռագիրներն Յառաջաբանիս չարունակութիւնն ունին. «Սկիզբն ի սրբոյն Սեղբես-

տրամէ Պատմութեանս սասացուք, որ կոչեցաւ յաթոռ Հայրապետութեան Պետրոսի եւ Պաւղոսի մեծ քաղաքին Հռովմայ...» (այսպէս Վիեննայի Թ. 623, Թղ. 4ա) : Ձեռագիրներէն ոմանք կը կարդան. «Սկիզբն ի սորբոյն Սեղբեստրոսի պատմութեանս արասցուք (այսպէս տպ. էջ 692)· ուրիշներ՝ փոխանակ «պատմութեանս» կը կարդան «պատմութեան» եւ «պատմութենէս» (Վիեննայի Թ. 455) : Նախնականն էր հաւանօրէն Սկիզբըն սրբոյն Սեղբեստրոսի Պատմութեան. որ իբրեւ սկզբնաւորութիւն Բ. Մասին, Սեղբեստրոսի Վարքին, պիտի պատշաճէր առանց որ եւ է երկբայութեան տեղի տալու, սկըզբնագիր օրինակին, ուր Վարքը կը յաջորդէր Սոկրատի Պատմութեան: Այս մասը իբրեւ ինքնակաց Վարքագրութիւն մը, կ՚աւարտի. «Եւ թագաւորն Կոստանդիանոս ուրախութեամբ ուրախ լինէր, որ յամենայնի յաղթող երեւեցաւ սուրբ Հայրապետն Սեղբեստրոս. եւ ամենեցուն քարոզէր հեռաւորաց եւ մերձաւորաց՝ ցեղեալն եւ բարեկարգութեամբ եւ հաստատուն հաւատովք պաշտէր զԱստուած զՀայր ամենակալ եւ զՈրդի Նորա Միածին եւ զՀոգին սուրբ, որում փառք յաւիտեանս», որ ամբողջութեամբ Համառօտողին, աւելի ճիշդ անոր խմբագրին յաւելուածն է նախորդ տողերուն հետ մէկ տեղ: Չկայ որ եւ է աւարտական յիշատակարան:

Բայց կայ Սոկրատի Համառօտութեան վերջը «Յիշատակարան շարագրողի Սոկ–

բառոյ» իբրեւ ճՀԱ (այլք ճՀԲ) հաստ կամ գլուխ, սկզբնաւորութեամբս. «Արդ պհրամանն քո, քահանայդ Աստուծոյ, կատարեցի որպէս եւ վարկանիլ խորհրդիւս. վասնակեցոյ ի Պատմութեանս, զոր ի Կոստանդիա նու ի ժամանակացն սկիզբն առնելով նշանապատմութեանս շարագրեցի: Բայց մի ոք մեզ մեղադիր լիցի... իսկ ոմանց յամենայնէ տուել արժանաւորելոցն գիտել» (էջ 687/8): «Ցիշատակարանս» հանուած հոս զետեղուած է Սոկրատի Զ. գրոց «Յառաջաբանէն» (տպ. էջ 486—487), ի հարկէ համառօտութեամբ: Իսկ չարունակութիւնն առնուած է Է. գրոց վերջաբանութենէն՝ «Բայց մեր աստանօր ուրեք զՊատմութիւնս դադարեցուցեալ» (էջ 688):

Կը յաջորդէ անմիջապէս Համառօտոյին վերջաբան ուղերձը, «Ով տէր Ներսէհ Կամսարական...» զոր ամբողջութեամբ կը ներկայացնեմ համեմատութեամբ ինձ մատչելի ձեռագիրներու եւ տպագիրներու:

Համեմատութեան առած եմ՝
W Վիեննայի Թ. 623:
N Վիեննայի Թ. 455:
Z Զարբանալեան, Մատենադարան, էջ 696:
S Մեծ եւ Փոքր Սոկրատ:
SԴ Փոքր Սոկրատի Դ օրինակը:

## ՀԱՄԱՌՕՏՈՂԻՆ ՎԵՐՋԱԲԱՆԸ

Ով տէր Ներսեհ Կամսարական ապիհիւպատ պատրիկ, որ եկեղեցեաց ես շինող,

1 SW Ներսէհ: W պւհւպատ N ապիհիպատ: —

միշտ զխաղաղութիւն կայցես ի Քրիստոսէ, որ տուողն է խաղաղութեան հանապազ․ զնախանձն կայցես զբարեպաշտ թագաւորացն հաստատել ի քում անձինդ, զբարեպաշտութեան ջանս: Մի եւ մի խիք տալ պատճառս եւ կորնչիցիս ի ճանապարհացն արդարութեան, եւ մի յընդդիմակացն, որ ի վայր բերիցի, քարշեալ եւ խոտորեալ լիցիս․ այլ զվերինն խորհելով փախիցես ի զբաղմանց եւ երթիցես զհետ արդարութեան, զհաւատոց, զսիրոյ, բուռն հարկանելով զկենացն յաւիտենականացն, որպէս բարեպաշտագոյն թագաւորն Թէոդոս: Եւ զամենայն զոր ինչ եւ արասցես՝ յաջողեսցի քեզ: Եւ պատերազմս վանի աղօթիւք, զոր լուար ի Պատմութենէս, զոր եւ տեսաք: Զի եւ խաղաղութիւնն Քրիստոսի բնակեսցի ի քեզ առատապէս, Ե՛ւ յեկեղեցիս քո Ե՛ւ յաշխարհի: Զի որոց ցանկացար Պատմութեանս թարգմանել, ընդ նոյն ճանապարհ թագաւորաց գնասցես շնորհօք եւ մարդասիրութեամբ Տեառն մերոյ եւ Փրկչին Յի–

3 Z կալցես ՏԴ տացես: — 5 NWZ զնախանձ: ՏԴZ տացես: W բատ բ․: — 6 W բատ բ․: — 7 S զբարէպաշտութեան: — 9 NWS ընդդիմակցացն: — 10 բերիցէ: Z չունի լիցիս: — 11 S զվերին: խորհելով] ՏԴ փախելով: — 12 Z զբաղմանցն: — 13 Z եւ զսիրոյ: — 14 NWS կենացն ՏԴ զկենացս: — 16 N որ: Z չունի եւ: — 17 Z պատերազմ: W կ'ուղղէ վանիցես: — 18 Z չունի զոր եւ տեսաք: — 19 Z խաղաղութիւն S զխաղաղութիւն: NZ բնակեսցէ: — 20 զի] Z զորոց: — 23 ՏԴZ երթիցես, Z կը վերջանայ այստեղ:

*տուսի Քրիստոսի․ ընդ որում Հօր ամենակալի եւ Հոգւոյն սրբոյ փառք, իշխանութիւն եւ պատիւ, այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։*

Ձեռագիրք: *Էջմիածին Թ․* 1482 (1661, *կար․* 1619), *Թղ․* 517*բ*—549*ա* (1678*էն* [2]։ 1518 (1671 *կար․* 1630), 267*ա* (1594) [3]։ *Երուսաղէմ Թ․* 960 (1602*էն*)․ 999 (*ԺԷ․*) 1117 (1693) [4]։ *Վիեննա Թ․* 623, 3*ա*—98*ա* (1732)։ *Պետերբուրգ, Կ․ Եղեանցի օրինակը յամէ* 1668 [5]․ *ասկէ արտագրուած է Նորայր Բիւզանդացւոյ ձեռագիրը, եւ այս վերջինէս Վիեննայի Թ․* 455 (1893*էն, Հմմտ․ Տաշեան, Ցուց․* 925—927)։ *Վենետիկ Թ․* 781 (1624*էն*)։ 738 (1678*էն*), 767 (1732*էն*) *եւ* 693 (*ԺԳ․ դարէ*) [6]։ *Երեւան, Պետ․ Թանգ․* 830, 462*ա* (1719)։

Հրատարակութիւն ։

*Սոկրատայ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութիւն, Թարգմանեաց Փիլոն Տիրակացի եւ Պատմութիւն վարուց Ս․ Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռովմայ, Թարգմանեալ*

---

[2] *Հմմտ․ Տէր-Մովսէսեան, էջ ԻԹ եւ Ագաթանգեղոս քննակ․ հրատ․ էջ ԺԵ։*

[3] *Հմմտ․ Տէր-Մովսէսեան, էջ ԻՁ—ԻԸ։ Նոյնը (էջ Լ—ԼԲ) կը յիշէ նոյն Մատենադարանէն նաեւ Թ․* 76 (1769*էն*), 187։ 264։ 620 (1646*էն*) *ձեռագիրները։*

[4] *Հմմտ․ անդ, էջ ԼԴ։*

[5] *Այս ձեռագրի մասին հմմտ․ Ստեփ․ Ասողնիկ, Պետերբուրգ* 1885, *էջ ԼԵ—ԼՁ․ եւ Ագաթանգեղոս, էջ ԻԵ—ԻՁ։*

[6] *Հմմտ․ Հ․ Բ․ Սարգիսեան, Տեսութիւն...,* *էջ* 1—2, *ծան․ եւ Տէր-Մովսէսեան, անդ, էջ ԼԳ—ԼԴ։*

*Արտասուն Գրիգորի Զօրափորեցւոյ: Աշխատասիրութեամբ Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան. Վաղարշապատ* 1897, 8°, *էջ ԾԱ* + 834 (*Մեծ եւ Փոքր Սոկրատ*):

*Սոկրատայ Պատմութիւն Եկեղեցական եւ Վարք Ս. Սեղբեստրոսի* [*Փոքր Սոկրատ*], *Վաղարշապատ* 1897, 8°, *էջ ԻԱ* + 220. *Փոքր Սոկրատ էջ* 1—174. *Վարք Սեղբեստրոսի էջ* 175—207:

*Հ. Բ. Սարգիսեան, Տեսութիւն Սեղբեստրոսի Պատմութեան եւ Մ. Խորենացւոյ աղբերաց. Վենետիկ* 1893, 8° *մեծ, էջք ԼԹ*+78:

2. *Ձեռագիրներու մէջ այս Ա.* (*Վարք*) *եւ Բ.* (*Սոկրատ*) *մասերը բաժնուած են ԾՀԲ կամ ԾՀԱ գլուխներու, յատուկ խորագիրներով: Գլխակարգութեան թուերու այս տարբերութիւնը յառաջացած է անկէ, որ խումբ մը ձեռագիրներ Ա. գլուխ կը ներկայացնեն «Յառաջաբանութիւնն Սոկրատայ պատմագրին», եւ Բ. գլուխ «Սեղբեստրոսի սրբոյ յառաջանալ ի կարգս սարկաւագութեան, քահանայութեան եւ քահանայապետութեան* (*այսպէս Վիեննայի Թ.* 623): *Մինչ ուրիշ խումբ մը ինքնակաց կը թողու «Յառաջաբանութիւնն» եւ իբրեւ Ա. գլուխ կը հաշուէ յաջորդ հատուածը, որ էր Բ. գլուխ* (*այսպէս Տէր-Մովսէսեանի բնագիր օրինակը*): *Կան ձեռագիրներ ալ, որոնք չունին ոչ գլխոց բաժանում եւ ոչ ալ խորագիրներ* (*այսպէս Կ. Եգեանի եւ անկէ ծագած Նորայրի եւ Վիեննայի Թ.* 455 *ձեռագիրները*): *Հ. Բ.*

Սարգիսեանի համաձայն Վենետիկի Մխիթ. Սոկրատի Դ. օրինակը (Թ. 693), որ կը համարուի ԺԳ—ԺԴ դարէն, ուստի հնագոյնը ծանօթ ձեռագիրներու մէջ, Տէր-Մովսէսեանի հրատարակութեան ձԽԹ (եւ Վիեննայի օրինակին ձՄ) գլուխը կը կրէ ձԽԸ համարաթիւը[7]: Այս բաժանմամբ Ա—ԺԳ գլուխները կ՚ընդգրկեն Սեղբեստրոսի Վարքն եւ ԺԵ—ձՀԲ գլուխները՝ Սոկրատի Եկեղեցական Պատմութեան Ա—Է գրքերու համառօտութիւնը: Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան Մեծ եւ Փոքր Սոկրատներու հրատարակութեան մէջ պահած է այս գլխակարգութիւնները ըստ էջմ. 1482 ձեռագրին՝ Ա—ԺԳ եւ ԺԴ—ձՀԱ գլխահամարներով եւ խորագիրներով. իսկ Փոքր Սոկրատի առանձին հրատարակութեան մէջ կը տեսնուին միայն Ա. Բաժնին Ա—ԺԳ. գլխահամարները, իսկ Բ. Բաժնին մէջ մուծած է Սոկրատի Ա—Է գրքերու գլխակարգութիւնը:

3. Ա. Մասը, այն է Սեղբեստրոսի վարքը կանխած էր հրատարակել Հ. Բ. Սարգիսեան հանդերձ Ընդարձակ Վարքի յոյն բնագրով:

Թէպէտ հայ գրականութեան մէջ Ը. դարէն ի վեր գոյութիւն ունէին Սոկրատի Եկեղեցական Պատմութեան եւ Սեղբեստրոսի Վարքին հայերէն թարգմանութիւնք եւ անոնց Համառօտութիւնք, կոչուած ընդհա-

[7] Աբրահամ Մամիկոնեան, էջ 16:

նուր անունով «Մեծ եւ Փոքր Սոկրատ», բայց հաղուադէպ անգամներ խօսք եղած էր անոնց մասին հրապարակաւ: 1893ին, երբ A. Carrière մատնանիշ ըրաւ, թէ Մ. Խորենացի իր գործածած աղբիւրներու թուին մէջ ունեցած է նաեւ Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնն եւ Սեղբեստրոսի Վարքը, փութացին հայ բանասէրներն ուշադիր ընել Փրանսացի գիտնականը, թէ իրօք գոյութիւն ունին այդ աղբիւրները հայերէն թարգմանութեամբ: Ի սկզբան այն էր ընդհանուր համոզումն, թէ այդ թարգմանութիւնը պահուած էր մեզի Փոքր Սոկրատի մէջ: Քիչ յետոյ Փ. Տէր-Մովսէսեան երեւան հանեց Էջմիածնի ձեռագրի մը մէջ Մեծ Սոկրատն ալ, որուն հրատարակութիւնը լոյս տեսաւ 1897ին: Այնուհետեւ Սոկրատ-Սեղբեստրոսի հարցը մնաց սերտիւ կապուած Մ. Խորենացւոյ Պատմութեան գրութեան ժամանակի եւ աղբերաց ուսումնասիրութեան հետ:

Կը յիշեմ այստեղ կարեւոր քննութիւնները, որոնց առիթ պիտի ունենանք յետոյ անդրադառնալու:

Auguste Carrière, Nouvelles sources de Moïse de Khoren, études critiques, Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ (թարգմանութեամբ Հ. Յ. Տաշեանի). Փրանսերէն եւ հայերէն լոյս տեսած նախ Հանդէս Ամսօրեայ 6 (1892) 250—253, 373—37), 7 (1893) 116—120, 134—140. ապա առանձին հատորով, Vienne 1893, 8° էջք VIII + 56 եւ.

Վիեննա 1893, $8^0$, էջք 51 (Ազգ. Մատ. Ը)։

Ս. Վ. Պարոնեան, Մովսէս Խորենացւոյ նոր աղբեր գիւտն ի Պրոֆ. Ա. Կարիէրէ. Հանդ. Ամս. 6 (1892) 343—346։

Ստեփան Մալխասեան, Մովսէս Խորենացւոյ նոր աղբիւրը. Մուրճ 1892, էջ 1852—1863.

Նորայր Ն. Բիւզանդացի, Իմ կարծիքս զկրկին հայ թարգմանութեանց Եկեղեցական Պատմութեան Սոկրատայ Սքոլաստիկոսի եւ զնոցին թարգմանչաց. Հանդ. Ամս. 7 (1893) 273—278։

Փարսադան (= Մեսրոպ) Տէր Մովսիսեան, Մ. Խորենացւոյ մէկ նոր աղբիւրը. Արարատ 26 (1893) 65—76։

Г. Халатьянцъ, Начало критическаго изученія Исторіи Арменіи Моисея Хоренскаго: Журналъ Министерства народнаго просвѣщенія 295 (1894) 377—402.

Հ. Բ. Սարգիսեան, Սոկրատայ հին թարգմանութեան հրատարակութիւնն եւ Մ. Խորենացի. Բազմավէպ 1897, էջ 565—575։

Ստեփան Մալխասեան (գրախօսական Տէր-Մովսէսեանի հրատարակութեան առթիւ) Մշակ 1897, Թ. 113.

Գր. Խալաթեան, Մովսէս Խորենացու նորագոյն աղբիւրների մասին. քննադատական ուսումնասիրութիւնք. Հանդ. Ամս. 11 (1897) 289—293, 337—43, 353—59 (նաեւ

*առանձին՝ Վիեննա* 1898, 8⁰ *էջ է*+56 · *Ազգ. Մատ. Իէ*) :

*Գ. Տէր-Մկրտչեան, Խորենացու ժամանակը որոշելու նոր փորձ*: Արարատ 30 (1897) 422—424 :

*Մեսրոպ Վ. (Տէր Մովսէսեան), Սոկրատ պատմագիր եւ Մ. Խորենացի*, Արարատ 31 (1898) 165—173 (*առանձին՝ Վաղարշապատ* 1898, 8⁰, *էջ* 29) :

*Նորայր Բիւզանդացի, Հայերէն հին գրականութեան խնդիրներ. Մ. Խորենացի (եւ Սոկրատ)*. Մշակ 1898, *Թ.* 192, 93, 95, 203, 206, 217, 237, 1899, *Թ.* 16, 17 :

*Հ. Բ. Սարգիսեան, Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոս եւ իւր առ Վաչագան գրած թուղթն. Վենետիկ* 1899, 8⁰ *էջ ԼԴ* + 29 :

*Ֆ. Կ. Կոնիբիր, Մովսէս Խորենացւոյ Պատմութեան աղբերաց խնդիրը*. Հանդ. Ամս. 16 (1902) 129—132, 193—198, 236—240 :

Гр. Халатянцъ, Армянскіе Аршакиды въ „Исторіи Арменіи“ Моисея Хоренскаго. Москва, 1903, 8⁰ *էջք* XVI + 400 + 143.

*Ն. Ադոնց, Փոքր Սոկրատի հեղինակը*. Սիոն 10 (1936) 300—304 :

4. *«Ներսէս Կամսարական ապիհիւպատոսի պատրիկ», որ ցանկացած է «Պատմութեան թարգմանել», կ՚անուանուի «եկեղեցեաց շինող»: Այս ընծայականը կը գտնուի մի՛այն*

Փոքր Սոկրատի մէջ, ուստի եւ հարկ է «պատմութեանս թարգմանել» բառերը հասկընալ ի մասին Համառօտութեան եւ ոչ Եկեղեցական Պատմութեան թարգմանութեան, որ, ինչպէս տեսանք, կատարուած էր ի ձեռն Փիլոն Տիրակացւոյ «յօտարութեան» եւ 696/7ին: Եւ արդէն ակնարկութիւնն Թէոդոս թագաւորի մասին, որով Թէոդոս Բ. իմացուած է, մատնանիշ կ'ընէ Փոքր Սոկրատի ՃԾ (ՃԽԹ) հատուածը, որ մանաւոր կերպով ընդարձակ բռնուած է, Իշխանին վարուց հայելի մ'ընծայելու համար:

Ներսէհ Կամսարականի ժամանակն եւ անձնաւորութիւնը երեւան հանելու համար կռուան պիտի ծառայէ մեզի 697 իբրեւ terminus post quam: Ճիշդ այս շրջանին համբաւուած էր Ներսէհ Կամսարական մը, որուն համար կը գրէ Ստեփանոս Ասողնիկ. «Եւ Ներսէհ Կամսարական եկաց իշխան Հայոց ամս Դ (կարդա՛ Գ): Ի սորա աւուրս պայծառանայր Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոս փիլիսոփայական արուեստիւ, որ զԸնթերցուածոց Մեկնութիւնն զարդարեաց ի խնդրոյ Ներսեհի Կամսարականին[8]: Եւ զկնի նորա ի ՃԽ (691) թուականին Սմբատ Բագրատունի Բիւրատեան Հայոց իշխան եղեւ ամս Ի» (Աս. 101): Ստեփանոս առաջին մասին մէջ իրեն աղբիւր ունեցած է հաւանօրէն

[8] Հմմտ. նաեւ Մխիթար Այրիվանեցի յամն 690. «Տէր Գրիգորէս, Արշարունեաց եպիսկոպոս, արար զԸնթերցուածոց Մեկնիչն ի խնդրոյ Ներսեհի Կամսարականի» (էջ 66 հրտ. Պատկ.):

այն «Նկարագիրն կարգաց», որմէ թարգմանուած է ապա յունարէն Diegesisն[9], ուր ճշդիւ կ'ըսուի. «Աշոտ Բագրատունի, ամս Գ (686—688), Ներսեհ Կամսարականն, ամս Գ. (689—691), Սմբատ Բագրատունի» (692): Իսկ երկրորդ մասին համար աչքի առաջ ունեցած է Գրիգորիս Արշարունւոյ Ընթերցուածոց Մեկնութիւնը: Այս գրութիւնը հասած է մեզի. բայց մեր ձեռքը հասած օրինակներու մէջ Արշարունեաց Քորեպիսկոպոսը իր Մեկենասն կ'անուանէ «Ո՛վ Կամսարականդ Վահան պատրիկ»: Այս Կամսարականին կը հանդիպինք նաեւ Կամսարականներու եպիսկոպոսաց Ցանկին մէջ, ուր կ'ըսուի, թէ 706ին «Լուր եհաս առեւեաց, թէ Տուչան Կամսարական դուստր Վահանայ պատրկի զխոստովանող(ական) անուն ժառանգեաց՝ վասն Քրիստոսի Աստուծոյ չարչարեալ ի Խառան Միջագետաց[10]»: Հ. Մ. Չամչեան զՆերսեհ համարած է որդի Վահանի[11]: Առ այս չկայ որ եւ է վկայութիւն նախնեաց քով: Հ. Ղ. Ալիշան[12] կը գրէ, թէ «յիշէ ումն պատմիչ (թէեւ ոչ յանուանէ), թէ յամի 705 զՇիրակայ տէրն տարան յԱսորիս, թերեւս նոյն ինքն Վահան Կամսարականն էր,

---

[9] Migne, Patrologia Graeca, t. 132, col. 1237—1258: Հմմտ. Յ. Մարկուարտ, Հայ Բագրատունեաց ծննդագրութիւնը, Վիեննա 1913, էջ 10—13:

[10] Հ. Ս. Կոգեան, Եպիսկոպոսք Արշարունեաց եւ Տան Կամսարականաց, Հանդ. Ամս. 38 (1924), 22—31, յատկապէս էջ 26:

[11] Պատմ. Հայոց, Բ, 375:

[12] Շիրակ, էջ 5:

հանդերձ խոստովանող դատերրն Տուչանաւ»: Ո՞վ է այդ «ոմն պատմիչ», ինձ անծանօթ է. ուստի Հ. Ալիշանի մեկնութիւնն, թէ այդ «տէրն Շիրակայ» Վահան եղած ըլլայ, անըն- դունելի. աւելի հաւանական պիտի ըլլար Ներսէհ Կամսարականը նկատի առնել, որուն կեանքի վերջին տարիներու պատմութիւնը մեզի անծանօթ կը մնայ:

Թալինի եկեղեցւոյ արձանագրութեան մէջ Ներսէհ Կամսարականի կինը կը կոչուի Շուշան: Սա էր առանց տարակուսի «տի- կինն Շուշան», որ 703/4ին ձմեռը, Վարդա- նակերտի կռուէն ետքը, արաբական զօրքին մնացորդը, որոնք «մերկք եւ բոկք եւ հե- տեւակք եւ վիրաւորք էին», առեալ պատէր զվէրս եւ ողջացուցանէր եւ զգեցուցանէր հանդերձիւք. տայր եւ գրաստս յիւրոց երա- մակաց եւ առաքէր առ իշխանն Իսմայէլի Աբդլ-Մելիք, վասն որոյ եւ ի նմանէ բազում շնորհակալութիւն ընկալեալ եւ մեծամեծ պատիւս առաքէր նմա [13]». Թէ ի՞նչ եղաւ Կամսարականներու բախտը 706ին, Մահմետ ոստիկանի օրով, պատմութիւնը չէ յիշած. բայց Ղեւոնդի նկարագրութենէն կը տեսնուի, որ ոստիկանի զայրանութենէն ոչ մէկ նախա- րարական տուն խնայուցաւ [14]: Ներսէհ Կամ- սարականի մահը հարկ է որ 706էն ետքը հա- մարինք:

---

[13] Ղեւոնդ, էջ 25—26: Մարկուարտ, անդ, էջ 20, ծան. 1. եւ Ալիշան, Շիրակ, էջ 174:

[14] Ղեւոնդ, էջ 33—35:

Այս Ներսէհին է «առանց ո եւ է կասկածի Թալինի փոքր եկեղեցին Ս. Աստուածածինը»[15], շինուած իբր 690ին։ Արձանագրութիւնն է հետեւեալը[16]։

ԵՍ ՆԵՐՍԵՀ ԱՊՈՀԻՒՊԱՏ ՊԱՏՐԻԿ ՇԻՐԱԿԱՑ ԵՒ ԱՐՇԱՐՈՒՆԵԱՑ ՏԷՐ ՇԻՆԵՑԻ ԶԵԿԵՂԵՑԻՍ ՅԱՆՈՒՆ ՍՐԲՈՅ ԱՍՏՈՒԱԾԱԾՆԻՆ Ի ԲԱՐԵԽԱՒՍՈՒԹԻՒՆ ԻՆՋ ԵՒ ՇՈՒՇԱՆԱՅ ԱՄՈՒՍՆՈՅ ԻՄՈՅ ԵՒ ՀՐԱՀԱՏԱՅ ՈՐԴԻՈՅ ՄԵՐՈՅ։

Ինքը կը համարուի նաեւ Թալինի մեծ եկեղեցւոյն շինողը, թէեւ որ եւ է արձանագրութիւն կը պակսի (Կոգեան, էջ 53)։

Նկատի առնելով, որ Սոկրատի թարգմանութիւնը կատարուած է 697/8ին ի ձեռն Փիլոն Տիրակացւոյ եւ Սեղբեստրոսի Վարքը 678ին ի ձեռն արտս Գրիգոր Ջորոփորեցւոյ, որ թարգմանն էր Ներսէհ Վրաց իշխանի, Կամսարականներու փեսային, եւ Համառօտութիւնը գլուխ եղած է խնդրանքով «Ներսէհ Կամսարականի, ապոհիւպատ պատրիկի» եւ «Եկեղեցեաց շինողի», դժուարին պիտի չըլլայ այս անձնաւորութեանց ներքին կապն եւ արտաքին ազերսն ժամանակագրական մէկ անձուկ շրջանի մէջ ենթադրելու։ Եթէ Ներսէհ Կամսարական «եկեղեցեաց շինող» կը յորջորջուի, ապա նոյն է նա Թալինի

---

15 Հ. Ս. Կոգեան, Կամսարականները «Տեարք Շիրակայ եւ Արշարունեաց». պատմական ուսումնասիրութիւն. Վիեննա 1926, էջ 106. Ներսէհ Կամսարականի մասին էջ 146—160։

16 Անդ, էջ 153։

փոքր Եկեղեցւոյ չինող Ներսէհի հետ, որ նոյնպէս «ապոհիւպատ պատրիկ» կը կոչուի։ Այս արձանագրութիւնը իբր 690էն կը համարուի։ Ոչ արձանագրութեան եւ ոչ ալ այս Ընծայականին մէջ Ներսէհ «Հայոց իշխան» տիտղոսն ունի. ուստի կամ 689էն յառաջ եւ կամ 691էն ետքը պէտք է ենթադրուին անոնք։ Եւ որովհետեւ Սոկրատի Թարգմանութեան տարին 697 է, հարկ է այս Թուականէն ետքը տեղի ունեցած ըլլան անոնք։

Կը յիշուի Ներսէհ նաեւ Մ. Խորենացւոյ Աշխարհացոյցին մէջ[17]. հոս խօսքը Ափրիկէի կղզիներու վրայ դառնալով, կ'ըսուի. «Եւ Տրիպոլիք[18], որ է «երեք քաղաք», Գիովրի, Կալանիա, Եւսի[19]. Թէպէտ եւ երեք այլ չինեցին՝ Տիսորա, Իղիսիա, Պոնդիկա[20], որոց իշխանացու իմաստունն Ներսէհ Կամսարական, պատրիկն Շիրակայ եւ Աշոցունեաց տէրն[21]»։

---

[17] Հրտ. Հ. Ա. Սուքրեանի, էջ 18 եւ Թարգմ. 24։
[18] Τρίπολις.
[19] Sabrata, Oeca, Leptis Magna.
[20] Αἰθοῦσα, Ποντία νησος.
[21] Հ. Ա. Սուքրեան գաղղիերէն Թարգմանութեան ծանօթութեան մէջ (էջ 24, ծան. 2) յառաջ կը բերէ Muralt, Essai de chronographie byzantine գրքէն (էջ 339) տեղիք մը, որուն համաձայն Լեւոն Քահանայապետ 26 օգոստոս 812 Թուակիր նամակով մը կը հաղորդէ, Թէ Միքայէլ Ա. կայսր պատրիկ մ'եւ երկու սպաթար ուղարկած է Մաւրիտանացիներու դէմ, որոնք ասպատակած են Lampadousia, Pontia եւ Isola Major կղզիները։ Այս տեղ որչափ ալ խօսքը Ներսէհ Կամսարականի մասին չէր կրնար եղած ըլլալ, բայց եւ այնպէս կը տեսնուի, որ Բիւզանդական արքունիքը իր հսկողութեան տակ ունեցած է նոյն իսկ Թ. դարուն այդ կղզիները։

Այս «իմաստունն» Ներսեհ ե՞րբ «իշխանացաւ» այդ կողմերուն. յայտնի չէ, բայց կը տեսնուի, թէ գրողը, հաւանօրէն Անանիա Շիրակացի, ժամանակակից մ՚էր Շիրակայ եւ Արշարունեաց տիրոջ: Առանց տարակուսի իր մասին է նոյն Անանիայի Թուաբանական Հարցմանց Ի. խնդիրը. «Ներսեհի Կամսարականի Շիրակայ եւ Արշարունեաց տեառն բուն կանգնէր առ ստորոտով լերինն, որում Արտին կոչեն եւ ի գիշերի միոջ մտին երամակք ցուլց բազումք... ընթացեալ պատմեցին նմա ի գեաւղն Թալին. եւ նորա իւրովի եկեալ հանդերձ եղբայրաւքն եւ պատուաւքն եւ մտեալ կոտորեցին զերէսն»: Յաջորդ ԻԱ. խնդրոյն մէջ ալ կ՚ըսուի. «Ներսեհ Կամսարական որդի Արշաւրի, անուանակից եւ նախնի այսմ Ներսեհի[22]»:

Կամսարական իշխանը կ՚արձանագրէր. «Ես Ներսեհ Ապոհիւպատ պատրիկ, Շիրակայ եւ Արշարունեաց տէր շինեցի զեկեղեցիս յանուն սրբոյ Աստուածածնին». Սոկրատի համառօտողը կը հաստատէր արձանագրութեանս տուեալը երբ նոյն Ներսեհ «ապիհիպատ պատրիկն» «եկեղեցեաց շինող» կ՚անուանէր: Յօքնակի ձեւը ցոյց կու տայ թէ Կամսարական իշխանը բացի Թալինի Ս. Աստուածածնէն շինած է ուրիշ եկեղեցի, թերեւս եկեղեցիներ ալ: Անոնցմէ մին կը համարուէր Թալինի մեծ, ուստի Մայր կամ

---

[22] Գ. Տէր-Մկրտչեան, Անանիա Շիրակացի, Վաղարշապատ 1896, էջ 25:

Կաթողիկէ եկեղեցին: Ինձ կը թուի թէ Գրիգորիս Արշարունեաց քորեպիսկոպոսը այս երկու եկեղեցիները կ'ակնարկէ, երբ կը գրէ Թալին նստող Արշարունեաց Տեառն Հացէին տողերս իր Ընթերցուածոց Մեկնութեան մէջ. «...Հայել քեզ ի փանդակապատ պատուհանէդ (պալատանդ) ընդ արեւելս ի Սուրբ Աստուածածինդ՝ տեսանելով զԱրեգակնդ արդարութեան ի գիրկս կուսական Մայրութեան...» եւ դարձեալ «...եւ զաղօթիցդ ի Սուրբ Աստուածածինդ առնել բազկատարած զՄաչն օրինակ բերելով... իսկ երկայնաձիգ ճանապարհիդ որ ի Սուրբ Կաթողիկէ՝ զրուն իսկ երկնից խորանին ճշտութեան զոր Տէրն կանգնեաց»: Իսկ իշխանին նկարագիրը կը մատնանշէ կոչելով զանիկա «իշխան մերնագոյն», Տանուտէր («զայս արանչեցի քեզ իբրեւ բարեբարոյ Տանուտեառնդ լսողի զկարիս եւ զխողի, որ փորձդ ես յամենայն կարիս նեղութեան՝ համբերութեամբ յուսոյ, որովք եւ զայլոց ճանաչես»). «վստահանալով ի քո վսեմախոհ գիտութիւնդ՝ տալով պատճառ իմաստնոյդ, զի իմաստնագոյն եւս լինիցիս». կը նկատէ զինքը տէր «իմաստասէր խորհրդոց», «լի իմաստութեամբ», «ծանեայ եւ յայնժամ զքո իմաստից խորութիւն», «ո՛վ անձն(դ) մեծախորհուրդ եւ զարմանալիդ հանճարով. քանզի զքեզ գիտեմ լուծ իմաստութեան՝ կչռել իւրաքանչիւրոց զարժանն ըստ իմաստի եւ

ժամանակի»: Այս խօսքերը կ՚արդարացնեն Ներսէսի «իմաստուն» յորջորջումը:

Իշխանը ալեւորած է արդէն, նուիրուած հայեցողական կեանքի, նոյն իսկ զգեցած միանձնականի պարեգօտ: Կը գրէ. «Ոչ տեսաք զարդարեալ զՏէր(դ) ի հանդերձս փափկութեան, ըստ թագաւորաց, այլ այր ալեւոր իբրեւ հինաւուրց եւ լի իմաստութեամբ ի հանդերձս սգոյ սեւութեան... պատուես արս երկնաքաղաքացիս խրատտուս քեզ ունելով եւ ճանապարհորդս Վերինն Երուսաղէմի»: «Այսպէս թողեալ քո զերկրաւոր թագաւորիս զընդարձակ ճանապարհն երկնաւորին նեղ ճանապարհաւ յերկրի զինուորիս՝ թեւս աղաւնոյ ստացեալ դադարես յանապատիդ. դու զնա օթեւան ունելով, յորում նախ լոկ միայնացեալ ի բազմայրաց կենցաղավարութենէս». զգեցած է «զգեստ այծեայ». «ուստի չահեալ զքեզ տեսանելով յայտնիկ վարժողացն զքեզ ասեն... Ահաւասիկ... մեք եւ ալեւորս մեր, զոր ետուր Աստուած» (Թ. 9, Թղ. 41ա—42բ Անտոնեանց ձեռագրաց ի Զմմառ):

Այս նոր կենցաղավարութիւնն Արշարունեաց Տեառն բերած պիտի ըլլայ իրեն հետ անուան ալ փոփոխութիւն. նա կոչուած է Եղբայր «Վահան-պատրիկ», թերեւս համանուն նահատակ Կամսարականի մը յիշատակին՝ նմանութեամբ Վարդ-պատրիկ»ի: Ստեփանոս Ասողնիկի ծանօթ եղած ըլլալու է այս անուանափոխութիւնը, որ հակառակ

Ընթերցուածոց Մեկնութեան բնագրի «Վահան պատրիկի» չեշտած է, թէ Գրիգորիս «ի խնդրոյ Ներսեհ Կամսարականի» ձեռնարկած է այս Մեկնութեան:

5. Ուշադրութեան արժանի է Ներսեհի «իմաստուն» որակումը. իբրեւ այդպիսի հետաքրքրուած է նա նաեւ Սոկրատի Եկեղեցական Պատմութեամբ եւ Ընթերցուածոց Մեկնութեամբ: Ինչպէս այս Մեկնութեան համար դիմած էր նա Արշարունեաց Գրիգորիս քորեպիսկոպոսին, որուն հետ մտերիմ յարաբերութեան մէջ էր, կը համարիմ, թէ նաեւ Եկեղեցական Պատմութեան համառօտութեան համար նկատի առած ըլլայ նա Շիրակացի–Արշարունի գրագէտ մը: Եւ ո՞վ աւելի ընդունակ էր այս գործին քան ինքն թարգմանիչ Փիլոն Տիրակացի:

Վերագոյն[23], երբ կը խօսէի Մեծ Սոկրատի Թարգմանութեան վրայ, յառաջ բերած էի էջմ. Թ. 2152էն Վանական վարդապետի Հարցում–Պատասխաններէն հատուածս. «Հարցումն. Ո՞վ է Փոքր Սոկրատն: Պատասխանի. Փիլոն ասեն Տիրակացին ի Շիրակ գեղջէ. վասն այն Շիրակացի են յասել, ի Մեծ Սոկրատէն համառօտ եւ պարզ ի վեր է քաղել. եւ այն որ յեսայր Փիլոն են ասել. այլ նա է արարեալ»: Պատասխանս իր մէջ շատ տարտամ էր գտած. յայտնապէս խանգարուած է եւ կարօտ է ըն–

[23] Աստ. էջ 66—67:

*արեւագոյն օրինակի մը, եղծ տեղիքները վերականգնելու համար: Իմաստ մը դուրս կորզելու համար կ'առաջարկեմ բանաւորական սրբագրութիւնս. «Փիլոն ասէն Տիրակացին ի Տիրակ գեղջէ*[24] *— վասն այնորիկ Տիրակացի են ասել — ի Մեծ Սոկրատէն համառօտ եւ պարզ ի վեր է քաղել եւ այնոր* համար Փոքր *են ասել. այլ նա է արարեալ»: Եթէ արդար է մեր այս սրբագրութիւնը, պիտի հետեւցնենք, թէ Վանական վարդապետ յաւանդութենէ լսած գրի առած է տողերս:*

*Յամենայն դէպս Սոկրատի Եկեղեցական Պատմութեան եւ Սեղբեստրոսի Վարքի համառօտութիւնը կատարուած է ընդ մէջ* 697—700 *տարիներու:*

*Համառօտողը չէ ունեցած իր առաջ յունարէն սկզբնագիրները. հետեւած է հայերէն թարգմանութիւններու. շատ տեղեր պահպանած է սկզբնագրին արտայայտութիւնները, երբեմն նաեւ նորակերտ, դժուարիմանալի բառեր: Զանց ըրած է մանական հարցեր. հերձուածողներու վարդապետութիւններն եւ անոնց շուրջ յուզուած վէճերը ամփոփած է հակիրճ տողերու մէջ. Սոկրատի ընդարձակ գործին նիհար կմախքն միայն*

[24] *Տիրակ գիւղ այլուստ անծանօթ է, կ'ենթադրուի ի Շիրակ: Աղեքսանդրապոլի շրջանին մէջ կը յիշուի* Տիրէկլէր *գիւղ. «առ որով աափ գոլ եւ վանատեղի». Ալիշան, Շիրակ, էջ* 156: *Անունս թիւրքերէն* Տիրէ՞կ *բառէն յառաջացած է, թէ կ'ենթադրէ* Տիրակ *անունը:*

տուած է· Եկեղեցական պատմութեան եւ գործող դէմքերու այն նկարագրական գծերն միայն բեմադրած է, որոնք իմաստուն Իշխանին հետաքրքրութիւնը կարող էին չափով մը գոհացնել։

Համառօտողը ջանացած է դիւրիմանալի ընծայել իր ձեռնարկը· կիրարկած է պարզ, բայց վայելուչ լեզու յանկուցիչ ոճով։ Կը նկատուին տեղ տեղ շեղումներ բնագրէն մանաւորապէս այնպիսի հարցերու մէջ, որոնք նիւթ էին ժամանակակից վիճմանց, այսպէս Քառասնորդաց պահոց հարցը, ուր Սոկրատի անուան տակ Համառօտողը ջատագով հանդիսացած է անընդհատ խստապահութեան։ Իրմէ է բստ մեծի մասին Թէոդորոս Բ.ի նկարագրին ստուերագծումը, ուր նպատակ հետապնդած է Իշխանին պատկերել տեսակ մը հայելի վարուց, որուն նմանութեամբ պիտի ըլլար ան հաճելի Աստուծոյ եւ սիրելի ժողովուրդին։ Այս կէտին վրայ առանձին շեշտով Իշխանին ուշադրութիւնը հրաւիրած է նաեւ Ընծայականին մէջ։

## 2· ԽՄԲԱԳԻՐԸ

1· Այս Համառօտութիւնը, որ նախնաբար Ներսեհ Կամսարականի անձնական պիտոյքի համար յօրինուած էր, յետոյ ծաւալած է Հայ Կղերանոցներու մէջ իբրեւ ձեռնարկ մը Եկեղեցական պատմութեան։ Մեծ Սոկրատը շատ քիչերուն մատչելի էր։ Բայց նաեւ այս Փոքրը նկատուեցաւ շատ համա–

ռօտ : Պէտք զգացուեցաւ չափով մը ընդարձակել : Գեղեցիկ գաղափար : Դժբախտաբար այս գործը յանձնուած է ոչ լաւ պատրաստուած անձի մը, որուն անունը թէեւ անծանօթ կը մնայ մեզ, բայց ըլլալու է ան առ անազան Ժ. դարու անձնաւորութիւն մը :

Խմբագիրը մուծած է անչափ յաւելուածներ առձեռն գտնուած Վկայաբանութիւններէ, Ս. Հարց վարքագրութենէ, տօնմիկ գրականութենէ եւ անվաւերական գրուածքներէ փոխառութեամբ : Ներմուծած է պաշաճ եւ անպատշած կոչումներ Աստուածաշունչէն : Տեղ տեղ կը տեսնուին նաեւ ժամանակակից վիճական խնդրոց շուրջ ակնարկութիւններ : Ան «աղանդների եւ հերձուածողների դէմ զինուած, Քաղկեդոնականութիւնը եւ Լեւոնի տոմարը աստղ նեղսիրտ կրօնական է» (Մ. Տէր-Մովսէսեան, Սոկրատ, էջ Հէ) :

Երկար եւ յոգնեցուցիչ աշխատանք պիտի պահանջէ մեզմէ մի առ մի համադրել այս յաւելուածոյ տեղիքներն եւ մատնանշել անոնց աղբիւրները : Անհրաժեշտ է սակայն ձեռնամուխ ըլլալ այս աշխատանքի : Առանց այս մանրախոյզ քննութեան կարելի չէ ըստ արժանւոյն գնահատել Փոքր Սոկրատն եւ զայն իբրեւ պատմական աղբիւր հիմ առնել եւ յեցած անոր վրայ պատմական եւ մատենագրական հարցերու շուրջ դատաստան կտրել :

Դժբախտաբար մեր նախնիք չեն անդրադարձած այս կէտին եւ բարի հաւատքով ինչ որ հոս յանուն Սոկրատի ամփոփուած գտած են, ընդունած են իբրեւ Սոկրատի հաւատումներ եւ յեցած անոնց վրայ ընդդիմամարտած են Յունաց հետ, անոնց իսկ «Պատմագրէն» անոնց դէմ վկայութիւններ ցուցադրելով: Նաեւ նոր բանասէրները լուծելու համար հանգոյցներ, յատկապէս Մ. Խորենացւոյ Պատմագրքին հայող հարցերու մէջ, զուր տեղ ընդդիմաբանած են իրարու հետ, առանց որոշիչ եզրակացութեան մը յանգելու կարենալու: Եւ ի՞նչպէս հնարաւոր էր այս, եթէ Փոքր Սոկրատ հրապարակ հանուած Ը. դարու առաջին տասնեակին՝ բովանդակէր իր մէջ յաւելուածներ Թ. դարէն: Քննադատ մը ինքնավստահ, համարձակած էր որակել Փոքր Սոկրատի համառօտը. «Արդարեւ Փոքր Սոկրատայ թարգմանիչն անհմուտ է հայերէնի, եւ սաստիկ իմաստակ, այսինքն՝ գլխուն ձեւանալ ուզող. թէ իւր իմաստակութեանն համար է, որ քաղած է զանազան պատմական տեղեկութիւնս ի Խորենացւոյ եւ յայլ հնագոյն եւ նորագոյն հայերէն աղբերաց, անգիտանալով, որ թարգմանչին (!) գլխաւոր պարտքն է հաւատարմութեամբ թարգմանել զբնագիրն, զոր կարէ համառօտել առ կարճութեան ժամանակի... բայց ոչ թէ ընդարձակել ըստ քմաց. թէ հայերէն լեզուի անհմտութիւնն է, որ թելադիր եղած է անճարակին՝ Խորենացւոյ եւ ա՛յլ հնագոյն

Հայերէն մատենագրութեանց ոճերով եւ ասացուածներով պատրուակել զիւր խայտառակութիւնն[25]»: Այլուր չի վարանիր նաեւ «լիրբ» (Թ. 216), «գող» (Թ. 217) եւ այլ մակդիրներն կիրարկել «Փոքր Սոկրատի» համառօտողին հասցէին: Այսպէս Նորայր Բիւզանդացի Մ չ ա կ ի մէջ:

2. Արդէն Հ. Մ. Չամչեան 1787ին ուշադիր եղած էր, թէ Փոքր Սոկրատ շատ աննման է յոյն բնագրին. մեկնելու համար այս երեւոյթը կը գրէր. «Բայց թուի՝ թէ այն (յոյն) օրինակ, յորմէ թարգմանեալ է, խանգարեալ էր. եւ կա՛մ զկնի յանդգնոյշ անձանց խանգարեալ իցէ. զի ի բազում տեղիս օտարաձայն տեսանի յուղիղ բնագրէ Յունաց[26]»: Միւսանգամ անդրադառնալով նոյնին, աւելի լայնագոյնս կը գրէր. Պատրիկն Հայոց Ներսէս Կամսարական, որդի Վահան Կամսարականի «հետամուտ գոլով տեղեկութեան պէսպէս իրաց եւ պատմութեանց՝ հրամայեաց վարդապետի ումեմն Տիրակացւոյ, որում անուն էր Փիլոն, թարգմանել ի Հայս զյունարէն պատմագիրքն Սոկրատայ»: Չամչեանի տակաւին անծանօթ էր Մեծ Սոկրատը. Ստ. Ասողնիկէ գիտէ Փիլոնի անունը, որուն եւ վերագրած է Փոքր Սոկրատի «Թարգմանութիւնը»: Չամչեան կը շարունակէ. «Եւ Փիլոն ձեռն արկեալ ի թարգմանել՝

---

[25] Մշակ, 1898, Թ. 203:

[26] Հ. Մ. Չամչեան, Պատմութիւն Հայոց, Ա, 27:

ոչ չատացաւ ընկ գրանս Սոկրատայ Հայերէն կարգել, այլ՝ յաւել ի նոյն եւ զայլ պատմութիւնս ինչ ի Հայոց, եւս առաւել յԱսորւոց, յօրինելով զամենայն իբրեւ ի դիմաց Սոկրատայ հեղինակի գրոց · մինչեւ պատմել անդ բանս նաեւ ի վերայ Փլաբիանոսի եւ Եւտիքեայ, եւ երկրորդ ժողովոյն Եփեսոսի, յորում ժամանակի մեռեալ էր Սոկրատ · բարդեալ ի նոյն եւ գրոյցս սուտս, ընդ որս է եւ պատմութիւն Սուրբ Աստուածածին : Եւ զայս մարթ է յայտնի տեսանել ի բաղդատելն զաս ընդ յունական օրինակին . . . : Այն Թարգմանեալ գիրք Սոկրատայ եղեւ ոմանց ի Հայոց առիթ գայթակղութեան, զի ընթերցեալ ի նմա պէսպէս օտարոտի բանս, եւ զսուտ աւանդութիւնս՝ զորս տեսանեմք ի գիրս Ասորւոց, համարեցաւ՝ թէ ստոյգ այնպէս գրեալ իցէ հեղինակն · եւ յայն ապաւինելով՝ նովին ընդդէմ զինէին այլոց պատմութեանց Յունաց : Մարթ է եւս ասել, թէ ոչ ի Փիլոնէ թարգմանիչէ, այլ՝ զուցէ յայլոց ումանց յաւելեալ իցեն այն բանք · եւ կամ թէ յանհարազատ եւ ի խանդարեալ օրինակէ իցէ թարգմանեալ[27]» :

Ուշադրութեան արժանի են վերջին ընդգծուած տողերը :

---

[27] Անդ, Բ., 375—376: Նոյն միտքը յայտնած է նաեւ Quadroյի հեղինակը (էջ 29)· Storia ecclesiastica di Socrate . . . fu tradotta questa opera da certo Filone dottore armeno di Tiracia soll' original greco, coll' aggiunta fatta dallo stesso traduttore degli avvenimenti più recenti.

Արդէն Զամչեանէ յառաջ, ԺԸ. դարու առաջին 20ամեակէն անանուն մը, որ կազմած է «Պատմագիրք Հայոց», հայ պատմական գրուածքներու Ցանկը, ուղիղ նկատած էր Մեծ եւ Փոքր Սոկրատներու թարգմանութիւնը. կը գրէր. «Սոկրատ ի Կոստանդիանոսէ սկսեալ մինչեւ ի մահն Թէոդոսի Փոքու. հատորս (իմացիր՝ գիրս) է. [գ]այս եւս ի Յունաց լեզուէ թարգմանեալ եղեւ. բայց յետոյ՝ ի ժամանակս կաթողիկոսութեան Անաստասայ[28], ի խնդրոյ Ներսեհի իշխանին, պատմագիրքս այս համառօտեցուցին. զոր այժմ գերկուսն եւս երեւի ի միջի մերում եւ անուանի Մեծ Սոկրատ եւ Փոքր[29]»:

Ներսէս Բիւզանդացի[30], թէեւ ծանօթ էր վերոյիշեալ տեղիքին, սակայն եւ այնպէս կը պնդէր, թէ «Փոքր Սոկրատն թուի թարգմանեալ ի Զ. դարու, ի խնդրոյ Ապուհիպատ Պատրիկ Ներսեհի Կամսարականի». իսկ «այս Ներսեհ Կամսարական թուի ինձ որդին Արշաւրի Արշարունւոյ եւ եղբայրն Հրահատայ եւ Սահակայ, զորոց յաճախ խօսի Ղ. Փարպեցի ի Պատմութեան իւ–

---

[28] Հեղինակը նկատի ունի Ասողնիկի տեղիքն. «Անաստաս... ի սորա աւուրս էր եւ Փիլոն Տիրակացին, որ զՍոկրատայ Պատմութիւնն թարգմանեաց ի հայ լեզու» (էջ 99):

[29] Էջմ. Թ. 2271: Նոյնը հրտ. Ազգարար (Մադրաս), 1795, էջ 188—192: Ահա Հ. Գ. Գալէմքեարեան, Պատմ. հայ լրագրութեան, Վիեննա 1893, էջ 205—210:

[30] Ներսէս Բիւզանդացի, Իմ կարծիք..., Հանդ. Ամս. 1893, էջ 273—278:

րում... յամին 484 կամ 485..: Ոչ ունիմ ասել թէ նո՞յն իցէ եւ Իմաստունն Ներսէս Կամսարականն», այն զոր կը յիշէր Մ. Խորենացւոյ վերագրուած Աշխարհացոյցը (էջ 273): Բայց եւ այնպէս «չէ ինչ անհնարին զի Փոքր Սոկրատն թարգմանեալ իցէ ի Փիլոնէ Տիրակացւոյ յէ. դարու, որպէս կարծեն բազումք» (էջ 278): Թէպէտ ենթադրութիւնն «չէ ինչ անհնարին», բայց զարմանալի է յամենայն դէպս մէկ ոտքով Ե. դարու եւ միւս ոտքով Է. դարու վրայ կանգնիլ անսասան: «Թարգմանիչ Փոքր Սոկրատայ թուի ինձ Աբրահամ եպ. Մամիկոնեան, զորմէ ասի գրեալ կամ թարգմանեալ զՊատմութիւն ժողովոյն Եփեսոսի» (էջ 274): Նորայր Աբրահամի այդ ենթադրեալ գրութիւնը չէր տեսած. ՆՀԲէՆ ծանօթ էին իրեն «Յորդորանք» եւ «Երկարաձմեռն» բառերը, յիշուած յանուն Աբրահամ Մամիկոնեանի: Յետոյ տեսնուեցաւ, որ այն ընդարձակ տեղիքը փոխառութիւն էր Փ. Սոկրատէն: Տե՛ս այս մասին վարը:

«Թարգմանութիւն Փոքր Սոկրատայ է ազատ, ձեւեալ եւ կարկառեալ ըստ կամի: Թարգմանիչն ոչ միայն համառօտէ եւ զեղչէ բազում ուրեք, այլ եւ ի բաց թողու բովանդակ գլուխս. եւ այսուրիկ ազգաւ կոչի Փոքր Սոկրատ: Այլուր ընդհակառակն յանձնէ մուծանէ հատուածս բազումս՝ մերթ ընդարձակս եւ մերթ կարճառօտս, պատուտելով» (էջ 274): «Իսկ Պատմութիւնն

Սեղբեստրոսի Թուխ Թարգմանեալ ի Թարգմանչէն Փոքր Սոկրատայ» (էջ 275)։

Նորայր իր այս տեսութիւնը ուրիշ խօսքերով կրկնած է Մշակի մէջ (1898, Թ. 203 եւն)։ Կը սպասուէր, որ նա Մեծ եւ Փոքր Սոկրատներու հրատարակութենէն ետքը սրբագրէր ինչ ինչ անձամբ։ Այժմ կը գրէ Նորայր. «Փոքր Սոկրատն առած է ի Խորենացւոյ յեօթներորդ դարու՝ ինչպէս ես կը պնդեմ» (Թ. 203)։

Մեսրոպ Վ. Տէր-Մովսէսեան, որ Փոքր Սոկրատի գրութեան ժամանակի մասին լռութեամբ անցած էր իր հրատարակութեան մէջ (1897), յաջորդ տարին «Սոկրատ պատմագիր եւ Մ. Խորենացի» յօդուածին մէջ[31] արտայայտուեցաւ այս մասին այսպէս. «Փոքր կոչուած Սոկրատը կրճատուելով Է. դարու վերջում կամ Ը.-ի սկիզբները, իր բնագրից շեղուելիս եւ յաւելուածներ ընդունելիս, օգտուել է ի միջի այլոց հայ աղբիւրներից, նաեւ Խորենացու Պատմութիւնից»։

Գրիգոր Խալաթեան մանր քննութեան առնելով Փ. Սոկրատի եւ Մ. Խորենացւոյ սերտ յանդեցաւ այն եզրակացութեան թէ «Խորենացին ճանաչել է Սոկրատի Եկեղ. Պատմութեան Է. դարու հայերէն թարգմանութեան համառօտութիւնը կամ՝ որ նոյն է, Փ. Սոկրատը, եւ օգտուել է նորանից»[32]»։

---

[31] Արարատ, 1898, էջ 173։

[32] Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին, էջ 53։

Նորայր պնդեց սակայն կրկին, թէ Փոքր Սոկրատն է որ կախում ունի Մ. Խորենացիէն (Մշակ)։

Ժամանակի մասին Գալուստ Տէր-Մկրտչեան նկատի առնելով որ Անանիա Մոկացի կ՚օգտուի Փոքր Սոկրատէն, հետեւցուց. «Այս վկայութեամբ անպայման ապացուցւում է, որ Ժ. դարում Սոկրատի Եկեղ. Պատմութեան Փոքր խմբագրութիւնը արդէն կար եւ ծանօթ ու տարածուած գրուածք էր[33]»։

Նորայր Բիւզանդացւոյ այն ենթադրութիւնը, թէ Փոքր Սոկրատ բանաքաղութիւններ ունի Աբրահամ Մամիկոնեանէ, գրգիռ եղաւ Հ. Բ. Սարգիսեանի հրատարակելու անոր Պատմութիւնն Եփեսոսի ժողովին[34], ընդարձակ ներածութեամբ մը եւ վերջաբանով։ Դժուար է Հ. Սարգիսեանի տուած արտայայտութիւններէն ճշգրիտ գաղափար մը կազմել իր անձնական տեսութեան մասին նկատմամբ Փ. Սոկրատի հեղինակին եւ ժամանակին։ Խնդիրը հետեւեալն է. Աբրահամի վերագրուած յիշեալ գրուածքին վերջը Վենետիկի Մխիթարեանց մէկ օրինակի մէջ կը գտնուի ընդարձակ հատուած մը՝ Գովասանութիւն Թէոդոս Փոքր կայսեր, որ բառ առ բառ կը տեսնուի Փոքր Սոկրատի մէջ (գլ. ՃԽԹ—ՃԾ.) եւ է առանց տարակուսի փոխառութիւն վերջինէս։

[33] Արարատ, 1897, էջ 279, ծան.։
[34] Աբրահամ Մամիկոնեան, Վենետիկ 1899։

Հ. Բ. Սարգիսեան կը գրէ. «Ա. Թէոդոսի գովասանութեան մէջ՝ Աբրահամ խիկ հանգոյն Փոքր Սոկրատայ խմբագրին՝ տեղ տեղ խոտորելով Մեծէն, ընդարձակ յաւելուածներ կ՚ընէ, եւ յետոյ կը դառնայ եւ անկէ կ՚առնու իւր թելը: Բ. Փոքր Սոկրատայ խմբագիրն՝ Եփեսոսի ժողովի եւ Նեստորի պատմութիւնն բրած եւ Սոկրատէն խոտորած ժամանակ՝ ինչ ինչ բաներ Աբրահամու Թղթին համաձայն կը պատմէ. ինչպէս օրինակ իմն, Նեստորի մոլորութեան յառաջբերութիւնն (!) եւ դատապարտութեան ինչ ինչ պարագաները (!): Արդ առաջին կէտէն կը հետեւի, բատ իս, թէ նոյն ինքն Աբրահամ եղած ըլլայ խմբագրող նաեւ փոքր Սոկրատայ, եւ խմբագրած է զայն հայկ. հին թարգմանութեան կամ Մեծ Սոկրատայ վրայ»: «Յամենայն դէպս քմահաճոյ կ՚երեւի ինձ կարծիքն, որով պնդեց Նորայր, թէ Աբրահամու Թղթէն գողցած է Փոքր Սոկրատայ թարգմանիչն»: «Ընդ հակառակն Աբրահամու Թղթի յիշեալ մասը՝ Սոկրատայ թարգմանութեան Զ. դարու կատարելագոյն օրինակէ մ՚առնուած է, որուն հետքերը կը գտնենք (!) նոյնպէս Սեբիոսի, Անանիա Շիրակացւոյ... եւ Կայսերական գրոց մէջ» (էջ ԻԱ): «Թէոդոսի գովասանութիւնը Փոքր Սոկրատի խմբագրին յատուկ ամենուրեք ի վար արկած ոճին համաձայն է, մանաւանդ այն տեղերն՝ ուր յոյն բնագրէն կը խոտորի եւ յաւելուածներ կ՚ընէ իր կողմէն»: «Զ. դարու

առաջին քառորդին ծանօթ էր այն՝ նոյն իսկ Աբրահամու, եթէ սորա Թուղթը վաւերական է ստուգիւ, եւ եթէ Թէոդոսի գովասանութիւնը՝ Սոկրատայ հայերէն թարգմանութեթենէն առնուած է, ինչպէս եւ կարծեմ: Առանձին ուսումնասիրութեան կարօտ են, ուրեմն, այս նկատմամբ՝ նաեւ Փիլոն Տիրակացւոյ է. դարում ապրած եւ Սոկրատայ խմբագրութեան մէջ մասնաւոր դեր խաղացած լինելու խնդիրն, ինչպէս նաեւ Մեկենաս եղող Ներսեհի վերաբերեալ կեղակարծ (!) յիշատակարանը» (էջ ԻԶ): «Թէոդոսի գովաբանութիւնը Սոկրատէն միայն առած է Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսն եւ ոչ թէ վերջնոյս թղթէն անցած է Սոկրատի խմբագրութեան մէջ» (էջ 29):

Ինչպէս վերագոյն կանխեցինք ըսել Աբրահամի եւ Փոքր Սոկրատի առնչութեան հարցը լուծուած է այժմ: Աբրահամ Մամիկոնէից եպիսկոպոսն, ծաղկած Զ. դարու երկրորդ կէսին, նման գրութեան մը հեղինակ կամ թարգմանիչ չէ. Եփեսոսի ժողովին պատմութիւնը շարադրած է, ներկայ ձեւին մէջ, Վրթանէս Քերթող է. դարու առաջին տասնեակին[35], իսկ Թէոդոսի գովասանութիւնը հանուած է Փոքր Սոկրատէն եւ կցուած Եփեսոսի ժողովոյն պատմութեան ճառընտիրի մը մէջ, ուշ ժամանակ մը:

3. Խնդիրը մնաց այս տեղ: Բանասէրները երկար ժամանակ աչքաթող ըրին «Փոքր

[35] Հանդ. Ամս., 1910, էջ 39—46:

Սոկրատի» հեղինակն եւ ժամանակը: 1936ին միայն լոյս տեսաւ Ն. Ադոնցի գրչէն յօդուած մը «Փոքր Սոկրատի հեղինակը[36]»: Յառաջ կը բերեմ տողերս.

Ն. Ադոնց կը գրէ. «Մեծ եւ Փոքր Սոկրատի յարաբերութեան խնդիրը մնում է ցարդ առկախ: Բանասէրները երկար եւ ջերմ վիճաբանութիւնից յետոյ իրենց պէնքերը վայր դրին, մոռացութեան տալով հարցը: Եւ ինչ որ զարմանալի է, նոյանից եւ ոչ մէկը չէր նկատել, որ մատենագրական սոյգ (!) տեղեկութիւն կայ Փոքր Սոկրատի խմբագրութեան ե՛ւ ժամանակի ե՛ւ հեղինակի մասին: Մխիթար Այրիվանեցին իր ժամանակագրութեան մէջ հաղորդում է 641 թուին տակ (թիւը հարկաւ ճիշդ չէ, եւ այս չէ կարեւորը).

«Փիլոն Տիրակացի. Յակոբ Ուռհայեցի արար գնոր թարգմանութիւն»:

«Հապա թէ բացատրութեան պէտք կայ: Ժամանակագիրը յայտնում է որ այս ինչ թուին Փիլոն Տիրակացին թարգմանել է Սոկրատը եւ յիշում ի դէպ որ Յակոբ Ուռհայեցի արել է երկրորդ թարգմանութիւնը, այս ինքն Փոքր Սոկրատը: Մնում է պարզել թէ ո՞վ է Յակոբ Ուռհայեցին: Հարցնենք Մատթէոս Ուռհայեցուն, որ պէտք է ճանաչէ իր քաղաքացիներին: Արդարեւ նա գիտէ մի Յակոբ գիտնական վարդապետ որ կնքել է իր մահ-

---

[36] Սիոն, 10 (1936), 300—304:

կանացուն խորին ծերութեան մէջ, Ուռհա-յում, Հայոց ՇԼԴ = 1085 թուին: Նոյն պատ-միչն աւանդում է որ Յակոբ կոչւում էր Քա-րափնեցի եւ Սանահնեցի, մասնակցել է 1065 թուի դաւանաբանական վիճաբանութեան» Կ. Պոլիս: Այս «Յակոբը կոչւում է նաեւ Ուռ-հայեցի, այն տեղ իր կեանքի վերջին տարի-ները անցնելու պատճառով»: «Դատելով Մխիթար Այրիվանեցու նրա տուած Ուռ-հայեցի կոչումից, պէտք է կարծել, որ Սոկ-րատի համառօտումը կատարել է Ուռհա-յում 1065—1085 տարիների շրջանում»:

Ն. Ադոնց նոր գիւտի մ'առջեւ կը գտնուի ինքզինքը: Եւ կը զարմանայ թէ ինչէ յառաջ «եւ ոչ մէկը չէր նկատել» զայն: Բայց այս «զարմանալի» երեւոյթը պէտք է յորդորէր զինքը աւելի շրջահայեաց ըլլալ. վասն զի Գ. Տէր-Մկրտչեան ցոյց տուած էր արդէն, թէ Փոքր Սոկրատ Ժ. դարէն յառաջ գոյութիւն ունէր. ուստի «Յակոբ Ուռհայեցին» չէր կրնար զայն ԺԱ. դարուն առաջին անգամ հրապարակ դրած ըլլալ: Եւ եթէ չունէր ի Բրիւսէլ Արարատի հաւաքածոյքը, բայց ունէր հաւանօրէն Թղթոց Գիրքը, ուր կային վկայութիւններ նոյն Սոկրատէն, նոյն Ժ. դարուն գրուած Թղթերու մէջ:

Մ. Այրիվանեցւոյ յիշեալ տեղիքը թէ՛ Հիմնի եւ թէ՛ Պատկանեանի[37] հրատարա–

[37] Մխիթար Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, Մոսկուա 1860, էջ 50: Մ. Այրիվանեցւոյ Պատմութիւն ժամանակագրական, Պետերբուրգ 1867, էջ 65:

*կութեանց մէջ ներկայացուած էր այսպէս, ընդ մէջ 641—689 տարիներու.*

Փիլոն Տիրակացի։

Յակոբ Ուռհայեցին արար զնոր թարգմանութիւն։

*Այս դատաւորութենէն պէտք է անդրադառնար ուսուցչապետ Ն. Ադոնց, թէ ժամանակագիրը հոս երկու հեղինակներ նկատի ունի, երկուքն ալ ծաղկած 641—689 տարիներու մէջ մերձաւորապէս։ Այսպէս հաւկըցած են տեղիքս իրմէ յառաջ ամէն ընթերցող, ուստի եւ ոչ մէկուն մտքէն անցած է տեսնել յանձին Յակոբ Ուռհայեցւոյ Փոքր Սոկրատի թարգմանիչն եւ կամ այս գիւտը Ն. Ադոնցի վերապահել։*

*Այս Յակոբ Ուռհայեցին յայտնի Յակոբ Եդեսացին է, սուրի բազմաշխատ հեղինակը, որ վախճանած է 5 յունիս 708*[38]*։ Իր կարեւոր աշխատութիւններէն մէկն է Աստուածաշունչի սուրբերէն թարգմանութեան սրբագրութիւնն ըստ երրայական սկզբնագրին. զայս կ'ակնարկէ Մխիթար Այրիվանեցի, երբ կը գրէ «արար զնոր թարգմանութիւն»։ Իր աղբիւրն եղած է հաւանօրէն Մ. Ասորւոյ Ժամանակագրութիւնը հայերէն թարգմանութեամբ, ուր կը կարդանք*[39]*.*

---

[38] *Հմմտ.* A. Baumstark, Geschichte der syrischen Literatur, Bonn 1922, *էջ* 248—256։

[39] *Մխք. Ասորւոյ Ժամանակագրութիւն, Երուսաղէմ* 1871, *էջ* 327 *եւ* 1870, *էջ* 341—342։ Chabot, *Բ.*, 471։

«Ի սոյն ժամանակս էր սուրբ վարդապետն Յակոբ Ուռհայեցին ի գաւառէն Անտիոքայ, որ ուսաւ լեզու եւ գիր յունարէն եւ եբրայեցերէն. որ գնաց եւ եմուտ պատճառաւ ընդ հրէութեամբն եւ թարգմանեաց զծածուկսն Հրէիցն յասորի լեզու: Եւ արար մեկնութիւնս բազում գրոց եւ եղեւ եպիսկոպոս Ուռհայոյ. եւ կատարեաց զկեանս իւր յերկիրն Բեռնոյ ի վանս որ կոչի Ս. Յակոբայ»:

Իսկ Յակոբ վարդապետ, զոր Մատթէոս Ուռհայեցի «Բարահատայ որդի», Բարափնեցի եւ Սանահնեցի կ'անուանէ[40], երբեք «Ուռհայեցի» չէ յորջորջուած: Հ. Ղ. Ալիշանի[41] համաձայն «Աստ երգածն կարծուի Յանսկզբնական ծոցոյ խոնարհեալ հանգստեան (ԳԿ) շարականը, որ ի ճաշու ժամու երգուի»: Ուրիշ գրաւոր գործ ծանօթ չէ իրմէ:

Ըստ այսմ իմանալու է այն ամէն հետեւութիւնները, զոր կը հանէ Ն. Ադոնց այս անհիմն գրութեան վրայ յեցած:

4. Դիմենք նախնեաց վկայութիւններու: Անոնք չեն զանազաներ Մեծ եւ Փոքր Սոկրատ. այլ մի միակ Սոկրատ, որով կ'իմանան Փոքր Սոկրատը:

Հնագոյն վկայութիւնը կը թուի ինծ թէ կը գտնուի «Տեառն Խոսրովայ յաղագս Բա–

---

40 Ժամանակագրութիւն, էջ 194—195, 216, 273 հրտ. Երուսաղէմի:

41 Շնորհալի եւ պարագայ իւր, էջ 133:

ռասնորդաց» պահոց ճառին[42] մէջ: Այս Տէր Խոսրովը նոյնացուցած եմ այն Խոսրով քահանայի հետ, որ սովորաբար կ՚անուանուի Խոսրովիկ թարգմանիչ, Ը. դարու առաջին քառորդին գործած: Հեղինակի ինքնութիւնը սակայն կը կարօտի դեռ անդրադոյն քննութեան. ծանօթ միակ ձեռագրին մէջ ճառիս վերագրումը «Տեառն Խոսրովու» կ՚ենթադրէ յանձին Խոսրովու բարձրաստիճան եկեղեցական մը, որպիսի էր Անձեւացեաց համանուն եպիսկոպոսն, ծաղկած Ժ. դարու երկրորդ քառորդին: Գրուածքիս կուռ ոճն եւ ներհուն ճարտարախօսութիւնը յատուկ են աւելի Անձեւացւոյն: Խոսրով կ՚օգտուի հոս հատուածէ մը, «որպէս կայ ի Պատմութեանն Սոկրատայ»· խօսքը Փոքր Սոկրատի ձժԴ գլխու մասին է (էջ 462—465): Համեմատութիւնն է.

| Փ. Սոկրատ, էջ 462—465: | Խոսրով, էջ 313: |
|---|---|
| Զի ի Հռոմ զտօն Զատկին ըստ փրկաւէտ Յարութեան տօնէին եւ սուրբ զպահսն ուճէին ի մաէն մինչեւ յելս պահոց Զատկին. եւ ոչ ի շաբաթու եւ ոչ ի կիւրակէի պյլափո– | «Քառասուն աւուրց անընդհատ պահք, որպէս կայ ի կանոնս նոցա, անլուծանելի եւ անմերձ յամենայն կերակուրս՝ բայց յաղ եւ ի հաց ըստ նորին անուանակոչութեանն[43]: Եւ |

---

[42] Հանդ. Ամս, 1904, էջ 310—316:

[43] Այս տեղ նկատի ունի Խոսրով Փ. Սոկրատի տողերս. «Թէպէտ [illegible] քարոզեալս եկեղեցւոյ ընդութեամբ յարդարէր. մանաւանդ զՔառասներորդ որոյ պատկին եւ զուրբաթ եւ դչորեքշաբաթ անլու–

խել զկերակուրսն. եւ ի Պետրոսէ եւ ի Պաւղոսէ *ասեն* ունել զաւանդութիւն *տօնից եւ* պահոց յիսնօրէից: *Իսկ* Ասիա եւ Եփեսոս *նմանապէս ի* Յովհաննէ աւետարանչէ ունէին զտօն Զատկին կատարել *ըստ աւետաւոր Յարութեանն եւ* պահօք նմանապէս յարաձգեալ ի մտից (*այլ. ի մուտս*) պահոցն մինչեւ զկատարումն յիսնեկին (*այլք՝ յիսներեկին*): Իսկ յԱղեքսանդրիա Քառասներորդս անուանելով զօր Բարեբանութեան սրբապէս կատարելով *եւ յետ այնորիկ զշաբաթն ստուերագոյն պատուով եւ* ընթերցուածովք ի Զատիկն հասուցանէին *զփառս: Թէպէտ եւ ըստ հին Զատկին պատարագն ընծայարերի, այլ եւս ըստ խորհրդածութեան աւուրցն*. բայց ի շաբաթու եւ ի կիւրակէի փրկական պատարագն միշտ կատարի *յեկեղեցիսն Աստուծոյ*...:

*զկնի նոցին սուրբ Հարքն յիւրաքանչիւր կանոնս սահմանեցին հաստատելով ի հիմանն առաքելոց, ըստ որում եւ մեծ քաղաքն* Հռոմ *անընդմիջարար* ունի զսուրբ պահսն մինչեւ յելս պահոց զատկին, եւ ոչ ի շաբաթու եւ ոչ ի կիւրակէի *լուծանեն կամ* փոխեն զկերակուրսն մինչեւ յօր յարութեանն Տեառն ի Պետրոսէ եւ ի Պաւղոսէ *նոցա* աւանդեալ: *Համգոյն սոցին եւ* Եփեսոս եւ Ասիա ի Յովհաննէ աւետարանչէ *ասեն* ունել զաւանդութիւն պահոց յիսներեկին, նմանապէս պահօք յարաձգեալ *ի մտից պահոցն մինչեւ զկատարումն նորին: Ըստ նմին եւ* Աղեքսանդրացիք *զսուրբ* Քառասներորդսն սրբապէս *պահելով ի Մարկոսէ աւետարանչէ ուսեալ. եւ* զօր Բարեբանութեան *նոյնպէս պահեն անլուծանելի զլխաւորելով, բայց զպաշտօնն յաւէտ բարձրացուցանեն եւ* ընթերցուածովք *եւ աւետարա-*

---

ծանելի, *զոր* հացիւ եւ աղիւ *եւ ջրով ընդ երեկոյս զպէտս վճարէր*» (*էջ* 619): *Հոս «ըստ նորին անուանակոչութեան» կը յարաբերէ Քառասնորդաց «աղուհացք» անուանակոչութիւնը. այսպէս իմացիր Հանդ. Ամս.* 1904, *էջ* 313*ա*, *ծան.* 5:

*նոք* ի զատիկն հաստատեն, այլ ի շաբաթու եւ ի կիւրակէի փրկական պատարագն միայն մատուցանի:

Էին ոմանք, որ եւ զպատարագն խափանել (ջանային) *ի կիւրակէի եւ ի շաբաթու* վասն պնդանալոյ պահոց· բայց այս ոչ ընկալեալ եղեւ ի սրբոց· [որ] զ(ի մի) յիշումն Յարութեանն Քրիստոսի *պատարագաւն* եւ [զ]նահատակութիւն սրբոց անտես ի մոռացումն լիցի *եկեղեցւոյ*:

Էին ոմանք, *ասէ*, *որ* զուրբք պատարագն խափանել ջանային վասն պնդութեան պահոցն, բայց այս ոչ ընկալեալ եղեւ ի սրբոցն վասն անմոռաց յիշատակի Յարութեան Փրկչին եւ նահատակութեան վկայիցն: *Ժամանակս ինչ եւ Երուսաղեմացիք զորքան ի բարեպաշտութեան էին, պահէին սրբութեամբ միաչար՝ ուսեալք յառաջնորդէն Յակոբայ, որպէս կայ ի Պատմութեանն Սոկրատայ:*

*Փ. Սոկրատ շատ քիչ բան ունի հոս Մեծ Սոկրատէն. Համառօտողը, որ խստապահութեան կողմնակից է, ջատագով կը կանգնի իր տեսութեան Սոկրատի անուան տակ. ամբողջը կարելի է իր ստեղծագործութիւնը համարել: Հատուածս հարազատ է իբրեւ մաս Համառօտութեան: Յստակով հաստատուած է, թէ Սոկրատ կը խօսի հոս: Յամենայն դէպս վերջաւորութիւնը՝ «Ժամանակս ինչ — Յակոբայ» իր յաւելուածն է, որ կը պակսի թէ Մեծ եւ թէ Փոքր Սոկրատի մէջ: Ակնարկութիւնն «զորքան ի բարեպաշտու-*

թեան էին» Երուսաղեմացիք, միաբնեայ գրիչ մը կը մատնէ, որպիսի էր Խոսրով. Երուսաղեմացիք Քաղկեդոնական էին:

Գագիկ Վասպուրականի թագաւորը ցանկանալով բարեկամական յարաբերութեան մէջ ապրիլ բիւզանդական արքունիքի հետ, հետաքրքրուած է այն ամէն հարցերով, որոնք պատճառ նկատուած են Հայոց եւ Յունաց միջեւ տիրող անհամաձայնութեան: Հայոց վարդապետները ներկայացուցած են իրեն զանազան կէտեր, որոնք կրօնադաւանաբանական մարզի կը պատկանէին: Թագաւորը նամակով մը կը ներկայացնէ այդ կէտերը Ռոմանոս կայսեր, լսելու համար անոնց մասին Յունաց տեսակէտները: Այս Թուղթէն է հետեւեալ հատուածը[44], ուր վկայութեան կը կոչուի Սոկրատ պատմագիր:

| Փ. Սոկրատ, էջ 524—527: | Թուղթ Գագկայ թագաւորի (Գ. թղ. 298): |
| --- | --- |
| Յայնժամ երկուցեալ Յոհաննու... ընդդէմ նոցա (Արիանոսաց) կարգէր զօրս փառաբանիչս ամենասուրբ Երրորդութեան միոյ աստուածութեան... որ ի Հայր եւ յՈրդի եւ ի Հոգին սուրբ... ի գիշերայինն լսելոյ օհնութիւնս... [... եւ ընդ ա— | Եւ մատուցին առաջի իմ գիրս Սոկրատայ պատմագրի Եկեղեցական չարածի: Եւ ունէր յիշատակարանն այսպէս, եթէ Յովհան Ոսկեբերան ընդդէմ Արիանոսացն կարգէ դասս պաշտօնէից մի փառաբանութիւն եւ պատիւ տալով Հօր եւ Որդւոյ եւ |

44 Գիրք Թղթոց, 298:

տուօտս սրբասացութիւն Երրորդութեան Որդւոյ ընծայեցուցանէին քաղցրաձայն երգով Սուրբ Աստուած ասելով, սուրբ եւ հզօր, սուրբ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ]...:

Հոգւոյն սրբոյ: Իսկ յերեկոյս եւ ի վաղորդեան գերիս սրբասացութիւնան միոյ անձնաւորութեանն սահմանեալ ի վերայ Որդւոյ ի Կուսէ մարդ եղելոյ, որ խաչեցաւն վասն մեր. եւ երգէին Սուրբ Աստուած, սուրբ եւ հզօր, սուրբ եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ:

Եւ ասէ կարգեալ զայս յԻգնատիէ Անտիոքացւոյ, որ ասի լինել յեւթանասուն առաքելոյն: Տեսանէ, ասէ, սուրբն Իգնատիոս զզօրս երկնայինս, որ երիս սրբասացութեամբ զսուրբ Երրորդութիւնն փառաբանէին: Զնոյն դարձեալ եւ ի վերայ Որդւոյ գերիս սրբասացութիւնն ընծայեցուցանէին»:

Ասացից եւ զպատճառս սրբասացութեանն, որ ի վերայ Որդւոյ ասի Երրորդութեանն սրբասացութիւնն: Իգնատիոս Անտիոքայ եպիսկոպոս՝ երրորդ յառաքելոյն Պետրոսէ եւ աշակերտեալ նոցա՝ որ յեւթանասնիցն ասի լինել սուրբն. սա տեսանէ երկնաւոր զօրս հրեշտակաց, [որք օրհնէին զամենասուրբ Երրորդութիւն երեքկին սրբասացութեամբ մի աստուածութեանն զփառսն ընծայէին, զնոյն դարձեալ եւ վերայ Որդւոյ անճառելի ձայնիւ երեքկին սրբասացութեամբ տան զփառսն: Որ ի միտս նորա տպաւորեալ եղեւ սրբասացութիւն օրհնութեանցն, որ ի Քրիստոս զխորհրդածութիւն ունի]. եւ զայս [յ]Անտիոքայ եկեղեցւոյն աւանդէր յերեկոյս եւ ի վաղորդեան աւուրս սուրբն Իգնատիոս: Ուստի եւ յամենայն եկեղեցիս ուղղափառաց տուեալ պահի. [եւ զամենայն կարգս եկեղեցւոյ յԻգնատիոսէ, ասէ, հաստատեալ]:

Փ. Սոկրատի այս տեղիքները յառաջ կը բերուին նաեւ «Սահակայ Հայոց կաթողիկոսի» հակաճառութեան մէջ[45], երբ խօսք կ՚ըլլայ Սրբասացութեան մասին. «Եւ զայս աւանդեցին մեզ սուրբ Առաքեալքն եւ յետ նոցա սուրբն Իգնատիոս աշակերտ աւետարանչին Յովհաննու, եպիսկոպոս Անտիոքու՝ լուեալ ի զօրաց երկնաւորաց, որք երգէին զփրկութիւնն զոր արար Որդին Միածին աշխարհի, թէ պարտ է յամենայն աւուր խոստովանել եւ ասել Սուրբ Աստուած, հզօր եւ անմահ, որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Եւ զայս պատմէ Սոկրատէս Յունաց իսկ պատմագիրն, թէ Իգնատիոս իսկ հաստատեաց զեկեղեցին Անտիոքու զուսեալն ի զօրաց երկնից. եւ անտի յընդհանրական եկեղեցի որ յաշխարհի՝ սփռեալ հաստատեցաւ: Վասն որոյ Յոհան Ոսկեբերան հակառակ Արիանոսացն, որք ոչ խոստովանէին զխաչեալն Աստուած ճշմարիտ համագոյ Հօր, հրամայեաց հանապազօր առաւօտու երգել եւ ասել. Սուրբ Աստուած հզօր եւ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ: Իսկ Արիանոսքն ոչ ժուժեալ ճշմարիտ խոստովանութեանն՝ մարտ պատերազմի սաստկագոյնս արարին ընդ ուղղափառսն, որպէս պատմէ նոյն Սոկրատէս, որ էր Կոստանդնուպաւլսեցի, ականատես Ոսկեբերանին Յովհաննու եւ ականջալուր աւանդութեանց

[45] Անդ, էջ 466:

նորա: Իսկ եթէ Ցոյնք ոչ ընդունին զՊատմութիւնն Սոկրատեայ եւ զաւանդութիւն երանելւոյն Յովհաննու, յայտնապէս վարդապետացն իւրեանց լինին անարգիչք, որպէս եւ Հրեայք մարգարէիցն: Բայց թէ զայս ոչ ընդունին, ցուցցեն յաստուածեղէն գրոց, թէ ո՞ ի սրբոց հարցն ասաց «Սուրբ Աստուած ատանց խաչեցարի» եւ յո՞ւմ գիրս գրեալ է: Ապա թէ ոչ կարեն ցուցանել, ուրեմն ճշմարիտ է Պատմութիւնն Սոկրատեայ: Վասն որոյ եւ մեք ընդ սուրբս եւ ընդ Իգնատիոսի եւ ընդ Ոսկեբերանին Յովհաննու խոստովանեալ եմք եւ ասեմք ի սկզբանէ մինչեւ ցայսօր...»:

Այսպէս նաեւ «Ստեփաննոս Սիւնեաց եպիսկոպոս» իր առ «Անտիոքայ եպիսկոպոսն» պատասխանական Թղթին մէջ[46]. «Եւ առէք դարձեալ ցմեզ, եթէ (զխաչեցարն) յումմէ՞ ուսայք... Առէք ընթերցիք զձեր ժամանակագիրն, զոր Սոկրատն կոչէք, եթէ յառաջնումն ձայնիւ ոչ նուագէին զՍուրբ Աստուածն խաչեցարիւն յեկեղեցւոյ յեկեղեցի երթալով, զոր երանելւոյն Ոսկեբերանի ընթերցեալ զգիրս Որոգինէի՝ կարգէր յիւրում ժամանակին»: Զարմանալի է, որ Ստեփաննոս չի յիշեցներ Անտիոքի յոյն պատրիարքին նոյն Սոկրատէն Իգնատիոս Անտիոքացւոյ վկայութիւնը:

---

46 Անդ, էջ 330:

Այս յիշուած երեք գրութիւններն ալ ուշ ժամանակէ են. «Սահակ կաթողիկոսի» եւ «Ստեփաննոս Սիւնեցւոյ» անուամբ եղածները իրր Ժ. դարէ կեղծանուն հակաճառութիւններ են Յունաց դէմ. աւելի արժէքաւոր է Գագիկ Վասպուրականի թագաւորին առ Ռոմանոս կայսր (920—944) (աւելի ճիշդ առ Նիկողայոս Ա. պատրիարք, Բ. անգամ 911—925) գրած հարցափրական թուղթը, որ չափագրուած է իրր 920ին: Այս տեղ կ'ըսուէր, թէ «մատուցին առաջի իմ գիրս Սոկրատայ պատմագրի Եկեղեցական Շարածի»: Այս գիրքը Փոքր Սոկրատն էր: Երեք գրուածքներէն ալ կը տեսնուի, թէ Ժ. դարուն ընդհանուր ըմբռնումն էր, թէ այս «Եկեղեցական շարածը» Սոկրատ պատմագրի հարազատ գրութիւնն է, ուստի չէին գիտեր, թէ ան համառօտութիւն միայն է Սոկրատի Եկեղեցական Պատմութեան, եւ թէ գոյութիւն ունէր հայ լեզուով Մեծ Սոկրատը: Այլապէս չէին կրնար այնքան փաստահարար ըսել «եւ գայս պատմէ Սոկրատէս Յունաց իսկ պատմագիրն ... բայց թէ գայս ոչ ընդունին, ցուցցեն ... ուրեմն ճշմարիտ է Պատմութիւնն Սոկրատայ»:

«Սահակ կաթողիկոսի» Հակաճառութեան ազդեցութեան տակ կ'երեւայ Պօղոս Տարօնեցի († 1123) [47], երբ կը գրէ առ Թէոփիստէ. «Եւ արդ ընթերցիք զձեր գիրն որ Սուկրատ

[47] Թուղթ առ Թէոփիստէ, Կ. Պոլիս 1752, էջ 252:

*կոչի, վասն զի ի Նմա գրեալ կայ, թէ սկսեալ յԱռաքելոցն մինչեւ ի վեց (!) հարիւր ամ միարան առացին զԾաչեցարն յերիս սրբասացութեան: Դարձեալ ընթերցիք զգիրն Իգնատիոսի, որ աշակերտ էր առաքելոյն Յոհաննիսի, զի այսպէս գրեալ է, եթէ սուրբն Իգնատիոս լուաւ ի զօրաց երկնաւորացն, որք ասէին ձայնիւ եղանակաւ զսուրբ Ծաչեցարն. ձայնակցեալ նոցա երանելի Աստուածարանն, թէ Եւ ես խակ ի գովողացն եմ: Դարձեալ գտանէք ի Սոկրատի անդ, զոր կայ ի գիրքն Ներքատեայ հայրապետին Հռոմայ...»: Այս վերջին տեղիքը գոյութիւն չունի Սոկրատի մէջ, բայց կայ Սահակի Հակաճառութեան մէջ*[48]*: Պօղոս Տարօնեցի ձեռքի տակ չէ ունեցած Սոկրատը, ոչ Մեծն եւ ոչ Փոքրը. կոչումները, օրինակի համար Աթանասի Հաւատամքը (Փ. Սոկր.* 236—239) *ծանօթ է Փ. Սոկրատէն հանուած Ս. Աթանասի վարքէն (էջ* 139*էն) եւն:*

*Ունինք Ժ. դարէն ուրիշ երկու վկայութիւն ալ Անանիա Մոկացի կաթողիկոսի* (946—968) *Թղթերու*[49] *մէջ.*

| | |
|---|---|
| Սոկրատ, էջ 673: | Անանիա կաթողիկոս, էջ 279, 283: |
| *Եւ* հրամայէ (*Թագաւորն*) *եպիսկոպոսացն* զխորհրդածութեան ժա- | *Զի՞նչ իմանաս* զխորհըրդածութեանն ժամն, *զոր Թագաւորն* հրամայէր |

[48] *Գիրք Թղթոց, էջ* 466:
[49] *Արարատ*, 1897, *էջ* 279 *եւ* 283:

մուն հայրապետութեան կատարել ի վերայ Պրոկղի, եւ նստուցանել յաթոռ վերակացութեան: [Այսոցիկ այսպէս եղելոց, կատարեն զտօն Զատկին մեծաւ ուրախութեամբ եւ բազում դրուատեօք ի փառս Աստուծոյ:]

Որ ի վերայ այսոցիկ եղելոցս եւ Թուղթք ի Կեղեստիանոսէ հայրապետէն Հռովմայ եւ ի Կիւրղէ Աղեքսանդրի հայրապետէն եւ ի Յովհաննէ Անտիոքայ եպիսկոպոսէ հաստատել Պրոկղի հայրապետութիւնն:

Մեծ Սոկրատ.

«Նստուցանել զՊրոկղ յաթոռն հրամայեաց (Թագաւորն). քանզի յայնժամ եւ Հռովմայ եպիսկոպոսին Կեղեստինոսի Թուղթք հասեալ լինէին ընտրակից...»:

ի վերայ Պրոկղի, յորժամ յեպիսկոպոսութենէ ի հայրապետութիւն կոչէն՝ ըստ չարածութեանն Սոկրատայ:

Զի յաղագս պատարագի հարկաւորաբար զտանին ժողովեալ, որպէս ի Կ. Պոլիս եւ վասն Նեքտարայ եւ Յովհաննու Ոսկեբերանի եւ Պրոկղի եւ բազում եպիսկոպոսաց հրամայեցաւ զհայրապետական ժամս խորհրդածութեանն կատարել ի վերայ Պրոկղի եւ նստուցանել յաթոռ հանդերձ մայրաքաղաքացն Թխտովք Հռոմայ եւ Աղաքսանդրի եւ Անտիոքայ, որպէս պատմի ի Սոկրատայ մատենագրէ:

Գալուստ Տէր-Մկրտչեան նկատած էր արդէն, թէ «Անանիայի այս յիշատակութիւնը Սոկրատի մասին մեզի հասած հնագոյն տեղեկութիւնն է», ի հարկէ ոչ աւելի հին քան Գագիկի վկայութիւնը: Եւ որովհետեւ հոս խօսքը Փ. Սոկրատի մասին է, իրաւամբ հետեւցուցած էր Տէր-Մկրտչեան, թէ վկայութենէս կ'ապացուցուի, թէ «Ժ. դարում Սոկրատի Եկեղ. Պատմութեան Փոքր խմբագրու-

*թիւնը արդէն կար եւ ծանօթ ու տարածուած գրուածք էր»*[50]:

*Փ. Սոկրատը նաեւ յաջորդ դարերու մէջ առձեռն պատմագիրք ծառայած է հայ գրականութեան մէջ. Նոյնը կը տեսնենք ոչ միայն պատմագիրներու ձեռքին, այլ եւ աստուածաբաններու, իրաւագէտներու եւ արքախօսներու սեղանին վրայ: Ոչ ոք անդրադարձած է, թէ այն՝ Սոկրատի անուան տակ կեղծիք մըն է, անհարազատ գրութիւն մըն է: Յիշենք.*

*Ստեփանոս Ասողիկ* (*էջ* 138) *երբ կը գրէ. Յուլիանոս «մեռաւ ի Պարս եւ թաղեցաւ ի Տարսոն, որպէս Սոկրատ ասէ», կ՚ակնարկէ հայ Սոկրատին էջ* 290, *ուր թէ Մեծ եւ թէ Փոքր Սոկրատ նոյնն ունին. Նորայր Բիւզանդացի կը համարի այս տեղիքն առնուած «ի Մեծ Սոկրատայ որպէս թուի*[51]*»:*

*Սամուէլ Անեցի* (*էջ* 65) *կ՚արձանագրէ յամին* 343. *«Մեծն Կոստանդիանոս հանգեաւ յամսեանն ահեկանի իԲ. որ է Մայիս»: Առնուած է Սոկրատէն* (*էջ* 114): *Թէ Մեծն եւ թէ Փոքրն նոյնպէս ունին, առանց «ահեկանի» յաւելուածին:*

*Վարդան Արեւելցի պատմիչ* (*էջ* 44) *խօսելով Յովլիանոս կայսեր մասին կ՚ըսէ. «Յուբիանոս ամ մի. զոր գովէ Սոկրատ* (*Փ. Սոկրատ էջ* 285—291)*. բայց ոմանք ասեն գնա աղանդոցն Արիոսի եւ վրիժառու ուղղափառաց. վասն որոյ եւ խեղդեցաւ, ասեն»: Այդ*

[50] *Անդ, էջ* 279, *ծան.:*
[51] *Սոկրատ, էջ* 290:

«ոմանք» կը յարարերեն Կայսերաց գիրքը, ուր կը կարդանք. «Յուրիանոս ամիս Ը. սոյն իսկ այս Յուրիանոս էր հետեւեալ Արիոսի մոլորութեանն. եւ եղեւ վրէժխնդիր նորին աղանդոյն. եւ յետ սակաւ աւուրց խեղդեցաւ[52]»:

Կիրակոս Գանձակեցի[53] ներկայ ձեւի մէջ կարդացած Փ. Սոկրատը. որ յիշելով պատմագիրը, կու տայ նաեւ անոր գործին բովանդակութիւնը. «Մեծիմաստն Սոկրատէս կոչի բանիւք, սկսեալ ի սրբոյն Սեղբեստրոսէ Հռոմայ հայրապետէ եւ ի Կոստանդիանոսէ եւ ածէ մինչեւ յաւուրս Թէոդոսու Փոքու՝ զարարս եւ զգործս իւրաքանչիւր թագաւորաց եւ եպիսկոպոսաց՝ զառաքինեաց եւ զվատթարաց եւ զժողովոց բազմաց եղելոց՝ պիտանեաց եւ զխոտան[ե]աց ընդարձակ եւ յաճախ պատմութեամբ աւարտէ»:

Կը յիշեմ ի վերջոյ Միքայէլ Ասորւոյ ժամանակագրութեան հայ խմբագրութենէն տեղիքս[54]. «Յովհաննէս Ասիացին ասէ, թէ Հայրն Կոստանդիանոսի («Կոստանդ») դարձաւ յաստուածպաշտութիւն. եւ Սեղբեստրոս զհայրն բժշկեաց ի բորոտութենէ: Եւ Պետրոս եւ Պաւղոս երեւեալ Կոստայ՝ խրատեցին զնա կոչել զՍեղբեստրոս մկրտել զնա: Այսմ վկայէ Սոկրատ Հռոմայեցի»: Ասորին

[52] Անանուն ժամանակագրութիւն, Վենետիկ 1904, էջ 53:
[53] Համառօտ Պատմութիւն, Վենետիկ 1865, էջ 2:
[54] Ժամանակագրութիւն, Երուսաղէմ 1871, էջ 126:

(հրտ. Chabot, I, 239) կը գրէ. «Յովհաննէս Ասխացի ի սկզբան գրոց խւրոց ասէ, եթէ Կոստանդին եթող նորոգ զպաշտօն կռոց, յորմէ հետէ հայրն իւր դարձեալ էր ի պաշտօն Աստուծոյ, որպէս զայս ցուցանէ Պատմութիւնն Սեղբեստրոսի Հռովմայեցւոյ»։ Իսկ միջանկեալ «Եւ Պետրոս — գնա» տեղիքը յառաջ կը բերէ Ասորին էջ 241ր։ Ուստի «Սոկրատ» անունը՝ փոխանակ «Պատմութիւնն Սեղբեստրոսի Հռովմայեցւոյ» հայ թարգմանիչէն մուծուած է, որովհետեւ այդ Վարքը Փոքր Սոկրատի սկիզբը զետեղուած է «Սոկրատի» անուամբ։

Սեբէոսի Պատմութեան մէջ[55] ալ ժամանակ մուտ գտած է Փ. Սոկրատէն հետեւեալ տեղիքը. «Յուլիանոս ամս Բ.... Սա որդի է քեռ Մեծին Կոստանդիանոսի. թողեալ զքրիստոնէութիւնն եւ եղեւ կռապաշտ։ Ի նոյն աւուրս երանելին Աթանաս հալածեցաւ յԱրիանոսացն, զոր Սոկրատն պատմէ. ի սուրբն Կոստանդիանոսէ սկսանի եւ մինչ ի Փոքր Թէոդոսն զանարրոց եւ դպրոց գործքն եւ զհայրապետացն զուղղափառութիւնս։ Յուլիանոս եւ Գաղիանոս, որդիք Դաղմատիոսի ումեմն, մնացին որբ՝ ի մէկ հօրէ եւ ոչ ի մօրէ. զոր սնոյց Կոստանդ բարեպաշտն. յետոյ եղեն կռապաշտ։ Կոստի, քոյր Թագաւորին Կոստանդէ, կին Լիկինէ թագաւորին, որ ի բռնազբօսելն մեռաւ»։ Բնաքաղուած է Փ. Սոկրատէն, որ այսպէս

[55] Սեբէոս, Պատմութիւն, Պետերբ. 1879, էջ 16։

ունի · «Մեծն Կոստանդիանոս, որ զԲիւզանդիոնն շինեալ յիւր անունն կոչեաց Կոստանդնուպոլիս. երկուք էին եղբարք միահարք, այլ ոչ ի մօրէ խւրմէ · որում անուն էր միոյն Դաղմատիոս · որ յետ շինելոյն զԿոստանդնուպոլիս՝ ի զօրականացն ի պատճառէ խմեքէ մեռանի եւ միայ նորա երկու որդիս, Գաղոս եւ Յուլիանոս որբք · զոր առեալ Թագաւորն սնուցանէր զմանկունսն» (էջ 218) : «Կոստի քոյր Կոստանդիանոսի, կին Լիկիանեայ (այլ ՉՉ · Լիկիանէ) Թագաւորին, որ բանադրոսեալ մեռաւ» (էջ 80—81) : Երկրորդ պարբերութիւնն «ի նոյն աւուրս երանելին Աթանաս հալածեցաւ յԱրիանոսացն», կ՚ակնարկէ հաւանօրէն Փ · Սոկրատի էջ 101—102, յետ ժողովոյն Տիւրոսի զահընկեցութիւնն Աթանասի եւ աքսորն ի Գաղղիա, եւ կամ էջ 129—130 Գրիգոր եպիսկոպոսի զահակալութենէն ետքը Աթանասի փախուստն Աղեքսանդրիայէն եւ մեկնումն Հռոմ [56] : Իսկ յաջորդ տողերը կ՚ենթադրեն այժմեան Փոքր Սոկրատը՝ ուր նախ Սեղբեստրոսի վարքը զետեղուած է եւ ապա Սոկրատի Պատմութիւնը : Ձի՞ յիշեցներ այս տեղիքը Կիրակոս Գանձակեցւոյ «սկսեալ · · · ի Կոստանդիանոսէ եւ ածէ մինչեւ յաւուրս Թէոդոսու փոքու զարարս եւ զգործս խւրաքանչիւր Թագաւորաց եւ զժողովոց բազմաց եղելոց՝ պիտանեաց եւ զխոտանի[ե]լաց» · ուր «սրբոց եւ անսրբոց» ճշդիւ

[56] Հանդ · Ամս · 1893, էջ 276 :

համանիչ են «պխտանեաց եւ խոտանաց»։ Եւ առ հասարակ ի՞նչ պատշաճութեամբ մուծուած են տողերս այս Արքայացանկին մէջ։

Սեբէոսի Պատմութեան մէջ զետեղուած այս փոխառութեան առաջին անգամ ուշադիր եղաւ Նորայր Բիւզանդացի, որ նկատելով թէ Սեբէոսի Պատմութիւնն գրուած ըլլալու է 671էն յառաջ, կը հետեւցնէր թէ Փ. Սոկրատի «Թարգմանութիւնն» «ոչ է յետնագոյն քան յԱստղկայ յաման 671—676, զոր բաղումք յարդեաց համարին յաման 688—691 կամ 690—693, առ կխրապարդատութեամբ իշխանին Հայոց Ներսեհի Կամսարականի[57]»։ Մ. Վ. Տէր–Մովսէսեան նկատի չէ առած Սեբէոսի այս տեղիքը իր Յառաջաբանին մէջ։ Որչափ ծանօթ է ինձ, նաեւ յետագային խօսք չէ եղած այս մասին։ Ստ. Մալխասեան, որ Սեբէոսի ռուսերէն թարգմանութեան մէջ, տեղւոյս ծանօթագրութիւն մը նուիրած է[58], որ եւ է կասկած չէ յայտնած հատուածիս հարազատութեան մասին։ Այնու որ Փ. Սոկրատ իբր 700ին հրապարակ եկած է եւ Սեբէոսի գործը 661ին գրուած, պէտք է որ եկամուտ տարր ըլլար տեղիքս։ Ինձ կը թուի թէ այս ներմուծումը տեղի ունեցած է 1672ին, թերեւս լուսանցագրութենէ մը բնագրի մէջ առնուած, երբ օրինակուած է Էջմ. Թ. 2639։

[57] Անդ, էջ 276։

[58] История епископа Себеоса, Ереван 1939, էջ 147, ծան 34։

*Փ. Սոկրատէն ընդարձակ հատուածներ ներս առնուած են ճառընտիրներու մէջ: Կը յիշեմ:*

ա. *«Ի Սոկրատայ Պատմութենէն վասն Թագաւորութեան Թէոդոսի Մեծի: — Իսկ Թագաւորն Գրատիանոս տեսեալ տկարացեալ զՀռոմայեցւոց պետութիւնն...»: Ձեռ. Էջմ.* 940 (*յամէ* 1456)· 945 (*յամէ* 1442) *եւայլն: Քաղուածաբար հանուած Փ. Սոկրատէն, էջ* 402—416:

բ. *Յիշատակ է Թէոդոսի Թագաւորի Փոքու: — Այս երանելի եւ հեզ Թագաւորս որդի էր Արկադէոս Թագաւորի...: Կ'աւարտի. «ուսուցանէն կատարելապէս յոլով պատմիչք եւ մանաւանդ Սոկրատէս»: Ձեռ. Փարիզի* Bibl. nat. 117, 188*ա*—190*բ* (1307*էն*): *Հմմտ. Փոքր Սոկրատ, էջ* 616—627:

գ. *Վարք եւ քաղաքավարութիւն մեծին Աթանասի Աղեքսանդրու հայրապետին: — Ի ժամանակս բարեպաշտ Թագաւորին Մեծին Կոստանդիանոսի էր սուրբն Աթանասիոս սնեալ եւ ուսեալ յԱղեքսանդրացւոց քաղաքին...»: Ձեռագիրք Պարիս,* Bibl. nat. 116, 16*ա*—21*բ* (1307)· 178, 11*ա* (*ԺԱ. դարէ*): 120, 160*բ* (*ԺԳ. դարէ*): *Վենետիկ, Մխիթ. Թ.* 206, 51*ա* (1224): 232, 36*բ* (1857, *Ցուց. Բ.* 501): *Հրտ. Ճառք Աթանասի, Վենետիկ,* 1899, *էջ* 1—23:

դ. *Վասն վարուց եր. Յովհաննու Ոսկեբերանի ի Սոկրատայ Պատմութենէ: — Յետ ոչ սակաւ ինչ աւուրց եւ Նեքտարիոս Կ. Պոլ-*

սի եպիսկոպոսն վախճանի...: Ձեռագիր՝ Վենետիկ, Մխիթ. Թ. 202, 611բ—617բ (1637. Ցուց. Բ. 111): Հրտ. Փ. Սոկրատ, էջ 490—557:

Համառօտ Սեղբեստրոսի Վարքէն հանուած է հատուածս. «Սեղբեստրոս ասէ. Ցիրաւի պարտիս հաւանիլ զի զխոստացեալ ի սոցունց երկուց բնութեանց միացելոց...։ Կ՚աւարտի. «Արդ զայս ասացից ի սակաւ գոյցս, բայց անճառ է ամենայնի»: Ձեռագիր՝ Հռոմ, Վատիկանեան Մատ. Cod. Borg. arm. 31, 111ա—բ (1631). առնուած Փ. Սոկրատէ, էջ 780—782:

Հայոց Կանոնագրքի մէջ ունինք երկու կանոն. «Կանոնք Սոկրատայ. Բան Բ: — Հանդէս ՅԺԸ.իցն յաւուրս Մեծին Կոստանդիանոսի ժողովին հաստատեցին մի սահմանս հաւատոյ...: Նորին նմանն. Եւ որ առաքելական սահման քայքայեն, որպէս պատուիրեցին...»: Կ՚աւարտի. «Ի մէնջ եւ յեկեղեցւոյ նզովեալ եղիցի»: Ձեռ. Վիեննա, Մխիթ. Թ. 810, Թղ. 186բ$^{2}$—187բ$^{1}$: Կը չօշափեն կանոնները Զատկական տօնն եւ Քառասնորդաց պահքը: Սոկրատի Պատմութեան մէջ այս մասին խօսք եղած է Ե. 22 գլխին մէջ. բայց չկան հոն այսպիսի կանոնական վճիռներ:

*Ներսէս Կամսարականի փափագած Համառօտութիւնը լոյս տեսած էր պարզ եւ ամէնուն դիւրամատոյց ոճով: Երբ ապա համարակաց ստացուածք դարձաւ այն, ենթարկուեցաւ այնուհետեւ զանազան փոփոխութիւններու եւ կրեց յաւելուածներ: Ո՞վ էր այս յաւելուածները ներմուծողն եւ ե՞րբ. այս մասին աւանդութիւնը յիշատակութիւն չէ բրած: Մեր ջանքն պիտի ըլլայ հոս վեր հանել նախ ընդարձակ յաւելուածներն, մանաւորապէս ցոյց տալ անոնց աղբիւրները: Այս մասին, արդէն 1893ին* [59], *մատնանշումներ բրած էր Նորայր Բիւզանդացի: Մեզի կը մնայ վերաքննել զանոնք եւ պակասներն լրացնել:*

ա. Պատմութիւն Գիւտի Ս. Խաչին ի ձեռն Ս. Հեղինէի: *Սոկրատ Ա. 17 համառօտիւ կը պատմէ Հեղինէ թագուհւոյն երթն Երուսաղէմ, Ս. Գերեզմանի վերայայտնութիւնն եւ Ս. Խաչի գիւտը: Այս մասը Համառօտողը տուած էր պատշաճ ամփոփումով: Խմբագիրը, որ ունեցած է իր ձեռքի տակ «Պատմութիւնն Գիւտի Ս. Խաչին եւ Բեւեռացն», թէպէտ «աւելորդ համարեցայ, կ՚ըսէ, գրել» (47), վասն զի ծանօթ է արդէն «որ յաղագս նորա է պատմութիւն, որք կամիցին ուսանել», բայց եւ այնպէս կարեւոր տե–*

---

[59] *Հանդ. Ամս.*, 1893, էջ 274:

*ուած է «սուղ ինչ ճառել զնորայսն»* (45)։ *Այս անվաւերական Պատմութիւնն Գիւտի Խաչին ծանօթ եղած է նաեւ Ղ. Փարպեցւոյ Ա. գրուագի խմբագրին (Ը. դարու սկիզբը), որ կը գրէ թէ Կոստանդիանոս Ս. Խաչի տեսիլքէն ետքը «ճեպով զիւր մայրն, զերանելին Հեղինէ յԵրուսաղէմ առաքէր։ Եւ թէ որպէս անդ ի ձեռն ջերմ խնդրոյ սրբոյ մարդոյն (Յուդա–Կիւրակոսի)*[60] *յայտնեցաւ կենաց Փայտն՝ զիտէ ամենայն անձն ի նորին Գրոց տեղեկացեալ զԳիւտ փրկութեան մերոյ*[61]»։

բ. Վկայաբանութիւն Թէոդորիտոսի քահանայի Անտիոքացւոյ։ *Սոկրատ*, Գ. 19 *կը յիշէ Թէոդորոս մանկան խոստովանութիւնը Յուլիանոսի հրամանաւ ի ձեռն Սաղուստիոս եպարքոսի, զոր Համառօտողն կարճ ի կարճոյ յիշատակած էր* (264)։ *Բայց Սոկրատ անյիշատակ թողուցած էր ուրիշ վկայի մը, Թէոդորետոս քահանայի նահատակութիւնը, տեղի ունեցած նոյն Յուլիանոս կայսեր ժամանակ։ Այս վկայաբանութիւնը ծանօթ էր խմբագրին ընտիր հայերէն թարգմանութեամբ մը, զոր չէր կարող անտեսել. «Իսկ վասն Թէոդոր(իտ)ոսի քահանայի Անտիոքայ, որ վկայեաց առաջի բազում վկայից ի քեռւոյն Յուլիանոսի ընդ բազում չարչարանօք արկեալ, բարի խոստովանութեամբ կա–*

---

[60] *Հմմտ. Ող. ԲՁ Ս. Խաչի. «Այսօր ընծայէ Գողգոթա զծածկեալն ի յերկրի վերաբերեալ անուշահոտ խնկովք ի ձեռն երանելւոյն Յուդայի»* (*Տարեւոր ժամակարգութիւն*, Գ, *Վիեննա* 1879, *էջ* 910)։

[61] *Ղ. Փարպեցի*, *Տփղիս* 1904, *էջ* 4։

*տարեալ․ Թողում ասել խրում Պատմութեան․ նա եւս բազումս եցոյց չարչարանս սրբոցն որ ոչ էր գրեալ»* (էջ 265)։ *Այս ակնարկուած «Պատմութիւնն»* է Վկայաբանութիւնն Ս․ Թէոդորեանց քահանային Անտիոքացւոյ *պահուած ղատական ընտիր թարգմանութեամբ եւ հրատարակուած Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Վենետիկ* 1874, *էջ* 532—544։

գ․ Վկայաբանութիւն Կիւրղի եւ մօր նորա Աննայի։ *Սոկրատ Գ․* 20 *կը պատմէ Կիւրեղ Երուսաղեմացւոյ օրով Երուսաղէմի տաճարին վերաշինութեան առթիւ Ս․ Խաչի երեւումը, զոր նաեւ Համառօտողն ունի* (267—268)։ *Այս հատուածին կը կցէ խմբագիրը ընդարձակ յաւելուած մը այսպէս․*

*«Բայց նոցա (Հրէից) ոչինչ օգուտ գործեաց որ երեւեցան ի նոսա սքանչելիքն»։ Կը սկսի յաւելուածը․* Որպէս եւ ոչ մարգարէիցն եւ Քրիստոսի առաւելագոյն սքանչելեացն (!) որ երեւեցան․ զի «կուրացան միտք իւրեանց[62]» յիմանալոյ․ եւ ասեն առնել զօրէնս, եւ ոչ առնեն[63]․ «զի ոչ այսպէս արար ամենայն ազգաց Տէր եւ զդատաստանս իւր յայտնեաց [որպէս եւ] նոցայն[64]»։ Եւ եկեալ Յուլիանոս յԵրուսաղէմ, որ վասն տաճարին շինութիւն էր կամք նորա։ Պատմեցաւ նմա որ ինչ անցք անցին։ Եւ մտախորհ եղեալ լռէր․ բայց զքրիստոնեայսն խոշտանգէր․ եւ

---

[62] *Բ․ Կոր․ Գ․* 14․ *«Կուրացան միտք նոցա»*։
[63] *Մատթ․ ԻԳ․* 4․ *«Զի ասեն եւ ոչ առնեն»*։
[64] *Սաղմ․ ՃԽԷ․* 20։

ըմբռնեալ զեպիսկոպոսն, ընդ որոյ ձեռն եղեւ Գիւտ խաչին, սպան զնա դառն տանջանօք եւ զմայր նորա. որ վկայեցին քաջի դաւանութեամբ ի փառս Աստուծոյ. որպէս եւ նոցին իսկ ասի Վ կ ա յ ա ք ա ն ո ւ թ ի ւ ն, որ աւելորդ է ասել : Բայց ասի երկուս ոմանս կիւրեղս ասել. մի[ւս]ոյն վկայեալ ի Յուլիանոսէ, որով Գիւտ խաչին եղեւ, նախկին Յուդա եւ մկրտեալ Կիւրեղ, որ եւ զկարգս եկեղեցւոյ ասեն ունել յեկեղեցիս ուղղափառաց. (որ) եւ զմարտիրոսականն առ զպսակն. եւ յետ սորա ասի միւս Կիւրեղ, որ զԱրիոսի կարծիսն ասէին ունել : Եւ այս Կիւրեղ եհաս մինչեւ ի ժողովն սուրբ, որ յաղագս Հոգեմարտին, որպէս նոցին ցուցանին երկոքին» (էջ 269) :

*Ամբողջը խմբագրի գրչին է, անոճ եւ անկապ: Վկայաբանութիւնը հասած է մեզի բազմաթիւ ձեռագիրներու մէջ* * :

Դ. Վկայաբանութիւն Ս. Մարկոսի Արեթուսայ եպիսկոպոսին եւ Կիւրղի սարկաւագին եւ որք ընդ նոսա վկայեցին : — *Վկայաբանութիւնս պահուած է միայն հայ Մենոլոգիոնի մէջ եւ այն՝ Վենետիկի Թ.* 200, 346*բ*—348*ա* (1224, *Ցուց.*, *Բ*, 22). *Երուսաղէմի Թ.* 1. *Գ.* 71*ա եւ Նիկոսիայի Թ.* 4, 479*ա*—480*բ Ձեռագիրներու եւ համառօտուած՝ Վիեննայի Թ.* 224, 208*բ*—209*բ* (*Ցուց.* 477) *ձեռագրին մէջ: Հրտ. Վարք եւ Վկայա-*

---

* [*Այժմ հրատարակուած Հանդ. Ամս.* 1948, *էջ* 129—155:]

բանութիւնք Սրբոց, Վենետիկ 1874, Բ, էջ 9—16. Հմմտ. Աւգերեան, Լիակատար Վարք եւ Վկայաբանութիւնք տօնելի Սրբոց, Բ, էջ 189—210:

Վկայաբանութեանս գլխաւոր աղբիւրն է Գրիգոր Նազիանզացւոյ Ընդդէմ Յուլիանոսի Ա. արձանականը[65]: Խօսած են այս մասին նաեւ Թէոդորետոս, Պատմ. Եկեղ., Գ, 6—7. Սոզոմենոս, Ե, 10. Սոկրատ, Գ, 19[66]:

Վկայաբանութիւնս հայերէն թարգմանութեան մէջ կրած է յաւելուածներ, հայ խմբագրողէն. ձեռքի տակ ունեցած է Յուլիանոսի օրով նահատակուած Թէոդորետոս քահանայի վկայութիւնը. անկէ քաղած է տողերս.

| Վկայաբանութիւն Ս. Թէոդորետոսի. 534—535. | Վկայաբանութիւն Ս. Մարկոսի, էջ 11: |
|---|---|
| Ասէ *անօրէն* դատաւորն. Դո՞ւ ես Թէոդորիտոսն, որ *երբեմն* առ Կոստանդիանոսիւ կայսերբ կործանէիր զպատկերս աստուածոցն *եւ զմեհեանս* | Ասէ *ցնա* դատաւորն. Դո՞ւ էիր որ առ Կոստանդնիւ կայսերբ կործանէիր զպատկերս աստուածոցն *եւ քակէիր զբագինս նոցա եւ այրէիր*, |

---

[65] Հին թարգմանութիւնը՝ Վիեննա, Մխիթ. Մատ. Թ. 217: Հատուածիս նոր թարգմանութիւնը Աւգերեանէ Լիակատար Վարք..., Բ, էջ 204—208:

[66] Յատկապէս Թէոդորոս խոստովանողի պատմութիւնը, որուն հետեւողութեամբ նոյնը առնուած է Ս. Մարկոսի վկայաբանութեան մէջ Թէոդոտոս անունով (էջ 15—16): Փ. Սոկրատ շատ կարճառօտ տուած է, էջ 264:

| | |
|---|---|
| *դիցն աւերէիր* եւ շինէիր եկեղեցիս *եւ զգերեզմանս մեռելոց*, *զորս* եւ մատ- րանցս *իմն անուանէիր*..: | եւ եկեղեցիս եւ մատրա- նցս շինէիր...: |
| *Բայց* ընդ *քո* զարմա- ցեալ եմ՝ զի՞*արդ այժմ* կռոց վրէժխնդիր ամբար- ձար: | *Եւ արդ* ընդ *ձեր ան- միաբանութիւնդ յոյժ* զարմա- ցեալ եմ. զի կռոց վրէժ- խնդիր ամբարձայք: |

*Յաջորդ հատուածն «Յայնժամ թագաւորն Յուլիանոս ժողովէր զամենայն զօրս (Փ. Ս. զարս) իւր» — մինչեւ «մեռաւ ԼԱ. ամաց (Փ. Ս. երեսնամեայ), է (այլ. հինգ) ամ կայսր լեալ երկու ամ թագաւորեալ» (Փ. Ս. եւ մի ամ թագաւորեալ մեռաւ) փոխ առնուած է Մարկոս Արեթուսացւոյ վկայաբանութենէն բառ առ բառ (էջ* 16 = *Փ. Ս.* 272), *ընդ ամէնը* 20 = 17 *տող*:

ե. Պատմութիւն Եւթն Մանկանցն Եփեսոսի (*էջ* 476—478): *Աղբիւրն ցոյց կու տայ խմբագիրը. «որպէս եւ ամենեցուն է քաջայայտնի ի նոցին Պատմութեանց»* (477). *որ հրատարակուած է Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Ա, էջ* 491—502:

զ. *Խմբագիրը կարդացած է* Եւագրի *գրութիւնները: Օրինակելով Համառօտն «Դիդիմոս անուն» կը կցէ անմիջապէս անոր* «որ եւ յԵւագրէ յիշատակի» (*էջ* 354). *Կ'ակնարկէ Եւագրի «Գիտնաւոր եւ արդիւնաւոր» ճառն, ուր կոչում մը յառաջ կը բերուի «... աւէ մեծ եւ գիտնական վարդապետն*

*Դիդիմոս*[67]»: *Ծարունակութեան մէջ կ'ա-ւելցնէ խմբագիրը տողերս.* «Հաւատարմագոյն եղոյց Աստուած ի ձեռն նորա վարդապետութեան զուղղափառ հաւատս եկեղեցւոյ, որ ամենեցուն քարոզէր՝ հեռաւորաց եւ մերձաւորաց, գրով եւ անգիր, եւ զամենեսեան վայելչացուցանէր ի լուսաւոր վարդապետութիւն, որ ի շնորհաց Աստուծոյ ունէր այրն Աստուծոյ. Դիդիմոս *մանուկ գոլով...*» (355): *Եւ դարձեալ.* «Իսկ նա ընդդիմամարտեալ ընդ նոսա շնորհալից բանիւ՝ հաստատէր զուղիղ հաւատս. եւ ոչ կարէին զդէմ ունել իմաստուն շնորհալից բանիցն: Այսպէս յամենայնի յաղթող երեւեալ՝ փառաւորեալ լինէր տուողն շնորհաց ի հաւատացելոց ուղղափառաց» (էջ 358): *Ինձ կը թուի թէ խմբագիրը հոս զԵւագրը աչքի առաջ ունեցած է. վասն զի Եւագրի Վարքէն բանաքաղուած կ'երեւան ինչ ինչ բառեր. հոն կ'ըսուի Եւագրի համար. «Եւ մինչդեռ յաստիս երկրպագութեանն՝ հանդիմանէր ընդդէմ ամենայն աղանդոցն Արիանոսացն. աստուածազգեստ զուարճացեալ պտղաւորէր ի մեծի քաղաքի պալատանն, բանիւք յաղթահարեալ զհերձուածողսն.* եւ ոչ կարէին զդէմ անել իմաստութեանն *եւ հոգւոյն՝ որով խօսէր. եւ մեծապայծառ պատուեալ ի քաղաքացեացն*» (էջ 2):

---

[67] *Մատենագրութիւնք Եւագրի, Վենետիկ* 1907, էջ 21:

Է. Ս. Բարսեղի եւ Ս. Գրիգոր Աստուածաբանի *մասին խօսած է Սոկրատ Դ.* 26 *գլխի մէջ. խմբագիրը վերածած է զայն երկու գլխի (ԶԴ եւ ԶԵ) ընդարձակ յաւելուածներով: Յառաջ կը բերեմ ԶԴ. գլխէն հետեւեալ տեղիքները: Սոկրատ կը գրէր. «Այլ զԴիդիմոս որոց յԱղեքսանդրիա Արիանոսացն Աստուծոյն ի ճակատ եցոյց նախախնամութիւն: Իսկ յայլ քաղաքսն զԲասիլ Կեսարացի եւ զԳրիգորն Անձիանձւոյ. յաղագս որոց սուղ ինչ ասել ի դէպ համարիմ: Քանզի բաւական է որ յամենեցունցն կրել արանցն յիշատակ եւ որ ի գրեցելոց նոցա որ առ Աստուած զրոց ուսումն արընթեր դնել զերկաքանչիւր ուրուք բարէփառութիւն: Վասն զի ըստ այնմ ժամանակի բազումք յեկեղեցիսն նոցա ըմբռնեցան, եւ որպէս զկայծակն հաւատոյ պահեցան. պահանջէն կամքս յաւէտ նոցա առնել յիշատակ»: Համառօտութիւնն է հետեւեալն, ուր խմբագրին յաւելուածները կ'ընդգծեմ. «Իսկ յայլ քաղաքս* եւ ի գաւառս գրեթէ եւ յամենայն տիեզերս *Բարսեղ Կեսարացի եւ Գրիգորն Անձիանձու*, որ եւ Աստուածաբան կոչեցաւ յաղագս առաւելութեան շնորհին աստուածաբանութեան[68].

---

[68] *Նորայր Բիւզանդացի, Հանդէս Ամսօրեայ*, 1893, *էջ* 294, *կը համարի թէ խմբագիրը աղերս բանաքաղած է Ղ. Փարպեցւոյ Թղթէն* (*էջ* 192), *ուր կ'րսուի. «եւ զԳրիգորէ Նազազացւոյ*, որ եւ յաղագս առաւելեալ *ի նմա* շնորհի *ուղղափառ գիտութեան* Աստուածաբան յորջորջեցաւ»: *Բայց հմմտ.* «*Ոսկեբերան* կոչէին *զերանելին Յոհան* յաղագս առա-

որք են սոքա միաշունչք եւ միախորհուրդք[69] յաղագս հաւատոց եւ վարուց եւ կարգաց եւ կրօնից· *յաղագս որոց սուղ ինչ ասել ի դէպ համարիմ*, վասն մեծանուն եւ երեւելի սրանցն սրբոց եւ հոգիացելոց· *եւ մի ոք լիցի ինձ մեղադիր վասն զուղնաքեայ յիշատակաց սոցա· զի բազմաց գովութեամբք ի գովութիւն վերաբերին երանելիքս· եւ ի նոցունց իսկ ի գրոց երկաքանչիւրոցն բացայայտի* հանճար եւ *բարեփառութիւն* ի փառս Աստուծոյ: Զի էին բանիւք եւ իմաստութեամբ կատարեալք եւ հոգւով լցեալք, ըստ հաւատոյն քաջապէս արիացեալք եւ վարուքն եւս առաւել գովելի: *Եւ ըստ այնմ ժամանակի բազումք յեկեղեցիս նոցա* որպէս յամբոցի *ի կայծականց* հրոյ ի հալածչացն ուղղափառ *հաւատոյն ապրեցան: Պահանջէն կամքս յաւէտ զնոցա առնել զյիշատակս, զՐաբուլ* ասեմ եւ *զԳրիգորի*, թէպէտ եւ անզօր է բանս ըստ *համեմատութեան զերկաքանչիւրոցն զմարս* դուզնաքեայ *յուշ առնելով զօրինակս առաքինութեանցն*: Երկոքին բացափայլեալք որպէս զարեգակունս՝ լուսաւորելով զեկեղե–

---

ւելութեան չնորհացն... *եւ ո՞վ ոք կարասցէ զատուելութիւն չնորհացն...* եւ յաղագս առաւելութեան չնորհաց նորա... կոչեն *զնա յեպիսկոպոսութեան պատիւ»* (*Վարք Յովհ. Ոսկեբերանի, Վ. Վ. Սրբոց, Բ.*, 133): *Ասկէ բանաքաղուած կ'երեւան նաեւ «կարգաց եւ կրօնից»* (132)· *«պահօք, աղօթիւք, արթութեամբ եւ արտասուօք»* (133), *որոնք երեւան կու գան այս հատուածին մէջ:*

[69] *Փիլիպ., Բ., 2· «Զնոյն սէր յանձին ունիջիք համաշունչք, միախորհուրդք»:*

ցիս ուղղափառաց ի փառս Աստուծոյ· *Երկոքին համանմանք* բարեգործեալք *ըստ ճշմարիտ քաղաքավարութեանց*, որք եւ *զաստուածային գրոց* զմիտս առացեալ ունէին լիով յանձինս. *Եւ ոչ զարտաքին զիմաստից զանց զօգտակարացն արարին*, որովք զընդդիմամարտսն գիտութեամբ յետս հարին, որպէս քաջ զինուորք ի մարտի: *Քանզի մանկունք գոլով հասեալք յԱթէնս՝ ուսանէին զարուեստս իմաստասիրացն, որ անդանօր էր· յետ այսորիկ յԱնտիոք Ասորեաց եւ անդ զճարտասանականացն յինքեանս ամբարէին զգիտութիւնս. Եւ ընդ ամենայն անցեալք ընդ իմաստս որ նոցա էին պանծալիք իրաւացեալք* եւ զաւելորդսն կղկղանս համարելով[70] արհամարհանօք ի բաց թողին եւ յամենայնի հռչակաւոր երեւելի ցուցեալք, *աղաչեալք ի բազմաց վարդապետութիւն* ձեռնամուխ լինել, ըստ ամենայն գիտութեան որ նոցա աւանդեցաւ: *Իսկ նոցա արհամարհեալ զաշխարհիս զբազմութիւնս, զմիանձնականացն ընտրեցին զվարս*, յանապատս եւ ի լերինս խարազանզգեստ՝ աղօթիւք եւ պահօք տքնութեամբ եւ արտասուօք ճգնաւորեալք ի բարեպաշտութեան ջանս. եւ ոչ մի ինչ ի հակառակաց ախտիցն քարշեալք եւ խոտորեալք, այլ յամենայնի գեր ի վերոյ լեալ հակառակացն եւ զյաղթութեան շնորհս ընկալեալ ի

---

[70] *Փիլիպ.*, Գ., 8. *Ցամենայնէ զրկեցայ եւ համարիմ կղկղանս:*

Տեառն՝ ամենեցուն աւանդեցին խրատս անապատականաց եւ քաղաքականաց: *Եւ հայեալք այնուհետեւ* եւ ի հոգեւոր շնորհս ըստ խորին *իմաստիցն* յետ բազմազան առաքինութեանցն որ ի Քրիստոս Յիսուս: *Եւ զՈրոգինի գրեանն ժողովեցին*...: (*Արիանոսաց եւ Եւնոմեանց* քանաստեղծք *եւ բանաւորք*) յամենայնի նկուն եղեալ յերանելեացն ի *Բարսղէ եւ ի Գրիգորէ*՝ ոչ կարէին ընդ նոսա յայտնապէս ի մարտ մտանել· վասն որոյ եւ Վաղէս ակնածէր ի նոցա վարուցն եւ յիմաստիցն: Իսկ *ապա* այնուհետեւ *Բասիլիոս ի կարգ սարկաւագութեան* ընտրատեալ եղեւ *ի Մելիտոսէ Անտիոքայ Հայրապետէն*· եւ ապա ի կարգ քահանայութեան նախաձեռնեալ եւ յերեցունց հաւաստութենէ աստիճանացն կատարեալ քան զկատարեալսն երեւեցան ի սարկաւագութեանն եւ ի կրօնաւորութեանն եւ ի քահանայութեանն յետ բազում իրաց: *Ապա յետ այսորիկ կոչեն զնա յեպիսկոպոսութիւն իւրոյ աշխարհին Կապադովկիոյ Կեսարիոյ*, բազում աղաչանօք եւ հարկաւորութեամբ· եւ նա ըստ ազդեցութեան Հոգւոյն ընդունէր· ոչ որպէս ի պատիւ այլ որպէս ի մահ հրաւիրեալ· իմանալեօքն զբարձրագոյնսն իմացեալ· այլ աստուածային Նախախնամութիւնն կոչեաց զնա եւ փառաւոր արար: Որ եւս առաւելայր ի գործ Տեառն ի հաւատոյն բան ընդդէմ հերետիկոսացն եւ ի լուսաւորութիւն եկեղեցւոյ զվարդապետութիւնն յարդարէր ըստ աշ-

խարիխի եւ որ ըստ անապատի վարք. *եւ չինեալ* կրօնաւորանոցս (*Մ. ճգնարանս*) *յիւր վիճակին* (*Մ. անդ*) եւ զմնացեալսն ժողովէր ընդ միով վերակացութեամբ ի միաբանական կեանս՝ ի մի բերան փառաւոր առնել զամենասուրբ զԵրրորդութիւնն:

Սահմանեաց նոցա կարգս եւ կանոնս զգուշանալ արժանի ըստ երկնային կոչմանն, կրօնաւորիլ արժանապէս ըստ աւետարանին Քրիստոսի, տարրանալ ի հանդէս բարեպաշտութեանն եւ ըստ առաքելոցն քարոզութեան: Եւ այսոքիկ վկայութեամբ ի Հարցողսն զՊատասխանիսն ունին. զմի մի զվնասակարացն զդեղս, որպէս նոյն ինքն ցուցանեն շարագրեալքն ի նմանէ որ եւ ընդ ամենայն տիեզերս նախանձեռնեալ եղեւ, որ զնոյն վարս ստացեալ ունին: Նաեւ այլ եւս գիրս շարագրեաց վարդապետականս եւ մեկնութիւնս Սրբազրաց եւ Սաղմոսաց. որ բազում շահս եւ հզօրագոյն միտս բացափայլեն զհաւատոյ եւ զողջախոհ վարուց» (*Փ. Սոկրատ*, *էջ* 358—364):

*Այս ընդարձակ հատուածը ունի իր մէջ տարրներ, որոնք ուղղակի Մ. Սոկրատէն հանուած են եւ են Համառօտողին գրչէն. կան հոն նաեւ կարկատանքներ, աւելաբանութիւններ, որոնք մուծուած են խմբագրէն: Այս յաւելուածները ընդգծուած են: Խմբագիրը կը սիրէ փետրազարդել այլուստ, Ս. Գիրքէ, Ս. Հայրերէ եւ Վկայաբանութիւններէ ծայրաքաղ հանուած բառերով եւ ասութիւն-*

ներով. ան ունի նաեւ իր նախասիրած բառերը. զ. օ. բացափայլիմ (երկիցս), նախաձեռնեմ (երիցս): Ձեռքի տակ ունեցած է Ս. Փոկասի Պատմութիւնը (Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Բ., էջ 484—490). ասկէ հանուած են «տարրանալ ի հանգէս բարեպաշտութեանն = Եւ յամենայն վարս բարեգործութեան տարրանայր (Բ. 485). «ճգնեալք ի բարեպաշտութեան ջանս = Անվեհեր ի բարեպաշտութեան ջանս» (489, երկիցս): «Ի կարգ Սարկաւագութեան բռնադատեալ եղեւ = Ի սրբոցն բռնադատեալ եղեւ ի կոչումն Սարկաւագութեան» (490): Զաստուածոյին գրոց զմիտս ստացեալ ունէին = Որպէս զանմարմին ի մարմնի վարս ստացեալ ունէր» (488): Եւ ոչ մի ինչ ի հակառակաց ախտիցն քարշեալք, այլ յամենայնի զեր ի վերոյ լեալ հակառակացն = Ոչ յումեքէ ի հակառակացն զրդուեալ, այլ... (490): Կարդացած է Բարսղի Հարցողաց Գիրքը եւ ծանօթ է ճառերուն եւ Վեցօրէից Մեկնութեան:

Բ. Յաջորդ գլուխն «Յաղագս Գրիգորի Անձիանձու Աստուածաբան կոչեցելոյ վարք» (էջ 367—370) ամբողջապէս խմբագրին է, գրած է զայն յեցած Աստուածաբանի գրուածքներու վրայ, որոնց լաւ ծանօթ եղած է հայերէն թարգմանութիւններէ. այս գրուածքները կ'ակնարկէ, երբ կը գրէ. «որպէս ամենեցուն է քաջայայտ որ ի նմանէ շարադրեցան» (էջ 370): Գերեզմանական ճառն ի Մելիտոս, զոր խօսած էր Գրիգոր Նիւ-

ացի, նաեւ հոս Գրիգոր Աստուածաբանի կ՚ընծայուի: Իրեն ծանօթ է եղած Գրիգորի Վարքը: Կ՚աւարտի «Այսուքիկ դուղնաքեայք յաղագս սրբոցն աստացան՝ Բարսղի եւ Գրիգորի Աստուածաբանի»: Գրիգոր Աստուածաբանի դրուագներէն փոխառութիւններ են հետեւեալները. «Մխաք ազգացն որ առ ի ցենումն ժողովեցան՝ մայրենի գրով աղէխարշեալք լան եւ սգան գծնունդս որովայնից իւրեանց» (էջ 724): Գր. Նազ. ի Մակար. «Մայր... առաքինի, մանկասէր... եւ մայրենի գրովն աղէխարշեալ» (Վիեննա, թ. 217, թղ. 270ա): Գրիգոր Աստուածաբանէն են նաեւ «Պատուասիրաբար ընդունէր» (էջ 694) եւ «Բայց ես զթագաւորին ստեղծական պանծութեալ բանին զգովութիւն...» (618): «Առ որս բանին են պանծութեալք բանս» (Վիեննա, թ. 320, թղ. 4ա):

Ժ. Վարք Գրիգոր Նիւսացւոյ (էջ 370—372). նաեւ հոս աղբիւր ունեցած է խմբագիրը բացի Փ. Սոկրատէ՝ Գրիգոր Նիւսացւոյ հեղինակութիւնները հայերէն թարգմանութեամբ, որոնք կը յիշէ. 1. Ինն Երանութիւնք, 2. Մեկնութիւնն Հայր մերի, 3. Մեկնութիւնն Ժողովողին, 4. Մեկնութիւնն Երգոց Երգոյն, 5. Պատմութիւնն Գրիգոր Սքանչելագործի, 6. Վասն կազմութեան մարդոյ, 7. Ճառք:

ԺԱ. Վարք Գրիգոր Սքանչելագործի (էջ 372—374): Խմբագիրը բացի Փ. Սոկրատէն օգտուած է նաեւ Սքանչելագործի

Վարքէն, որուն կ'ուղարկէ անդրադոյն տեղեկութեանց համար իր ընթերցողները. «Եւ բազում զօրութիւնս եւ սքանչելիս եցոյց Տէր ի ձեռն Գրիգորի, որպէս ի Պատմութիւնն է ուսանել որք կամիցին» (էջ 374) : Իսկ այդ «Պատմութիւնն» հրատարակուած է Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Ա., էջ 317—331 :

ժբ. Վարք Յովհ. Ոսկեբերանի, էջ 490—557 : Յովհ. Ոսկեբերանի վարքը ունինք Վ. Վ. Ս., Բ, 131—136 : Թէ Փ. Սոկրատ ծանօթ է Վարքին՝ բաւական ըլլայ յիշել տեղիքս. Փ. Ս. 548. «Եղեւ արհաւիրք ի քաղաքին եւ նոյն իսկ Թագուհւոյն». Նոյնը Վարք. էջ 134 : Ուրիշ տեղիքներ տեսանք վերագոյն :

ժգ. Գիրք Կայսերաց : — Ասկէ օրինակուած է բառ առ բառ ընդարձակ հատուած մը՝ Փոքր Սոկրատ, էջ 286—287. «Յետ այսորիկ վախճանի երանելին Պրոկղ եւ ունի զաթոռն հայրապետութեան Փղարխանոս..» : Կ'աւարտի «Եւ եղեւ խաղաղութիւն յաւուրս Թէոդոսի թագաւորին բարեպաշտի» : Կայսերաց գիրքը մէկ մասը կը կազմէ այն Անանուն Ժամանակագրութեան, զոր հրատարակեց Հ. Բ. Սարգիսեան, Վենետիկ 1904, ուր համապատասխան հատուածը կը գտնուի էջ 60—62 : Աւելի ծանրակշիռ է ուրիշ հատուած մը, որ ուղղակի Փ. Սոկրատի մէջ ագուցուած է եւ բացի Կայսերաց Գրքէ ուրիշ աղբիւր մ'ալ մատնանիշ կ'ընէ, ինձ այլուստ անծանօթ, յամենայն դէպս ստորական ծա-

*գումէ: Յանդուգն ստնձգութիւն մը Սոկ-րատի Եկեղեցական Պատմութեան մէջ: Այս հատուածը յառաջ կը բերեմ հոս գրեթէ իր ամբողջութեան մէջ, յաւելուածները չզատելր:*

Սոկրատ, 658—663:

*Քանզի ոչ յետ բազում ամանակի... լինի ժողով Եփեսոս եպիսկոպոսաց ըստ հրամանի թագաւո-րի.* [Վասն խնդրոյն այնո-րիկ որ վասն Նեստորի փոխեցաւ ընդ աշխարհն ամենայն:

Եւ Նեստոր համոզէ զՅովհաննէս Անտիոքայ եւ այլս եւս ընդ իւր առնել· զի առաւել կասկածէր ի Կիւրղէ Աղեքսանդրի յե-պիսկոպոսէն· եւ կարծիս տայ զնմանէ սղոսկեալ յԱպողինարի դիմումն եւ ինքն խոստովանեալ Աս-տուածածին ասէ]...:

Գիրք Կայսերաց, 58—60:

*(Դիոդոր) եւ չնոր-հիւ որդի սաէ զ՝ ի Մա-րիամայն ծնեալն... իսկ Նեստոր Անտիոքացի... սաէ. Ոչ ուրեք իշխեցին սաել Հարքն թէ Աս-տուածն Բան ծնաւ ի Կու-սէն... (Տիմ. Կուզէն ստա-նուած):*

*Եւ ժողովեալք եպիսկոպոսքն զՆեստոր, բայց ի Յովհաննէ Անտիոքացւոյ եւ որոց ընդ նմա եպիս-կոպոսք Լ. զորս հրաւի-րեալ Նեստորի սաէր լի-նել յուղիղ հաւատս. եւ զԿիւրեղ Աղեքսանդրի հայ-րապետն ստորոկեալ յԱ-պողինարի հայհոյութիւնն վասն զմի բնութիւն Բա-նին Աստուծոյ խոստովա-նել:*

*Եւ զի ցասմամբ էր Կիւրեղ ընդ Նես-տորի·* [յաղագս նախանձու Քրիստոսի մար-դանալոյն. եւ վրէժխնդրութեան սրբոյ Աս-տուածածնին Մարիամայ, զոր մարդածին ասէր եւ զծնեալն առ ի նմանէ ի սոսկ մարդ

փոխարկեալ. եւ ըստ շնորհի ուղղեգրութեան արժանաւոր լեալ Որդի Աստուծոյ անուանի եւ կոչի. եւ ոչ ասի էմմանուէլ ըստ մարգարէութեան Եսայեայ զառ ի Կուսէն ծնեալն. եւ յոլով թուղթս գրէր ի սկզբան մոլորութեանն նորա ի բաց կալ եւ յանհանճար աղանդիցն: Իսկ Նեստոր ոչ ընդունի զԿիւրղի թուղթս ըստ անբարհաւանութեան իւրոյ եւ ի լեզուաշատութիւն վստահացեալ. եւ բազումս խրոխտաբար խօսս արարեալ առաջի ամենայն եպիսկոպոսացն, ո՛ր ճշմարիտ եւ ո՛ր սուտ, յափշտակելով զգովիչսն աստուածաբանելոյ:] *Եւ զայս եւս ասէ Նեստոր. զԾնեալն* [ի Մարիամայ եւ կաթնասուն եղեալ] *երկամսեայ կամ երքամսեայ ո՛չ Աստուած անուանիցի* [այլ տաճար Աստուծոյ Բանին, որ էակիցն է Հօր եւ փառակից սուրբ Հոգւոյն:] *Վասն այսորիկ մաքուր եմ, ես ի ձէնջ... Իսկ Յովհաննէս ցասնու ընդ Կիւրղի ի վերայ այնոցիկ եղելոցն եւ ընդ Նեստորի զինքն կամեցեալ առնել անգիտացեալ գիրսն:* [Յայնժամ լինի խռովութիւն ոչ սակաւ ի մէջ ժողովոյն, որ էին Լ՝եպիսկոպոսք. որք ըստ Նեստորի եւ Յովհաննու բաժանեցան ըստ Արեւելից կողմանցն. իսկ որք ըստ Կիւրղի՝ էին աւելի քան զՃՀ. եւ անմիաբանք լեալք ծանուցին թագաւորին, որպէս ունի յաղագս այնորիկ անսուտ յիշատակարան նոցա [71]: Եւ

[71] *«Եւ եղեւ պատառումն Արեւելեայն ի Կիւրղէ՝ որոց ընդ նմա եպիսկոպոսք. մինչեւ ճշմարտութիւն իւրոյն ծանուցաւ թագաւորին. որպէս ունի յաղագս*

թագաւորին ժողովեալ զժառանգաւորս եկեղեցւոյն, եւ հարցանէ վասն վարդապետութեան նորա: Ծանեաւ զմոլորութիւն նորա չարութեան. եւ առաքէ ի ժողովն ոչ արժանի համարել զՆեստոր աթոռոյն եւ ընդունելութեան: Այլ եւ ուխտ եկեղեցւոյն գրեն ի ժողովն զնորա հայհոյիչ խոստովանութիւնն եւ նզովեն զՆեստոր: Եւ հասեալ այսոքիկ թուղթք ի թագաւորէն եւ ի ժառանգաւորաց եկեղեցւոյն եւ դարձեալ քննութիւն առնեն Նեստորի արտաքրութեանն եւ ժառանգաւորաց եկեղեցւոյ եւ թագաւորին: Եւ ամենեքեան արժանի դատեցան նզովելոյ եւ որոշելոյ յեկեղեցւոյ Աստուծոյ] . . . *արտասահմանեցին ի հեռաւորնակ յՕվասին ի յաքսորս* [72] [ի Խուժաստան]:

ժդ. Հանգանակ Կ. Պոլսոյ ժողովոյն: — *Խմբագիրը ինձ անծանօթ աղբիւրէ մը առնելով զետեղած է էջ 416—418 Նիկիոյ ժողովոյն մէկ վճիռը, զոր «խոստովանեցին» Կ. Պոլսոյ ժողովոյն Հարք: Հաւանօրէն հանուած է Ս. Հօր մը գրուածքէն, որ թարգմանուած ըլլալու է Զ. դարու վերջերը: Այստեղ կ՚արտագրեմ զայն ամբողջութեամբ, հրաւիրելու համար անոր վրայ հայրագէտներու ուշադրութիւնը.*

---

*այսորիկ անսուտ յիշատակարանացն պատմութիւն. ըստ հրամանի թագաւորին հալածական առնել զՆեստոր ի կողմանս Մծբնացւոց. որոց յարեցաւ ի Խուժաստան յարեւելս» (Գիրք Կայսերաց, 60):*

[72] *Մեծն «յՕասին (Ὄασις) բնակէր»:*

## ՈՐՔ ԶՆԻԿԻԱՅՆ ԽՈՍՏՈՎԱՆԵՑԻՆ ՀԱՒԱՏ ԾՃ ՍՈՒՐԲ ՀԱՐՔՆ

Մի աստուածութիւն եւ բնութիւն եւ զօրութիւն եւ էութիւն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ յերիս առանձնաւորութիւնսն արտադրեցին ամենայնիւ հաւասարք եւ համապատիւք ի փառս բնութեան աստուածութեանն, որոշեալք ըստ առանձնաւորութեանն եւ միաւորեալք ըստ աստուածութեանն հրաշափառագոյն միաւորութեամբ եւ բաժանմամբ: Իսկ առաւելն քան զայս եւ ոչ հրեշտակաց է ասել, այլ ըստ երից սրբասացութեան ի մի բերելով զփառս ամենազօր տէրութեանն եւ աստուածութեանն Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ[73]. զի արգելեալ փակեալ է յայս՝ խոստովանութիւն հրեշտակաց եւ մարդկան: Իսկ որք ոչ այսպէս ունիցին, եղիցին նզովեալք յերկնաւորացն եւ յերկրաւորացս. եւ որք յամենասուրբ Երրորդութեանն ոչ են փառաբանիչք եւ երկրպագուք:

[73] Ինչ ինչ հանուած է Գր. Աստուածաբանի ճառերէն․․ կը յիշեմ տեղիքներս. «Պաշտել Աստուած զՀայր, Աստուած զՈրդի, Աստուած զՀոգի սուրբ. երիս առանձնաւորութիւնս, աստուածութիւն մի փառօք եւ պատուով եւ բնութեամբ եւ թագաւորութեամբ. մի որոշեցուք» (Առ Որս, Զ., թղ. 62ա). «Արդ երկիր պագանեմք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ. զառանձնաւորութիւնն որոշեմք, բայց զաստուածութիւնն միաւորեմք» (Առ Որս, Բ., Վիեննա, թ. 320, 12բ): «Արդ այսպէս սրբութիւն սրբութեանցն, զոր սերովբէքն ծածկեն եւ փառաւորեն երեքին սրբասացութեամբքն ի մի հաւաքելով տէրութիւն եւ աստուածութիւն» (Վիեննա, թ. 217, թղ. 214ա):

Իսկ որ յաղագս տնտեսութեանն են շարժմունք բանիւ հաւատոյ, զծնեալն ի Հօրէ Բանն Աստուած յառաջ քան զյաւիտեանս եւ յետ այսորիկ ի Կուսէ մարմնացեալ իմն ածեմք եւ ոչ բաժանեմք ըստ անճառ եւ անյայտ միաւորութեան, եւ հաւանիմք ի միաւորութիւն մարդոյ եւ Աստուծոյ միաւորելոյ. եւ լինել Աստուած ամենայն յամենայնի. որ կրեաց զկիրս մարդկայինս եւ կայ մնայ Աստուած առանց փոփոխելոյ եւ ընդ Երրորդութեան օրհնի միութեամբ եւ ոչ բաժանի:

Արդ որք այսպէս խոստովանին եւ հաւատայցեն, ընկալցին զօրութիւնս յերկնաւորացն եւ յերկրաւորացս. իսկ որք ոչ այսպէս ունին, հեռի եղիցի ի նոցանէ:

Զայսոսիկ միտս վերաբերեալ ի հաւատոյն ցոյց, զՆիկիայ հաւատն վերաձայնութեամբ արտադրեցին ասելով յեկեղեցւոջ յետ Աւետարանին. զոչ հաւանեալսն մերժեցին ի հաղորդութենէ (Փ. Ս. 416—418):

ԺԵ. Դաւանութիւն Ս. Աթանասի: — *Նաեւ այս գրուածքը խմբագրէն մուծուած է Փոքր Սոկրատի մէջ (էջ 236—239): Նոյնը այս տեղ կարդացած են 1250ին Հայոց Կիլիկիայի կողմանց այն վարդապետները, որոնք պատասխանած էին Կոստանդին Ս. կաթողիկոսի ներկայացուցած խնդրոյն ի մասին Ս. Հոգւոյ ի Հօրէ եւ յՈրդւոյ բղխման վարդապետութեան: Անոնք կոչում մը յառաջ բերելով գրուածքէս կը գրեն. «Իսկ յաղթող սպառազէնն Աթանաս ընդդէմ Արիանոսացն այսպէս քարոզէր եւ ուսուցանէր.*

Անսկիզբն Հայր ոչ յումեքէ. Որդի՝ ի Հօրէ եւ Հոգին սուրբ՝ ի նոցանց էութենէ. զոր երկրորդէ Սոկրատ պատմագիր» (Կիրակոս Գանձակեցի, էջ 187)։

Գրուածքս ունինք ինքնակաց՝ Վիեննայի Թ. 324, Թղ. 159բ (1305էն) աւելի անաղարտ ձեւի մէջ*։ Անշուշտ նաեւ խմբագիրը գտած էր զայն ժողովածոյ Ձեռագրի մը մէջ։

Ս. Աթանասի անունը կեղծիք մըն է գրուածքիս ճակատը. ամբողջութեամբ կարկատանք մըն է հայ գրիչէ, ծայրաքաղ հաւաքուած Գրիգոր Աստուածաբանի ճառերէն, թերեւս նաեւ ուրիշներէ։ Հարկ է առանձին աշխատութեամբ քրքրել Ս. Հարց գործերու հայ թարգմանութիւնները վեր հանելու համար մէկն մի տեղիքները։ Բաւական կը համարիմ հոս մատնանիշ ընել տեղիքներս. «Զանխառնելին խառնեաց յորովայնի» կը գտնուի Գրիգոր Աստուածաբանի ի Յայտնութիւնն Տեառն ճառին մէջ. «փասն այսորիկ զանխառնելին խառնէ ոչ ընդ լինելութեան միայն Աստուած... այլ եւ ընդ կուսութեան ծննդեան» (Վիեննա, Մխիթ. Թ. 217, Թղ. 219ա)։ Նոյնին կը հանդիպինք նաեւ Յովասափի Պատմութեան մէջ. «Ինքն առեղծ յո–

* Անկէ նախ հրատարակուած՝ N. Akinian and Robert P. Casey, Two Armenian Creeds: The Harvard theological review 23 (1931), 143—151, յատկապէս էջ 143—147։ Գրուած հաւանօրէն Ե. կամ Զ. դարու վերջը։

բովայնի կուսին մարմին անձնաւոր... ան-
չփոթելի միաւորութեամբ զանխառնելին
խառնեաց Աստուած եւ մարդ կատարելու-
թեամբ[74]»: Դարձեալ տ. 34—36 գրեթէ
նոյնութեամբ ունինք Գր. Աստուածաբանի ի
Ծնունդն Քրիստոսի ճառին մէջ «երեքին
սրբասացութեամբքն ի մի հաւաքելով տէրու-
թիւն եւ աստուածութիւն» (Վիեննա, Թ. 217,
Թղ. 214ա), զոր տեսանք նաեւ վերագոյն
(ծան. 73): Տող 27—28. «Որ ընդ ամենայն
կիրս մարդկային կանց անարատապէս» կը
յիշեցնէ Պատարագի կանոնն, ուր կ՚ըսուի
«Ճանապարհորդեցաւ ընդ ամենայն կիրս
մարդկային կենցաղոյս առանց մեղաց» (Գա-
թըրճեան–Տաշեան, Սրբազան Պատարագա-
մատոյցք Հայոց, էջ 281): Յետադաս ածա-
կանն «մարդկային» այսպէս առանց «-ս»ի
ցոյց կու տայ յայտնապէս, թէ «կենցաղոյս»
դուրս է թողուած. իսկ «առանց մեղաց» վե-
րածուած է «անարատապէս»ի: Իսկ տ. 29—
30 կ՚ենթադրէ Եբր. Ժ 20. «Զոր նորոգեաց
մեզ ճանապարհ նորոգ եւ կենդանի ի ձեռն
վարագուրին, այսինքն է մարմնոյ իւրոյ» եւ
Մատթ. Գ. 15. «Զի այսպէս վայել է մեզ
լնուլ զամենայն արդարութիւն»: Եւ տող 32—
33 հմմտ. Եբր. ԺԳ. 8:

---

74 Նկարագրութիւն հոգեւորական վարուց Յովա-
սափու որդւոյ թագաւորին Հնդկաց. Վաղարշապատ
1898, էջ 29:

ՍՐԲՈՅՆ ԱԹԱՆԱՍԻ ԴԱՒԱՆՈՒԹԻՒՆ

Անսկիզբն Հայր ամենակալ եւ մշտնջենաւոր, արարիչ երկնի եւ երկրի եւ որ ի նոսա արարածք:

Եւ Որդի ի Հաւրէ ծնեալ եւ ոչ արարեալ, արարչակից Հաւր եւ մշտնջենակից, անժամանակ եւ անմարմնապէս ի նոյն բնութենէ եւ ոչ այլուստեք ի ներքս մտեալ. եւ ամենայն ինչ նովաւ եղեւ:

Եւ Հոգին Սուրբ ի նոցին յէութենէ, ի լուսոյ լոյս երեւեալ, որ լուսաւորէ զարարածս լուսով գիտութեան. եւ շնորհաւք յարդարէ աղբիւրաբար զպարգեւս. ոչ այլուստեք ի ներքս մտեալ, այլ ի Հաւրէ ելանէ եւ յՈրդւոյ երեւի, մի աստուածութիւն յերեսին երեւեալ եւ առանձնաւորութիւն անշարժ մնացեալ. Երրորդութիւն կատարեալ եւ մի աստուածութիւն փառաւորեալ:

Եւ յաղագս մարմնանալոյն Աստուծոյ այսպէս խոստովանիմք, եթէ որ ի Հաւրէ ծնաւ անճառելի եւ անմարմնապէս, նոյն

Տարբերակք Փ. Սոկրատի: 1 *Դաւանութիւն Ս. Աթանասայ*: — 2 *մշտնջենաւորով*: — 4 Զ. ունի հոս (*արարածք*) *իւրեն* ջնջագրով: — 8 *այլուստ*: — 10 *Հոգին սուրբ ի նոցունց էութենէ* (չունի *եւ*): *Հմմտ. էջ* 730 (*Փ. Վարք Սեղբ.*) «*Հօր ամենակալի եւ Որդւոյ նորա միածնի եւ Հոգւոյն սրբոյ որ ի նոցունց յէութենէ. մի աստուածութիւն եւ զօրութիւն եւ բնութիւն եւ փառք, որ արար զամենայն արարածս*». *իսկ էջ* 757. «*Եւ Հոգին սուրբ ի նոցունց յէութենէ*»: — 12 *գիտութեամբ*: — 13 *աղբերաբար*: *այլուստ*: — 18 *փառաւորի*: — 19 *մարդանալոյ*: — 20 *այսպէս խոստովանիմք եթէ*] *խնդրի բան*: —

ինքն մարմնացաւ ի սուրբ Կուսէն եւ զանխառնելիսն խառնեաց յորովայնի անճառաբար եւ առանց իմանալոյ, Աստուած զնա գործէ միաւորութեամբք եւ մի Որդի խոստովանի միով պատուով երկրպագեալ եւ փառաւորեալ, որ ընդ ամենայն կիրս մարդկային էանց անարատապէս, կամաւ եւ ոչ ի հարկէ. զի մեզ ճանապարհ նորոգեսցէ ի լնուլ զամենայն արդարութիւնս:

Եւ ոչ բաժանեմք զՈրդի ըստ տնտեսութեանն, զի Յիսուս Քրիստոս երէկ եւ այսաւր նոյն եւ յաւիտեանս ընդ Հաւր եւ սուրբ Հոգւոյն աւրհնի յերկնաւորաց եւ յերկրաւորաց երիցս սրբասացութեամբ ի մի հաւաքելով տէրութիւն եւ աստուածութիւն ամենասուրբ Երրորդութեանն:

Եւ արդ մեք այսպէս խոստովանիմք: Եւ որ ոչ այսպէս խոստովանի, նզովեմք, որպէս սուրբ Հարքն նզովեցին զԱրիոս եւ ընդ նմին զամենայն հերձուածողսն:

9. *Ամբագրին յաւելուածները ամէնէն աւելի աչքի կը զարնեն հետեւեալ հատուածներու մէջ, ուր առանց ամենեւին միտ դնելու ժամանակագրական յաջորդութեան դէպքե–*

21 *երեւի*: — 22 (*Ինքն*) *անսերմնանայ ի Կուսէ*: — 23 *խառնէ*: *յորովայնին*: — 25 *միաւորութեամբ անորէնութեամբ*: — 26 *եւ պատուով*: — 29 *զի զմեզ* (22. *մեզ*) *ճանապարհ գործեսցէ*: — 31 *տնօրէնութեան*: — 33 *յաւիտեան*: *ընդ Հոգւոյն սրբոյ*: — 35 չունի *երիցս*. Զ. գ. *սրբասացութեամբ*: — 38 *Արդ որ այսպէս խոստովանիցեն, ընդ նոսա եւ մեք. իսկ որ այլազգ իցէ. ինքն տացէ դատ յաւուրն դատաստանի*:

րու, առանց հետեւող ըլլալու Մեծ եւ Փոքր Սոկրատի ընագիրներուն, կ՚աճապարէ յիշել պատմական անցքեր, որոնք յետոյ միւսան–գամ պիտի կրկնուին: Իր գրչին յատուկ ճոյլ եւ անկապ արտայայտութիւնք ամէն քայլափոխին կը ցցուին:

ա· «Զի յորժամ Դիոկղետիանոս եւ Մաքսիմիանոս ի բաց կացեալ ի թագաւորու–թենէն ակամայ յաղթահարեալք ի Կոստան–դիանոսէ վասն ամբարշտութեան նոցա» (էջ 2):

բ· «Նախ զամենայն թագաւորս զամ–բարիշտս սատակէր եւ յաղթող երեւեալ նշա–նաւ խաչին Քրիստոս ընդ ամենայն երկիր յէ· ամի թագաւորութեան Կոստանդիանոսի, յորժամ էառ զյաղթութիւն (եւ) միահամուռն թագաւորեացն զԼիկիանոս ճեռայր իւր թա–գաւորեցուցանէր» (էջ 5):

Ընդգծուած բառերը խմբագրէն են: Եր–կու հատուածներու մէջ ալ մի եւ նոյն դէպ–քերու մասին կը պատմուի: Կոստանդիանոս «նշանաւ խաչին» կը տանի Մաքսիմիանոսի վրայ յաղթութիւն. ապա իր քոյրը տալով Լիկիանոսի կնութեան (էջ 5), զանիկա իբրեւ կայսերակից «թագաւորեցուցանէ» (էջ 5): Յետոյ միայն, երբ Լիկիանոս ալ կը վերցուի մէջտեղէն, «միահամուռ թագաւորեաց» Կոս–տանդիանոս «յէ· ամի թագաւորութեան» իրոյ: Համառօտն ունի համաձայն Սոկ–րատի· «Եւ Կոստանդիանոս միահամուռն թագաւորեալ՝ ինքնակալ կոչեցաւ եւ զքրիս–

*տոնէից միշտ գփրկութիւն խոկայր»* (9)։ *Ուստի «միահամուռ թագաւորեաց» մնացորդն է Համառօտին՝ «ի վերայ Մաքսիմիանոս թագաւորին», ա՛յսպէս աղաւաղուած վիճակի մէջ։*

*Յաջորդ հատուածը՝* «Բայց կինն նորա (*Լիկիանոսի*), քոյր Կոստանդիանոսի, հրամայեաց հանգուցանել զքրիստոնեայս ի հալածանացն, *զի էր բարեպաշտօն եւ երկիւղած* յԱստուծոյ. եւ որք ի կապանս էին եւ յաքսորս՝ արձակէր. եւ զինչս առնելոցն (աքսորելո՞ցն) դարձուցանէր եւ զեկեղեցիս կանգնէր մեծաւ պայծառութեամբ եւ զգուշութեամբ պաշտօնէիւք ի Քրիստոս Յիսուս» (5), *գոյութիւն չունի Մ. Սոկրատի մէջ. խմբագրին գրչէն է։ Ամբողջը կը հայի Կոստանդիանոսի եւ մասամբ Հեղինէի. հմմտ. «զարձայց զարտաքսահմանեալսն յիւրաքանչիւր տեղիս»* (էջ 40). *«նորոգէր* զեկեղեցիսն պաշտօնէիւք» (էջ 5)։

*«Յայսոսիկ Դիոկղետիանոս ի Դագմատիա վախճանէր*։ Եւ առնու զինչս եւ զթագաւորութիւն նորա Կոստանդիանոս եւ յամենայնի զհանոյս Քրիստոսի կատարէր եւ զկռոցն պաշտամունս խափանէր եւ նորոգէր զեկեղեցիսն պաշտօնէիւք եւ երեւելի սպասուք. եւ յառաջադիմէր ի բարեպաշտութեան սուրբ վարս երեւելեօք եւ անեղծութեամբ. եւ խոկայր միշտ յերկիւղն Աստուծոյ մերոյ» (էջ 5—6)։ *Ամբողջը խմբագրէն է։ Նոյն միտքը կրկնուած է նաեւ էջ 50, մասամբ*

Համառօտողին գրչին. «Յետ այսորիկ եւս առաւել յորդորէ քրիստոնէից խնամակալութիւն եւ յեկեղեցեաց պայծառութիւն... եղծանէր եւ խափանէր զպաշտամունս (հեթանոսաց) եւ խրատէր պաշտել զԱստուած կենդանին եւ թողուլ զկռոցն բաջաղմունս եւ զդիւթութիւնս: Այլ ի ձեռն խաչին Քրիստոսի հաւատով առնէր զյաղթութիւն ամենայն վնասակարացն, որք ի դիւացն դրժին: Զի մարդասիրին Աստուծոյ խնամակալութիւնն ոչ թողու զարարածս իւր միշտ յերեւելիս եւ յաներեւոյթս» (էջ 50): Ընդգծումները խմբագրէն են. մնացեալները Համառօտողէն: «Երեւելի եւ աներեւոյթ» ասութեան, որ հօս երկիցս գործածուեցաւ, յաճախ կը հանդիպինք Խմբագրողի գրչի տակ նաեւ այլուր:

Փ. Սոկրատ յիշելով Կոստանդիանոսի «միահամուռն» թագաւորելը՝ կ'աւելցնէ (խմբագիրը). «Եւ հաստատէր զթագաւորանիստն ի Բիւզանդիոն հրաշալի յօրինուածովք. եւ կոչեաց զնա Կոստանդինու քաղաք յանուն իւր: Եւ եղեւ խաղաղութիւն ընդ ամենայն երկիր քրիստոնէից» (էջ 9): Շատ աճապարած է այս լուրը հաղորդելու: Մեծ Սոկրատ այս կէտին կ'անդրադառնայ էջ 43. ուր Համառօտողը կը գրէ համաձայն Սոկրատի (կ'ընդգծեմ Խմբագրին ներմուծած բառերը). «Եւ զհամանուն քաղաքն իւր (որ յառաջն Բիւզանդ[իո]ն կոչէր) մեծացուցանէր բարձր պարսպօք եւ ամենապատիկ հրաշալի յօրինուածովք, զչինուածս յարդարէր

ըստ տեսլեան ցուցակութեան նմա յանհրեւութից զերեւելիս արարեալ, առաւելեալ յամենայնի քան *զթագաւորեալ քաղաքն Հռովմայեցւոց որ Կոստանդնու քաղաք անուանեաց, հրամանաւ եւ (օրինօք) երկրորդ Հռովմ տիրացոյց* ի վերայ աշխարհին, *որպէս եւ յարձանի գրեցաւ»* (էջ 43)։ *Այլուր Մ. Սոկրատ կը գրէ. «Կոստանդի(ան)ոս, զԲիւզանդիոն իւրովն յորջորջեաց անուամբ», զոր Փ. Սոկրատ ունի. «Մեծն Կոստանդիանոս, որ զԲիւզանդիոնն շինեալ յիւր անուն կոչեաց Կոստանդնուպոլիս»* (էջ 216)։

*Այս հատուածին մէջ կը տեսնուին Համառօտողին տողերը եւ Խմբագրին յաւելուածները։ Վերջինս յատուկ են «հրաշալի յօրինուածք», որ երկիցս կրկնուած է. երրորդ եւ չորրորդ անգամ կը գտնենք նոյնը էջ 46. Հեղինէ «յարդարէր հրաշալի յօրինուածովք» եւ «Մեծացուցանէր զտուն աղօթից հրաշալի յօրինուածովք»* (412)։

*Անգամ մը գործածած է խմբագիրը նաեւ* «ամենապատիկ *հրաշալի յօրինուածովք զշինուածս* յարդարէր» (43)։ *Այս ընդգծուած բառերը ակամայ կը յիշեցնեն մեզի Մ. Խորենացւոյ համապատասխան մէկ տեղիքը, ուր կ'ըսուի. «Կոստանդիանոս* ամենապատիկ յարդարեաց *եւ անուանեաց Նոր Հռոմ. իսկ աշխարհ կոչեաց զնա Կոստանդիանու քաղաք»* (*Բ.* 88)։ *Բառս* ամենապատիկ *ածականաբար գործածուած յաճախ կը տեսնուի յունաբան Թարգմանութեանց* (*Փիլոնի եւ այլ*

գրուածոց) մէջ. համեմատէ նաև Վրթանէս Քերթողի թուղթն առ Սորմէն. «ամենապատիկ ծաղու է արժանի» (Գիրք Թղթոց, էջ 95)։ Մովսէս Խորենացին է, որ զայն մակբայաբար գործածած է։ Չեմ կրնար հոս Խմբագրին կախումն Մ. Խորենացիէ ժխտել։ Նաև «Հաստատէր զթագաւորանիստն ի Բիւզանդիոն» կը յիշեցնէ Խորենացւոյ «ի բարձրաւանդակ դիր զթագաւորանիստն զհայեցուածն ունի» (Բ. 42)։

Ի՞նչ կ՚իմանայ Խմբագիրը հոս «ըստ տեսլեանն ցուցակութեան» (այլուր «ըստ ցուցական տեսլեանն Աստուծոյ, 47) արտայայտութեամբ։ Այլուստ ծանօթ չէ, թէ Կոստանդիանոս Կ. Պոլսոյ շինութեան համար տեսիլք ունեցած ըլլայ։ Ղ. Փարպեցի, խօսելով Կոստանդիանոսի արշաւանքի վրայ ընդդէմ Գթաց, կը գրէ թէ թագաւորը դէպ ի հին Բիւզանդիոն ուղղուելով եւ «առ եզերբն Ղեկովը (իմացի՛ր Դանուբ) գետոյ արարեալ զկէր զօրու բանակատեղս, որ եւ աստուածային տեսչութեանն լինէր արժանի». եւ յետ յաղթութեան «եկեալ յառաջագրեալ քաղաքին» կը հիմնարկէ հոն Կ. Պոլիսը (էջ 3—4)։ Հոս խօսքը ի հարկէ Կոստանդիանոսի աստղագիր խաչին երեւումի մասին է. բայց սերտիւ կապուած է այս տեսլեան հետ Բիւզանդիոնի շինումը։ Նաև Փ. Սոկրատի մէջ «ըստ տեսլեան ցուցակութեան» նոյն յարաբերութեամբ ըսուած է եւ ապահովաբար ենթադրուած Խաչի երեւումը։ Այս տեսակէտը

աւելի ուշադրութեան կ՚արժանանայ, եթէ նկատի առնենք, թէ Ղ. Փարպեցւոյ նոյն առաջին Դրուագին մէջ (էջ 48) գործածուած է «ըստ ցուցական տեսլեանն Աստուծոյ» ասութիւնը: Վերագոյն մատնանշեցինք ուրիշ փոխառութիւն մ՚ալ Ղազարի Թղթէն:

Շատ աչքի կը զարնեն Ս. Հեղինէի նուիրուած գլխին մէջ կրկնութիւնները, որոնք էական մասով կը վերաբերին խմբագրին: Կ՚ընդգծեմ խմբագրին յաւելուածները:

«Եւ իմ սուղ ինչ անցանելով ասացից: էր (այ. եւ) Հեղինէ մայր թագաւորին եւս առաւել բարեաց գործոց արժանի յիշատակի, որ յաղագս նորա է Պատմութիւն որք կամիցին ուսանիլ. բայց սուղ ինչ ճառեցից զնորայսն: Կոստանդիանոս զմօր իւրոյ զանուն Դոխեան՝ քաղաք հոչակաւոր յարդարեաց շինուածովք եւ մեծութեամբ յանուն մօր իւրոյ Հեղինէի քաղաք անուանեաց զաւանն: Եւ սա յամենայնի հոչակեալ երանութեամբ աստուածասէր եւ բարեպաշտօն եւ իմաստուն ըստ ամենայնի հաստատուն ի հաւատս եւ վարուքն եւս առաւել զովելոյ արժանի:

Այս երանելիս Հեղինէ առնու հրաման յԱստուծոյ ի տեսլեան գիշերոյ երթալ յԵրուսաղէմ եւ խնդրել զփայտ խաչին Քրիստոսի եւ շինել զեկեղեցիսն Աստուծոյ. զՄատուռն եւ զՍիոն եւ զՅարութիւն եւ զԳողգոթայն եւ զՀամբարձումն, զԾնունդն Քրիստոսի ի Բեթղեհէմ, զՍուրբ Աստուածածին եկեղեցին՝

ուր Հանգիստն է, զՂազարոսն եւ զՍ. Ստեփանոս[75]. զոր եւ պատմեաց Կոստանդիանոսի զտեսիլն եւ զհրամանն յԱստուծոյ: Եւ նա յօժարութեամբ եւ հաւատով ընկալեալ ի մօրէն զասացեալսն՝ տայ ոսկի եւ արծաթ բազում եւ առաքէ յԵրուսաղէմ բազում ամբոխիւ, խնդրել զփայտ խաչին եւ շինել զեկեղեցիսն ըստ տեսլեանն, որպէս ցուցաւ: *Եւ եկեալ գտանէր զԵրուսաղէմ ըստ մարգարէութեան, որպէս զտաղաւար մրգապահաց* եւ որպէս հովանի ինչ ի մէջ սեխենեաց եւ որպէս զքաղաք պաշարեալ յազգաց օտարաց[76]: Եւ ժողովեալ զՀրեայսն խնդրեաց

---

[75] Յետոյ երբ Նեստորի մոլորութեան վրայ խօսք կ'ըլլայ (Սոկրատ, է. 32), Սոկրատ յառաջ կը բերէ Եւսեբիոսէն տեղիք մը, ուր կ'ըսուի. «Թագուհին Հեղինէ բարեպաշտուհի զԾննդ Աստուածածնին (ի Բեթղեհէմ) սքանչելեօք զարդարէր եւ ամենայնիւ զտաճարն անտրոն (իմացի՛ր զայրն) պայծառացուցանէրով» (էջ 656). Համառօտողն եւ խմբագիրն ընդլայնած են զայս այսպէս. «Այլ եւ ոչ զսրբութիւն տեղեացն Երուսաղէմի ի միտ առ (Նեստոր), զԾննդեան եւ զանուանադրութեանն, զոր աստուածասէր սուրբ տիկինն Հեղինէ շինէր յանուն Աստուածածնին եւ զԾննդեանն որ ի Բեթղեհէմ. եւ որ այլքն որ անուանցն յուշակումն ունին զխորհուրդ աստուածութեան իւր. որպէս Մատուռն եւ Սիոն եւ Յարութիւն եւ Գողգոթայն եւ որ այլքն են. նոյնպէս եւ Ս. Աստուածածնի եկեղեցին զանունն ի վերայ ունելով, որ ամենեցուն է քաջայայտ մեծաւ սքանչելեօք պատուեալ ի տիեզերական եկեղեցւոյ» (էջ 655—656):

[76] Սոկրատ ունի «որպէս հիւղս մրգահատաց ըստ մարգարէին բանի գտանէր». խմբագիրը յառաջ բերած է ամբողջ համարը. Եսայի, Ա. 8 ունի. «Լքեալ թողցի դուստր Սիոնի իբրեւ տաղաւար յայգւոջ. եւ իբրեւ զհովանի մրգապահաց ի մէջ սեխենեաց, եւ իբրեւ (var. եւ որպէս) զքաղաք պաշարեալ»: «Յազգաց օտարաց» եօթներորդ համարի մասն է, զոր հոս յաւելցած է խմբագիրը:

զՓայտ խաչին Քրիստոսի, որպէս ցուցանէ Պատմութիւն զԳիւտ խաչին եւ Բեւեռացն. եւ ես աւելորդ համարեցայց գրել: *Եւ մայր թագաւորին Հեղինէ մերատին նորոգէր զնորն Երուսաղէմ*, եկեղեցեօքն՝ ըստ ցուցական տեսլեանն Աստուծոյ. եւ *յարդարէր* հրաշալի յօրինուածովք եւ բազում փառօք ըստ իւրաքանչիւրոցն խորհրդածութեան ի փառս անուանն Քրիստոսի: Եւ երկիւղածութեամբ եւ ահիւն Աստուծոյ միշտ լինէր ի պահս եւ յաղօթս հանդերձ բազում կանամբք եւ յոլով կուսանօք. որովք զհանապազորդ աղօթսն նիշտ կատարէր եւ զաղքատս եւ զկարօտեալսն լցուցանէր. եւ զարդարեալ զեկեղեցիսն երեւելի սպասուք տօն մեծ ուրախութեան ըստ խորհրդածութեան միոյ միոյ ըստ իւրաքանչիւր եկեղեցեացն ունէր. եւ կարգէր պաշտօնեայս, որ անհատ կատարի պաշտօնն Աստուծոյ. եւ հրաժարիլ ի պաշտօնէիցն եւ ի սուրբ եկեղեցեացն: *Եւ մասն ինչ ի սուրբ խաչէն թողոյր յԵրուսաղէմ եւ զայլն առեալ ընդ իւր ածէր ի Կոստանդնուպոլիս քաղաքն*: Եւ առնեն նաւակատիս ի ԺԳ. Սեպտեմբերի եւ յերկրորդ աւուրն ի ԺԴ. Սեպտեմբերի տօն սրբոյ խաչին:

Եւ ապա ցուցանի Ս. խաչն թագաւորին եւ բազմութեան ժողովոյն: Եւ համբուրէր թագաւորն եւ փարէր զնովաւ եւ որպէս խաչազգեստ լինէր. եւ զուարճանայր, օրհնէր զԱստուած: *Եւ այդպիսի հոգեւոր* վայելչութեամբ եւ ցնծութեամբ գովէին զԱստուած:

Այսոցիկ այսպէս եղելոց ի փառս Աստուծոյ, երանունին Հեղինէ գնաց ի քաղաքն իւր. *եւ* ուխտաւոր *կուսանօք կեայր* անզբաղապէս պահօք եւ *աղօթիւք: Եւ ութսունամեայ լուծանէր զկեանս իւր: Եւ թագաւորին բարձեալ զմարմինն հանգուցանէր ի Հռոմ ի գերեզմանս թագաւորացն* մեծաւ պատուով ի փառս եւ ի գովութիւն Աստուծոյ մերոյ» (*էջ* 44—50):

*Աղբիւրն է «Որ յաղագս նորա է Պատմութիւն» կամ «Որպէս ցուցանէ Պատմութիւն Գիւտ Խաչին եւ Բեւեռացն»: «Բազում է առել յաղագս դշխոյին բարեկարգութեան (որ) յետ մկրտութեան յաղագս նորա է Պատմութիւն գիւտ Խաչին եւ եկեղեցեացն Երուսաղէմի շինութիւնք»* (767/68):

*Մեծ եւ Փ. Սոկրատ կը յայտնէին՝ «ի ձեռն որից պատմեցից = եւ իմ սուղ ինչ անցանելով ասացից». խմբագիրը մոռնալով զայս կը կրկնէ իր կողմէ. «բայց սուղ ինչ ճառեցից զնորայն»:*

«*էր Հեղինէ* մայր *թագաւորին* եւս առաւել բարեաց *գործոց* արժանի յիշատակի». *գնահատանքս փոխառութիւն է Բ. Մակաբ. Է.* 20. «*Եւս առաւել բարեաց յիշատակաց արժանի մայր սքանչելի»: Նոյնպէս «Սա... աստուածատէր եւ* բարեպաշտօն *եւ* իմաստուն *ըստ ամենայնի* հաստատուն ի հաւատս» *կ'ենթադրէ Առակք, ԼԱ.* 30 «*Կին* իմաստուն եւ բարեպաշտօն *օրհնեսցի*» *եւ Ա. Կոր. ԺԵ.* 15. Հաստատուն *կացէք* ի հաւատս»:

*Հեղինէ «տանու* հրաման յԱստուծոյ ի տեսլեան գիշերոյ *երթալ յԵրուսաղէմ». կը կրկնուի. «պատմեաց...* զտեսիլն եւ զհրամանն Աստուծոյ». *«նորոգէր...* ըստ ցուցական տեսլեանն Աստուծոյ». *«ըստ* տեսլեանն որպէս ցուցաւ»: *«Ըստ իւրաքանչիւրոցն խորհրդածութեան». «ըստ խորհրդածութեան միոյ միոյ ըստ իւրաքանչիւր եկեղեցեացն»:*

*Տեղիքներս՝ «տայ ոսկի եւ արծաթ բազում եւ առաքէ յԵրուսաղէմ* բազում ամբոխիւ... եւ ժողովեալ զՀրեայսն՝ խնդրեաց զփայտ խաչին Քրիստոսի» *առնուած են ուղղակի Խաչի գիւտի Պատմութենէն:*

*Խմբագիրը ծանօթ է ոչ միայն Երուսաղէմի սրբատեղեաց, այլ եւ տեղական սովորութիւններու: Նոյնպէս գիտէ Կ. Պոլսոյ մէջ Ս. Խաչի տօնախմբութիւնն եւ տեղական սովորութիւնը. «ցուցանի Ս. Խաչն Թագաւորին եւ բազմութեան ժողովոյն»:*

*Խմբագիրը այս աղբիւրներէ զատ ունեցած է իր Մատենադարանին մէջ նաեւ Ագաթանգեղոսն եւ Յաճախապատում գիրքը: Նորայր Բիւզանդացի այս աղբիւրներէ մատնանշած էր մէկ քանի բառեր եւ ասութիւններ, որոնց թիւը կարելի էր թերեւս աճեցնել նորերով, եթէ աւելի ուշադրութեամբ կատարենք մեր խուզարկութիւնը: Կը յիշեմ հետեւեալ տեղիքները միայն:*

1. *Փ. Ս.* «Զաշխարհն *նոցա* յինքեանս գրաւեցին ի ծառայութիւն եւ զօրացան ի վե–

րաւ նոցա» (*Հջ* 447)։ *Ագաթ*. 29. «Զաշխարհն յիւրեանց գրաւեալ էին ի ծառայութիւն... եւ զօրացաւ ի վերայ *սահմանաց* նոցա»։

2. *Փ. Ա.* «Բացեալ զդուռնն բռնաբար՝ ի դուրս ելանէր» (447)։ *Ագաթ*. 104. «Բացեալ զդուրս *տանն* բռնաբար՝ ի դուրս ելանէր»։

3. *Փ. Ա.* «*Եւ դի էր* առաւօտ, բացան դրունք քաղաքին *եւ* մտեալ զօրն ի ներս *ի քաղաքն*» (*Մեծ Սոկրատ*՝ «*Գտեալք ի բաց դըրունս քաղաքին*», 630)։ *Ագաթ*. 28. «*Իբրեւ այգն* զառաւօտն *մերկացաւ*՝ դրունք քաղաքին բացան *եւ* զօրքն *ամենայն առ հասարակ* ի ներքս» *մտանէին*։

4. *Փ. Ա.* «*Բայց նոցա* ոչինչ օգուտ գործեաց» (268)։ *Ագաթ*. 241. «*Իսկ կամակոր ազգին* (*Հրէից*)... ոչինչ օգուտ գործեաց»։

5. *Փ. Ա.* «*Յարդարէին զհարսանիսն* ըստ օրինի թագաւորաց *դերապայծառ եւ առատաբար*» (720)։ *Նորայր համեմատութեան կ՚ունէ առ այս Ագաթ*. 21. «*Ըստ օրինաց թագաւորաց*»։ *Բայց խմբագիրը կարող էր նկատի առած ըլլալ աւելի ճիշդ Եփրեմի* Ա. 487. «*Ոչ թագեցաւ* ըստ օրինի թագաւորաց *ի գերեզմանս թագաւորաց*»։ *Թերեւս այսպէս պէտք է ուղղել Ագաթ*. «*օրինաց*»ը։

6. *Կրնանք յիշել հոս նաեւ* «*այլ եւ արեամբք*՝ շնորհատուր պարգեւօք» (620)։ *Ընդգծուած բառերը կը գտնենք գործածուած Կորիւնի, Փաւստոսի* (*Գ*. 10) *եւ Ագաթանգեղոսի* (421) *մէջ*։

7. Փ. Ս. «Որ եւ այժմ արասցէ Աստուած աղօթիւք բազմաձեռնութեամբ՝ Թագաւորին մերոյ բժշկութիւն» (էջ 735). «Այլ աղօթիւք սրբոց բազմաձեռնութեամբ եւ հաւատովք Թագաւորին ի խաղաղութիւն փոխարկէր» (էջ 55): Յաճախապատում ԺԲ. 128. «Եւ որ այլ եւս են բարեգործութիւնք բազմաձեռնութեամբ աղօթիւք եւ խնդրուածովք» (Նորայր, Մշակ, Թ. 217):

8. Փ. Ս. «Հաղորդս առնէր... սարսափելի եւ փրկական խորհրդոյն» (էջ 738): Յաճախապատում ԺԳ. 139. «Զահաւոր եւ զսարսափելի զփրկական զխորհուրդն»:

9. Փ. Ս. «Ընդ նմին եւ զմեղսաւէր բանսն» (էջ 742): Տարական «ի մեղսաւէր բանսին»:

10. Փ. Ս. «Արհամարհելով զչար տանչանս եւ զմահ» (721): Տար. «Արիաբար ճգնեալ արհամարհելով զչար տանջանս եւ զմահ»:

Այս եւ նման այլ Յաւելուածները Փոքր Սոկրատի մէջ, որոնք բովանդակութեամբ անչափ էին, ոճով թոյլ, կրկնաբանութիւններով հարուստ, ինքնուրոյն բառամթերքով, կ՚ենթադրեն Սոկրատի Համառօտողէն տարբեր, ժամանակով անկէ կրսեր Խմբագիր մը: Եթէ ի վիճակի չենք այժմ զանիկա իր սեպհական անունովը կոչել, բայց կրնանք ժամանակը մերձաւորապէս մատնանշել, այս ինքն Թ. դարու երկրորդ կէսն կամ Ժ. դարու առաջին տասնեակը:

Փ. Սոկրատի աղերսը Մ. Խորենացւոյ հետ նկատի պիտի առնեմ առանձին գլխով:

## Ե.

# ՓՈՔՐ ՍՈԿՐԱՏ ԵՒ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ

### 1. ԽԱՌՆ ՏԵՂԻՔՆԵՐ

Մեր քննութիւնները բերին զմեզ այն համոզման թէ Մեծ Սոկրատ իբր 700ին համառօտուած է, իսկ այս Համառօտութիւնն Թ. դարու վերջերը կրած է խմբագրութիւն:

Եթէ իրողութիւնս աչքի առաջ ունենանք, դժուարին պիտի չըլլայ այնուհետեւ լուծել այն վիճական հարցը, թէ Փո՞քր Սոկրատն է որ կ'օգտուի Մ. Խորենացիէն, թէ ընդ հակառակն երկրորդը առաջինէն:

Բնականաբար եթէ Համառօտը սկսեալ 700էն կը շրջէր հրապարակի վրայ, կարող էր իբր 850ին ծաղկած Մ. Խորենացի կարդացած ըլլալ զայն: Միւս կողմէ եթէ Փ. Սոկրատի խմբագիրը ապրած է Թ. դարուն վերջերը, ի վիճակի էր եւ սա ձեռքի տակ ունեցած ըլլալ Մ. Խորենացւոյ գրուածքը: Իսկ որոշելու համար, թէ Մովսէս ո՛ւր օգտուած է եւ ո՛ւր աղբիւր ծառայած, հարկ է մանրազնին քննութեան առնել այն ամէն տեղիքները, ուր նմանութիւններ կամ բանաքաղութիւններ կը նշմարուին, եւ մի առ մի ստուգել, թէ այդ տեղիքները Համառօտութեա՞ն կը հային թէ Խմբագրութեան: Համառօտողը կախում ունի Մեծ Սոկրատէն,

Խմբագիրն է որ կ՚ընթանայ արձակերտաանակ:

Նորայր Բիւզանդացի հաւաքած էր փ. Սոկրատէն բազմաթիւ տեղիքներ, ցոյց տալու համար թէ Համառօտըն է բնագիրը: Այժմ հարկադրուած ենք նոր զննութեան ենթարկել այդ տեղիքները: Հաւաստապէս թէ Մովսէս եւ թէ խմբագիրը կը սիրեն նախնեաց մատենագրութեան բառերով վերարազարդուիլ:

1. «Եւ մորթեալ կենդանւոյն (զՄանի) եւ շանց զմարմինն առնէր կերակուր եւ զմորթն լցեալ յարդիւ զպարսպէ կախի առ դրան քաղաքին պիղծն Մանի» (փ. Ս. 73): Մեծն ունի. «կենդանւոյն զնա քերթէր եւ յարդիւ (տպ. յարդ եւ) զմորթն նորա լցեալ դնէր առաջի քաղաքին»: Սոկրատի աղբիւրն է Արքեղայոս. նոյն աղբիւրէ յառաջ կը բերէ տեղիքս Կիւրեղ Երուսաղեմացի (Կոչումն Ընծայութեան, էջ 115). «Ըստ Պարսից օրինակին զմորթն հանել հրամայէր զՄանեայ եւ զմարմինն ամենայն գէշ հրամայէր գազանաց... զմորթն հանեալ մոմնեալ իբրեւ զպարկ ի վերայ դրաց քաղաքին հրամայէր փչել եւ դնել»: Եղնիկ (էջ 117) կը յիշէ պարզապէս, թէ Մանի «մորթազերծ մահուամբ պակասեցաւ ի կենաց»: Նորայր կը համարի թէ Փոքր Սոկրատ հոս նկատի ունի Խորենացւոյ տեղիքս (Գ. 32). «Հրամայեաց զփախուցեալս նոցա քարշել ընկենուլ անթաղս՝ կերակուր լինել շանց»: Հմմտ. եւ Եղնիկ 19.

«Եւ այլք··· զթաղեալ մարմինս ընդ հողով·· թերեւս եւ շանց եւս կուր արկանեն»: Մակ-րատ չունի ընդգծուած «եւ շանց զմարմինն աներ կերակուր», բայց ունի Համխմատ Կիւրեղ Երուսաղեմացի «զմարմինն ամենայն գէշ հրամայէր գաղանաց»: Դժուար է հոս ըսել թէ խմբագիրը ուղղակի Խորենացիէն բանաքաղած ըլլայ «շանց··· կերակուր»· ինձ կը թուի թէ խմբագիրը աւելի ճիշդ Կիւ-րեղ Երուսաղեմացւոյ ազդեցութեան տակ է· «գէշ գաղանաց» նոյն է «կերակուր շանց» արտայայտութեան հետ, շատ սովորական հայ լեզուի մէջ:

2· «Որք թշնամութեամբ էին առ երա-նելին Յոհան սակս յանդիմանութեանն յան-ցանաց (53)· «Ունէր ոխութիւն վասն յան-դիմանութեան նորա սխալանացն» (532): = Մ· Խոր· Գ· 14· «Յաւելեալ ի բորբոքումն չարութեանն, զոր ունէր ընդ սորա Յուս-կանն յաղագս հանապազորդ յանդիմանու-թեանն իւրոց յանցանաց» եւ Գ· 32 (վերնա-գիր) Քարկոծել զնա կամէր սակս յանդիմա-նութեան իւրոց յանցանաց»: Չեմ կրնար ըն-դունիլ, թէ խմբագիրը կարօտած ըլլայ այս երեք շատ սովորական, ամենօրեայ գործածա-կան բառերու համար փոխառութեան դիմել: Խմբագիրը հոս իր աչքի առաջ ունէր Յովհ· Ոսկեբերանի Վարքը, ուր յաճախ կը շեշտուի այս կէտը, «վասն զի անաչառութեամբ յան-դիմանէր զոչ եկեալսն յուղղութիւն» (էջ 131):

3. «Յայսոսիկ առաւել ցասուցեալ՝ մահուամբ սպանող Աթանասայ» (140) = Մ. Խոր. Գ. 21. «Ցասուցին զնա առաւել». բայց խմբագիրը նոյնը կարող էր կարդացած ըլլալ նաեւ Յովհ. Ոսկեբերանի Վարքին մէջ. «Ընդ որ առաւել բարկացեալ Թագուհւոյն» (էջ 131):

4. Վաղէս «Հրով այրեալ սատակեցաւ» (337): Մեծն ունի «ոմանք ասեն հրով կորնչել նմա»: = Մ. Խոր. Բ. 33. «Վաղէս... հրակէզ եղեալ յԱդրիանուպոլիս սատակեցաւ»: Թէ Համառօտին եւ թէ Մ. Խորենացւոյ աղբիւրը Մեծ Սոկրատ է. աւելի հաւանական է, որ Մովսէս հոս Համառօտին հետեւած ըլլայ:

5. «Առեալ մանկունս ուշեղս եւ համագլխս» (էջ 57): = Մ. Խոր. Գ. 54. «Ժողովեալ մանկունս... ուշեղս»: Մեծ Սոկրատ չունի բառս. խմբագրի յաւելուածը կը թուի, ուստի Մ. Խորենացւոյ ազդեցութեան տակ:

6. Ի պատերազմունս արիութիւն ցուցեալ» (514): = Մ. Խոր. Բ. 43. «Ի բազում արութիւնս քաջութեան ցուցանել զայեկլին Սմբատայ»: Գ. 8. «Ոչինչ արութիւն քաջութեան ցուցեալ որպէս զհայրն» եւն: Բայց հմմտ. նաեւ Ագաթ. 100. «Բազում գործս արութեան քաջութեան եւ անդ ցուցեալ»: Սովորական տեղիք մը, որուն համար հարկ չկար որ եւ է աղբիւրի դիմել:

7. Յովհ. Ոսկեր. «ոչ աչառանօք առ փառաւորս զմարդահաճութիւնն ցուցանէր...

*եւ էր... անձանձրոյթ յուսուցանելն եւ յոյժ օգտեցուցանէր զլսողսն»* (*էջ* 498)։ = *Մ. Խոր. Գ.* 67. *«Ցանգի ամբարտաւանութիւն եւ մարդահաճութիւն ի նորա վարս տեղի գտանել երբեք ոչ կարացին... վասն զի դոյր... սիրով՝ անկեղծաւոր, ուսուցանելով անձանձրոյթ»։ Մեծ Սոկրատ ունի. «Եւ յուսուցանել յոյժ էր օգտեցուցանել զլսողացն վարս»* (498)։ *Ուստի երկրորդ նախադասութեան մէջ խմբագրէն կարող է ըլլալ միայն «անձանձրոյթ»։ Մեծն չունի նաեւ «մարդահաճութիւն» բառը։ Կարելի՞ է հաւատալ թէ Փ. Սոկրատ այս երկու բառերու համար Մ. Խորենացւոյ դիմած ըլլայ։ Բայց գիտենք քաջ, թէ Մովսէս փոխ առած է իր առաջին պարբերութիւնը Ընդարձակ Սեղբեստրոսի Վարքէն* (*էջ* 699). *«Վասն զի ամբարտաւանութիւն եւ մարդահաճութիւն առ ի նորա վարս տեղի գտանել ոչ ուրեք կարացին. վասն զի դոյր տեսլեամբ հրեշտակական, բանիւ տրամապայծառացեալ» են*[1]։ *Հաւանական է որ Մովսէս «ուսուցանելով անձանձրոյթն» ալ փոխ առած ըլլայ Փոքր Սոկրատէն։*

8. *Գրիգոր Սքանչելագործ «խրատեալ ի նմանէ* (*յՈրոգինեայ*)*՝ զճշմարիտ իմաստութեան գցոյցս եւ հաստ եղեալ ամենայն նորա իմաստութեան, զկարեւորն* հաւաքեալ ի միտսն, *գնայր կոչեցեալ ի ծնողացն»* (372)։

[1] *Գր. Խալաթեան, Մ. Խոր. նորագոյն աղբիւրների մասին, էջ* 16—23։

Մեծն ունի. «եւ ի նմանէ խրատեալ զճշմարիտ իմաստասիրութիւնն, յետ այնորիկ ի հայրենիս ծնողացն կոչեցեալ լինէր»: = Մ. Խոր. Գ. 53. «Հանդամանք ամենայնին որպէս յաման ինչ ի միտս նորա հաւաքեցաւ»: Գրիգոր Սքանչելագործի Վարքին մէջ կ'ըսուի. «Իբրեւ զգանձս ոսկւոյ եւ արծաթոյ ժողովեալ զամենակատար շնորհս Գրիգորի (առ ոտս Որոգինեայ)՝ դառնայր յաշխարհն իւր» (Վարք եւ Վկ. Սրբոց, Ա., 318): Հոփ. Սոկրատի «եւ հասու եղեալ — ի միտսն» Խմբագրէն կ'երեւայ, որ ունի իր առջեւ Գրիգորի Վարքը: Կարող էր նա փոխանակ «ժողովեալ»ի փոխ առած ԸՍալ Խորենացիէն «հաւաքեալ ի միտս»:

9. «Եւ գրով հրամայէր... անկասկած ունել զեպիսկոպոսութիւնն» (571): Մեծն ունի. «Գրէր... մի՛ մինչ ի Թէոդոսի տրամութենէն խռովականաց կասկած ունել» (572): = Մ. Խոր. Ա. 13. «Եւ հրամայէ նմա զայն իշխանութիւն անկասկածաբար ունել»: Համառօտողը «մի... կասկած ունել» վերածած է «անկասկած ունել». եթէ փոխառութիւն կայ հոս, այդ Մովսէսն է որ կը բանաքաղէ:

10. «Վասն առաւել շնորհացն եւ հռչակեալ անուանն» (531): = Մ. Խոր. Գ. 3. «Ի հռչակեալ յանուանէն Գրիգորի ակնածեացեն»: Խմբագրին է տեղիքս, որ աչքի առաջ ունեցած է Ոսկեբերանի Վարքը. ուր կ'ըսուի. Ակակ «ոխայր ընդ երանելին Յոհան վասն

հռչակաւոր անուանն»: «Հռչակաւորը հռչա-
կեալի վերածելու համար հարկ չկար կար-
ծեմ Մ. Խորենացւոյ դիմելու: Հմմտ. Ղ.
Փարպ. 187. «առ առն հռչակելոյ ի բնակչաց
գաւառին յամենայն կրօնաւորութիւնս»:

11. «Բարեբախտիկ եղեալ Թագաւո-
րեաց» (711): Խոր. Գ. 48. «Բարեբախտիկ
եղեալ քաջափառութեամբ»: Խորենացի բա-
րեբախտիկ եւ քաջափառութիւն բանաքաղած
է Փիլոնէն: Փ. Սոկրատի տեղիքը Խմբա-
գրէն է. ուստի հաւանօրէն փոխառութիւն
Խորենացիէն:

12. «Յայնժամ գայ ի Պարսից հրովար-
տակ խնդրել զխաղաղութիւն. իսկ նա (Յու-
լիանոս կայսր) ոչ ընդունէր. զի արժանն
քարշէր ի մահ» (265): = Մ. Խոր. Գ. 17.
«Զայս տեսեալ Տիրանայ՝ խելագարեալ գնաց
առ նա (Շապուհ). քանզի արժանն տանէր
զնա ի տեղի հատուցման»: Այս տեղ Փ.
Սոկրատ նկատի ունի Իմաստ. ԺԹ. 4. «Զի
ձգէր զնոսա արժանն յայնր վախճանի տագ-
նապ»: Ինձ կը թուի թէ աւելի սկզբնական
է եւ տեղւոյն պատշաճաւոր Փ. Սոկրատի
յառաջբերութիւնը, ուր «ձգէր» եւ «քարշէր»
հոմանիշ են, քան Մ. Խորենացւոյ տեղիքը:
Մովսէս հօս Փոքր Սոկրատի ազդեցութեան
տակ է: Թէպէտ հօս Մեծ Սոկրատ չունի այս
տեղիքը, բայց կարող է յաւելուածս Համա-
ռօտողին ըլլալ:

13. «Եւ առաքեաց (Թէոդոս կայսր) հրա-
ւիրակս գալ ի ժողով ի Կոստանդնուպոլիս.

1. Դամասոս ի Հռոմայ, 2. *Տիմոթէոս Աղեքսանդրի*, 3. *Կիւրեղ Երուսաղեմի*, 4. *Մեղիտոս Անտիոքայ*... < *եւ* 5. *Ասքողիոս ի Թեսաղոնիկոյ* > եւ 6. Բասիլ Կեսարացի եւ 7. Գրիգոր Նիւսացի եղբայր Բարսղի եւ 8. Ներսէս Պարթեւ Հայոց Մեծաց, զոր Վաղեսի էր արտաքսաահմանեալ եւ Թէոդոսի ածեալ՝ ունի մեծարանօք մինչեւ հաւատն ստուգեսցի[2] ի ժողովն: *Եւ ժողովեցան ճՆ եպիսկոպոսք* ուղղափառութեան խոստովանողք եւ փառաբանիչք եւ երկրպագուք համագոյ ամենասուրբ Երրորդութեան» (414—416): *Ընդգծուած տողերը կը պակսին Մեծ Սոկրատի մէջ*:

*Մովսէս Խորենացի* (Գ. 33) «*Սա* (*Թէոդոս Ա.*) *դարձոյց զամենայն հարս սուրբս, որք յաղագս ուղղափառութեանն արտասահմանեալ էին ի մետաղս. ընդ որս եւ զմեծն* Ներսէս ածեալ *առ իւր ի Բիւզանդիոն*՝ պահէ մեծաւ պատուով, մինչեւ ճշմարտութեանն ստուգեցաւ հաւատ, *որ յաղագս ամբարշտին Մակեդոնի հայհոյութեանցն*...: Եւ ժողովեալ *սուրբ հարքն ի թագաւորեալ քաղաքն Բիւզանդիոն*՝ 1. Դամասիոս Հռովմայ[3], 2. *Նեքտարիոս Կոստանդնուպօլսի*, 3. Տիմոթէոս Աղեքսանդրի, 4. Մելիտոս Անտիոքու, 5. Կիւրղոս Երուսաղեմի, [*սուրբն Ներսէս ի Հայոց մեծաց*][4], 6. Գրիգորիոս Նիւսիայ,

[2] *Հմմտ. նաեւ էջ* 752. «*Զի ճշմարտութեան ստուգեսցի հաւատ*»:

[3] *Սոկրատ, էջ* 404:

[4] *Այստեղ ճառընտիրները*:

7. Գեղասիոս Կեսարու[5], 8. Գրիգորիոս Նաժիանձու, 9. Անփիլոքիոս Իկոնիու[6] եւ այլ եպիսկոպոսք, միաբանգամայն ձՇ հարք, որք նզովեալ մերժեցին զՄակեդոն եւ զամենայն հոգեմարտսն»։

Այս տեղ վճռելու համար Փոքր Սոկրատի եւ Մ. Խորենացւոյ երկցութեան եւ կրտսերութեան հարցը հարկ է նախ նկատի առնել այն աղբիւրները, որոնցմէ օգտուած է Մ. Խորենացի կազմելու համար Կ. Պոլսոյ ժողովին ներկայ եպիսկոպոսներու ցուցակը։ Մեծ Սոկրատ չէ տուած գլխաւոր եպիսկոպոսներու ամփոփ ցանկ մը։ Հայ գրականութեան մէջ պահուած է ժողովոյս մասին երեք իրարմէ անկախ տեղեկութիւններ, որոնք են.

ա. Կիւրիոն Վրաց կաթողիկոսի Թուղթ առ Աբրահամ Հայոց Կաթողիկոս (Արարատ, 1902, էջ 569). «Երկրորդ ժողովն եղեւ ի Կոստանդնուպոլիս ձՇ սուրբ Հարցն ի թագաւորութեան Թէոդոսի Մեծի։ Եպիսկոպոսք էր 1. ի Հռոմ Դամասոս, 2. յԱղեքսանդրիա Տիմոթէ, 3. յԱնտիոքա Մելիտէ, 4. ի Կոստանդնուպոլիս Նեքտաոիոս, 5. յԵրուսաղէմ Կիւրեղ»։

բ. Վասն տիեզերական Սինհոդոսացն, թէ երբ... եղեն (Zeitschrift für armenische Philologie, 1, 1903, էջ 185). «Երկրորդ տիեզերական սինհոդոսն եղեւ ի Կոստանդնուպոլիս ի թագաւորութեանն Թէոդոսի

[5] Տարբերակներն՝ Գեղամիոս, Գեղասիոս, Բասիլիոս։

[6] Սոկրատ, էջ 420։

Մեծի. 1. Դամասոս պապ Հռոմայ, 2. Նեքտառիոս արքեպիսկոպոս Կոստանդնուպոլսի, 3. Տիմոթէոս պատրիարգ Աղեքսանդրի, 4. Մելիտոս Անտիոքայ... 5. Կիւրղոս Երուսաղէմի, 6. Գեղասիոս (տպ. Գելլիարոս) Կեսարու Պաղեստինացւոց, 7. Գրիգորիոս Աստուածաբան... գնաց հրաժարեալ ի Նազիպզու. էին ժողովեալ սուրբ Հարքն ՃԾ»:

գ. Գիրք Կայսերաց (Անանուն ժամանակագրութիւն, էջ 53—54). «Վաղենտիոս եւ Վաղէս... ի սոցունց աքսորեցաւ հայրապետն Հայոց սուրբն Ներսէս ի հեռաւոր կղզիս Ովկիանու ամս Թ: Եւ ի սոցունց աւուրս էին սուրբ վարդապետքն Գրիգոր Նիւսացի եղբայր Բարսղի, Բարսեղ Կեսարու եպիսկոպոս, Գրիգոր Նազազացի Աստուածաբան: Թէոդոս Մեծ... ի սորա երկրորդ ամին եղեւ ժողովն ի Կոստանդնուպոլիս ՃԾ եպիսկոպոսաց վասն Մակեդոնի հոգեմարտի... Եւ էին գլխաւորք ժողովելեացն 1. Կիւրղիոս Երուսաղեմի, 2. Տիմոթէոս Անատաց(ուած) Աղեքսանդրէ, 3. Մեղիտոս Անտիոքայ, 4. Գրիգոր Նիւսեայ, 5. Գեղասիոս[7] Կեսարեայ Պաղեստինացւոց, 6. Դամասոս Հռովմայ, 7. Գրիգոր Աստուածաբան Կոստանդնուպոլսի, զորոյ աթոռ ընկալաւ Նեկտառիոս, ձեռնադրեալ ի ժողովոյն, [8. Մեծն Ներսէս Հայոց][8]»:

---

[7] Տարբերակները՝ Գեղամիոս, Դեմեղիոս, Գեղասիոս:

[8] Այսպէս Վենետիկի Թ. 261 ձեռագրիը:

Խորենացւոյ կարգը յէականս կը համըն- թանայ «Վասն տիեզերական ժողովոյ» գրու- թեան ցանկին հետ: Ինքը միայն կը յիշէ «Ամփիլոքիոս Իկոնիոն» այն է Ամփիլո- քիոս, որ իրօք ալ ներկայ էր ժողովին: Այս կէտի մէջ իր աղբիւրը անծանօթ կը մնայ մեզի: Եթէ Մեծ Սոկրատէն առած է անունս (էջ 420), պէտի սպասուէր, որ նա յի- շէր նաեւ Եղադիոս Կեսարիոյ (յաջորդն Բարսղի), Պետրոս Սեբաստիոյ (եղբայրն Բարսղի եւ Գրիգոր Նիւսացւոյ), Եւղոգիոս Եդեսիոյ եւն, որոնք կը յիշատակուէին նոյն էջի մէջ: «Դամասոս Հռոմայ» ժամանակա- կից էր, բայց ոչ ներկայ ժողովին:

Անուանացանկիս մէջ Մ. Խորենացի ան- կախ է Փ. Սոկրատէն եւ ունեցած է իրեն ընտիր աղբիւր մը: Իսկ Փ. Սոկրատի խմբագրի «Բարսեղ Կեսարացին» առանց տա- րակուսի աղաւաղուած մէկ ընթերցուածն է Գեղասիոսի Կեսարիոյ Պաղեստինացւոյ: Վե- րոյն նշանակեցի, որ նաեւ Խորենացւոյ ինչ ինչ օրինակներու մէջ անունս աղճա- տուած է եւ վերածուած Բարսղի. անշուշտ Կեսարացի տեղանուանականը թելադրած է հայ ականջին անլուր «Գեղասիոս» անունը կարդալ Բարսեղ:

Փ. Սոկրատի խմբագիրը եպիսկոպոսաց անուանացանկի մէջ առած է նաեւ «Ներսէս Մեծն Պարթեւ»: Ասոր կից բացատրականը, որ բառ առ բառ նոյն է Մ. Խորենացւոյ հա- մապատասխան տեղիքին, տարակոյս չի թո-

գուր, որ խմբագիրը գտնուած է Մ. Խորենացւոյ ազդեցութեան տակ։ Զարմանալի է նոյնպէս Մ. Խորենացւոյ խղճահարութիւնը։ Իր ժամանակագրութեամբ Ներսէս աքսորէն կը վերադառնայ Կ. Պոլիս եւ կը մնայ հոն ժողովի աւարտութեան, առանց մասնակցելու ժողովին։ Այս կէտի մէջ աւելի տրամաբանօրէն ընթացած է խմբագիրը։

Փաւստոս Բիւզանդի հաղորդած պատմութիւնը, թէ Վաղէս կայսր (364—378) «ետ հրաման ընկենուլ զնա (զՆերսէս) ի կղզի մի մեծ Ովկիանոս ահագին ծովու» եւ թէ Ներսէս իրեններով «ամս ինն» մնաց այն տեղ, հայ ժամանակագիրներուն չփութութիւն պատճառած է։ Առաջին անգամ Կայսերաց գրքի անանուն հեղինակն է, որ տեղիքս ժամանակագրութեան մէջ առած է. «Վաղենտիոս եւ Վաղէս... ի սոցունց (!) աքսորեցաւ հայրապետն Հայոց սուրբն Ներսէս ի հեռաւոր կղզիս Ովկիանու ամս Թ.»։ Մ. Խորենացի այս աքսորի վերջին տարին համարած է Վաղէսի մահուան տարին (378), եւ վերադարձը Թէոդոս Մեծի թագաւորութեան սկիզբը. այս հաշուով մօտաւորապէս կը զուգադիպէր Կ. Պոլսոյ 381ի տիեզերական ժողովին։ Մեզի սակայն ուղիղ ժամանակագրութեան տուեալներէն ծանօթ է, թէ Ներսէս վերադարձաւ 367ին եւ վախճանեցաւ 372ին. ուստի յիշեալ 9 տարիները հարկադրաբար պէտք է իյնային 358—367 տարի-

ներուն, այսինքն Կոստանդինի, Յուլիանոսի եւ Վաղէսի օրերուն:

Որչափ ալ հակաժամանակագրական է Ներսէսի մասնակցութիւնը 381 Տիեզերական ժողովին, այսու հանդերձ սկսեալ Թ. դարու վերջերէն ստէպ կրկնուած է նոյնը հայ դրուածքներու մէջ. կը յիշեմ.

ա. Մակս Ժողովոց Հայոց. «Բ. Ժողով արար սուրբն Ներսէս յորժամ դարձաւ ի Կոստանդնուպոլսի ժողովոյն ՃԾ սուրբ Հարցն, որք անդ գումարեցան ի կործանումն Մակեդոնի[9]»:

բ. Թուղթ Գագկայ Վասպուրականի Թագաւորին. «Նոյնպէս եւ Մեծն Ներսէս յերկրորդ ժողովին ՃԾ սուրբ Հարցն որ ի Նոր Հռոմ[10]»:

գ. Թուղթ Խաչիկ կաթողիկոսի. «Նոյնպէս եւ զՃԾ սրբոց Հարցն որ ի Կոստանդնուպոլիս ի ձեռն սրբոյն Ներսէսի[11]»:

դ. Զրոյցք Կոմիտասայ. «Որպէս եւ Կոստանդիանոս (գրեաց) առ սուրբն Գրիգոր եւ Մեծն Թէոդոս առ սուրբն Ներսէս» գալ ի ժողովն Նիկիայ եւ Կ. Պոլսի[12]:

ե. Թուղթ Ստեփաննոս Սիւնեցւոյ առ Գերմանոս. «Նոյնպէս ի Կոստանդնուպոլիս ՃԾ՝ ի կործանումն Հոգեմարտին ժողովեալ սուրբ հայրապետքն եւ որ մերն Ներսէս նո—

---

[9] Գիրք Թղթոց, 220:
[10] Անդ, 295:
[11] Անդ, 304:
[12] Անդ, 492:

րին չառաւիղ ընդ նոսա զնմանութիւն հաւատոյ նմանապէս մեզ առբերելով միաբանական համարոյ ամենասուրբ Երրորդութեան Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն սրբոյ[13]» :

Վարդան Արեւելցի Կ. Պոլսոյ ժողովական հարց թուին մէջ կը յիշէ նաեւ «Ներսէս Հայոց» (էջ 82. հմմտ. նաեւ Կիրակոս Գանձակեցի, էջ 13) :

Յովհ. Դրասխանակերտցի կաթողիկոս Մ. Խորենացւոյ խօսքերը ճարտարութեամբ իւրացուցած է. «Եւ ապա որք ի մետաղս ի Վաղեսէ արտասահմանեալք էին՝ (Թէոդոս) դարձոյց յիւրաքանչիւր տեղիս, ընդ որս եւ զմեծն Ներսէս ածեալ առ իւր պահէր՝ մինչեւ ի ձեռն նորա զամբարիշտ հայհոյութիւնն Մակեդոնի ի ստուգութիւն հաւատոյ ճշմարտութեան դարձուցէ : Եւ ապա ժողով եպիսկոպոսացն միանգամայն իբրեւ ՃԾ (հարց) ի Բիւզանդիոն արարեալ՝ նզովեալ մերժեցին ի բաց զՄակեդոն եւ զամենայն Հոգեմարտսն[14]» :

Ներսէսի մասնակցութիւնն Կ. Պոլսոյ ժողովին Փ. Սոկրատի Խմբագրին ստեղծագործութիւնն է :

14. «Յետ... արտաքսահմանութեան Արիոսի ի մետաղս» (39) : «Վարեցին ի մե–

---

[13] Վիեննա, Թ. 594, Թղ. 235 ա: Հմմտ. Գիրք Թղթոց, էջ 374, ուր կը բացակայի տեղիքս:
[14] Թիֆլիս 1912, էջ 50:

տաղս» 164· «արտաքսել հրամայէր ի մետաղս» 179· «զամանս աքսորեցեր ի մետաղս» (394)։ Մեծն՝ աքսորք, աքսորիք, աքսորումն, արտասահմանել են։ = Մ· Խոր· Բ· 90· Ինքնակալն արտասահմանեաց ի մետաղս։ Բ· 85, Դնել ի մետաղս։ Գ· 33, արտասահմանեալ էին ի մետաղս։

Նորայր կը համարի թէ «ի մետաղս» յատուկ է միայն Մ· Խորենացւոյ· ուստի Փ· Սոկրատ պարզապէս բառագող է։ Բայց ունինք բառս նաեւ Յովհ· Ոսկեբերանի Վարքին մէջ, զոր կարդացած է Խմբագիրը· «Խորհեցան... արտաքսել զուրբն յաթոռոյն եւ ընկենուլ ի մետաղս» (ՎՎՍ· Բ· 134)։ Ինձ կը թուի, թէ հոս Համառօտողն է որ նախասիրած է բառս· եւ Մ· Խորենացին իր կարգին կիրարկած է նոյնը անվարան։ Ինչ որ դասական շրջանին կ՚ըսուէր «ի քրէական մետաղս» դատապարտուիլ, միջին դարուն պարզուած եւ ըսուած է «ի մետաղս» եւ լայնաբար իմացուած «աքսոր»։

15· Եւ յոյժ տրտմեալ եւ տարակուսեալ հօգայր (Կոստանդիանոս), թէ զինչ արասցէ առ վազին ի պատերազմի· եւ տրտմեալ ննջէր (715)։ = Խոր· Բ· 83· Կոստանդիանոս «պարտեալ ի մարտս եւ տրտմութեամբ մեծաւ ննջեալ»։ Երկուքն ալ նկատի ունին Սեղբեստրոսի Վարքը· Կոստանդիանոս կայսր «պարտեալ... էր տրտմեալ եւ յոյժ վրդովեալ... ննջէր» (714)։

## 2․ ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ ԲԱՆԱՔԱՂ Փ․ ՍՈԿՐԱՏԷՆ

Դիտեցինք արդէն վերագոյն յառաջ բերուած մանր համեմատութիւններու մէջ, թէ կային տեղիքներ, որոնք Մ․ Խորենացին բանաքաղ կը ներկայացնէին: Այս խորղութիւնը տաւել չափով պիտի հաստատեն յետագայ ընդարձակ հատուածները, ուր Փոքր Սոկրատ, այսինքն Համառօտը ունի իր առաջ կա՛մ Մեծ Սոկրատը կամ Սեղբեստրոսի Վարքը, եւ ի պաշտօնէ կը համառօտէ․ իսկ Մ․ Խորենացի իբրեւ պատմագիր կ՚օգտուի դանազան աղբիւրներէ, անոնց մէջ են նաեւ Մեծ Սոկրատ, Սեղբեստրոսի Վարքն եւ Փոքր Սոկրատ: Նա հարկ չէ տեսած ամէն անգամ Ընդարձակ բնագիրներու դիմել, քանի որ Համառօտն լիապէս կը դոհացնէր իր պէտոյքը: Խորենացի իր աղբիւրներէն կ՚օգտուի ոչ միայն պատմական դէպքերու համար, այլ եւ պատմական պատկերներ ձեւելու համար: Առաջին հատուածը, զոր պիտի ներկայցնեմ կրկին բնագիրներով, չահագործած է Մովսէս նկարագրելու համար Ներսէսի սրանութիւնը մահադեղով՝ պատմական այլ տարագի տակ, որուն համար աղբիւր ծառայած էր իրեն Փաւստոս:

| Մեծ Սոկրատ, էջ 6—7: | Փոքր Սոկրատ, էջ 6—7: |
|---|---|
| Իսկ Լիկիանոս... տայր զքրիստոնեայս. եւ յայտնի հալածանս ի վերայ նոցա առ ահին Կոստանդիանոսի երկնչէր յարուցանել, այլ | Իսկ Լիկիանոս տայր զքրիստոնեայսն. բայց յայտնի ոչ իշխէր յինքնակալէն Կոստանդիանոսէ հալածել. եւ զի ոչ ունէր |

ծածուկ դրադումս նեղէր․ ապա եւ յայտնի վնասել նոցա ձեռնարկէր․․․ ։ Իսկ իբրեւ զայս․․․ բռնաբար գործէր, ոչինչ ծածկէր ի Կոստանդիանոսէ․․․ Երդնոյր երդումն յոյժ՝ մի երբեք զրնութիւն խորհիլ․․․ ոչ դադարէր բռնաբար խորհել եւ ի վերայ քրիստոնէից հալածանս յարուցանել․․․ ։ Բանզի անպատմելիս կրէին հալածեալքն յանձինս իւրեանց եւ յըստացուածս ։

յոյժ՝ գաղտնի վնասել ջանայր զքրիստոնեայսն․ եւ այս ոչ ծածկէր յինքնակալէն ։ Գրէր եւ յղէր պատգամ մի՛ խորհել զքրիստոնէից զչար այլ զբարի․․․ երդնոյր երդումն․․․ ոչ դադարէր ի խորամանկութենէն դիւաց ․․․ զի [խաւարեալ էր մտօք եւ օտարացեալ յԱստուծոյ եւ] 15 ի ցանկութիւնս ընչից եւ ախտից հիմն արկեալ էր ։

Մովսէս Խորենացի (Գ․ 38)․ «Բայց զի (Պապ) ամօթալի ախտիւ զաղրագործ էր եւ յանդիմանեալ կշտամբէր ի Մեծէն Ներսիսէ, ընդ ակամբ հայէր ի նա՝ խորհելով չարիս․ եւ ոչ իշխէր յինքնակալէն Թէոդոսէ յայտնի ինչ առնել նմա չարիս, դեղ համու գաղտնի արբուցեալ սրբոյն Ներսիսի՝ ելոյծ ի կենցաղոյս» ։

Այս տեղ Համառօտողը հետեւած է Ընդարձակին քայլ առ քայլ եւ համառօտած է կարեւորները ըստ իմաստին․ նա պէտք չունէր առ այս բառ մուրալու այլուստ ։ Բայց Մ․ Խորենացի ստեղծագործող է հոս ի միասց․ Փոքր Սոկրատ պատկեր մատակարարած է իրեն, պատկերին հետ նաեւ բա–

---

15 Հմմտ․ էջ 732․ «Որոց խաւարեալ են միտք իւրեանց անհաւատութեամբ եւ օտարացեալ յԱստուծոյ ճշմարտէ»․ եւ Եփես․ Դ․ 18 ։

ներ։ Զուարճալի է Խորենացւոյ մխամխտ արտայայտութիւնը «դեղ մահու գաղտնի արբուցեալ որրոյն». բայց նա կիրարկած է բառս իբրեւ հականիշ «յայտնի» մակբային, նմանութեամբ նախօրինակին։ Ուշադրաւ է հոս նաեւ «Մեծն Ներսէս». Մովսէս կ՚են-թադրէ «Փոքր» Ներսէսներ ալ, որպիսի էին ապահովապէս Ներսէս Բ. Աշտարակեցի (548—557) եւ Ներսէս Գ. Շինող (640—661)։

Այս կարգէն է Զիրաւի դաշտի կռիւը Մ. Խորենացւոյ քով (Գ. 37), ուր ի մէջ այլոց պատկեր եւ բառեր քաղած է Փոքր Սոկրատէն (էջ 479—483)։ Մանր համեմա-տութիւնը տուած է Գր. Խալաթեան[16]. Նո-րայր Բիւզանդացւոյ[17] ջանքերը հակառակը ապացուցանելու կը՚ համարիմ անպատակ։

## 3· ՄՈՎՍԷՍ ԽՈՐԵՆԱՑԻ Կ՚ՕԳՏՈՒԻ ՍԵՂԲԵՍՏՐՈՍԻ ԸՆԴԱՐՁԱԿ ՎԱՐՔԷՆ, Փ· ՍՈԿՐԱՏԻ ԽՄԲԱԳԻՐԸ ԽՈՐԵՆԱՑԻԷՆ

Արդէն ծանօթ է, թէ Մ. Խորենացի ու-նեցած է ձեռքի տակ Սեղբեստրոսի ընդար-ձակ Վարքը. անկէ քաղած է ոչ միայն բա-ռեր եւ ասութիւններ, դ. օր. Սեղբեստրոսի նկարագրին կերպագրութիւնը գործածած է գծելու Մեսրոպի նկարագիրը, այլ եւ Կոս-տանդիանոսի ծննդեան, թագաւորելու եւ

[16] Մ. Խորենացու նորագոյն աղբիւրների մասին, էջ 12—16։
[17] Մշակ, Թ. 216 եւ 217։

մկրտութեան պատմութիւնը: Այս մասը Փ. Սոկրատի Համառօտը պատմած էր անշուշտ կարճ ի կարճոյ. բայց Խմբագիրը ընդլայնած է զայն նոր յաւելուածներով ի բանից Մ. Խորենացւոյ:

փոքր Սոկրատ 719—721·

*Դիոկղետիանոս «խորհուրդ արարեալ ընդ սինկղիտոսին՝ փեսայացուցանելով զդուստր իւր Մաքսիմէոս (Կոստանդիանոսի)... յարգարէին զհարսանիսն [ըստ օրինի թագաւորաց] — զերապայծառ [եւ առատաբար եւ բազում փառօք մեծարեաց զորդիացեալն իւր եւ զթագաւորութիւնն եւ զամենայն ինչս նմա խոստացաւ տալ:]*

*Այսուհետեւ այսպէս եղելոյ եւ զբու լինելոյ ժամանակի հարսանեացն, ապա հասանէր համբաւ մահու Կոստանդեայ* (var. *Կոստայ*) *հօր Կոստանդիանոսի կայսեր: Եւ առեալ զկին եւ զօրս իւր գնացեալ եկն ի Հռոմ. եւ թագաւորեաց փոխանակ հօրն իւրոյ ի Հռոմ...:*

*[Բայց հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսինտեայ ի դստերէն Դիոկղե-*

Մ. Խորենացի Բ. 83·

*Ընդ նոյն աւուրս լինին հարսանիք եւ Մաքսիմինայ դստերն Դիոկղետիանոսի ի Նիկոմիդիայ՝ փեսայանալով նմա Կոստանդիանոսի կեսարի որդւոյ Կոստայ թագաւորին Հռոմայ...: Եւ յետ ոչ բազում ամաց մեռեալ Կոստանդ, փոխանորդ նմա տայ Դիոկղետիանոս զնորին որդի եւ զիւր որդիացեալն Կոստանդիանոս:*

*Բայց յետոյ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ, ի դստերէն Դիոկ-*

*տիանոսի եւ արար հալածանս եկեղեցւոյ] Կոստանդիանոս ի ձեռն կնոջ իւրոյ պատրեալ. (արար հալածանս Եկեղեցւոյ) եւ բազումք եղեն վկայք եւ խոստովանողք...:*

*ղետիանոսի, յորոյ հալածանս եկեղեցւոյ եւ դրադումն վկայեալ:*

*...[Վասն որոյ անսեալ զայս ամենայն չարիս]... Սեղբեստրոս հայրապետն [առնու զուխտ եկեղեցւոյն եւ] խոյս տայր յանապատ տեղի ի Սերապիոն*[18] *լեառն [եւ կայր յաղօթս անդադար] հանդերձ նորօք (կղերիկոսօքն) [առ Աստուած եւ պահօք... մի անտես լիցին]:*

*...ի ձեռն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռոմայ, որ ի նմանէ հալածանացն թագուցեալ էր ի Սորակտիոն լեառնն...:*

*Այստեղ դուրս ցցուած են Խմբագրին աւելադրանութիւնները: Կախումը Խորենացիէն յայտնապէս կը տեսնուի* «Բայց հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմիանեայ, ի դստերէն Դիոկղետիանոսի եւ արար հալածանս եկեղեցւոյ *Կոստանդիանոս ի ձեռն կնոջն իւրոյ պատրեալ եւ բազումք եղեն վկայք...» ուր ընդգծուած բառերը քաղուած են Խորենացիէն. իսկ «ի ձեռն կնոջն իւրոյ պատրեալ», որ կրկնութիւն է, հաւանօրէն մնացորդ մըն է Համառօտութենէն: Խորենացւոյ «ի նմանէ* հալածանացն թագուցեալ էր ի Սորակտիոն լեառնն» *փոխառութիւն է*

---

[18] *Տարբերակք՝ Սերեպիոն. յն.* ἐν τῷ Σοραπτινῳ ὄρει, *Հայն՝ Սերապինտոսին. Ճառընտիրն՝ Սերապիոն:*

*Ընդ. Վարքէն: Ուշադրութեան արժանի է* «հանդերձ *նոքօք» (տպ. չունի նոքօք), որ կը համապատասխանէ Ընդարձակին «հանդերձ կղերիկոսօք» ասութեան, ուստի նաեւ հոս մնացորդ մըն է Համառօտութեան. խմբագիրը քիչ վերը փոխանակ այս «կղերիկոսօք» բառին դրած էր «առնու զուխտ եկեղեցւոյն»:*

*Այսպէս նաեւ յետագայ հատուածին մէջ, ի մասին Կոստանդիանոսի հիւանդութեան եւ բժշկութեան: Հոս Մեծ Սոկրատ կը գրէ. բժշկելու կ'աշխատէին բժիշկներ եւ կախարդներ, ոչ միայն տեղական «այլ եւ որք ի Պարսից ածեալք» չկրցան բժշկել կայսեր հիւանդութիւնը: Մ. Խորենացի կը գրէ թէ կայսրը «յղեաց առ Տրդատ առաքել նմա դիւթս ի Պարսից եւ ի Հնդկաց, սակայն եւ այնք ոչ հասին նմա յօգուտ»: Խմբագիրը նախ ըստ Սոկրատայ, այսինքն ըստ Փոքր Սոկրատայ, կը հաստատէ թէ «բժիշկք ոչ կարացին օգնել» եւ կ'աւելցնէ «օն անդր եւ ոչ Պարսից եւ Հայոց» բժիշկք: Այս «Հայոցը» Մ. Խորենացւոյ «Հնդկաց» բժիշկներն են: Հոս կ'երեւայ թէ խմբագիրը «ի Հնդկացը»,* Հայոց *մեկնած է, այնու որ առաքողն Հայոց Տրդատ թագաւորն է:*

*Մեր եզրակացութիւնն է. 1. Մ. Խորենացւոյ ծանօթ եղած է Սոկրատի Համառօտութիւնը: 2. Այս վերջինս Թ. դարու վերջերն ենթարկուած է խմբագրութեան: 3. Խմբագիրը օգտուած է ի մէջ այլոց Մ. Խորենացւոյ Պատմութենէն:*

4. Ս. ՆՈՒՆԷԻ ՎԱՐՔԸ Փ. ՍՈԿՐԱՏԻ ՔՈՎ

*Այժմ միայն կրնանք մերձենալ այս հարցին, ըստ արժանւոյն գնահատելու համար այն տեղեկութիւնները, զորոնք կը հաղորդէ նոյն Փոքր Սոկրատ «Վրաց դարձի» մասին։ Այս հատուածը չական մասով համառօտութիւնն է Մեծ Սոկրատի Ա. 20 գլխին։ Կան սակայն հոն եկամուտ տարրներ, որոնք ժամանակավրէպ մը կը կազմեն Է. դարու վերջերը հրապարակ ելած գրութեան մը մէջ։ Այժմ, երբ տեսնուեցաւ, թէ նախկին Համառօտութիւնը Թ. դարու վերջերը նոր խմբագրութեան ենթարկուած է, այլ եւս դժուարին պիտի չըլլայ մատնանիշ ընել, թէ ի՛նչ աղբիւրէ մուտ գտած են հոն յաւելուածոյ մասերը։*

*Պատշաճ կը համարիմ ներկայացնել բնագիրը ամբողջութեամբ* (*էջ* 61—67), *համեմատութեամբ մեր երկու ձեռագիրներու։*

ԿՈՉՈՒՄՆ ՎՐԱՑ Ի ՀԱՒԱՏՍ ՔՐԻՍՏՈՍԻ ԸՍՏ ՆԱԽԱԽՆԱՄՈՒԹԵԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ Ի ՁԵՌՆ ԿՆՈՋՆ ՆՈՒՆԻԱՅ, ՑԸՆԿԵՐԱՑ ՍՐԲՈՒՀԻՈՅՆ ՀՌԻՓՍԻՄԵԻ ԵՒ ԿԱՆԳՆԵԼՆ ԶԽԱՉՆ[1]։

*Ընդ նոյն ժամանակս եւ Վրաց լինի կոչումն* ընծայութեան *հաւատոյ ըստ նախախնամութեանն Աստուծոյ։*

*Կին ումն լի պարկեշտութեամբ* զաստուածային *վարս* ստացեալ *ունէր.* հալածեալ վասն Քրիստոսի՝ գայ *ի Վիրս*, ի քա–

[1] *Տպ. գլուչս։*

դաշտն նախագահի, ուր էր *Թագաւորն Վրաց*: *Այս ոչ այն Վիրք են որք ի Սպանիայն*, այլ է սա[2] ի կողմն հիւսիսոյ, մերձ ի Պոնտոս:

*Եւ կինն ի մէջ բարբարոսաց բնակէր լի պարկեշտութեամբ ճգնաւորեալ պահօք եւ աղօթիւք՝* պաշտէր զԱստուածն երկնի եւ երկրի եւ *զարմացուցանէր զբարբարոսն*[3]:

*Ապա լինէր մանկան տղայոյ Թագաւորին հիւանդանալ: Տիկինն*[4] *հրամայէր դայեկին շրջեցուցանել զմանուկն ընդ կանայսն, թէ գտցի դեղ ինչ. եւ ոչինչ օգտեալ*[5]՝ *գայ առ* հալածեալ սուրբ *կինն: Իսկ նորա առեալ զմանուկն* ի գիրկս իւր[6] *առաջի բազմու-թեանն՝ (դնէր) ի* հանդերձս *մազեղէնս զոր ունէր. եւ* ամբարձ զաչսն յերկինս *եւ պարզ նոցա բարբառովն ասէ. Քրիստոս Աստուած, որ զբազումս բժշկեցեր, բժշկեա՛ զմանուկս* զայս յանուն քո, զի ծանիցեն սոքա, թէ դու ես Աստուած[7]: Եւ կնքեաց նշանաւ խաչին *զմանուկն* եւ *իսկոյն առողջ եղեւ*: Եւ ետ անդէն ի դայեակն եւ տարաւ առ մայր իւր. եւ պատմեաց որ ինչ եղեւն. եւ զարմացաւ: *Եւ եղ հռչակ զնմանէ* ընդ ամենայն երկիրն Վրաց:

[2] *Տպ. չունի «է սա»:*

[3] *Տպ. զբարբարոսն:*

[4] *Տպ. կինն:*

[5] *Տպ. գտեալ. Իջմ. Գ., օր. գտեալ օգտութիւն. տ՛ յայէս Վիեննայի Թ.* 623:

[6] *Տպ. իւր եդեալ:*

[7] *Յովհ. ԺԷ.* 1—3. *«Ամբարձ զաչս իւր յերկինս եւ ասէ. Հայր... զի ծանիցեն զքեզ միայն ճշմարիտ Աստուած»:*

*Յետ ոչ բազում ինչ աւուրց հիւանդացաւ եւ կին Թագաւորին. եւ կոչեաց* զսուրբ *կինն. եւ նա ոչ կամեցաւ երթալ* յապարանս թագաւորին, այլ ածել զնա յիւր տառապելապետ[8] տնիկն: *Եւ իբրեւ ածին՝* յարուցեալ կայր յաղօթս առ Տէր *եւ զնոյն բանս ասաց*[9]. եւ կնքեալ նշանաւ խաչին *եւ իսկոյն ողջացեալ* յարեաւ: Գնաց եւ պատմեաց թագաւորին զեղեալսն: *Եւ առաքէր*[10] *Թագաւորն պարգեւս բազումս* շնորհակալից կնոջն: *Իսկ նա անդէն դարձուցանէր զպարգեւսն. ասէ.* իմ պարգեւատուն[11] է Քրիստոս Աստուած, զոր պաշտեմս[12]. որ լնու զպէտս իմ որպէս կամի[13]: *Իսկ Թագաւորն* սքանչացեալ *չանմարանեալ* զայս ի միտս իւր՝ ոչ մոռանայր:

*Յետ աւուրց ինչ ելանէ յորս Թագաւորն: Պատահէ նմա այս ինչ. ունէր մեգային խաւար ուր էր որսն՝ զլերինս եւ զդաշտս, զի անապատ էր եւ անտեսանելի էր ճանապարհն. եւ յանհնարութեան եղեալ կարգայր զաստուածսն իւր. եւ ոչինչ օգտէր: Դարձեալ մտախորհ եղեալ՝ կոչել զԱստուած*

---

8 *Ուրիշ ձեռագիրներ՝ տառապեալ:*

9 *Հմմտ. Մատթ. ԻԶ.* 44. *«Գնաց կալ յաղօթս... եւ դարձեալ զնոյն բան ասաց»:*

10 *Տպ. առաքէ:*

11 *Տպ. պարգեւատու:*

12 *Տպ. պաշտեմն:*

13 *Հմմտ. Ա. Կորնթ. ԺԲ.* 11. *«Եւ բաժանէ իւրաքանչիւր որպէս եւ կամի». ԺԵ.* 38. *«Աստուած տայ նմա մարմին որպէս եւ կամի»: Յաճախապատում. Դ. «Լնու զպէտս պիտոյից ամենայն արարածոց»:*

*յօգնութիւն, զոր հալածական կինն պաշտէր.* եւ եթէ նովաւ լինի ելք խաւարիս՝ պաշտեցից զնա. եւ ասէ. Օգնեա ինձ Աստուած կնոջն, որ վասն քո հալածեալն է: *Եւ անդէն վաղվաղակի լուծանէր խաւարն եւ գնայր զճանապարհն ի տուն իւր ուրախութեամբ* եւ օրհնէր զԱստուած[14]:

*Եւ եկեալ պատմեաց կնոջն իւրում* եւ նախարարացն զեղեալ իրսն. եւ սքանչանային: *Եւ* աղաչեալ *զկինն կոչեաց ի տունն իւր. խօսեցաւ ընդ նմա, թէ Ո՞վ է Աստուածն զոր պաշտես սքանչելեօք: Իսկ նա* սկսեալ ի Գրոց *աւետարանեաց*[15] *զՔրիստոս* Աստուած փրկիչ աշխարհի[16]՝ առաջի ամենայն բազմութեան. *եւ Հաւատային* ասացելոցն ի նմանէ: Բազում եւ այլ նշանս եցոյց Տէր[17] *ի ձեռն սուրբ եւ պարկեշտ կնոջն: Եւ լինէր այնուհետեւ թագաւորն արանցն քարոզ եւ կինն՝ կանանցն* ի նմանէ վարդապետեալք, որ ի փառս Աստուծոյ:

Եւ հրամայէր ուրեմն կանգնել զնշան խաչին Քրիստոսի: Եւ զի ոչ էր գործ ճարտարի, արհամարհեալ լինէր ի բազմաց: *Իսկ սուրբ կինն կայր յաղօթս* զգիշերն ամենայն: *Եւ ի վաղիւն* լուսաւորեալ լինէր նշան խա–

---

14 *Հմմտ. Գործ. Բ. 9. «Զի գնայր եւ օրհնէր զԱստուած»:*

15 *Տպ. կ՚աւելցնէ՝ նմա:*

16 *Հմմտ. Ա. Յովհ. Դ.* 14. *«Զի Հայր առաքեաց զՈրդի իւր փրկիչ աշխարհի»:*

17 *Յովհ. Ի.* 30. *«Բազում եւ այլ նշանս արար Յիսուս»:*

չին, որ հիացոյց զհեռաւորս եւ զմերձաւորս: Եւ հաստատեցան ի հաւատս[18]:

*Յայնժամ հրամայէ չինել տուն աղօթից. եւ ոչ յապաղեն առնել զասացեալսն: Եւ գործաւորքն ոչ կարէին կանգնել զսիւնս տան[19] աղօթիցն մեքենայիւք իւիք[20]: Եւ բազմութիւնքն[21] հանդերձ թագաւորաւն թէպէտ եւ բազումս մրցեցան եւ ոչ կարացին կանգնել[22]: Իսկ սուրբ կինն կացեալ ի տեղւոջն՝ կայր յաղօթս. եւ իսկոյն սիւնքն կանգնեցան ի վերայ խարսխացն առանց մարդոյ եւ մեքենայից: Աղաղակեաց ամենայն բազմութիւնն ճշմարիտ զԱստուած կնոջն խոստովանեալ եւ մեծ գոլ զհաւատ թագաւորին* եւ տիկնոջն: Եւ մեծանայր անունն Տեառն[23]:

*Աստուստ լինի դաշնաւորութիւն Վրաց առ Կոստանդիանոս, որպէս. զի առաքեաց նոցա եպիսկոպոս եւ քահանայս, որ զկարգ եկեղեցւոյ ի նոսա հաստատեսցեն:*

Ըստ առաքելուհւոյ կնոջն քարոզութեան, որում անունն էր Նունի, յընկերաց սրբոյն Հռիփսիմեայ, որ ի Հայս կատարեցաւ: Թողում ասել որ յաղագս նորա է պատմութիւն եւ հաւատալն Հայոց մեծամեծ սքանչելեօք ի ձեռն Գրիգորի Պարթեւի խոս—

---

[18] *Գործ. ԺԶ. 5. Եկեղեցիք հաստատէին ի հաւատս:*

[19] *Տպ. չունի՝ տան:*

[20] *Տպ. իրիք:*

[21] *Տպ. բազմութեան:*

[22] *Ձեռագիրներէն ոմանք չունին՝ կանգնել:*

[23] *Գործ. ԺԹ. 17. «Եւ մեծանայր անուն Տեառն Յիսուսի»:*

տովանողի· որ ստոյգ ցուցանէ նորին Գիրք:
Եւ այս ամենայն լինէր է նոյն ամս:

Յաւելուածները խմբագրի ձեռքէն են: Ան իր առաջ ունեցած է Մ. Խորենացւոյ Հայոց Պատմութեան Բ. 86 գլուխը, ուսկից կ'օգտուի լրացնելու համար Փ. Սոկրատի հաղորդած տեղեկութիւնները Վրաց դարձի մասին: Վերլուծենք մի առ մի:

«Ընդ նոյն ժամանակս եւ Վրաց լինի կոչումն ընծայութեան հաւատոյ ըստ նախախնամութեան»: Խմբագիրը բանաքաղած է ասութիւնս Կիւրեղ Երուսաղեմացւոյ գրութենէն[24], որուն ԺԸ ճառերը խորագիր կը կրեն «Կոչումն ընծայութեան» դասականաց յատուկ արտայայտութիւն մը, որ կը համապատասխանէ յունական catechesis բառին: Սոկրատի տողերս՝ «Կին ումն վարս պարկեշտս եւ զգաստս ունելով, աստուածային նախախնամութեամբ ի Վրաց գերեալ լինէր», համառօտուած է «Կին ումն լի պարկեշտութեամբ զաստուածային վարս ստացեալ ունէր, հալածեալ վասն Քրիստոսի գայ ի Վիրս, ի քաղաքն Նախագահ, ուր էր թագաւորն Վրաց»: Համառօտողը պահպանած էր անշուշտ սկզբնագրին «ի Վրաց գերեալ լինէր», որ հոս խմբագրէն վերածուած է «հալածեալ վասն Քրիստոսի գայ ի Վիրս»: Չէ ըսուած սակայն, թէ ո՞ւր եւ որոնցմէ՞ հալածուած է.

[24] Հմմտ. նաեւ 749. «Ի կոչումն ընծայութեան»:

Հալածանքը եղած է «վասն Քրիստոսի», այսինքն քրիստոնէական հաւատքի համար: Խմբագիրը կ՚ենթադրէ, թէ գիտեն իր ընթերցողները Մ. Խորենացիէն, թէ այդ կինը Նունէն է, «յընկերաց սրբոյ Հռիփսիմեանցն», «փախստեամբ (ուստի «հալածեալ») հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ, ի նոցա քաղաքն նախագահ»: Այդ «նախագահ քաղաքն» Սոկրատի համաձայն թագաւորանիստ էր, ըստ այսմ կրնար խմբագիրը բացայայտ ընել. «ուր էր թագաւորն Վրաց»:

Իսկ յաջորդ տեղիքն «այս ոչ այն Վիրք են, որք ի Սպանիայն, այլ ի կողմն հիւսիսոյ մերձ ի Պոնտոս», ցոյց կու տայ, թէ Համառօտողը լաւ ծանօթ է Վրաց աշխարհին: Նոյն Համառօտողէն է ապահովաբար Բնագրին «ի մազեղէն խուրում անկողնին եղեալ» ասութեան գեղեցիկ բարեփոխումը՝ «իսկ նորա առեալ զմանուկն ի գիրկս իւր՝ (դնէր) առաջի բազմութեան ի հանդերձս մազեղէնս զոր ունէր»: Սոկրատի խօսքերը՝ «պարգեւս զերկնային թագաւորն առաքէր». համանօրէն Խմբագիրը շրջած է «առաքէ թագաւորն պարգեւս բազումս շնորհալից կնոջն»: Բառս շնորհալից ուրիշ տեղեր ալ գործածած է Խմբագիրը (հմմտ. էջ 523 եւն):

Որսի միջադէպի մէջ Սոկրատի պարզ խօսքը «զԱստուած գերելոյն առնու եւ զաս կարդա օգնական» ընդլայնած է Խմբագիրն ըստ սովորութեան. «կոչել զԱստուած յօգ-

նութիւն զոր հալածական կինն պաշտէր, եւ եթէ նովաւ լինի ելք խաւարիս, պաշտեցից զնա. եւ ասէ. Օգնեա ինձ Աստուած կնոջն, որ վասն քո հալածեալն է»: Նոյնպէս իր գրչէն է յաւելուածն. «սքանչելեօք — եւ պարկեշտ կնոջն»: Իսկ «ի նմանէ վարդապետեալք, որ ի փառս Աստուծոյ» յաւելուածը կը յիշեցնէ Մ. Խորենացւոյ (Բ. 91) «որպէս զՆունէ Վրաց վարդապետուհի» եւ Գ. 57 «Ընդհանուր աշխարհ ի նմանէ վարդապետեալ ուսանի»:

Խմբագիրը զանց ընելով մեհեաններու կործանումը կ՚անցնի անմիջապէս. «եւ հրամայէր ուրեմն (կ՚ենթադրէ «ի բլրին») կանգնել զնշան Խաչին Քրիստոսի. եւ զի ոչ էր գործ ճարտարի արհամարհեալ լինէր ի քաղմաց. իսկ սուրբ կինն կայր յաղօթս զգիշերն ամենայն եւ ի վաղիւն լուսաւորեալ լինէր նշան Խաչին որ հիացոյց զհեռաւորս եւ զմերձաւորս. եւ հաստատեցան ի հաւատս»: Այս Խաչի պատմութեան ծանօթ չէր Սոկրատ. ուստի Խմբագիրը հարկաւոր տեսած է Մ. Խորենացիէն առնելով գոնէ համառօտիւ յիշատակել ի վերջ պատմութեան: Հոս «զհեռաւորս եւ զմերձաւորս» խմբագրին շատ սիրած բառերէն մէկն է: Իսկ «կայր յաղօթս զգիշերն ամենայն» հաւանօրէն փոխառութիւն է «սիւնի» պատմութենէն, ուր Մեծ Սոկրատ ունի. «հաստանէ ի տեղին եւ զգիշերն ամենայն յաղօթս պարապեալ», որ Համառօտին մէջ է այժմ «ի տեղւոջն կայր յաղօթս»:

*Նոյնպէս վերջաւորութիւնը կարկատուած է հետեւողութեամբ Մ. Խորենացւոյ: Խմբագիրը, որ զգուշացած էր պատմութեանս ընթացքին յանուանէ յիշել «հալածեալ կինը», այժմ Մ. Խորենացւոյ բառերով կը գրէ. «բատ* առաքելուհւոյ *կնոջն քարոզութեան*, որում անուն էր Նունի, յընկերաց սրբոյ Հռիփսիմեայ, *որ ի Հայս կատարեցաւ»: Ասկէ նաեւ վերնագրին մէջ. «Կոչումն Վրաց... ի ձեռն Նունեայ, յընկերաց սրբուհւոյն Հռիփսիմէի». այս վերնագիրը ուրիշ գրչէ կը թուի:*

*Մնացեալն ամբողջապէս Խմբագրին գրչէն է. «որ յաղագս նորա է պատմութիւն» եւ «որ ստոյգ ցուցանէ նորին գիրք», այսինքն Ագաթանգեղոս, Խմբագրին յատուկ ասութիւններ են. տես ի մէջ այլոց Փ. Սոկրատ, էջ* 45 *«որ յաղագս նորա է պատմութիւն» եւ էջ* 409 *«որպէս նորին իսկ գիրք ցուցանեն»:*

*Կը թողում մասնաւոր ուշադրութեան առնել Հին եւ Նոր Կտակարանէն նաեւ հոս փոխառնուած տեղիքները:*

**Զ.**

## Ա. ՆՈՒՆԷ ԵՒ ՎՐԱՍՏԱՆԻ ԴԱՐՁԸ

1. *Նկատի առինք վերագոյն Ս. Նունէի վայող հայկական աղբիւրները: Կը մնայ այժմ քննութեան առնել վրական աղբիւրները, այսինքն, թէ ինչպէս կը ներկայացնեն իրենք Վրացիք Վրաստանի դարձի պատմութիւնը: Այս գործին ձեռնարկելէ յառաջ կարեւոր կը համարիմ գէթ համառօտ գծերու մէջ ծանօթացնել այս հարցի շուրջ սայխդական, պատական–արարական եւ ենթադրական աւանդութիւնները, որոնք պահուած են այդ ազգերու Յայսմաւուրքներու մէջ:*

*Ամէնուն հիմը Բակուր իշխանի հաղորդած տեղեկութիւններն են, որոնք գրի առնուած էին, ինչպէս տեսանք, Գելասիոս Կեսարացիէ եւ Ռուփինոսէ եւ անոնց միջոցով անցած էին Սոկրատի, Սոզոմենոսի եւ Թէոդորետոսի եւ ի վերջոյ Յունական Ամսաւուրքներու եւ Յայսմաւուրքներու: Վերջինս այս խորագրի տակ. Διήγησις περὶ τοῦ ἔθνους τῶν Ἰβήρων πῶς ἦλθον εἰς θεογνωσίαν (վասն ազգին Վրաց եթէ զիարդ կամ որպէս եկն յաստուածածանօթութիւն)* [1]:

---

[1] Synaxarium Ecclesiae Constantinopolitanae ed. H. Delehaye. Bruxelles 1902, p. 167—169 [Propylaeum ad Acta Sanctorum Novembris].

Սայիդական հատուկտոր մը, գրուած մագաղաթի վրայ, որ կը պահուի Հռոմ Վատիկանեան Մատենադարանի Սայիդական Ձեռագրաց Թ. 168, Թղ. 161—162, ունի հետեւեալ բովանդակութիւնը[2]. «||| Երանելին Թէոփանէս երբ վերադարձաւ Վրաստան, գտաւ հոն եկեղեցին արդէն շինուած փութով եւ վայելչութեամբ. պատմեցին իրեն հրաշք մը, որ կատարուած էր Թէոգնոստա սուրբ կուսանի աղօթքով. ասոր վրայ մեծապէս ուրախացած՝ գրեց անմիջապէս թագաւորին եւ արքեպիսկոպոսին թղթեր այսպիսի բովանդակութեամբ. Նուաստ Թէոփանէս կը գրէ ինքնին անոնց, որոնք վստահութիւն ունին իր վրայ եւ որոնք կարգեցին զինքը Վրաց կողմերու եպիսկոպոս: Յիշեցէք այն պատուէրը, զոր Տէրն մեր սորվեցուց իր աշակերտներուն ըսելով. Եթէ ունենաք հաւատ եւ ըսէք այս լեռան. Ել անկէ. եւ ան պիտի ելլէ (Մատթ. ԺԷ. 19): Արդ տուաւ ան այս շնորհքը իր աղախնոյն, Թէոգնոստա սուրբ կուսանին: Երկու մեծ մարմարեայ սիւներ, որոնք կանգնուած էին հին մեհեանի մը մէջ, այն զոր աստուածային կ'անուանէին, կոչուած Ապողոնի պալատ: Գործաւորները, որոնց հրամայուած էր վերցնել զանոնք եւ տեղաւորել եկեղեցւոյ

[2] Հմտ. J. Guidi, Di alcuni pergamene saidiche: Rendiconti Accad. dei Lincei, ser. 5, II (1893), 525—528. O. von Lemm, Kleine koptische Studien եւ Iberica (տե՛ս վարը). Tamarati, L'église géorgienne, էջ 165—166:

մէջ իբրեւ խորանի սիւներ, ի գործ դրին մեծ մեքենաներ եւ մեծ ճիգ թանեցուցին, բայց առանց յաջողութեան | | |»:

Խօսքը հոս այն սիւնի մասին է, զոր կ'ուզէին կանգնել նորաշէն եկեղեցւոյ մէջ, բայց կարելի չէր եղած շարժել տեղէն: Հոս մէ՛կ սիւնը երկու եղած է. նոր է նաեւ Ապողոնի մեհեանի յիշատակութիւնը, ուսկից սիւներ փոխադրել կը հրամայուի: Այլուստ անծանօթ է նոյնպէս Թէոփանէս եպիսկոպոսի անունը: Իսկ Թէոգնոստոս անուան պիտի պատահինք նաեւ ուրիշ բնագիրներու մէջ[3]:

Արաբական բնագրի համաձայն «Երանուհին Թէոգնոստոս» կ'ապրէր Ոնորիոս եւ Արկադիոս թագաւորներու օրով: Օր մը Հնդկաց թագաւորի դեսպանները ընծայա—

---

3 «Թէոգնոստոս» անունը, զոր ունին ղպտական արաբական եւ եթովպական բնագիրները, իր ծագումն ունի հաւանօրէն Յունական Սինաքսարիոնէն: Հոս այն հատուածը, որ կը ճառէ Վրաց դարձի մասին, խորագրուած է, ինչպէս տեսանք, «... եթէ զիարդ կամ որպէս եկն յաստուածածանօթութիւն» այն է՝ εἰς θεογνωσίαν. Յիշեալ բնագիրներու նախնական խմբագիրը պէտք է անպայման աչքի առաջ ունեցած ըլլայ Յունականը, ուր «գերի կինը», որ Վրաց դարձի պատճառ եղած էր, անանուն էր. եւ որովհետեւ ան «յաստուածածանօթութիւն» առաջնորդեց Վրացիները, բնականաբար ինքն ալ պէտք է «աստուածածանօթ» մը, այսինքն կա՛մ «Աստուծոյ ծանօթ եւ բարեկամ» եւ կամ «զԱստուած ճանչցած», «աստուածադէտ» մը եղած ըլլայ: Այսպէս խորհած է նաեւ E. von Dobschütz (Kekelidse, Die Bekehrung Georgiens, 47, ծան.): Կայ անուանս արական ձեւը Theognostos. Հմմտ. W. Pappe, Wörterbuch der griechischen Eigennamen, Braunschweig 1863—1870, Ա., էջ 488:

բեր կու գան կայսեր. վերադարձին կը համդիպին Թէոդոսիոս կայսին, որ գիրք մը կը կարդար: Կ'առնեն զանիկա եւ կը տանին իրենց երկիրը. հոն կը յանձնուի իրեն Թագաւորի սպասաւորներուն եւ կիներուն հոգը: Կը պատահի որ Թագաւորի որդին ծանրապէս կը հիւանդանայ: Սրբուհին կ'առնէ այդ մանուկը իր գոգը, կը խաչակնքէ վրան եւ կը բժշկուի նոյնժամայն: Այն օրէն ի վեր նկատուեցաւ այդ գերի կինը ապառ: Թագաւորը պատերազմի կ'ելլէ. ճանապարհին փոշիի եւ մշուշի կը բռնուի. քամին իրեն դէմ կը փչէ. երկինքը կը խաւարի. խաչակնքելով կը յաղթէ ան իր թշնամիներուն: Վերադարձին կ'իյնայ Սրբուհւոյն ոտքը եւ մկրտութիւն կը հայցէ իրեն եւ իր բովանդակ ժողովուրդին համար: Սրբուհին կ'ըսէ, թէ ինքը ի վիճակի չէ զայն շնորհել իրեն: Մարդիկ կ'ուղարկուին Ոնորիոսի, որ կ'ուղարկէ անոնց կրօնաւոր քահանայ մը, որ եւ կը մկրտէ եւ կը հաղորդէ: Կոյսը վանք մը կը շինէ, ուր կը հաւաքուին մեծ թուով կուսաններ: Քահանան կը վերադառնայ կայսեր. կը պատմէ ժողովուրդին դարձը. Թագաւորը զայն եպիսկոպոս ձեռնադրել կու տայ եւ ետ կ'ուղարկէ: Մեծ եկեղեցի մը կանգնեցին. որուն համար պէտք տեսնուեցաւ սիւներ ճարել: Կար հոն շինուածք մը, որ ունէր շատ գեղեցիկ սիւներ: Կոյսն աղօթեց եւ սիւները իրենք իրենց փոխադրուեցան եկեղեցի: Հաւատացեալները փառք

*տունին Աստուծոյ. ուրիշներ հաւատացին Քրիստոսի: Սրբուհին իր կեանքը կնքեց վանքի մէջ*[4]:

Երուսաղէմի (17 *Մասկարամ ամսոյ*) *նոյն է արաբականին հետ:*

*Իսկ* խմբագրութիւն *ընագիրը, զոր առաջին անգամ հրատարակեց* Guidi, Reale Academia dei Lincei, Rendiconti 1893, *էջ* 524—529 *եւ երկրորդ անգամ* von Lemm (*տե'ս վարը*[5]), *աշխարհը փոխանակ «Հնդկաց երկիր» կոչե-լու, ունի «երկիր Տիբերիադի», զոր կարելի է սրբագրութեամբ մը կարդալ «երկիր Իբե-րիա», այն է Վրաստան: Յովհաննէս Նի-կիուցի այս Սրբուհին կը տանի «յԵմէն»*[6]:

*Յիշենք հոս նաեւ Մելքիտ Նիկոն վանա-կանի տեղեկութիւնները, զորոնք, ինչպէս կը գրէ, քաղած է Թէոդորետոսէ եւ ուրիշ գրքերէ*[7].

*«Նունա գերի վարուած Յունաց երկրէն, դարձուց Վրացի ժողովուրդը: Ուրիշ պատ-մագիր մը կ'րսէ, թէ Վրացիք դարձան Կոս-տանդիանոս Մեծի օրով: Անոնք քրիստո-նեայ եղան երբ թագաւորի որդին հիւանդա-ցաւ եւ մայրը զայն բժշկել տուաւ: Ասկէ*

---

[4] Le synaxaire arabe jacobite (rédaction copte, traduit par René Basset): Patrologia orientalis, I, p. 277—279. *Հրտ.* J. Guidi, Bessarione 6 (1904), 122—123. Tamarati, *էջ* 169—170.

[5] *Ստորեւ* § 7 *պիտի տամ մատենագիտութիւն մը Վրաց դարձի պատմութեան հայող գրականութեան, ուր կ'առաքեմ ընթերցողները:*

[6] *Հմմտ.* Analecta Bollandiana, 26 (1907), 121.

[7] Tamarati, *անդ*, *էջ* 173—175:

չատ գոհ եղաւ Թագաւորը եւ իրեն հետ բովանդակ ազգը, ան ընդունեցաւ քրիստոնէութիւնը: Նունա խնդրեց Թագաւորէն, որ չինէ եկեղեցի մը: Ան թէեւ գոհ էր որ իր կինը առողջացաւ, բայց չէր ուզէր ձեռնարկել եկեղեցւոյ չինութեան: Այս դէպքէն քիչ ժամանակ յետոյ Թագաւորը որսի գնաց. ճանապարհին խաւար մը յանկարծ ծածկեց իր աչքերը, այնպէս որ ան չէր կրնար քայլ մը յառաջ առնել, մինչ իր հետ եղողները կը վայելէին արեւի լոյսը: Շատ ճիգ ընելով ան ազատեցաւ վտանգէ, եւ իր աչքերու խաւարումը տեղի տուաւ լոյսի:

«Ապա կանչել տուաւ երիտասարդ Բաչ-լոյէլը (Բեսելիէ՞լ), ատաղձագործներու վարպետը, իմաստուն եւ փորձագէտ մարդ մը, եւ հրամայեց անոր, որ եկեղեցի մը չինէ: Սա անմիջապէս գործի անցաւ եւ չինեց եկեղեցին: Պէտք եղաւ քահանայի: Շնորհալից կինը խորհուրդ տուաւ Թագաւորին, որ Յունաց կայսեր գրէ եւ խնդրէ բարեպաշտ հոգեւորական մը: Կոստանդիանոս Մեծ ուղարկեց Անտիոքի Եւստաթիոս պատրիարքը մեծ պատիւներով: Պատրիարքը Վրաստան հասնելուն պէս մկրտեց Թագաւորին հետ բոլոր ժողովուրդը եւ օծեց նորաշէն եկեղեցին: Ան օծեց նոյնպէս անոնց համար կաթողիկոս մը, զոր դրաւ Անտիոքի պատրիարքութեան իրաւասութեան տակ: Վրաց Թագաւորը ապա յանձն առաւ իր բոլոր նախարարներու հետ տալ Անտիոքի պատրիարքին

ի պատրաստութիւն սուրբ Իւղին, հապար գիւղ, որոնց հասը կ'ուղարկուի (պատրիարքին) որպէս գի գործածէ Միւռոնի պատրաստութեան» :

«Նունա» անունը ենթադրել կու տայ, թէ Նիկոն աչքի առաջ ունեցած է հայկական աղբիւր մը : Նոր է հոս «Եւստաթիոս Անտիոքի պատրիարք» (325—331) : Իրեն յատուկ է նաեւ թագաւորի աչքի խաւարումը : Ուշադրութեան արժանի է, որ 1051ին Անտիոքի կղերը կը պահանջէր իր պատրիարքութեան իրաւունքը Վրաստանի վրայ. եւ նոյն ժամանակ Եփրեմ կրտսեր, վրացի մատենագիրը, կը պատմէ թէ Վրաց առաջին եպիսկոպոսն եղած է Եւստաթիոս[8] : Նիկոն վանական կ'ապրէր ԺԱ. դարու կէսին :

2. Վրական աղբիւրներու անցնելէ յառաջ կարեւոր կը տեսնեմ ամփոփել այստեղ նախորդ ուսումնասիրութիւններուս արդիւնքը :

ա. Գեղասիոս Կեսարացւոյ եւ Ռուփինոսի հաղորդած տեղեկութիւնները, ի բանից Բակուրի Վրաց դարձի մասին, կը հային Հայոց դարձին :

բ. Արեւի խաւարումը տեղի ունեցած է 218 հոկտ. 7ին :

գ. Գերի կնոջ անունն է Հռիփսիմէ. թագաւորին՝ Տրդատ Բ. որդի Խոսրովի (217—252), թագուհւոյն՝ Աշխէն :

[8] Life of St. Nino, p. 5.

Դ. Միջավայրն է Վաղարշապատ։

Ե. Հոխիւմէ եւ Տրդատ կը դիմեն Կեսարիա Գամրայ խնդրելու հովիւ նորադարձ ժողովուրդի համար. կ՚ուղարկուի Գրիգոր Լուսաւորիչ (219/20—250)։

Զ. Գրիգոր կը քարոզէ Մեծ Հայաստանի սահմաններէն ներս հայերէնախօս ժողովուրդներուն. Գուգարք, Արցախ, Ուտի նահանգները այս շրջանին Մեծ Հայաստանի սահմաններու մէջ էին։

Է. Վրաստան պաշտօնապէս ընդունեցաւ քրիստոնէութիւնը Դ. դարու վերջին տասնեակին, Բակուր Թագաւորի օրով, երբ նորադարձ ժողովուրդին հովիւ կարգուեցան հաւանօրէն եկեղեցականներէն քրիստոնեայ Գուգարքի, որ այժմ կցուած էր Վրաստանի։ Ե. դարու առաջին կէսին քարոզութեամբ գործեց հոն Մաշտոց, որ վրացերէն նշանագիրներու հնարողն եղած էր։

Ը. Մինչեւ Թ. դար ընդհանուր աւանդութիւն էր Հայոց եւ Վրաց եւ Աղուանից քով, թէ այս երեք դրացի եւ քրիստոնեայ ժողովուրդներուն քրիստոնէութիւնը քարոզած է Գրիգոր Լուսաւորիչ։

Թ. Գեղասիոսի եւ Ռուփինոսի տեղեկութիւնները Վրաց դարձի մասին ծանօթացած են նախ Հայոց եւ ապա Վրաց Սոկրատ Սքոլաստիկոսի Եկեղեցական Պատմութենէն, որ հայերէն թարգմանութեամբ լոյս տեսած էր 696/697ին։

ժ. Նունէի Վարքը կամ «Վրաց դարձի» պատմութիւնը պէտք է յօրինուած ըլլայ յընթացս Ը. դարու, յեցած Սոկրատի Ա. 20 գլխու վրայ:

ժա. Նունէի անունը եւ անոր կեանքէն դրուագներ առաջին անգամ կը ծանօթացնէ Հայոց Ահարոն Վանանդացի իբր 925ին:

ժբ. Ահարոն քաղած է իր տեղեկութիւնները վրական աղբիւրէ, յատկապէս «Ագաթանգեղոսէ»:

ժգ. Մովսէս Խորենացի աղբիւր ունեցած է Ահարոնի գրութիւնն եւ Սոկրատի Եկեղեցական Պատմութիւնը (իբր 850ին):

ժդ. Փոքր Սոկրատի խմբագիրը իբր 890ին օգտուած է Մ. Խորենացիէն:

ժե. Տէր Իսրայէլ իր Յայսմաւուրքի համար նկատի առած է Ահարոնի գրուածքը:

ժզ. Գրիգոր Խլաթեցի իր Յայսմաւուրքի մէջ հետեւած է առաւելապէս Մ. Խորենացւոյ:

ժէ. Սայիդական, արաբ, խաղտական եւ եթովպական աղբիւրները զարգացած են Գելասեան—Ռուփինեան տեղեկութիւններու հիման վրայ:

Կ'աւելցնեմ. թէեւ Ս. Նունէի յիշատակը կը տօնէ Հայոց Եկեղեցին յետ Պենտեկոստէից Բ. Կիրակիի երեքշաբթի. «Կուսանացն Նունեայ եւ Մանեայ», բայց որ եւ է Շարական կամ Գանձ կամ Տաղ չէ յատկացուած անոր յիշատակին:

3. Ահարոն ունեցած է իր առաջ վրական աղբիւրներ. «Բազում աշխատութեամբ եւ խուզիւ քննեալ ի բազում մատենից Հայոց եւ Վրաց յաղագս սրբոյ Խաչին Մծխիթայի..., եւ ստուգեալ հասեալ գտի յԱգաթանգեղայ պատմագրէ[9]»: Թէ ստուգիւ Ս. Խաչի պատմութեան համար Ագաթանգեղոսն եղած է աղբիւր կը չեշտէ միւսանգամ. «Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ ուսաք[10]»: Այս աղբիւրը սակայն հայ Ագաթանգեղոսը չէր կրնար եղած ըլլալ, վասն զի հոս ոչ Ս. Նունէի յիշատակութիւն եւ ոչ ալ Վրաց դարձի մասին որ եւ է խօսք կ՚ըլլայ: Ուստի հարկադրուած ենք ընդունիլ թէ Ահարոն վրացերէն մատեան մը կ՚ակնարկէ, որ «Ագաթանգեղոս» կը կոչուի: Այս մատեանը առանց տարակուսի «Ագաթանգեղեայ պատմագիրքն» է վրացերէն թարգմանութեամբ: Հռիփսիմեանց վկայաբանութենէն փոքրիկ հատակոտոր մը, զոր R. P. Blacke գտած էր Կեմբրիճի Համալսարանի Մատենադարանի Add. 1890, 3 ձեռագրին մէջ, կ՚ապացուցանէ այժմ G. Garitte[11], թէ հաւատարիմ թարգմանութիւնն է հայերէն Ագաթանգեղոսի: Եթէ ըղունգէն առիւծը կը գուշակուի, նոյնպէս այս հատակոտորը կը հայթհայթէ մեզի հիմ հաւաստելու, թէ երբեմն գոյութիւն

[9] Աստ. էջ 113:
[10] Անդ, էջ 615:
[11] G. Garitte, Sur un fragment géorgien d'Agathange. Le Muséon 61 (1948), 89—102.

ունեցած է Ագաթանգեղոսի պատմագիրքի վրացերէն ամբողջական թարգմանութիւնը: Ա՛յս թարգմանութեան մէջը կամ վերջը պէտք է գետեղուած ըլլար Վրաստանի քրիստոնէութեան դարձի պատմութիւնն ալ Սոկրատի հետքերով, ուր «դերի կինը» Նունէ անունով կապակցութեան մէջ ներկայացուած ըլլար Հռիփսիմեան կոյսաններու հետ, հովանաւորութեան տակ Գրիգոր Լուսաւորչի եւ աղերսի մէջ Ագաթանգեղոս Հռոմայեցւոյ հետ: Գրիգորի նկատմամբ յիշատակութեան մը հանդիպեցանք Ահարոն Վանանդացւոյ քով. իսկ Ագաթանգեղոսի մասին նշում մը կը համարիմ Վրաց համառօտ Պատմութեան այն տեղիքը, ուր ըսուած է. «Յաւուրսն յայնոսիկ առաքեաց Թագաւորն Կոստանդիանոս սարկաւագ մի, որ ունէր Թուղթ ի Բրանջաց ազգէն . . . քանզի յուսան նոքա եթէ ի Հայս եւ ի Վիրս ծագեաց արեգակն արդարութեան . . . եւ . . . կամեցաւ տեղեկանալ ի ձեռն Բրանջ սպասաւորին, զի գրեալ զամենայն ստուգութեամբ՝ տարցի առ նոսա, որ ինչ ի Հայս եւ ի Վիրս իրք եղեն ի փառս Աստուծոյ: Զոր իմացեալ սարկաւագն՝ գրեալ ի մատենի՝ տարաւ յաշխարհն իւր ի Բրանջս» (էջ 65—66)[12]: Այս տեղ «Բրանջաց ազգն» են Հռոմայեցիք, Լատինք, որոնք միջին դա-

---

[12] Վախտանգ, որ այս պատդամաւորութիւնը կը յիշէ, պատմագրութեան մասին կը լռէ:

րու մէջ Արեւելեաններու ծանօթ էին «Փրանկ» անուամբ, որ արաբական հնչմամբ եղած է «Ֆրանջ»: Արդեամբ ալ Ագաթանգեղոս էր «ի քաղաքէ ի մեծն Հռովմայ... հռոմայերէն եւ յունարէն ուսեալ դպրութիւն» (Ագաթ., էջ 9), որ հրաման կը ստանայ «գրել զայս ամենայն որպէս օրէնք է ժամանակագիր մատենից» (էջ 469): Բնականաբար Փրանկ Ագաթանգեղոս, որ մասնաւորապէս ուղարկուած էր գրի յանձնելու «որ ինչ ի Հայս... իրք եղեն», չէր կրնար անտեսել Նունէի եւ Վրաց դարձի պատմութիւնը, կարճ խօսքով «եւ որ ինչ... ի Վիրս իրք եղեն»: Կեղծիք մը բարեքելու եւ հաւատալի ընծայելու համար այս հնարքը առանց տարակուսի ամէնէն լաւագոյնը պէտք է նկատուէր: Եւ եթէ այս ակնոցով կարդանք այն ամէնը, ինչ որ Ահարոն յառաջ բերած է այդ «Ագաթանգեղոս պատմագրէն», դիւրին պիտի ըլլայ ոչ միայն արդարացնել անոր խոստովանութիւնը, այլ եւ ճիշդ պատկերացուած տեսնել պատմութեան բովանդակութիւնը:

Նունէի Վարքին առաջին խմբագրութիւնն է այս: Տակաւին անպաճոյճ: Սոկրատի Ա. 20 աչքի տակ ունեցած է խմբագիրը: «Կին ոմն գերի» վերածուած է հոս «Կին ոմն փախուցեալ». անոր անունն է Նունէ. ան «յընկերաց Ս. Հռիփսիմեանց» էր. անոնց նահատակութենէն ետքը «փախուցեալ» եկած է Մծխիթա Վրաց «նախադա-

քաղաքը», հոս Վրաց «առաջնորդն» է Միհրան։ Նունէ կ'ապրի առանձնացած․ բժշկութիւններ կը գործէ աղօթքով․ կը բժշկէ «գլխովին զկին Միհրանայ Վրաց առաջնորդի»։ Միհրան կը հարցնէ․ «Որո՛վ իշխանութեամբ առնես զսքանչելիսդ․ եւ ուսուզքարոզութիւն աւետարանին եւ զհաւատս»։ Լուած է Ահարոն Որսորդութեան եւ Եկեղեցւոյ շինութեան մասին։ Երբ կը հաւատայ Միհրան, Նունէ հրահանգ կը խնդրէ Ս․ Գրիգորէն․ եւ հրաման կ'ընդունի․ «Կործանել զկուռս, որպէս եւ ինքն (Գրիգոր) արար եւ․․․ կանգնել զնշան սուրբ Խաչին»։ Մանրամասնաբար կը նկարագրուի Մծխիթայի Ս․ Խաչին կանգնումը․ «Զայս մինչեւ ցայս վայր յԱգաթանգեղայ պատմագրէ ուսաք»։

«Կին ոմն» ցոյց կու տայ, թէ խմբագիրը իրեն առաջնորդ առած է Սոկրատի Եկեղեցական Պատմութեան հայերէն թարգմանութիւնը, որ կատարուած էր 696ին։ Այս կռուան կը ծառայէ մեզի խմբագրութեանս ժամանակը այս թուականէն ետքը դնելու։ Ուստի Ագաթանգեղոսի Պատմութեան վրացերէն թարգմանութիւնն ալ համարելու է այս տարիէն յետոյ։ Իբրեւ յետնագոյն եզր կրնանք նկատել 925, երբ գրած է Ահարոն Ս․ Նունէի Խաչին պատմութիւնը։ Չենք սխալիր, եթէ Ս․ Նունէի Վարքին առաջին խմբագրութիւնը համարինք ծնունդ առած յընթացս Ը․ դարու։

Առանց տարակուսի նոր յայտնութիւն մ՚եղած ըլլալու էր Վրահայերու եւ յատկապէս Վրացիներու համար Սոկրատի Ա. 20 գլուխը: Հակառակ տիրող ընդհանուր համոզման, թէ Գրիգոր եղած է Հայոց, Վրաց եւ Աղուանից Լուսաւորիչը, այժմ յոյն աղբիւր մը Սոկրատ, «Փրանկ» հեղինակէ մը քաղելով, կու գար աւետելու, վրացի իշխանի մը, նոյն իսկ թագաւորի, Բակուրի բերնով, թէ Վրացիք ունեցած են իրենց սեպհական Առաքելուհին յանձին Գերի կնոջ մը: Բայց ո՞վ էր այդ գերի կինը, ի՞նչ ծագումէ, ո՞ր աշխարհէ եւ ի՞նչ անուամբ: Բակուր թագաւոր լռած էր այս մասին: Այս հարցերը սակայն զբաղցուցած ըլլալու են Վրաց աշխարհի գիտունները Ը. դարու ընթացքին:

Նկատի առնելով այն պարագան, որ ըստ Սոկրատի Վրաց դարձը կատարուած է Կոստանդիանոս Մեծի (305—339) օրով եւ Հռիփսիմեանց փախուստն Դիոկղետիանոսէ եւ ժամանումն Հայաստան եւ նահատակութիւնը տեղի ունեցած է Ագաթանգեղոսի համաձայն Տրդատ Մեծի օրով, եւ Գրիգորի քարոզութիւնը կ՚իյնայ Կոստանդիանոսի գահակալութեան առաջին տարիները, դժուարին պիտի չըլլար Վրաց հարցասէրներու գտնել ժամանակակցութիւն Հայոց դարձի հետ: Ի՞նչ անպատեհութիւն այնուհետեւ եթէ «գերի կինը» նկատուէր Հռիփսիմեանց

ընկերուհիներէն մին, անոնց հետ Հայաստան եկած, իսկ անոնց նահատակութեան ժամանակ թաղնուած եւ ապա փախստեամբ Վրաստան ապաստան փնտռած ըլլար։ Նահատակուող Կուսաններէն մին կը կրէր Հռիփսի–մէ, միւսը՝ Գայիա–նէ, երրորդ մը — ըստ աւանդութեան — Մա–նէ անունը։ Անշուշտ նաեւ «փախուցեալ կինն» նման յորջորջում մ'ունեցած ըլլալու էր, թերեւս Նու–նէ, ինչպէս կը կոչուէր Ս. Գրիգոր Նազիանզացւոյ մայրը[13]։ Այս անունը հայացուած ձեւն է յունական Nonna անուան (որուն արականն է Nonnos). շատ մերձաւոր ըստ հնչման յն. *nánne* կամ *nénna*, «հօրաքոյր, մօրաքոյր» եւ վրացերէն *nana, nene*, «մեծ մայրիկ, մայրիկ»[14]։

4. Մինչեւ Թ. դար չկայ որ եւ է նշմար Նունէի գոյութեան մասին ո՛չ Հայոց եւ ոչ ալ Վրաց գրականութեան մէջ[15]։ Նոր եւս ապացոյց մ'ալ, թէ Վարքս նախորդ դարու վերջալոյսին հրապարակ հանուած է։

Ս. Նունէի Վարքը հասած է այլ եւ այլ խմբագրութիւններով. գորոնք այս տեղ դիտի յիշեմ միայն. Ա. խմբագրութիւնն է այն օրինակը, որ պահուած է 973ին Ծաթերդի վանքը գրուած մէկ ձեռագրի մէջ, որ

---

[13] Վարք եւ Վկայաբանութիւն Սրբոց, Ա., 280։
[14] Վրաց համառօտ պատմութեան մէջ (էջ 44) կ'ըսուի. «Յայնմ ժամանակի երանուհին Նունէ Մայր Վրաց եկն» ի Մծխիթա։
[15] Peradze, Die Probleme, 153.

*Ժողովածոյք մըն է պատմական եւ հայրագիտական բովանդակութեամբ: Այս ձեռագրէն հրատարակեց Ե. Ս. Թաքայշվիլի* სამი ისტორიული ხრონიკა (*Երեք պատմական ժամանակագրութիւններ*) *Տփղիս* 1890, 8°, *էջք ձԽԹ* + 118: *Առաջին մասը Համառօտ ժամանակագրութիւն մըն է, որ կը սկսի Աղեքսանդր Մեծէն եւ կ՚աւարտի Գուարամ Ե. Վրաց երիստաւի եւ Արսէն կաթողիկոսի յիշատակութեամբ, ուստի կը հասնի մօտաւորապէս* 850 *Յ. Ք.: Այս մասին մէջտեղ զետեղուած է Վրաց դարձի պատմութեան համառօտ խմբագրութիւնը:*

Բ. *Այս ժամանակագրութեան վերջը կը գտնուի Վրաց դարձի Ընդարձակ պատմութիւնը, առանց խորագրի, թերեւս թուղթի մ՚անկումով: Թաքայշվիլի հրատարակեց զայն յաջորդ տարին այսպիսի խորագրով.* ახალი ვარიანტი წმ. ნინოს ცხოვრებისა ანუ მეორე ნაწილი ქართლის მოქცევისა (*Նոր տարբերակ մը Ս. Նունէի Վարքին, կամ Երկրորդ մաս Քարթլիի դարձին*), *Տփղիս* 1891, 8°, *էջք ԾԹ* + 73 + 3:

*Ա. եւ Բ. վրացերէն բնագիրները միանգամ լոյս ընծայեց Թաքայշվիլի* Сборникъ Матеріаловъ для описанія мѣстностей и племенъ Кавказа 41 (*Տփղիս* 1910), 44—96 *եւ* 42 (1912), 1—59: *Այս երեք ժամանակագրութիւնները Նունէի Ընդարձակ Վարքին հետ ռուսերէն թարգմանութեամբ տուաւ Թաքայշվիլի նոյն Հաւաքման մէջ.* Е. С. Та-

кайшвили, Источники грузинскихъ лѣтописей. Три хроники. Переводъ съ грузинскаго: Сборникъ Матеріаловъ, 28, 1 (1900), 1—216: *Այստեղ «Վրաստանի դարձը» կը գրաւէ էջ 16—27 եւ Ընդարձակ Վարք՝ էջ 49—116: Ա. Մառը անգղիերէն թարգմանութեամբ տե՛ս վարը* Wardrop, *էջ* 61—64 *եւ գաղղիերէն թարգմանութեամբ՝* Tamarati, *էջ* 176—178. *Ընդարձակը քաղուածաբար անդ, էջ* 178—195:

*Գ. Վրացերէն բնագրի ստորեւ Թակայշվիլի տուած էր Վրաց մէջ գրագիտութեան տարածող Ընկերութեան Մատենադարանի Թ.* 439*էն (գրուած Դշեղի, ԺԴ.—ԺԵ. դարուն) նոր բնագիր մը, որ կարելի է Գ. խմբագրութիւն նկատել:*

*Դ. խմբագրութիւն կը ներկայացնէ այն* Համառօտ Պատմութիւնն Վրաց, *որ յանուն Ջուանշէրի լոյս տեսաւ Վենետիկ* 1884, *ուր Նունէի Վարքը գրուած է* 26—61 *էջերը: Նորա գաղղիերէն թարգմանութիւնը տուաւ* M. Brosset, Histoire de la Géorgie, t. IV, Additions et eclaircissements, St. Pétersbourg 1851, *էջ* 19—32, *իսկ անգղիերէն թարգմանութիւն մը հոգաց* F. C. Conybeare, *տես* Wardrop, *էջ* 67—86:

*Ե. խմբագրութիւն.* Քարթլիս ցխովրեբա *(Քարթլիի կեանքը), հրատարակած է Ջարիձէ, Տփղիս* 1897, *էջ* 86—139: *Իսկ Մարիամ Թագուհւոյ խմբագրութեամբ՝ լոյս ընծայեց Ե. Թակայշվիլի, Տփղիս* 1906, *էջ* 55—

116. Նոյնը հրատարակած է նաեւ Ն. Մառ, Պետրոգրադ 1923, էջ 64—101: Գաղղիերէն թարգմանութեամբ՝ M. Brosset, Histoire de la Géorgie, t. I, (Պետերբուրգ 1849), 99—132:

Զ. Խմբագրութիւն՝ Սաճարբեյու Սամոտխէ (Վրական Վարք Սրբոց) հրտ. Գ. Սարինին, Տփղիս 1882, էջ 119—155. անգլիերէն թարգմանութեամբ՝ Wardrop, էջ 7—58:

Է. Խմբագրութիւն կարելի է համարել Արսէն Մեծ կաթողիկոսի (Ժ. դար) օրինակը, ուր մասնաւորապէս ոճին ուշադրութիւն դարձուած է. հրտ. Եկեղեցական Թանգարան, Թ. 5 (Տփղիս 1910):

5. Մեր նպատակէն դուրս է այս Ա.—Է. խմբագրութեանց ստինձնական զարգացումը համեմատական ուսումնասիրութեան ենթարկել: Կարեւորագոյնն է հնութեամբ առաջինը, Շատբերդի 973ին գրուած ձեռագրին մէջ, ուր անպաճոյճ ձեւով պատմուած է Վրաց դարձի նկարագրութիւնը, թուղթի մը պակասով: Կու տամ զայն այստեղ թարգմանաբար:

«Լեւ Մերեանի (Միհրանի) հայրը. ստ Քարթլիի ԻԸ. հեթանոս թագաւորն էր: Քրիստոսի Համբարձումէն ետքը 310ին Կոստանդին թագաւորի օրով թշնամիները պատերազմի մէջ չատ քաջ հանդիսացան իրենց չահատակութիւններով եւ մեծամեծ յաղթութիւններ տարին Կոստասի որդւոյն Կոս–

տանդին թագաւորի վրայ. եւ Կեսարն Կոստանդին տրամութենէն յուսահատութեան մատնուած էր: Եփեսացի մը կար. ան պատմեց թագաւորին, թէ բոլոր հռոմայեցի եւ հնդիկ քրիստոնեաները եւ անոնք որոնք ընդունած են Քրիստոսի նոր կրօնը, կրնան յաղթել թշնամիներուն՝ վստահացած խաչափայտի ուժին վրայ: Այն ատեն թագաւորը չարժեց լեգէոնները (թշնամւոյն վրայ) եւ մարդիկ ուղարկեց, որ Երուսաղէմի, Անտիոքի եւ Աղեքսանդրիայի եպիսկոպոսները իրեն բերեն. եւ ինքնակալն, իր բանակն եւ իր մայրը ընդունեցան մկրտութիւն:

Ասկէ տասը տարի ետքը Հեղինէ Երուսաղէմ գնաց որպէս զի Ս. Խաչը փնտռէ: Իսկ տասնըչորս տարի ետքը Հռիփսիմէ անուն կին մը թագաւորական տունէ, պատճառով մը իր դայեակին հետ փախաւ: Անոր հետ էր նաեւ չնորհալից գերի կին մը Նինօ անունով, որուն մասին տեղեկութիւններ քաղած է Հեղինէ թագուհի: Ան ականաւոր հռոմայեցի էր. եւ որ աղատ կամքով ճանապարհ ելած էր. (ճանապարհին) բժշկութիւններ կատարելով հասաւ Յունաստան եւ յարեցաւ Հռիփսիմէի: Հռիփսիմէ, Գայիանէ եւ Նինօ եւ անոնց հետ ուրիշ կանայք ծովագնաց հասան Հայաստանի սահմանը, Տրդատ թագաւորի աշխարհը եւ ընդունեցան հոն մարտիրոսական պսակ: Միայն Նունէ ապրեցաւ: Գնաց ան դէպի հիւսիսային լեռը եւ հասաւ Կուր գետը: Հետեւելով այս գետի

ընթացքին եկաւ Մծխեթի մեծ քաղաքը, թագաւորներու աթոռանիստը։ Հոս անցուց երեք տարի սրտակից կենցաղավարութեամբ․ առանձնացած տեղ մը, որ շրջապատուած էր մորենիներով, կ՚աղօթէր․ շինեց իրեն որթատունկի ճիւղերով խաչ մը եւ կ՚աղօթէր անոր առաջ։ Այն մորենիի թփուտքը կը գտնուէր քաղաքի պարիսպներէն դուրս, ուր այժմ շինուած է վերին եկեղեցւոյ խորանը։

Չորրորդ տարւոյն սկսաւ քարոզել Նինօ Քրիստոս Աստուած եւ հաւատքը․ եւ ըսաւ․ Գտայ այս երկիրը, որ կը նստէր խաւարի ստուերին տակ։ Վեցերորդ տարւոյն հաւատքի դարձուց Նանա թագուհին որ հիւանդ էր։ Իսկ եօթներորդ տարւոյն դարձուց թագաւորը հրաշքով մը, որ գործածուած էր Քրիստոսի զօրութեամբ։ Թագաւորը կանգնեց անմիջապէս եկեղեցի մը վարի պարտէզի մէջ․ իսկ այն սիւնը, որ կանգնուած էր ինքն իրեն, փայտեայ էր։

Երբ շինուեցաւ եկեղեցին, Միհրան ուղարկեց դեսպաններ եւ Նունէ՝ թուղթ մը Յունաստան, Կոստանդին կայսեր, քահանաներ խնդրելու համար։ Դեսպանները արագ հասան։ Եւ Կոստանդին կայսրը տուաւ անոնց Յովհաննէս եպիսկոպոսն եւ երկու քահանաներ եւ մէկ սարկաւագ․ բաց աստի շնորհեց անոնց Հեղինէ թագուհւոյն մէկ թուղթը, Փրկչին պատկերն եւ Նինոյի համար Կենաց փայտը։

Վերյիշեալները երբ հասան, Միհրան Թագաւորն եւ Թագուհին եւ (արքունի) տունը ընդունեցան մկրտութիւն: Խնդրեցին փայտ, որպէս զի խաչ շինեն |||||||| (Թուղթ մը ինկած է հոս ձեռագրէն)....: Նինօ առնելով հետը Յակոբ քահանան, որ Յունաստանէն եկած էր, եւ զօրապետ մը՝ մեկնեցաւ Ծոքին. կանչեց իր քով Մտէուլները (լեռնականները) եւ Ճարթալները, Փխացիները, Ծիլկնեցիներն, աւետարանեց անոնց քրիստոնէական հաւատքը. բայց յանձն չառին անոնք. զօրավարը սպառնաց անոնց զէնքով. եւ անոնք վախէն խորտակեցին իրենց կուռքերը: Ասկէ գնաց Նինօ յԵրձոյթ եւ բնակեցաւ ի Ժալէթ, Եղեմ անուն տեղ մը եւ լուսաւորեց Երձո-տխոյցիները: Երբ լսեցին դոյս Կվարցիները՝ գաղթեցին Թուշեթի. անոնցմէ մաս մը յետոյ առաւ եւ մկրտեց Տրդատ Թագաւորը:

Եւ Նինօ գնաց Կխոէթի, դադար առաւ Կածուեթ, մկրտեց Կխոէթցիներն եւ Սոջեցիները (*) իրենց ժողովուրդով: Անկէ անցաւ Կախէթ, հաստատուեցաւ Կցել փոքրիկ գիւղն եւ հրաւիրեց տեղւոյն երեւելիներն եւ մկրտեց զանոնք: Նինօ հիւանդացաւ եւ ուզեց վերադառնալ Մծխեթի: Հազիւ հասած Կխոյեթի, Բուդի կոչուած գիւղը, չկրցաւ այլ եւս չարունակել ճանապարհ:

Ուջարմա քաղաքէն եկան իրեն Բէվ արքայորդին եւ իր կինը Սալոմէ եւ ակսան

խնամք տանիլ իրեն։ Իսկ Թագաւորն եւ Նանա Թագուհին Մծխեթին ուղարկեցին Յովհաննէս արքեպիսկոպոսն, որպէս զի (Հիւանդը Մծխեթի) տանի։ Բայց նա չուզեց գալ. այլ յանձնարարեց միայն Յակոբ քահանան Արքեպիսկոպոսին ըսելով. Քեզմէ վերջը Թող նա կառավարէ եկեղեցին։ Արքեպիսկոպոսի ներկայութեան յանձնեց (Յակոբ քահանային) այն նամակը, զոր գրած էր իրեն Հեղինէ Թագուհի. այն նամակը Հեղինէ Թագուհի գրած էր Նինոյի ինչպէս Թագուհւոյ. եւ զանիկա առաքելուհի եւ աւետարանիչ կոչած էր։ Իսկ կենաց փայտը Նինօ ուղարկեց Նանա Թագուհւոյն։

Յովհաննէս պատարագեց եւ բաշխեց Նինոյի Քրիստոսի մարմինն եւ արիւնը։ Նինօ ընդունեցաւ սուրբ հաղորդութիւնը ինչպէս Թոշակ հոգւոյ եւ աւանդեց իր հոգին Աստուծոյ ձեռքը, իր Քարթլի գալուն ԺԵ. տարւոյն, Քրիստոսի Համբարձման 338 տարւոյն։

Երբ լսուեցաւ անոր մահը, ովք եկան Մծխեթի եւ Ուջարմա քաղաքներն եւ բովանդակ Քարթլի. եկան եւ թաղեցին անոր բարեյաղթ մարմինը „Կիոյէթի Բուդի գիւղը»։

6. Թղթի մ՚անկումով բնագրիս մէջ յառաջ եկած պակասը կրնայ լրացնել Թերեւս Դ. խմբագրութիւնը, այն է Համառօտ պատմութիւնն Վրաց հայերէն Թարգմանութեամբ, որուն բովանդակութիւնը պիտի տամ կարճառօտիւ, գաղափար մը կազմելու համար,

թէ ինչպէս ընդլայնուած է այս հնագոյն խմբագրութիւնը յաջորդ դարերու մէջ:

Երուսաղէմ կը փախճանի ընտանիք մը, թողլով որբ երկու զաւակ, մանչ մը Յորնադ անուն, որ վերջը Երուսաղէմի պատրիարք կ'ըլլայ, եւ դուստր մը Սուսան անունով, որ ազախնութեան կը մտնէ Բեթղեհեմ Նիկոփոր Դուկեցւոյ քով: Երուսաղէմ կու գայ Զարուդոն Կապպադովկիացի զօրավարը, որ արեւմուտք Փրանկներու դէմ պատերազմած էր, շատ գերիներ բռնած եւ քրիստոնէութեան չահած: Սա կը ծանօթանայ Սուսանի հետ եւ կ'առնէ զայն կնութեան եւ կ'երթայ Կլաստրասա քաղաքը: Հոս կը ծնանի Նունէ: Կ'երեւայ թէ Նունէ իր մայրը երկար չէ վայելած: Նունէ 12 տարեկան էր, երբ հօրը հետ Երուսաղէմ կը մեկնէր: Զարուդոն որոշած էր առանձնանալ աշխարհէ: Իր դուստրը կը յանձնէ Նիկոփոր Դուկեցւոյ խնամքին եւ ինքը կ'երթայ անապատ: «Մտի ես, կ'ըսէ Նունէ, ի տուն Նիկոփորայ հայկազնոյ ի Դունայ քաղաքէ եւ ուսանէի գիր մտօք...» Այս առիթով կը սորվի հայերէն: Նիկոփոր քրիստոնեայ էր եւ շատ բան կը պատմէ Նունէի Քրիստոսի մասին. ի մէջ այլոց թէ Քրիստոսի փորանկեալ պատմուճանը տարուած է Մծխիթա քաղաքը: Ապա կ'առնէ իր մօրեղբօր, Յորնադ Երուսաղէմի հայրապետին օրհնութիւնն եւ կ'ուղեւորի Հռոմ եւ կը մտնէ Ս. Պօղոսի վանքը, ուր «կը բնակէին 300 կուսաններ»: Հոն, կ'ըսէ, մեր

վրայ փորձանք մ'եկաւ եւ եկանք ի Հայս: Կայսրը կը հետապնդէ փախստական կոյսերը. կ'ուղարկէ հրովարտակ մը անոնց մասին Տրդատ թագաւորին, որ փնտռել տալով կը գտնէ զանոնք «ի հնձանս այգեաց»: Հռիփսիմէ կը մերժէ կին ըլլալ Հայոց թագաւորին: Կը նահատակուին 37 կուսաններ. ուրիշներ կը ցրուին. «եւ մնացի ես ի ներքոյ վարդենեացն որ ոչ էր ծաղկեալ[16]»: Իր առանձին մնալը կը գգայ Նունէ. կը դիմէ աղօթքով Աստուծոյ: Տեսիլք մը կը յայտնուի իրեն. ձայն մը կ'ըսէ իրեն. «Արի գնա դու ի կողմն հիւսիսոյ»: Յունիս ամսուն կը հասնի Ճաւախեթի լեռը. Փառնաւայ (Phravani) ծովակին քով կը տեսնէ ձկնորսներ եւ հովիւներ, որոնք կը խօսէին հայերէն. «լուայ զի երդնուին յԱրամազդն եւ ի Զադէն, զի տեղեակ էի լեզուին Հայոց, ուսեալ ի տանն Նիափորայ Դունեցւոյ»: Նունէ կը հարցնէ անոնց, թէ ուսկի՞ց են. անոնք կը պատասխանեն. «ի Դարբայ, ի Լրբնայ, ի Սափուրսլոյ, ի Քինծերոյ, յՈւպատէն Մծխեթոյ, ուր [չ]աստուածք փառաւորին եւ թագաւորք թագաւորեն. եւ գետս այս որ ելանէ ի ծովէս, անդր երթայ»: Նունէ, որ յոգնած էր ճանապարհէն, կը քաշուի անկիւն մը եւ կը քնանայ: Տեսիլքի մէջ իրեն գրուածք մը կը տրուի, գրուած «հռոմայերէն», կնքուած Քրիստոսի կնիքով. ձայն մը կը հրամայէ

[16] Ընդարձակ խմբագրութիւնն ունի «վասն զի այս ժամանակ վարդն եւ նշենիները կը ծաղկէին»:

իրեն. «Արի գնա եւ քարոզեա զոր ինչ գրեալ է այդր»: Այն տեղ գրուած էր համառօտիւ աւետարանի միտքը տասը կէտերով[17]: Նունէ կը շարունակէ ճանապարհը Կուր գետին ընթացքով. կը հասնի յՈւրբնիս. ամիս մը դադար կ'առնէ հոն. ապա միացած վաճառականներու կարաւանին կը հասնի Մծխիթա: Արամազդի տօնը կը խմբուէր: Նունէ կ'ազօթէ եւ յանկարծ փոթորիկ մը կ'ելլէ, կարկուտ կը տեղայ: Արամազդի կուռքը կը կործանի. ժողովուրդը կը ցրուի: Նունէ կը հանգչի 6 օր «առ ծառովն Բանչի, զոր ասեն Հոմանի Բարտամայ»[18]: Այլակերպութեան տօնին կը պատահի իրեն արքունիքէն ազախին մը Շուշան անուն: Իմանալով որ օտարական է, «հռոմայերէն» գիտցող թարգմանի մը միջոցով կը խօսի հետը. կ'ուզէ տանիլ արքունիք, բայց նա յանձն չ'առներ: Քիչ յետոյ կը ծանօթանայ թագաւորական պարտէզի պահապանի կնոջ Անաստասիայի հետ եւ կը մնայ անոր քով ինն ամիս: Այս ընտանիքը զաւակ չունէր: Տեսիլքի մէջ կ'ըսուի Նունէի. «Մուտ ի Բուրաստանդ եւ յարմատոյ չոճի թփոյն առ վարդենեօքն՝ առցես հող եւ տացես դոցա ուտել յանուն Տեառն եւ տացի դոցա զաւակ»: Այնպէս ալ կ'ըլլայ: Նունէ կը հրաժարի անոնցմէ եւ կ'երթայ կը բնակի երեք ամիս քաղաքի պա-

---

17 Ընդարձակը յառաջ կը բերէ այս տասը պատգամները:

18 Տպ. Բարտամայ:

րխպէն դուրս «ի պրակս մոչենեաց»: Խաչ մը կը յօրինէ եւ անոր առջեւ կ'աղօթէ: Քաղաքին մէջ կը գտնուէին Հրեաներ: Նունէ կը ծանօթանայ Աբիաթար քահանայի եւ անոր դստեր Սիդոնայի եւ ուրիշ վեց հրեայ կանանց հետ: «Եւ որ ըստ օրէ գնայի առ Հրեայսն սակս լեզուոյն եւ ի տեղեկութիւն Տեառն Պատմուճանին»: Ջանոնք կը չահի քրիստոնէութեան: Աբիաթար քահանայ կը ստանայ Պօղոս անունը: Այս ամէնը պատմած է Նունէ Սողոմէ Հայոց Տրդատ թագաւորի դստեր, որ կինն էր Րէվ արքայորդւոյն: Իսկ թէ ի՛նչպէս Տեառն Պատուճանը Մծխիթա բերուած է, հաղորդած է Աբիաթար քահանայ, որ նաեւ Քրիստոսի գալստեան մասին պատմած է մանրամասնութիւններ:

Նունէ հրապարակ կու գայ այժմ իր հաւատացեալ աշակերտուհիներու հետ երբեւ քարոզիչ: Այս քարոզչական գործունէութեան մասին տեղեկութիւններ հաղորդած է Սիդոնիա: Կին մը, որ հակառակորդ մ'եղած էր Նունէի, կը ստիպուի իր հիւանդ տղան բերել Նունէի. սա «եդեալ զտղայն ի մահիճս իւր» խաչակնքեց եւ աղօթեց եւ «ետ զմանուկն բժշկեալ... ցկինն». որ գնաց խնդութեամբ եւ պատմեց ամէնուն: Նոյն օրերուն կը հիւանդանայ նաեւ Նանա թագուհին անբժշկելի հիւանդութեամբ: «Եւ պատմեցին վասն Նունեայ՝ թագուհւոյն. եւ առաքեաց ածել զնա առ իւր: Եւ չոգան գտին զնա յաղօթս ի մացառս պուրակին մոչենեաց առաջի

խաչին: Եւ պատմեցին զբանս տիկնոջն. եւ ասէ ցնոսա. Յայսմ ժամու ես ոչ իջուցանեմ զախրս ի Տեառնէ իմմէ. եթէ կամի նա՝ առ մեզ եկեսցէ»: Ասոր վրայ կը հրամայէ թագուհին. «Բարձէք եւ տարայք զիս առ նա... եւ տարեալ եդին զնա ի մահիճս Նունեայ. եւ նորա աղօթեալ յերկար՝ եդ զխաչն ի վերայ նորա չորեքկուսի. եւ նոյնժամայն նստաւ ողջացեալ: Եւ յարուցեալ ի տեղւոջէն գնաց ի տուն իւր...: Եւ յայնմհետէ աշակերտեալ ճշմարտութեանն՝ ուսանէր զօրէնսն Քրիստոսի ի սրբոյն Նունեայ եւ յԱրիաթար քահանայէն»:

Միհրան թագաւոր կը զարմանայ այս հրաշագործութեանց վրայ: Կը հարցնէ Արիաթար քահանայի, որ այժմ Պաւղոս կը կոչուէր, թէ ի՞նչ կրօն է քրիստոնէութիւնը: «Եւ Միհրան ունէր գիրք մի, որ պատմէր յաղագս ազգին Ներրովթայ եւ չինութեան Բաղեննեայ. եւ ետ բերել զայն առաջի իւր»: Այս գիրքը կը խօսէր աշտարակաշինութեան մասին, ուր կը գտնուէր գուշակութիւն նաեւ Քրիստոսի գալստեան վրայ:

Նոյն օրերուն կը հիւանդանայ նաեւ թագաւորին ազգականներէն մէկ մը: Նունէ կը հալածէ անկէ դեւը եւ կը բժշկէ: Ասկէ ետքը թագաւորը որսի կ'ելլէ «ընդ Մուխնարն, յամսեանն յուլիս ի քսանն, յաւուր շաբաթու»: Կ'ելլէ Թխութոյ լեռը. «Եւ ահա եղեւ ի վերայ մէգ եւ մառախուղ եւ խաւարեցաւ արեգակն ի միջօրէի. եւ եղեւ գիշեր»:

Արհաւիրքը կը պատէ թագաւորը· կը դիմէ Նունէի Աստուծոյ: Եւ կը ծագի արեգակը պայծառ օդով. վերադառնալով տուն կը հարցնէ. «Ո՞ւր է սուրբն Նունի մայրն իմ. քանզի Աստուած նորա Աստուած իմ է»:

Աստ վրայ Նունէ առ Հեղինէ կայսրուհի եւ Միհրան առ Կոստանդիանոս թուղթեր կը գրեն, «զի Տէր այց արար տանս Վրաց... առաքեցէք մեզ քահանայս՝ տալ մեզ կեանս յրով եւ հոգւով»: Նունէ կը շարունակէ իր քարոզութիւնը հանդերձ 12 կանոնարք. իսկ թագաւորը կը ձեռնարկէ շինել եկեղեցի: «Եւ մտին ի դրախտն· հատին զծառն չոճի եւ կազմեցին ի նմանէ վեց սիւն... եւ կանգնեցին զվեց սիւնսն· եւ զեւթներորդն, որ մեծն էր քան զամենայն՝ ոչ կարացին շարժել ի տեղւոյն՝ ոչ բազմութեամբ եւ ոչ հնարիւք մեքենայից, մինչեւ ի մտանել արեգականն· եւ ապա թողին եւ գնացին մեծաւ հիացմամբ: Եւ սուրբն Նունի երկոտասանիւքն մնաց անդէն զգիշերն եւ աղօթէր արտասուօք: Եւ ի մէջ գիշերին լինէր արհաւիրք եւ շարժմունք եւ որոտմունք...: Եւ արհաւրեցան կանանիքն որ ընդ Նունեայ եւ կամին փախչել...: Եւ մօտ ընդ առաւօտն երեւէր պատանի մի հրեղէն... եւ խօսէր ընդ սուրբն Նինեայ բանս երիս. եւ ապա երթայր առ սիւնն, վերացուցանէր զնա ի բարձունս... գնայր սիւնն... եւ իջանէր ի հատեալ արմատոյն իւրոյ: Եւ ընդ լուսանալն՝ եկին թագաւորն եւ ամբոխ յոյժ ընդ նմա. եւ

*տեսին զի սրացեալ էր սիւնն եւ եկն առանց ձեռին, եւ հաստատեցաւ ի վերայ սարոխին»: Նոյն օրը տեղի ունեցան հոն զանազան բժշկութիւններ: «Եւ թագաւորն արար ծածկոյթ սեանն. եւ կատարեցին զեկեղեցին շինելով ի փառս Աստուծոյ»:*

*Կոստանդիանոս կը կատարէ Միհրանի խնդիրքը. կ'ուղարկէ Յովհաննէս եպիսկոպոսն, երկու քահանայ եւ երեք սարկաւագ. բայց տալի խաչ եւ փրկչական պատկեր: Եպիսկոպոսը կը մկրտէ արքայական տունն եւ այլ ազատանին «ի տեղւոջն որ կոչի Մոկթա. եւ կոչեցաւ տեղին Գլխաւորաց լուսատու»:*

*Միհրան թագաւորի փեսան էր Փերոզ, որ «ունէր զաւունն Ռանայ մինչ ի Պարտաւ». սա չուզեց յանձն առնել քրիստոնէութիւնը: Նոյնպէս նաեւ մթեղուլիք եւ բնակիչք Կովկասու եւ Հրեայք Մծխեթի:*

*Միհրան Յովհաննէս եպիսկոպոսը Կոստանդիանոս կայսեր կ'ուղարկէ խնդրելու դարձեալ քահանաներ եւ քարկոփներ եկեղեցիներ շինելու, եւ Ս. Խաչէն մասն: Կայսրը կը կատարէ անոր բոլոր խնդիրները. կ'ուղարկէ «զՏախտակն ոտիցն Տեառն եւ զԲեւեռս ձեռացն»: Ուջէթի մէջ կը հիմնարկուի եկեղեցի մը. եւ Յովհաննէս եպիսկոպոս «եդ անդ զԲեւեռան»: Ուրիշ եկեղեցի մ'ալ կը կառուցուի ի Մանկլիս. «եւ եդ անդ զՏախտակն սուրբ»: Իսկ Մծխեթի մէջ կը*

չինուի նոր եկեղեցի մ՚ալ, արտաքոյ պարիս– պին «որ է այժմ Եպիսկոպոսարան»:

Մարտ 25ին, ուրբաթ օր, Եպիսկոպոսն եւ Բէվ արքայորդին մերձակայ լեռան մը ստորոտը կը կտրեն անուշահոտ տերեւներով ծառ մը եւ կը շինեն անկէ երեք խաչ: «Զա– ւագ խաչն կանգնեցին ի վերայ վիմին, որ կայ հանդէպ քաղաքին, եւ կարգեցին զօրն մեծի Զատկին տօն Խաչին ամենայն տանն Քարթլայ, զուէթ օր»: Ուր կը կատարուին բժշկութիւններ: Միւս երկու խաչերէն մին կը կանգնեն ի ծայրս լերինն Թխոթայ եւ եր– կրորդը ի Դարբա Կախեթոյ:

«Յաւուրսն յայնոսիկ առաքեաց Թագա– ւորն Կոստանդիանոս սարկաւագ մի, որ ու– նէր Թուղթ ի Բրանջաց ազգէն, որ ի հօրէ Նունեայ լուսաւորեալ էին. քանզի լուան նո– քա եթէ ի Հայս եւ ի Վիրս ծագեաց արեգակն արդարութեան… եւ առաքեցին գրով զցըն– ծութիւն սրտից իւրեանց. եւ եւս առաւել կամեցան տեղեկանալ ի ձեռն Բրանջ սպա– սաւորին, զի գրեալ զամենայն ստուգու– թեամբ՝ տարցի առ նոսա, որ ինչ ի Հայս եւ ի Վիրս իրք եղեն ի փառս Աստուծոյ: Զոր իմացեալ սարկաւագին՝ գրեալ ի մատենի՝ տարաւ յաշխարհն իւր ի Բրանջ» (65—66):

Եպիսկոպոսն եւ Նունէ եւ իշխան մը շրջան ըրին քարոզութեամբ «ի Ծրբին, ի Ճարթալ, ի Թխելա, ի Ծիլկան, ի Գորա– մաղր»․ անոնք չլսեցին Աստուծոյ խօսքը: Անկէ իջան ի Ժալէթ եւ յԵրծոյթ. ասոնք

լսեցին եւ մկրտուեցան: «Եւ Փխացիքն թողին զերկիրն իւրեանց եւ գնացին ի Թուչէթ. եւ բազումք ի լեռնականացն կան մինչեւ ցայսօր ի կռապաշտութեան»: Նունէ մեկնեցաւ քարոզելու Ռանայ երկրին մէջ. բայց կանգ առաւ Կուխեթոյ սահմանի մօտ, վասն զի հիւանդացաւ: Իրեն եկան Րէվ արքայորդին իր Սողոմէ կնոջ հետ: Իսկ թագաւորը ուղարկեց Եպիսկոպոսը, որ հիւանդը Մծխիթա բերէ. բայց Նունէ յանձն չառաւ երթալ: Այն ատեն թագաւորն եւ թագուհին, Պերոժավր Սիւնեցին եւ բազմութիւն մը ժողովըրդեան անոր գացին: Ամէնն ալ տխրագգած նստած հիւանդին չուրջ կու լային: Նանա թագուհին եւ Սողոմէ խօսք առին. «Մայր սուրբ... պատմեա մեզ զորպիսութիւն ծննդեան եւ սննդեան քո առ մեզ»: Նունէ կը պատասխանէ. «Պատմեալ է իմ յականջս Սողոմեայ, դստերդ արքային Հայոց, համառօտ զօրինակ զալոյն իմ այսր. տուք բերել քարտէս եւ մելան, եւ գրեցէք ի բերանոյ դորա. եւ զայլն դուք ինքնին գիտէք, զոր լուայքն եւ տեսէք»:

Ապա յանձնարարեց անոնց Ցակոբ քահանային, որ Յովհաննէս եպիսկոպոսին յաջորդն պիտի ըլլար, եւ խնդրեց որ Եպիսկոպոսը պատարագ մատուցանէ, «եւ հաղորդեցաւ ի սուրբ խորհրդոյն». եւ այնպէս յանձնարարելով ինք զինքը երկնաւոր թագաւորին աւանդեց հոգին յետ Համբարձման Քրիստոսի 332ին, իսկ յԵլիցն Ադամայ ի

դրախտէն 5832 տարւոյն, իր Քարթլի հաս–նելէն 15 տարի ետքը։

Այս միջոցին հասաւ Կոստանդիանոս թագաւորէն թուղթ մը, որով կը յայտնէր թէ Բահքար արքայորդին կ'արձակուի պատանդութենէ։ Կը վախճանին Ռէվ արքայոր–դին եւ Միհրան թագաւոր։ Կը յաջորդէ գա–հին վրայ Բահքար օգնութեամբ Պարսից։

7. Բազմաթիւ են այն գրութիւնները, որոնք լոյս տեսան 1890էն ետքը Վրաց դարձի պատմութեան շուրջը, կարեւոր եւ անկա–րեւոր, թէր եւ դէմ յօդուածաշարքեր, զո–րոնք կ'ուզեմ համապատկերի մէջ ամփոփել հոս ժամանակագրական կարգով։

1. А. С. Хахановъ (Խախանաշվիլի), Источники по введенію христіанства въ Грузіи: Древности Восточныя изданные. I (Москва 1893) 299—345. Գրուածքին թարգմանութիւնն է A. Chachanow, Le fonti della storia del christianesimo in Georgia: Bessarione 10 (1905/6) 84—95, 171—178.

2. Ի. Ջանաշվիլի, Քարթլիի դարձը, Տփղիս 1898 (վրացերէն)։

3. Auguste Daras, Sainte Nina ou Sainte Chrétienne, patronne de la Géorgie (ancienne Ibérie): Terre Sainte 17, p. 86—90, 110—112, 125—128, 140—142, 158—159 (նաև լոյս տեսած Sainte Nina et les origines chrétiennes de la Géorgie խորագրով՝ Études religieuses, t. 5 (1874), 102—123, 207—227).

4· Aurelio Palmieri, La chiesa georgiana e le sue origeni: Bessarione 9 (1900/1), 433—457, 333—343.

5· Life of St. Nino [transl. by] Marjory Wardrop and J. O· Wardrop [and F. C. Conybeare], Oxford 1900, 8$^{o}$, ԺԸ 88 [Studia biblica et ecclesiastica, vol. 5, Part 1].

6· A. Palmieri, La conversione offiziale degl' Iberi al christianesimo: Oriens Christianus 2 (1902), 130—150, 3 (1903), 148—172.

7· Մ. Գորգաձէ, Վրաց Եկեղեցին եւ անոր սկզբնաւորութիւնը, Մոամբէ, 1905, Թ. 3, 19—37, Թ. 4, 1—24 (վրացերէն)։

8· Ив. Джаваховъ, Проповѣдническая дѣятельность ап. Андрея и св. Нины въ Грузіи: Журналь министерства народ. просвѣщенія 333 (1901) 77—113: Նոյնը նախ վրացերէն լոյս տեսած ի Թերթին Մոամբէ (1900), Թ. 6 35—50· «Անդրէաս առաքելոյ եւ Ս. Նինոյի գործունէութիւնը Վրաստանի մէջ։»

9· O. von Lemm, Kleine koptische Studien, IX. Zur Geschichte der Bekehrung der Iberer zum Christentum: Bulletins de l'Académie im. des sciences de St.-Pétersb. 5e série, t. 10 (1899), 416—434. Հմմտ. Analecta Bollandiana 20 (1901), 338—339.

10· Նոյն՝ Iberica: Mémoires de l'Académie imp. des sciences de Pétersb. 8e série, t. 7 (1906), 1—39. Հմմտ. Anal. Boll. 26 (1907), 120—122.

11. Michel Tamarati, L'église géorgienne des origines jusqu'à nos jours. Rome 1910, p. 159—198.

12. R. Janin, Origines chrétiennes de la Géorgie: Echos d'Orient 15 (1912), 289—299.

13. Ս. Կակաբաձէ, Ս. Նինօ եւ անոր նշանակութիւնը Վրաց պատմութեան մէջ. Տփղիս 1912 (վրացերէն) ։

14. E. Amélineau, Les Coptes et la conversion des Ibères au christianisme: Revue de l'histoire des réligions 69 (1914), 143—182.

15. Կ. Կեկելիձէ, Վրաստանի դարձի հիմնական խնդիրները. Միմոմխիլվել 1 (Տփղիս 1926), 1—53 (վրացերէն) ։

16. Ս. Կաուխչիշվիլի, Քարթլիի դարձը. Միմոմխիլվելի 1 (1926) 54—68 (վրացերէն) ։

17. K. Kekelidse, Die Bekehrung Georgiens zum Christentum, Berlin 1928, 8°, էջ 51 [Morgenland, Darstellung aus Geschichte und Kultur des Ostens, Heft 18]. Առ այս P. Peeters: Analecta Bollandiana 47 (1929), 409—410. G. Peradze: Zeitschrift für Kirchengeschichte 49 (1930), 95—99 եւ Der Orient 11 (1929), 162—164.

18. J. Markwart, Die Bekehrung Iberiens und die beiden ältesten Dokumente der iberischen Kirche: Caucasica 7 (1931) 87—167.

19. P. Peeters, Le débuts du christianisme en Géorgie d'après les sources hagio-

graphiques: Analecta Bollandiana 50 (1932), 5—58.

20. Georg Peradze, Die Probleme der ältesten Kirchengeschichte Georgiens: Oriens Christianus 29 (1932), 153—171.

21. M. Tarchnišvili, Die Legende der hl. Nino und die Geschichte des Georgischen Nationalbewußtseins. Byzantinische Zeitschrift 40 (1940) 48—75.

22. Л. М. Меликсет-Бек, История Креста Нины. Известия Академии Наук Армянской ССР (*Տեղեկագիր Գիտութիւնների Ակադեմիայի ՍՍ․ Հայաստանի*), 1941, *Թ*․ 9 (14), *էջ* 59—63 (*ռուսերէն*)։ *Նկատի ունի Մ․ Խորենացւոյ Բ*․ 86։

23. M. Tarchnišvili, Sources arméno-géorgiennes de l'histoire de Géorgie: Le Muséon 60 (1947), 29—50.

8․ *Այս Ա․—Է․ խմբագրութիւններու հասարակաց աղբիւրն է Սոկրատի Ա*․ 20 *գլուխը։ Այդ գլուխը, որ* 696*ին հայերէն թարգմանութեամբ մատչելի եղած է Վրահայաստանի եւ Վրաստանի, դրդապատճառ եղած է հանդէս բերելու Վրաստանի առաքելուհի մը, եւ կարկատելու այդ Առաքելուհւոյն առաքելական գործունէութեան պատմութիւնը, որ է Պատմութիւնն դարձին Վրաց։ Այս Պատմութիւնը առաջին անգամ հիւսուեցաւ Ը․ դարու ընթացքին եւ կցուեցաւ Ագաթանգեղոսի Հայոց դարձի պատմութեան վրացերէն*

թարգմանութեան: Նախկին խմբագրութեանս կմախքը կը տեսնուի Ահարոն Վանանդացւոյ Նունէի Ս. Խաչի Պատմութեան մէջ: Այս սկզբնական խմբագրութիւնը զարգացած է աստիճանաբար Թ. դարուն: Նոր խմբագիրները ջանք տարած են հիմնաւորել նախնական պատմուածքը վաւերագիրներով, որոնք ի մասայ կարկատուած կեղծիքներ են: Առաքելուհին, որ կոչուած է Նունէ կամ Նունի եւ կամ Նինօ, ինքնին պատմած կ'ըլլայ իր առաջին կեանքը մինչեւ Մծխեթի մէջ յայտնուիլը՝ Հայոց Տրդատ թագաւորի դաւեր, Սողոմէի, որ Բէլ արքայորդւոյ կինն է: Սողոմէի լսածները այս գրի առած է Պերոժավար Սինի, ուստի հայերէն. Նունէի քարոզչական գործունէութիւնը պատմած է Սիդոնիա, հրեայ Աբիաթար քահանայի դուստրը, որ անբաժին ընկերուհին եղած է Նունէին. Աբիաթար քահանայ իր կարգին վկայած է Քրիստոսի գալստեան եւ Անկար պատմուճանի Մծխեթի բերուելու եւ Նունէի զանազան հրաշագործութիւններու մասին. Յակոբ քահանայ, որ յետոյ Վրաստանի առաջին եպիսկոպոսն կ'ըլլայ, կը հաղորդէ Նունէի գործունէութեան մասին նոր տեղեկութիւններ, ինչպէս նաեւ թղթակցութիւնները, որոնք եղած են Կոստանդիանոս Մեծի հետ եւն: Այսպէս շղթայաձեւ վաւերագիրներ ի մէջ բերուած են պատմուածքի արժանահաւատութիւնը աներկբայ ընծայելու

համար: Մոռցուած է միայն, թէ ո՞վ կատարած է այս ամբողջին վերջին խմբագրութիւնը եւ ի՞նչ լեզուով: Դ. դարուն վրացերէն կարելի չէր գրել. եւ եթէ օտար լեզուով գրուած է, ո՞վ եղած է անոր թարգմանիչը եւ ե՞րբ:

Ժամանակի համար մեզի կռուան տուած է միամիտ խմբագիրը, այնու որ Նունէի մօրեղբայր ներկայացուցած է Երուսաղէմի Յոբնաղ պատրիարքը (422—458), ուստի այս թուականէն վերջը: «Բրանջ» անունը կ'ենթադրէ արաբական տիրապետութիւնն ի Միջագետք եւ ի Պաղեստին եւ անոնց յարաբերութիւնը Արեւմտեանց հետ (գոնէ Ը.—Թ. դար):

Թէ եւ որ եւ է խօսք չէ եղած Բակուր իշխանի մասին, որ պատմողն եղած էր Վրաց դարձի պատմութեան, բայց դարմանալի կերպով կը համաձայնին Բակուրի պատմածները Նունէի Վարքին հետ: Հաւատացնե՞լ կ'ուզուէր թէ Բակուր կարդացած էր զայն:

Այսպէս 1. Նունէ իբրեւ «գերի կին» կը ներկայանայ. ինքնին կ'ըսէ թէ «Կին մի գերի եմ ես»[19]:

2. Կը բժշկէ մանուկ մը:

3. Կը բժշկէ թագուհին (Նանա):

---

[19] Համառօտ պատմութիւն Վրաց, էջ 57:

4· *Թագաւորը (Միհրան) որսի կ'ելլէ· խաւարում տեղի կ'ունենայ, որ կը փարատի Նունէի Աստուծոյ անունով:*

5· *Եկեղեցի կը շինուի:*

6· *Սիւն մը, զոր անկարելի կ'ըլլայ շարժել, ինքնաշարժ կ'երթայ կը հաստատուի խարսխին վրայ:*

7· *Թագաւորը կը հաւատայ:*

8· *Թագաւորն եւ Նունէ կը դիմեն Կոստանդիանոս Մեծի, հովիւ խնդրելու:*

*Գծեր, որոնք Սոկրատի հետքերով կ'ընթանան:*

*Ի՞նչ պիտի հետեւցնենք ասկէ: Խմբագիրն եւ խմբագրիչները իրենց առաջնորդ ունեցած են Սոկրատի Ա. 20 գլուխը· թէպէտ անձը, որ առաջին անգամ ձեռնարկեց գրել Վրաց դարձի պատմութիւնը, անծանօթ է անունով, բայց անոր ժամանակը կարող է ըլլալ միայն 696էն ետքը:*

*Խմբագիրը շատ աղքատ գտած է Սոկրատի հաղորդած տեղեկութիւնները, ուր ոչ «գերի կնոջ» անունն է յիշուած, ոչ ալ թագաւորի եւ թագուհւոյ, ինչպէս նաեւ միջավայրի անունները: Պակասը լրացնել էր գործը պիտի ըլլար: Խմբագիրը հետեւելով Հայոց Դարձի ընդարձակ Պատմութեան, որուն հեղինակն եղած էր Ագաթանգեղոս, Գերի կինը կապակցութեան մէջ դրած է Հռիփսիմեան կուսանաց հետ, որոնք Հռոմէն եկած էին: Անոնց ճանապարհի նկարագրու—*

թիւնը գտած է Մովսէս Խորենացւոյ վերագրուած Հռիփսիմեանց Պատմութեան մէջ. անոնք Հռոմ կը բնակէին «ի վանս սրբոյ առաքելոյն Պաւղոսի», իսկ Գայիանէ «մայր էր կուսից վանականաց»[20]: Բնականաբար Նունէ, որ Երուսաղէմէն Հռոմ կ'երթար, ինքն ալ նոյն «Ս. Պօղոսի վանքին» մէջ պիտի դանէր իր բնակութիւնն: Նոյն աղբիւրին հետեւելով պատմած է ոչ միայն Նունէի Հայաստան գալն, այլ եւ Հայաստանէն Մծխիթա հասնիլը: Նունէ, որ կը թագչի եւ ապա կը փախչի իր ընկեր կուսանաց հետ չնահատակուելու համար, երբ կը հասնի Ջաւախէթ, կը գգայ ինք զինքը անօգնական: Այս տեղ կը յայտնուի իրեն հրեշտակ մը, որ կու տայ գիր մը Քրիստոսի կնիքով եւ տասնաբանեայ պատուիրաններով: Այս դէպքը կը յիշեցնէ Գրիգոր Սքանչելագործի ընդունած համանման տեսիլը, ուր կը տրուի իրեն աստուածային Հանգանակը[21]: Հեղինակը ծանօթ է Անկար Պատմուճանի զրոյցին[22]: Կարդացած է Սեղբեստրոսի Վարքը եւ Պատմութիւնն Խաչի գիւտին ի ձեռն Հեղինեայ: Իր աղբիւրներու մէջ են նաեւ Վկայաբանութիւնքն

[20] Մատենագրութիւնք Մ. Խորենացւոյ, Վենետիկ 1865, էջ 298:

[21] Վարք եւ Վկայաբանութիւնք Սրբոց, Ա., էջ 319—320:

[22] Н. Марръ, Хитонъ Господень въ книжнихъ легендахъ Армянъ, Грузинъ и Сирійцевъ: Сборникъ статей учениковъ профессора Барона Виктора Р. Розена. С. Петерб. 1897, էջ 67—96. Համմտ. Արարատ 1898, էջ 223—227:

Ս. Գէորգի, Սրբոց Սպեւսիպպի, Եղեւսիպպի եւ Մեղաւսիպպի[23], Ս. Բարդողիմէոսի եւ այլոց: Հեթանոս ժողովուրդի քարոզիչ մը հարկաւ պիտի կործանէր մեհեանները. իսկ այն տեղ պաշտուած դից տեղական անունները չէր կրնար բնականաբար գտնել վաղուց ի վեր քրիստոնեայ ժողովուրդի աւանդութեան մէջ. առ այս դիմած է սեմական եւ իրանեան դիցաբանութեան[24]: Նկատի առած է խմբագիրը նաեւ տեղագրութիւնը Մծխեթայի եւ գաւառներու. եւ չահագործած է հին հին եկեղեցական եւ այլ շինուածքներ եւ ուխտավայրեր, պատմական արժէք տալու անոնց. այսպէս ի մէջ այլոց Մծխեթայի, Մանգլեաց (եւ Վարձիոյ) Ս. Խաչերը, որոնք ուխտատեղիներ էին վաղ ժամանակէ ի վեր:

Այս աղբիւրներու մէջ ժամանակով ամէնէն նորն է Ս. Խորենացւոյ վերագրուած Պատմութիւնն Հռիփսիմեանց, որ Թ. դարու վերջերը հրապարակ եկած կ՚երեւայ:

9. Իրաց այս վիճակի մէջ ի՞նչ կը մնայ Վրաց դարձի Պատմութեան մէջ պատմական կամ Վրաց հին աւանդութենէն մնացորդ:

---

[23] N. Marre, Acta iberica sanctorum tergeminorum martyrium Speusippi, Eleusippi, Meleusippi: Имп. русск. Археол. Общества. 27 (1906) 285—344.

[24] Н. Марръ, Боги языческой Грузіи по древнегрузинскимъ источникамъ: Записки Восточн. Отдѣленія, 14 (1903) 1—29. Հմմտ. նաեւ O. G. v. Wesendonk. Über georgisches Heidentum: Caucasica 1 (1924) 1—102. նոյն P. Peeters: Anal. Boll. 50 (1932) 51—52:

Թէ ամբողջն անվաւերական գրութիւն մըն է, ուրիշ խօսքով ուշ ժամանակի, Թ.— Ժ. դարու կարկատանք մը, կը խօսուին նաեւ վրացի բանաւէր-պատմաբանները, անոնց թուին մէջ Ջաւախիշվիլի, Կեկելիձէ, նոյն իսկ Թամարաթի եւ Թարխնիշվիլի:

Կ. Կեկելիձէ կը գրէ[25]. «Այս գրուցախօսին մանրամասնութիւնները Նունէի անձնաւորութեան մասին, զորոնք կը գտնենք մեր հնագոյն աղբիւրներու մէջ, ընդունելի են: Ան ոչ բարձրաստիճանի մը դուստրն էր եւ ոչ ալ պատրիարքի մը քրոջ աղջիկը. ան ոչ Երուսաղէմ ծնած է եւ ոչ ալ հոն դաստիարակուած, ան ոչ Կ. Պոլսէն եւս ոչ ալ Հռոմէն եկած է մեզի: Ան ոչ յոյն էր եւ ոչ ալ հայ, այլ վրացի, թէպէտ եւ դայս վարքագիրը դիտմամբ կը ժխտէ: Անոր քարոզութիւնը «բարբարոս»ներու մէջ այնպէս արագ պտղաբեր պիտի չըլլար, եթէ ան անմուտ ըլլար այդ «բարբարոս»ներու լեզուին: Ան վրացի մ՚էր, բայց ոչ Կապպադովկիայէն, այլ Գուգարքէն: Ասով միայն կը մեկնուի, որ այս Կինը գրոյցին համաձայն Ջաւախքէն եկաւ մեզի եւ գիտէր նաեւ հայերէն. վրացիք Գուգարքի մէջ իրենց մայրենի լեզուէն զատ պէտք է նաեւ հայերէն գիտնային, որովհետեւ հոս նաեւ վրացի երկրէն հայեր կը բնակէին: Վրական-բիւզանդական աղբիւր–

---

[25] Keklidse, Die Bekehrung Georgiens, էջ 45—50:

*ներու միարերան հաւաստումը, թէ այս Նինը գերի մըն էր, ընդունելի է. Դ. դարուն Վիրք հաւանօրէն յաճախ անգամ բախումներ կ'ունենային Հայոց հետ, բանենք Գուգարքի շուրջ: Շատ հաւանական է, որ այս ապստամբութիւններու ժամանակ քրիստոնեայ կին մը Վրաց ձեռքը գերի ինկած ըլլայ, որ յետոյ անոնց Քրիստոսը քարոզեց: Այս պատահած ըլլալու է 349ին»: «Մինչ Գրիգոր Հայաստան եւ Գուգարք քարոզեց, Նինօ իր քարոզութեան շրջան ունեցաւ Վրաստան–Հերեթը. եւ իրօք ալ նա Մծխեթէն կը սկսի իր քարոզութիւնը եւ ապա կ'անցնի Միւլեթ եւ կ'աւարտէ Բոդինի, այն է Բոդբէ: Այս սահմանէն դուրս չելաւ»: Վրաց դարձը տեղի ունեցաւ 355ին. այս տարւոյն հանդիպեցաւ արեւի խաւարումը: Նունէի մասին վրական աղբիւրները ձեւ եւ կերպարանք առին վերջնականապէս 882—912 տարիներուն: «Այս աղբիւրներու պատմական արժէքը յամենայն դէպս մեծ չէ. անոնք լի են գրոյցներով, հակաժամանակագրութեամբ եւ իրարու հակասող դէպքերով եւ աւանդութիւններով»:*

P. Peeters [26] *հայագէտ եւ վրացերէնագէտ գիտուն Բոլլանդիստը, դաստւորութեան ենթարկելով վրական բնագիրները կը յանգի հետեւեալ եզրակացութեան. «Այս բոլոր խմբագրութիւնները կը հաւաստեն, թէ մի եւ նոյն պատմութիւնը կ'աւանդեն: Բնագրէ*

---

[26] Les débuts du christianisme en Géorgie, *էջ* 50—51:

ընագիր փոփոխութիւնը ինքնին յայտյանդիմանութեամբ աչքի կը զարնէ, եւ հարկ չկայ ենթադրութիւններու անձնատուր ըլլալ անոնց յառաջադրութեան մասին: Անշուշտ եթէ ուզուի պնդել իրացս պարզ հնարաւորութեան մասին, կարելի է թերեւս պաշտպան կանգնիլ, այն իմաստով, թէ աւանդութիւնը երկար դարեր ծանրաքուն քունի մէջ խմորած՝ յանկարծ ձեւ եւ կերպարանք զգեցած ըլլայ ճիշդ այն ատեն, երբ արդէն միջօրեայ էր: Բայց ո՞վ պիտի հաւատայ ատոր, եթէ ան ի յառաջագունէ ազգամոլ կամ հայրենասիրական նախապաշարումով չէ տոգորուած: Այս վարքագրութիւնը, որ առաջին անգամ 973ին հրապարակ կու գայ եւ անկէ ի վեր չի դադրիր փոփոխութիւն կրելէ, չի կրնար ուրիշ բան նկատուիլ, բայց եթէ մէկ, դիւցազներգութիւն, զրոյց կամ ինչ որ կ'ուզէք· ընագրի մը համար, որ դարերէ ի վեր իր որոշ արդն ու զարդն առած է եւ իր իսկական հնութեամբ պաշտպանուած օրինակողներու երեւակայութեանց դէմ, նման գործողութիւն մը անկարելի է:

«Եթէ ուզենք սակայն այս գրուածքը մանրակրկիտ վերլուծումի ենթարկել, նոյն եզրակացութիւններու պիտի յանգինք: Բայց այս վերլուծումը վերջ պիտի չգտնէ. իսկ եթէ ձեռնարկենք անոր լոկ փորձի առհաւատչեայ մ'ընծայելու համար, հարկադրուած պիտի ըլլանք խորտակել բաց դուռ մը», ուրիշ խօսքով՝ անվաստակ դուրս գալ:

Գ. Պերաձէ[27] գիտել կու տայ որ «վրական աղբիւրներու մէջ մինչեւ Թ. դար բաղատեալ» Վրաստանի քարոզիչ Գրիգոր Հայաստանի Լուսաւորիչը կը ճանչցուի. դեռ Թ. դարուն Վրաց Արսէն կաթողիկոսը նոյնը կը չեշտէ: Վրաց հին ճաշոցին անծանօթ է Ս. Նունէ: «Տակաւին քիչ ուսումնասիրուած վրական անուանացանկին մէջ չենք գտներ Նինօ անունը խնդրական շրջանին: Վրական բովանդակ սրբախօսական կամ հայրենագիտական մատենագրութիւնը լռութեամբ կ'անցնի այս Սրբուհւոյն վրայէն, մինչդեռ անագանագոյն գրականութեան մէջ մեծ եւ փառաւոր տեղ յատկացուած է անոր: Եւ որովհետեւ յանկարծ Ժ. դարուն երեւան կուգայ ան, կը սկսի գովաբանուիլ մատենագիրներէ, յիշուիլ Տօնացոյցներու մէջ, տօնախմբուիլ եկեղեցիներու մէջ: Ջանք կը տարուի այնուհետեւ գրել անոր Վարքը...: Այն վայրկեանէն որ Նունէ Վրաց առաքելուհի կը ներկայանայ, կ'անհետանայ վրական Տարեգիրներու եւ հայրագիտական էջերու մէջ Ս. Գրիգորի անունը»:

Ի՞նչ երեւոյթ է այս: Պատասխանը պարզ է. Վրացիք գտած էին իրենց Առաքելուհին «Նինօ». Թէպէտ շատ ուշ, բայց եւ այնպէս փարեցան անոր ըստ առածին՝ «ուշ ըլլայ, նուշ ըլլայ»: Կրնանք աննախանձ շնորհաւո-

---

[27] G. Peradze, Die Probleme, էջ 154—155:

րել այս գլուխը։ Բայց կը վերապահենք ընծայել անոր հաւատք[28]։

Խնդիր չկայ թէ կեղծիք մըն էր հրապարակ դրուածը, որ կը շոյէր վրացի ժողովուրդին հայրենասիրութիւնն եւ բարեպաշտութիւնը։ Այդ կեղծիքը իրեն հիմ ունեցած է Բակուր իշխանի հաղորդած տեղեկութիւնները, Վրաց ծանօթացած Սոկրատի միջնորդութեամբ։ Բակուրի դերը լռած է կեղծարարը· բայց շնորհած է անոր քրիստոնէութեամբ սրբացած Վրաց թագաւորական դահը։ Բակուրի յիշած «Գերի կինը», որ պատճառ եղած էր «Վրաց» քրիստոնէութեան դարձի, նկատուած է «Մայր» Վրաստանի, եւ ընդունած Նունէ, Նունի կամ Նինո անունը։

Այժմ, երբ նոր քննութիւնները բերին մեզ այն համոզումի, թէ Բակուրի հաղորդած տեղեկութիւնները «Հայոց» քրիստոնէութեան դարձի մասին են, տեղի ունեցած 219/20 տարիներուն, ուստի «Գերի Կինը» կը նոյնանայ Հռիփսիմէ տիկնոջ հետ, թագաւորը՝ Տրդատ Բ. Մեծի հետ եւ Լուսաւորիչը՝ Գրիգորի հետ, կը ստիպուինք յայտարարել, թէ «Վրաց դարձի» կամ Ս. Նունէի Վարքի

[28] M. Tarchnisvili, Die Legende der hl. Nino եւ Sources arméno-géorgienne (տե՛ս վերը) կ'աշխատի տակաւին վեր հանել «Վրաց դարձի» պատմութեան մէջ պատմական եւ հին աւանդական գծեր. գեղեցիկ են իր պատճառաբանութիւնները, բայց ոչ համոզեցուցիչ։

շէնքը կը մնայ անհիմն, ուրիշ խօսքով՝ կախաղանաւոր շէնք:

Հայրենասիրութիւնը պէտք է տեղի տայ ճշմարիտ պատմասիրութեան: Հարկ է վերադառնալ հին աւանդութեան, որով սնած էին Հայոց եւ Վրաց Նախնիք մինչեւ Ժ. դար:

---

## ՈՒՂՂԵԼԻՔ

*Վերագոյն էջ 9—10 եւ 139 երկիցս յառաջ բերած եմ Ագաթանգեղոսի տեղիքը ի մասին Գրիգորի քարոզութեան շրջանին, առաջարկելով «ի սպառ» ուղղել «ի Սպեր» եւ «Մազքթաց» իմանալ Մեսքթաց — Մսխըթաց: Այժմ (22 մարտ 1949) ճշգագոյն կը համարիմ Ագաթանգեղոսի յիշեալ տեղիքն կարդալ «մինչեւ առ Կղարջօք մինչ ի սպառ [ի սահմանս Մասքթաց, մինչեւ ի Դրունս Ալանաց] մինչ ի սահմանս (այլ ձձ. եւ յոյնն ի Դրունս) Կասպից ի Փայտակարան քաղաք արքայութեանն Հայոց»: Փակագծի մէջ առնուած մասը յաւելուած մ'է խմբագրէն, Ե. դարու վերջը կամ յաջորդին սկիզբը. «Մասքթաց» թէ անունը եւ թէ սահմանքը կը նոյնանայ Ալանաց տերութեան հետ, որ տարածուած էր մինչ ի Դրունս «Ալանաց» կամ «Կասպից» կամ մինչ ի «պահակն Իւրոյ» (կարդայ՝ Վիրոյ): Պատմագիրը կը յայտնէ թէ Գրիգորի քարոզութեան շրջանը, որ է Հայաստանի սահմանը, կը ձգտէր Կղարջքէն «մինչ ի սպառ ի սահմանս Կասպից», ուր էր «Փայտակարան քաղաք արքայութեան Հայոց», այսինքն ուր Երասխ եւ Կուր կը խառնուին իրարու:*

## Resumé

**1. Die Einführung des Christentums in Armenien und Georgien nach den Berichten des Fürsten Bakur** (S. 1—52).

1. Gelasius von Caesarea und Rufin berichten nach den Aussagen Bakurs über die Bekehrung Georgiens. Diesen Bericht hat Sokrat in seiner Kirchengeschichte nach Rufin zusammengestellt. Sokrats Werk wurde im Jahre 697 ins Armenische übersetzt. Auf Grund dieses Berichtes entstand im 9. Jahrhundert die Vita der hl. Nune (Nino). Der Bericht stimmt aber mit der Tradition der Armenier und Georgier nicht überein, da diese Völker bis zum 9. Jahrhundert im Glauben waren, daß der Erleuchter der nördlichen Länder, Armeniens, Georgiens und Albaniens, der hl. Gregor gewesen sei. Daher galt auch der Primas der armenischen Kirche als primus inter pares, sowohl in kirchlichen wie auch in kulturellen Angelegenheiten (1—7).

2. Faustus' Historien Armeniens, geschrieben um 387, sind im griechischen Original verlorengegangen. Die armenische Übersetzung davon (um 420) wurde anfangs des 6. Jahrhunderts einer starken Rezension unterzogen. Das 2. Buch wurde als Legende des hl. Gregor unter dem Namen Agathangelos veröffentlicht. Obwohl in beiden Fassungen der chronologische Zusammenhang der Historien lose geworden, sind doch darin noch echte Bruchstücke erhalten, auf Grund derer und nach einheimischen wie auch auswärtigen Quellen die

Möglichkeit einer ungefähren Rekonstruktion gegeben ist. Der Verfasser, der die Sachlage in einer besonderen Arbeit ausführlich erörterte, gibt hier das Resultat seiner Erörterungen im kurzen wieder. Im Jahre 216 starb in Antiochien König Chosroes I.; sein Sohn Tiridates II. bestieg den königlichen Thron Armeniens im Jahre 217. Um diese Zeit tritt in der Residenzstadt Kainepolis (Valaršapat) die christliche Frau Ripsime, eine Römerin, auf. Gregor, aus Kaisareia nach Armenien gesandt, nimmt die Bekehrung des Landes auf (219—220). Nach einer dreißigjährigen fruchtbaren Tätigkeit erhält er zum Nachfolger den Bischof Meruzanes. Im Jahre 253 rückt Sapores I. von Persien in Armenien vor; der Übermacht weichend, sucht Tiridates bei den Römern Zuflucht (S. 7—11).

Reihenfolge der Könige und Kirchenfürsten:

| | | | |
|---|---|---|---|
| TIRIDATES II. | 217–253 | GREGOR (30 J.) | 219–250 |
| Sapores I. in Arm. | 253–361 | MERUZANES (7 J.) | 250–257 |
| Odenat., Zenobia c. | 265–272 | WRTHANES (17 J.) | 257–274 |
| CHOSROES II. | 273–283 | GREGORIS (17. J.) | 274–291 |
| TIRAN I | 283–295 | YUSIK I. (3 J.) | 291–294 |
| Narses in Armenien | 295–297 | P'AREN (4 J.) | 294–298 |
| Dioklet. Einteilung | 297–298 | | |
| ARSCHAK II. | 298–338/9 | ARISTAKES | 298–338 |
| TIRAN II. | 339–349 | NERSES | 338–372 |
| ARSCHAK III. | 349–367 | | |
| Sapores II. in Arm. | 367–368 | Sahak Tschonak | 362–366 |
| PAP | 369–374 | YUSIK II. | 372–374 |

3. Gelasius war die Vorlage zu Rufins Kirchengeschichte. Hier erscheint Bakur als Fürst aus dem georgischen Königshause. Um 393—394 regierte er in Jerusalem als dux von Palaestina. Bei dieser Gelegenheit über die Bekehrung Georgiens befragt, erstattete er Gelasius bzw. Rufin einen ausführlichen Bericht. Ob er seine Aussagen

nach einer mündlichen oder schriftlichen Überlieferung abgab, steht dahin. Es bestehen aber Anhaltspunkte, zu glauben, daß ihm Faustus' Historien zugänglich waren. Bakur gibt an, daß Georgien unter Konstantianus christianisiert wurde. Das stimmt mit den Tatsachen nicht überein. Ein Georgier aus dem königlichen Hause, Petrus, Bischof von Majume († 488), bezeugt durch seinen Biographen, daß Bakur selbst, als er um 396 den Thron bestieg, der erste christliche König Georgiens war. Die Briefe Libanius' (vom Jahre 391—392) lassen ebenfalls in Bakur einen Heiden vermuten; nach Seeck dürfte er kurz nachher bekehrt worden sein. Koriun, der Biograph des heiligen Maschtotz nennt um 415 die Gegenden des eigentlichen Georgien „barbarische", d. h. heidnische. Sie waren von sprachlich voneinander geschiedenen Stämmen bewohnt, die erst zu einer Nation verschmolzen wurden, als Maschtotz unter Bakurs Regierung sie missionierte und ihnen, durch ein von ihm selbst erfundenes Alphabet für die georgische Sprache, eine selbständige Literatur schenkte. Wenn es Bakur um 393 trotzdem gewagt hat, von einem christlichen Georgien zu sprechen, konnte es nur jenes Neugeorgien sein, welches durch die Provinz Gugark' und die diesseits des Kur gelegenen Gaue gebildet wurde, die um 298 von Großarmenien losgerissen und Georgien einverleibt worden waren. Diese von Armeniern und Georgiern bewohnten Landesteile, sowie die gleichzeitig zu Albanien übergegangenen Provinzen Uti und Artzakh waren bei der Bekehrung Großarmeniens durch den heiligen Gregor mitinbegriffen. Sie blieben wie vor 298, auch nachher christlich und immer in engerer kultureller Beziehung zu Armenien. Sollte Bakur dieses Neugeorgien vor Augen gehabt haben, so

hätten sich seine Aussagen ausschließlich auf Großarmenien bezogen. Dieser Tatsache war er wohl bewußt, indem er völlig vermied, die Orts- und Personennamen der Szenen namhaft zu machen. Sie konnten wahrscheinlich die Verdrehung der Tatsachen verraten. Wenn er wirklich das eigentliche Georgien sich vorgestellt hat, so hätte er unmöglich die Namen der Residenzstadt (Mzkhetha), wo er wahrscheinlich geboren wurde und der königlichen Familie, die seine Eltern bzw. Großeltern sein sollen, sowie der gefangenen Frau, welche die Erleuchterin Georgiens wurde, nicht verschwiegen.

Die gesamten Gechehnisse, wovon Bakur berichtet, lesen wir bei Agathangelos, zwar ziemlich verstellt, doch noch erkennbar.

1. Die gefangene Frau hieß Hrip'sime [1], „die Verworfene"; sie hatte ihre Hütte in einem Weingarten, in der Nähe der Residenzstadt Kainepolis (Vałarschapat).

2. Die Königin (die von Hripsime geheilt wurde), trug den Namen Aschkhen.

3. Der König des Landes war Tiridat II. (217—253).

4. Den Jagdzug unternahm der König mit seinem Heere. Als Jagdrevier wurde das Feld von P'arakan bestimmt.

5. Der Jagdtag war der 7. Oktober 218.

6. Die Finsternis, die gegen Mittag den König und die Jagdgenossen in Schrecken versetzte, war eine ringförmige Sonnenfinsternis im Ausmaß von sieben Zehntel, die in Armenien um Viertel elf Uhr in Erscheinung trat. Diese Sonnenfinsternis ist

---

[1] ,Aus gr. ῥίπτω, fut. ῥίψω (davon ῥῖψις), werfen, schleudern, verwerfen, verbannen.

bei Dio Cassius als ein schreckenerregendes Ereignis erwähnt.

7. Nach seiner Rückkehr sucht der „kranke" König den „Gregor", zu verstehen: die Ripsime.

8. „Gregor", d. h. Ripsime, läßt Kirche(n) bauen.

9. Tiridates schickt Gesandte nach Kaisareia.

10. Gregor kommt als Bischof samt Priestern aus Kaisareia nach Armenien und übernimmt die Bekehrung Großarmeniens.

In Bakurius' Bericht finden wir eine treffliche Quelle zur Geschichte der Bekehrung Großarmeniens (12—52).

### 2. Sokrats Kirchengeschichte in armenischer Übersetzung (S. 53—74).

Zur Bildung der Nunelegende diente als Vorlage die armenische Übersetzung der KG Sokrats. Daher hält es der Verf. für wichtig, sie näher zu behandeln und die Zeit der Übersetzung und den Übersetzer festzustellen. Der Übersetzer heißt Philo von Tirak, wahrscheinlich ein Armenogeorgier, der im Jahre 697, vermutlich in Konstantinopel, die Übersetzung durchführte. Die Übersetzung weist beim Übersetzer eine gewisse Unkenntnis des Griechischen auf, daher hält er sich sklavisch an der griechischen Satzkonstruktion und Wortbildung fest. Die Verständlichkeit des Armenischen wurde dadurch stark beeinflußt. Als ein Exemplar davon dem Fürsten Nerseh Kamsarakan, Apohypatos und Patrikios Armeniens, überreicht wurde, mußte er jemand beauftragen, für ihn einen Auszug davon ins rein Armenische zu machen. Es sind daraus die Benennungen entstanden: Der Große und der Kleine Sokrates.

In dieser Übersetzung interessierte die Armenogeorgier besonders das Kapitel I. 20, wo von der Bekehrung Georgiens die Rede war. Im folgenden wird der Text I. 20 in rekonstruierter Fassung dem Leser vorgelegt (S. 68—73).

### 3. Die Nune- (Nino-) Legende in der armenischen Literatur (S. 75—169).

1) Aharon von Wanand. Die ältesten Spuren der Nunelegende finden wir beim Aharon, aus dem Dorfe Idschewank' im Gau Wanand. Er war ein Mönch des heiligen Kreuzklosters in Wanand, unter der Regierungszeit des Bagratidenfürsten Smbat Ablabas (826—856).

Aharon verfaßte eine Geschichte des heiligen Kreuzes von Nune, das im Wanand aufbewahrt und angebetet wurde. Im ersten Abschnitt beschreibt er kurz, wie die Jungfrau Nune aus Armenien flüchtend nach *Mcḫet'a*, Hauptstadt Georgiens, gelangt, dort die Königin heilt, den König bekehrt und auf einem Hügel, gegenüber der Stadt, ein Kreuz errichtet und die bekehrten Georgier auffordert, es anzubeten. Im folgenden erzählt er, wie der Mönch Andreas (in der zweiten Hälfte des 5. Jahrhunderts) im Auftrag der Fürstin Schuschanik, Gemahlin des abtrünigen Wazgen, Bdeaschkh (vitaxes) von Georgien, das Kreuz von *Mcḫetha* geheim vom Hügel entführt, über Chaltik' in Sper ankommt und in den Schluchten des Berges Parkhar sieben Jahre lang versteckt. Inzwischen stirbt Schuschanik (um 483) und Andreas vernimmt, daß in Basian und in Wanand ein Mamikonier, Gregor, Hmayaks Sohn, die Gewalt in der Hand habe. Er teilt ihm dann mit, daß das heilige Kreuz von Nune sich bei ihm befinde. Darauf eilt Gregor mit 3000 Soldaten dorthin,

nimmt das heilige Kreuz zu sich und kehrt im Eilmarsch über die Front heim. Das heilige Kreuz bekommt am Ende seine Ruhestätte in Groß-Wanand (bei Kars).

Obwohl die Anachronismen den Verlauf der Geschichte stark in Anspruch nehmen, ist doch die Schrift nach literarischer Hinsicht sehr interessant, da der Verfasser, wie er selbst bezeugt, dazu armenische und georgische Quellen ausgenützt hat, von denen uns manche nicht erhalten sind. Auffallend ist nach dieser Seite die Behauptung, daß er für den ersten Abschnitt den Agathangelos als Quelle gehabt habe. Da im armenischen Agathangelos von Nune keine Andeutung vorhanden ist, so bleibt nur übrig, darunter die georgische Übersetzung vorauszusetzen, wo es am Platze war, anhangsweise auch von Nune zu sprechen.

Die Quellen, die hier ausgenützt sind, hat der Verf. hinreichend studiert. Wie es scheint, befand sich unter den benützten Quellen auch eine griechische Chronik in armenischer oder georgischer Übersetzung. Der Feldherr Theodoros unter Leo I. ist wahrscheinlich mit demjenigen unter Zeno identisch (vgl. Malalas, S. 389 ed Bonn). Ein astronomisches Phänomen, das hier erwähnt wird, ist Wort für Wort mit demjenigen von Theophanes (S. 177 ed. Bonn) gleichlautend, zuletzt die Eroberung von Rom durch die Wandalen (S. 89—90).

2) Der Text (S. 102—114) ist nach dem Cod. 1, III, fol. 137v—139r der St.-Jakobus-Bibliothek zu Jerusalem.

3) Ein Auszug dieser Schrift bei Gregor von Khlat, Synaxarion (S. 114—118).

4) Aharon und Moses Khorenatzi. Was Aharon im ersten Abschnitt mitgeteilt hat,

das finden wir fast Wort für Wort bei Moses, II, 86. Die Abweichungen von Aharon bei Moses sind dessen Zusätze, dagegen zeigen dieselben von Moses bei Aharon die Einzelheiten, die Aharon eigentümlich sind, die Moses nicht für gewichtig hielt in seine Berichte hineinzunehmen. Die Priorität ist bei Aharon (S. 119—140).

5) Moses Khorenatzi und der Große Sokrat. Moses hat den Sokrat an manchen Stellen ausgenützt (S. 140—146).

6) Moses der Geschichtsschreiber und Aharon. Moses, der aller Wahrscheinlichkeit nach mit dem M. Khorenatzi identisch ist, hat in seinem Traktat über die Erscheiung des heiligen Kreuzes auf dem Berge Warag manche Sätze dem Aharon entlehnt (S. 147—151).

7) Die vita von Nune im Synaxarion von Ter Israel. Nach Moses und Kl. Sokrat (S. 151—154).

8) — — im Synaxarion von Kirakos Areweltzi. Nach Moses. (S. 154—156.)

9) — — im Synaxarion von Gregor von Khlath. Nach Moses, Geschichte der Ripsimer und Kirakos. (S. 157—163.)

10. — — bei Pseudo-Epiphanius. Nach Moses. (S. 163—169.)

**4. Der Kleine Sokrat** (S. 170—258).

1) Die gekürzte Kirchengeschichte Sokrats, der sogenannte Kleine Sokrat. Der Excerptor und der Bearbeiter. (S. 191—222).

Als im Jahre 697 die Kirchengeschichte Sokrats in armenischer Übersetzung von Philo aus Tirak zusammen mit der von Abas Gregor aus

Dzorap'or übersetzten vita Silvestri in einem Band der Öffentlichkeit vorgelegt wurde, kam davon ein Exemplar in die Hände des Fürsten Nerseh Kamsarakan. Der „weise" Fürst veranlaßte darauf, die beiden Schriften für sich zu exzerptieren, entweder der Ausführlichkeit halber oder wegen schwerfälliger Sprache, in der sie übersetzt waren. Diese Exzerpte wurden nachher „Kleiner Sokrat" genannt im Vergleich mit dem „Großen", der eigentlichen Kirchengeschichte, die in der nächsten Folgezeit fast in Vergessenheit geraten ist. Seit dem 10. Jahrhundert herrschte die allgemeine Überzeugung, daß Sokrats Kirchengeschichte diese Exzerpte selbst darstellen. Erst im Jahre 1894 entdeckte Mesrop Ter-Movsessian in den Etschmiadsiner Handschriften den „Großen" Sokrat und edierte im Jahre 1897, durch Zufall am 1200. Jahrestage der Übersetzung, samt dem Kleinen Sokrat.

Auf die Frage, wann und durch wen sind die Exzerpte entstanden, sind wir in der Lage, ohne Bedenken als terminus post quem das Jahr 697 festzustellen. Um diese Zeit herum fällt tatsächlich die Wirksamkeit des Fürsten Nerseh, der 689—691 die Statthalterei Armeniens inne hatte. Nachher kehrte er in sein Stammhaus zu Arscharunik' zurück; er war in hohem Alter. In seinem Auftrag verfaßte Gregoris, Chorbischof von Arscharunik', den Kommentar zum Lektionarium, worin uns in Anerkennung die Tatsache mitgeteilt wird, daß der fromme Fürst in seiner Zurückgezogenheit sogar mit dem Eremitenanzug bekleidet war und anstatt Nerseh den Namen V a h a n trug. Er starb um 710. Dieser Zeitpunkt kann für die Abfassung der Exzerpte als terminus ante quem gelten (S. 21—27). Den Exzerptor nach Namen zu nennen ist schwer, es können aber

Philo aus Tirak oder der Chorbischof Gregoris in Betracht kommen. N. Adontz hatte das Unglück, in Jakob von Edessa, den Mechithar aus Ayrivank' in seiner Chronik erwähnte, den gleichnamigen armenischen Wardapet († 1085) zu erkennen und ihn für Übersetzer des Kleinen Sokrat zu halten. Der von Mechithar erwähnte Edessener ist der aus der syrischen Literaturgeschichte wohlbekannte Schriftsteller Jakob von Edessa († 708).

Diese Exzerpte wurden gegen die Wende des 9. Jahrhunderts einer Bearbeitung unterzogen. Der Text wurde dabei mit unnötigen biblischen Zitaten und aus hagiographischen und sonstigen Quellen entnommenen Zusätzen erweitert. Der Verf. hebt solche 16 Stellen hervor (S. 46—66), unter diesen ist auch ein Bekenntnis der nikänischen Väter und ein athanasianisches Symbol (S. 58—60), beide aus verschiedenen Quellen zusammengefaßte Apokryphen. Der Bearbeiter war ein belesener Mann, er gebraucht Ausdrücke, die in Agathangelos, in der Lehre des hl. Gregor und im armenischen Hymnarium ausgesucht sind (S. 66—67).

### 5. Der Kleine Sokrat und Moses von Choren (S. 259—288).

Um die Verhältnisse beider Schriftsteller zueinander hervorzuheben, müssen wir die Herkunft der gleichlautenden Stellen, die bei ihnen vorkommen, näher studieren. Es sind Stellen, die der Bearbeiter dem Moses entlehnt hat, es sind aber auch Stellen, für die Moses den Exzerptor zur Vorlage hat. Da der letztere um 700 redigiert war, so konnte Moses um 850 denselben gelesen und benützt haben. Der Verf. weist einzelne

Stellen auf, welche die Beziehungen der drei Quellen zueinander genau beweisen. Bemerkenswert sind besonders die Zusätze, die der Bearbeiter aus Moses entlehnt und in die Legende der hl. Nune eingeschoben hat.

### 6. Die hl. Nune (Nino) und die Bekehrung Georgiens (S. 289—334).

Indem der Verf. in den vorhergehenden Aufsätzen die armenischen Quellen zur Bekehrung Georgiens behandelt hatte, zieht er hier zum Schlusse im Bereiche seiner Studien die saidischen, koptisch-arabischen und insbesondere die georgischen Quellen nebst einer Bibliographie der diesbezüglichen Literatur heran. Allen Rezensionen stehen die Berichte Bakurius' bei Gelasius und Rufin und durch ihre Vermittlung bei Sokrates, Sozomenus und Theodoret als Vorlage zu Diensten. Man erwartete mit Recht über die Bekehrung Georgiens Näheres bei den Georgiern selbst zu finden. Tatsächlich bietet die georgische Literatur reiches Material dar. Die Legende der hl. Nino ist sogar in sieben voneinander ziemlich abweichenden Rezensionen vorhanden. Die zwei ältesten davon sind in einer Handschrift vom Jahre 973 erhalten. Sie sind zwar mit reichen Dokumenten ausgerüstet, stehen aber einer Kritik ohnmächtig gegenüber. Es ist besonders auffallend, daß die alte Tradition des Landes bis zum 9. Jahrhundert von der hl. Nino keine Ahnung hat. Dagegen herrschte sowohl bei den Georgiern wie auch bei den Armeniern der allgemeine Glaube, daß der Apostel der drei Nachbarländer, Armeniens, Georgiens und Albaniens, der hl. Gregor der Erleuchter gewesen war. Dies zwingt uns zur Behaup-

tung, daß die dargebotenen Dokumente Fiktionen des 9. oder 10. Jahrhunderts sind.

Nach den armenischen Quellen dürften die Anfänge dieser Legende ihre Herkunft im 8. Jahrhundert gehabt haben. Die Anregung dazu gab die armenische Übersetzung von Sokrats Kirchengeschichte (697), wodurch die Ibero-Armenier mit den Berichten Bakurius' bekannt wurden. In das 8. Jahrhundert fällt aller Wahrscheinlichkeit nach die georgische Übersetzung des armenischen „Agathangelos". Sie ist uns zwar nicht erhalten, doch zeugt für ihre Existenz jenes georgische Bruchstück, dessen Identifizierung mit dem armenischen Agathangelos letzthin G. Garitte bewies. Hier in dieser Übersetzung bot sich die geeignetste Gelegenheit, die Berichte Bakurius' reichlich auszunützen, um eine Geschichte der Bekehrung Georgiens zusammenzustellen. Die gefangene Frau bekam dabei den Namen Nune (Nino, aus georg. *nenne* „Mütterchen"), sie war eine Gefährtin der hl. Hripsime, suchte Zuflucht in Georgien, bekehrte die Königin Nana und den König Mihran, sie fragte den hl. Gregor den Erleuchter um Ratschläge usw. Daß ein ähnlicher Zusatz der georgischen Übersetzung „Agathangelos" beigegeben war, bestätigt Aharon aus Wanand in seiner „Geschichte des heiligen Kreuzes der hl. Nune", die er um 825 nach den armenischen und georgischen Quellen verfaßt hatte.

Die Tatsache, daß Bakurius Berichte nicht die Bekehrung Georgiens, wie seit Rufin allgemein angenommen wurde, sondern die Bekehrung Armeniens durch die hl. Hripʻsime und den hl. Gregor (um 218 und in folgenden Jahren) behandeln, drängt uns zur Schlußfolgerung: Die georgischen Quellen entbehren jeglicher Grundlage, daher ratsam: Rückkehr zur alten Tradition unserer Ahnen.

